13. Բնագրի «Բազում գիրգ նոցա գերի վարել էր» նախադասության իմաստը պարզ չէ, երկրորդ բառի պատճառով, ի՞նչ է նշանակում «գիրգ» բառը՝ գիրք թե գիրկ, գուցե վերջինիս իմաստով, այսինքն գրկի երեխա։

14. Բնագրի «մէկ աւուրն աման չէր եւս» նշանակում է մեկ օր ողորմություն (այսինքն՝ պարզ, արևոտ օր) չտվեց։ «Աման» թրք. ողորմություն, ներում, թողություն։

15. Պետք է լինի «պողազն». թրք. նշանակում է «նեղուց», խոսքը Բոսֆորի մասին է։

16. Բնագրի «Սուլխաղա» բառը արդյո՞ք Սուլխաթը չէ։ Այս մասին տես ներքևում ծանոթ. 37։

17. Հեղինակը նկատի ունի սուլթան Օսման II-ի 1621 թ. արշավանքը դեպի Լեհաստան։ Ինչպես երևում է սույն վկայությունից, Օսման II-ին օգնել է Ջանիբեկ Գիրեյը։ Առ. Դավրիժեցու մոտ այս դեպքերը նշված են 1620 թ. ներքո (էջ 638)։

18. Ճիշտ ձևը Սիլիստրա, քաղաք Բուլղարիայում, Դանուբի ափին։

19. Բնագրում «թագարորն» ձևով։

20. Օսման II-ի սպանության մանրամասնությունները տես ներքևում ժամանակագրական մանր հատվածները (XXVII)։ Տես և հմմտ. Դավրիժեցի, էջ 638։

21. Մուստաֆա I-ը երկրորդ անգամ իշխել է 1622—1623 թ. թ.։ Տես վերևում, ծանոթ. 5։

22. Խուղրին լիման անծանոթ վայր։

23. Հեղինակը մի քանի անգամ հիշում է «Տաթին» կամ «Տաթին տունն» տեղանունը, անծանոթ վայր։

24. Իմա Թաման, համանուն թերակղզու վրա։

25. Բնագրում գրված է այսպես՝ «Դեկըրին որ ընկեկ»։

26. Սմիրնովը Մուհամմեդ Գիրեյ III-ի իշխանության սկիզբը համարում է 1623 թ. մարտից հետո (էջ 480), իսկ Լեն-Պուլը այն համարում է 1622 թ. (էջ 196)։ Անշուշտ մեր հեղինակի վկայությունը ստույգ է, որպես ժամանակակցի, մանավանդ, որ վկայությունը նշված է ամսաթվի ճշտությամբ։

27. Իրականում Ջանիբեկ Գիրեյ II-ը, մեր հեղինակի համաձայն նաև վերջինիս եղբայր Դևլեթ Գիրեյը, աքսորվում են Հռոդոս, որտեղ սրանցից առաջ բանտարկված էր Մուհամմեդ Գիրեյ III-ը (տես Смирнов, „Крымское ханство" стр. 480):

28. Կարծում ենք խոսքը վերաբերում է Մուհամմեդ Գիրեյ III-ին։ Վերևում (էջ 228) հեղինակը վերջինիս գահակալության սկիզբը համարում է 1623 թ. մայիսի 9-ին, սակայն նրա իշխանության վերջին եզրը չի նշում։ Մինչդեռ, համաձայն Սմիրնովի, Մուհամմեդ Գիրեյ III-ը իշխել է մինչև 1627 թ. հունիսը (էջ 489, 494), հմմտ. Լեն-Պուլ (էջ 196)։ Համմերը նշում է մինչև 1628 թ., „Geschichte des Osmanischen Reiches" dritter Band, 1835, s. 92 : Բնագրի «Դ ամիս»-ը արդյո՞ք չպետք է լինի «Դ ամիս»։

29. Բնագրում մի քանի անգամ հիշվում է «Աւրինքերաննն», կարծում ենք խոսքի վերաբերում է Պերեկոպին, որին թաթարները անվանել են Օր-Կապու, այսինքն՝ Ոսկե դուռ։

30. Մուրադ IV-ը իշխել է 1623—1640 թ. թ.։

31. Բնագրում գրված է «յաւուրք իմ եշի խ. յապրիլի ԻԹ (29) անմահն պատարագեցի», միտքը պարզ չէ, թվում է թե հեղինակն ակնարկում է իր քահանա ձեռնադրվելուց հետո անցկացրած 40 օրը, որի ժամանակ քահանաները սովորում են եկեղեցական արարողության կարգը։ Սակայն պատահում է, որ առաջին պատարագը մի քանի օր շուտ կամ ուշ են կատարում։ Խաչատուր քահանայի օծումից մինչև առաջին պատարագը անել է 45 օր։ 1624 թ. ապրիլի 29-ը իրոք հինգշաբթի է։

32. Արդյո՞ք Կաղոխը չէ, Անապայի և Նովոռոսիյսկի մոտերքում, թերևս ավելի հյուսիս։

33. Սույն դեպքերը հեղինակը համառոտում է նաև էջ 228։

34. Այս դեպքերը հեղինակը համառոտում է նաև էջ 228։

35. 1624 թ. Ջանիբեկ Գիրեյ II-ը փորձեց Մուհամմեդ Գիրեյ III-ից խլել իշխանությունը. այդ կռիվների մանրամասնությունները բացակայում են Սմիրնովի „Крымское ханство" մեծածավալ աշխատության մեջ։

36. Իմա հոն, հակառակ «հոս»-ի։

37. Ուղիղ ձևը Սուլկադ կամ Սուլղադ, թաթարները կոչել են Էսքի Խըրըմ, այսինքն Հին Ղրիմ։ Վերջինս գտնվում է Կաֆայից (Թեոդոսիա) մոտավորապես 20 կմ. արևմուտք։

38. Բնագրում «զազառին» ձևով, որը կարծում ենք «զավառին» բառի աղճատումն է։ «Կա-

ֆա քաղաքին» բառը գրված է արական հոլովով, այսպես պետք է գրված լինի նաև Սուլխաթը, ուստի բնագիրը պետք է կարդալ «որ տիրեց Սուլխաթ դաւառին և Կաֆա քաղաքին»։

39. Անշուշտ ցանկացել է ասել «քշեց»։

40. Բնագրի 227բ էջի ներքևի տողից հեղինակն ավելացրել է «Յովանէս վարդապետն եկաւ ՌԿԵ (=1616) թվականին, որ Ջէնքչի գոչիս» տեղեկությունը։

41. Երևի ուզում է ասել շուռումուռ եկան։

42. Քաղաք Դնեսարյան ծովախորշի հարավ-արևմտյան ափին, Օդեսայից մոտավորապես 80 կմ. հարավ-արևմուտք։

43. Հանդիպում ենք նաև Աւզուն ձևով։ Մեզ համար անծանոթ վայր։

44. Բնագրում «հաստացեցս» ձևով։

45. Իմա Դանուր։

46. Բնագրում «պատմեմպ» ձևով։

47. Կարծում ենք պետք է լինի «Գոռէլոււ», որովհետև անցուդարձը տեղի է ունեցել Բաղչի Սարայում, իսկ Գոռելը, ինչպես արդեն նշել ենք, Ղրիմում չէր գտնվում (ծանոթ. 12)։

48. Բնագրում «եկամ» ձևով։

49. Շահին Գիրէյի և Դեմուրխանի այս կռիվների մասին տես Սմիրնով „Крымское ханство“, էջ 495—497։ Հմմտ. J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches“ dritter Band s, 69—70: Սակայն Սմիրնովին հայտնի չէ այդ կռիվներում հայերի մասնակցության փաստը։

50. Բերդաքաղաք համանուն սլաքի վրա, Թեոդոսիայից մոտավորապես 50 կմ. հյուսիս։

51. „baqı“ արաբ. նշանակում է՝ անարդար, անիրավ, անհնազանդ, խռովարար, չափն անցկացնող։ Բնագրի «ան պաղիքն» նշանակում է՝ այն անիրավները և այլն։

52. Կարասու կամ Կարա-Սու բազար, մոտավորապես 60 կմ Կաֆայից արևմուտք։

53. Անհայտ վայր, Կաֆաի մի մա՞սն է, տես վերևում, էջ 161։

54. Կոչվում է Манлопск կամ Мангупск (տես Смирнов „Крымское ханство“ стр. 160—164)։ Ղրիմի այժմյան Լենինյան շրջանում, ծովափից 5 կմ. հյուսիս գտնվում է Մանկուտ գյուղը, մոտավորապես նույնահնչյուն մի գյուղ էլ՝ Մանդուշ, գտնվում է Բաղչի-Սարայի շրջանում, Բաղչի-Սարայից մոտավորապես 10 կմ. արևելք։ Թե սրանցից ո՞րն է պատմական Մանկուպը, դժվարանում ենք ասել, սակայն, եթե նկատի ունենանք կազակների շարժման ուղղությունը, ապա պատմական Մանկուպը թերևս նույնացնենք Բաղչի-Սարայի Մանդուշի հետ։

55. Հավանաբար Սուդակը։

56. Դեվլետ Գիրեյը 1629 թ. օգոստոսի սկզբների մի յարլիկում հայտնում է, որ Մուհամմեդ Գիրեյ III-ը և Շահին Գիրեյը Դոնի կազակների օգնությամբ հարձակվել են Ղրիմի վրա և նույնիսկ Կարա-Սուն ավերել (տես Смирнов „Крымское ханство“ стр 496—497):

57. Անծանոթ վայր։

58. Բնագրում «շայխայ»։

59—60. Անծանոթ վայր։

61. Իմա Եվպատորիա։

62. Ղրիմի այժմյան Իշկիի շրջանում գտնվում է Կաղանպիր գյուղը։ Շրջկենտրոն Իշկիից մոտավորապես 15 կմ. հարավ-արևմուտք։ Բնագրի «[Կ]աղանատիպ»-ն արդյո՞ք այդ գյուղը չէ։

63. Բնագրում «աս»-ը գրված է վերևի լուսանցքում։ «Աս» բառը գուցե գործածել է «սյս» նշանակությամբ։

64. Բնագրում «չերանցաւ» ձևով։

65. Այս ամբողջ հատվածը գրված է 233ա և բ էջերի ներքևի լուսանցքում հեղինակի կողմից։

66. Այսինքն 1629 թ. օգոստոսի 10—15։

67. Այսինքն քարկոծեցին։

68. Իմա ծառաներն։

69. Մի այլ տեղ էլ հեղինակը գրում է. «Ըսպլնճն լման լառ», թե ի՞նչ է «ըսպլնճ» բառը, մեզ մնաց անհասկանալի։

70. Փաշայի, ինչպես և այլ պաշտոններ Թուրքիայում վաճառում էին։ Այդ պաշտոնը գնելու համար պարտք էին վերցնում։ Պաշտոնավարելիս կրկնակի և ավելի հարկ հավաքում պարտքը մարելու և ապրելու համար։ Ինչպես երևում է, Կաֆայի նոր փաշան այդպիսի մի պարտատեր էր։

71. Այսինքն այս արշավանքը կազմակերպել է անիծածի մեկը, որը Թոման բեյի որդին է և հանվանն չի հիշում։

72. Անծանոթ անուն։

73. Ջանիբեկ Գիրեյը 1628 թ. հուլիսի վերջերին տեղեկացնում է Միխայիլ Ֆեոդորովիչին, որ երբ ինքը նորից ստանձնում էր իշխանությունը, երկրորդ անգամ Մուհամմեդ Գիրեյը և Շահին Գիրեյը կազակների օգնությամբ պաշարել են Կաֆան (տես Смирнов, „Крымское ханство" стр. 495)։

74. Այսինքն դեկտեմբերի 18-ին։

75. Այսինքն սեպտեմբերի 25-ին, որովհետև 1629 թ. Վարագա խաչի տոնը կընկնի սեպտեմբերի 27-ին, կիրակի։

76. Բնագրում «Մովսէս պարոնտէրն Ըստամբօլ վաղջանեցաւ» գրված է 234ա էջի աջ լուսանցքում։

77. Բնագրում «կաթուղիկոսին» ձևով։

78. Բնագրում «մեծարեցյ» ձևով։

79. Բնագրում «ուղարկացաք» ձևով։

80. 1629 թ. մեծ պասը կընկնի փետրվարի 16-ից մինչև մարտի 27-ը։ Բնագրի «Աղուհացից Բ (2)-ում հինգշաբթի» հատվածը հասկանում ենք այսպես՝ մեծ պասի երկրորդ շաբաթվա հինգշաբթի օրը, որ է փետրվարի 26-ին, հինգշաբթի։

81. Իմա Բալակլավա, նավահանգիստ Թերակղզու արևմտյան ափին, Սևաստոպոլից մոտավորապես 20 կմ. հարավ։

82. Բնագրում «Պէֆլով» ձևով։

83. Բնագրում «դասակիպ» ձևով։

84. Բնագրում «հովինըն» ձևով։

85. Հնում, երաշտ տարիները, անձրև տեղալու նպատակով ծնրադիր աղոթք են արել։ Հեղինակը հավանաբար այդ է ակնարկում։

86. Իմա Թափոր։

87. Բնագրում «րաժում» ձևով։

88. Կարելի է կարդալ նաև «Խաղըլխան» (կամ «Խաղըղան»), անծանոթ վայրի անուն։

89. Սելեմետ Գիրեյ I, ըստ Լեն-Պուլի, իշխել է 1608—1610 թ. թ. (էջ 196), հմմտ. Смирнов „Крымское ханство" стр. 472։

90. Բնագրում «Ամէր» ձևով։

91. Բնագրում «եղրայք» ձևով։

92. Թվում է թե մեկ թերթ ընկած է։

93. Բնագրում «զուանս» ձևով։

94. Այսինքն ոչխարի մատաղով։

95. Անապա, նավահանգիստ Սև ծովի ափին, Նովոռոսիյսկից 40—45 կմ. հյուսիս-արևմուտք։

96. Իմա Աղով։

97. Բնագրում «Ենկիչերիչ» ձևով։

98. Հասըլ Թըք. նշանակում է արդյունք, բերք, եկամուտ։ Խոսքը վերաբերում է եկամտահարկին։

99. Բնագրում «արժ» ձևով։

100. Գուցե Կաֆայի թաղերից մեկն է։

101. Բնագրում «շըրար»։

102. Բնագրում «մէկ բարեպաշտ տա(՞)թ քրիս[տ]անեամն էմր էառ եկաւ» ձևով, երրորդ քառը խանգարում է բնագրի միտքը հասկանալուն, ուստի բնագրից հանեցինք։

103. Բնագրում «գարձեալձ» ձևով։

104. Բնագրում «եկաւ Կաֆան եկ ասին»։

105. Իմա Կերչ։

106. Սանտալ կամ սանդալ (հուն. (Σάνδαλον) նշանակում է հողաթափ, նաև՝ նավակ, որն ունի սանդալի ձև։ Սակայն «սանդալը» ունի մի այլ նշանակություն ևս՝ ծառի տեսակ, որը հնում կոչել են ալմուկ (տես «Ներածութիւն սուրբ գրոց ուսմանս» ի Տոզ Անկըսէ, մասն առաջին, Կ. Պոլիս, 1892, էջ 242)։ Բնագրի «սանտալ խայըխ»-ը կարծում ենք գործ է ածվել նավակի տեսակ հասկացությամբ, այսինքն սանդալի ձև ունեցող նավակ, մակույկ։

107. Բնագրի 336ր էջից հետո մի քանի թերթ ընկած լինելու պատճառով 4 տարվա (1633, 1634, 1635, 1636 թվերի) պատմությունը պակասում է։

108. Ինայեթ Գիրեյ I-ին, հաջորդել է Ջանիբեկ Գիրեյ II-ին և իշխել՝ ըստ Լեն-Պուլի 1635—1638 թ. թ. (էջ 196), Սմիրնովի՝ 1635—1637 թ. թ. (էջ 508)։ Ստույգ է վերջինը։ Հմմտ. J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches" dritter Band, s. 929:

109. Խոսքը վերաբերում է Ինայեթ Գիրեյ I-ի հաջորդ Բահադուր Գիրեյ I-ին, որն իշխել է 1638—1642 թ. թ. (ըստ Լեն-Պուլի, էջ 196), կամ 1637—1642 թ. թ. (ըստ Սմիրնովի, էջ 519)։ Հմմտ. J. Hammer "Geschichte des Osmanishen Reiches" dritter Band, s. 223, 929.

110. Հմմտ. Смирноа „Крымское ханство" стр. 519—520:

111. Հեղինակի աղջիկը, որ ծնվել է 1620 թ. սեպտեմբերի 7-ին։

112. Բնագրի 237ա էջի կեսը և 237ր էջն ամբողջությամբ դատարկ է։ Տարեգրությունը շարունակվում է, 238ա էջից։

113. Հեղինակը նկատի ունի Ինայեթ Գիրեյ I-ի և նրա երկու եղբոր սպանությունը։

114. Բնագրում «օրոցորն» ձևով։

115. Մատթ. ԻԱ 41։

116. Թերևս պետք է լինի «եկան»։

117. Արդյո՞ք Աստրախանը չէ։

118. Իբրահիմ I-ը իշխել է 1640—1648 թ. թ.։

119. Ծածկագիրը կարդացվում է այսպես՝ 1 տող՝ Խաչատուր երեց (բնագրում «ւ» և «ր» տառերի համարժեքը սխալ է նշված՝ ՎԾ ՎԾ-ի փոխարեն, պետք է լինի ՎՇ ՎՇ, ՍԾ ՍԾ՝ ՍՇ, ՍՇ, որպեսզի ստացվի հեղինակի ստույգ անունը)։

2-րդ տող՝ տէր Փիլիպոս կաթողիկոս։

3-րդ տող՝ Կիրակոս։

4-րդ տող՝ Մարտիրոս։

5-րդ տող՝ Վարդան, Նիկողոս։

6-րդ տող՝ Սիմէոն։

120. Արդյո՞ք Սև ծովի հյուսիս-արևմտյան ափերը չեն։

121. Թուրքիայի եվրոպական մասը։

122. Իմա Մոլդավիան։

123. Այստեղ բնագիրը թերի է մնում մեկ, գուցե և ավելի թերթեր ընկնելու պատճառով։ Սուլթանական Թուրքիայի և Ղրիմի խաների միացյալ ուժերով Դոնի և Ազովի կազակների դեմ կազմակերպված այս կամպանիան, Սմիրնովի կարծիքով տեղի է ունեցել 1641 թ. գարնանից մինչև աշունը (Նույն տեղ, էջ 542։ Հմմտ. Գ. Այվազովսկի «Պատմութիւն օսմանեան պետութեան», հ. Բ, Վենետիկ, 1841, էջ 92։ J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches" dritter Band, s. 223: Սակայն մեր հեղինակը այդ արշավանքի սկիզբը համարում է 1640 թ. հունիսը։

Բնագրի «Հայն բերթէն ի դուս լաղըմ արաւ» հատվածի իմաստը պարզ ասված չէ, առաջին բառի պատճառով։ «Հայն» բառը կարող է նշանակել «հայ», կամ «այն»։ Վերջինիս իմաստով վերոհիշյալ նախադասությունը կարելի է այսպես մեկնաբանել «այն բերդից դուրս լաղմ արեց»։ Մեզ ճիշտ թվում է վերջինը։

124. Խոսքը վերաբերում է թուրքերի և վենետիկցիների միջև Կրետեի համար տեղի ունեցած կռիվներին։ Այս վկայությունը թերի է և այն վերաբերում է պատերազմի սկզբին, որն սկսվեց 1645 թ.։ Կրետեի գրավման այս վկայությունը ստույգ չէ, որին, ի դեպ, հեղինակն էլ կասկածանքով է վերաբերվում։ Ինչպես հայտնի է 1645 թ. հունիսին թուրքերը պաշարում են Կանեա նավահանգիստը (Կանեա ծոցի ափին) և երկու ամիս հետո գրավում։ Պատերազմը ձգձգվում է մինչև 1669 թ.։ Կղզու գլխավոր քաղաք՝ Կանդիայի պաշարումը, որն սկսվել էր 1648 թ. ձգձգվեց 20 տարի և այն թուրքերը նվաճեցին 1669 թ. սեպտեմբերին (մանրամասնությունները տես J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches" dritter Band. s 296, 630—6.3: Лэн-Пуль", Мус. династии" стр. 162 ծանոթ. 1)։ Կանդիայի գրավումով Կրետեի համար մղված կռիվները ավարտվում են։

125. Բնագրի «մինչև միջնաց կէսն» արտահայտությունը վերաբերում է մեծ պասի կեսին։ 1646 թ. մեծ պասն ընկնում է փետրվարի 9-ից մինչև մարտի 19-ը։ Նշանակում է, «մինչև միջնաց կեսն» պետք է հասկանալ մինչև փետրվարի վերջը։

126. 1646 թ. մարտի 23-ը կիրակի չէ, այլ երկուշաբթի։

127. Բնագրում «է. երրեակն» ձևով։

128. Խոսքը վերաբերում է Կրետեի համար վենետիկցիների և թուրքերի մղած կռիվներին։ Վկայությունն ունի փոքրիկ անճշտություններ։ Իրականում դեպքերը տեղի են ունեցել այսպես՝ վեզիր Կարա-Մուստաֆայի սպանությունից հետո, նրան հաջորդում է Դամասկոսի կուսակալ Սուլթանզադե Մուհամմեդը (Ջիվան Գափուճուպաշ մականունով) 1644 թ.։ Վերջինս հեռացվում է վեզիրի պաշտոնից 1645 թ. դեկտեմբերի 17-ին։ Նրան հաջորդում է Սալի փաշան, որը 1647 թ. սեպտեմբերի 18-ին խեղդամահ արվեց, սուլթան Իբրահիմի մի հրամանը չկատարելու համար։ Վեզիրի պաշտոնից արձակելուց հետո, Սուլթանզադե Մուհամմեդը մասնակցում է Կրետեում մղվող կռիվներին, որտեղ հիվանդանում է մալարիայով և մահանում 1646 թ. հուլիսի 12-ին (մանրամասնությունները տես՝ J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches", dritter Band, s. 276–292: Տես և համա. նաև Գ. Այվազովսքի «Պատմութիւն օսմանեան պետութեան», հատոր Բ, էջ 102—112)։ Բնագրի՝ «Մալթային գնացած վէզիրն հայն սպանէր է ի կըռիւն» վկայությունը վերաբերում է Սուլթանզադե Մուհամմեդին և բնագրի «հայն» բառը պետք է հասկանալ «այն» (գուցե և «այնտեղ») իմաստով։

129. Անշուշտ ցանկացել է ասել «ծեծ»։

130. Խոսքը վերաբերում է Կրետեի համար մղած կռիվներին։ Բնագրի «Սութայ»=Սուգա, նավահանգիստ Կրետե կղզում, համանուն ծոցի ափին։ Ըստ Համմերի Սուդայի նվաճումը տեղի է ունեցել 1646 թ. վերջերին („Geschichte des Osmanischen Reiches" dritter Band, s. 286–287):

131. Ղրիմի խաներից Իսլամ Գիրեյ III-ը, հաջորդել է Մուհամմեդ Գիրեյ IV-ին, իշխելով 1644—1654 թ. թ. (J. Hammer, նույն տեղ, էջ 929, Սմիրնով, նույն տեղ, էջ 529)։

132. 1649 թ. աղուհացը՝ մեծ պասը սկսվել է փետրվարի 5-ին, հետևապես, Արիստակես վարդապետը Ղարա-Սու մնացել է հունվարի 6-ից մինչև փետրվարի 5-ը։

133. Բար. Մոգիլեի շրջանում քաղաք (Ուկրաինական ՍՍՌ), Բուգի վտակ Թովի վրա։ XVI—XVIII դարերում Բարը գտնվել է Լեհաստանի և Թյուրքիայի սահմանում։ Այն Ռուսաստանին միացվեց 1793 թ.։ Այս քաղաքի մասին այլ առիթով հիշվում է նաև «Կամենից»-ում (էջ 18, 62)։ Իսլամ Գիրեյի 1649 թ. արշավանքին նախորդող դիվանագիտական հարաբերությունների և արշավանքի մասին տես Костомаров „Богдан Хмельницкий" том I, СПБ, 1859, гл. VI—VII։

134. Կալա քաղաքը արդյո՞ք այժմյան Կոլայը չէ, համանուն շրջանում, Ղրիմի հյուսիսարևելյան մասում։

135. Ղրիմ Գիրեյը Բահադուր Գիրեյ I-ի և Իսլամ Գիրեյ III-ի կրտսեր եղբայրն էր։

136. Տես և համա. Смирнов „Крымское ханство" стр. 544։

Այս արշավանքի մասին մանրամասնությունները տես Костомаров „Б. Хмельницкий", том II. гл. II:

137. Հեղինակը նկատի ունի Բոգդան Խմելնիցկուն։

138. Բնագրում «պանմեյ» ձևով։

139. Այսինքն 1650 թ. փետրվարի 25-ից մինչև ապրիլի 5-ը։

140. Ըստ երևույթին ուզում է ասել շատ ուտելուց հագուստի կոճակները բաց անող։

141. Բնագրում «ծաղկայղարդին» ձևով։

142. Գուցե պետք է լինի «ամէնն ալ»։

143. 1657 թվականի սուրբ խաչի (խաչվերաց) տոնը կընկնի սեպտեմբերի 13-ին։

144. Գուցե ուզում է ասել աչակալ։ Բառի վերջում կա «ի», բայց այն ջնջված է, ըստ երևույթին հեղինակի կողմից։

145. Բնագրում «շարփափան» ձևով։

146. Բնադիրն այստեղ ընդհատվում է։ Հաջորդ վկայությունները դարձյալ խաչատուր երեցինն են, սակայն նրանք դրված են ժողովածուի տարբեր մասերում։

147. Ղազի Գիրեյ II, Իսլամ Գիրեյ II-ի եղբայրը և հաջորդը. ըստ Լեն-Պուլի, իշխել է երկու անգամ 1588—1594 թ. թ. և 1594—1608 թ. թ. (Նույն տեղ, էջ 196), իսկ ըստ Սմիրնովի 1588—1608 թ. թ. (Նույն տեղ, էջ 444)։ Վերջինս այլ էջերում Ղազի Գիրեյի մահը նշում է 1608 թ. մարտին կամ 1607 թ. նոյեմբեր-դեկտեմբերին (Նույն տեղ, էջ 463)։ Ղազի Գիրեյ II-ն իր անունով բերդ կառուցեց 1595—1596 թ. թ. և կոչեց Ղազի-Կերման (Սմիրնով, նույն տեղ, էջ 460—461). Խոսքն այդ բերդի մասին է։

148. Սելմետ Գիրեյ I-ին, իշխել է 1608—1610 թ.թ. (Լեն-Պուլ, նույն տեղ, էջ 196, Սմիրնով, նույն տեղ, էջ 472), վերջինիս կարծիքով Սելմետ Գիրեյը մահացել է 1610 թ. մայիս-հունիսին, իշխելով երկու տարի չորս ամիս (էջ 472)։

149. Ջանիբեկ Գիրեյ II-ի իշխանության տարիները տես վերեում, ծանոթ. 8։

150. Ինայեթ Գիրեյ I-ը հաջորդել է Ջանիբեկ Գիրեյին, իշխել է ըստ Լեհ-Պոլի 1635—1638 թ. թ. (էջ 196), Սմիրնովի՝ 1635 թ. մարտից մինչև 1637 թվականը (էջ 508)։ Տես և համմտ. J. Hammer „Geschichte... "dritter Band, s. 929:

151. Վկայությունը վերաբերում է Ջանիբեկ Գիրեյի 1623—1624 թ. թ. Հոոդոս աքսորվելուն (ծանոթ. 27), որից հետո Ղրիմում խան դարձավ Մուհամմեդ Գիրեյը։

152. Տես ծանոթ. 110։

153. Հեղինակի սույն վկայությունը մի փոքր շեղվում է Սմիրնովի և Լեհ-Պոլի հաշվումներից։ Մուհամմեդ Գիրեյ IV-ն իշխել է 1641—1644 թ. թ. (Սմիրնով, էջ 525), 1642—1644 թ. թ. (Լեհ-Պոլ, էջ 196)։ Տես և համմտ. J. Hammer „Geschichte..." dritter Band, s. 929:

154. Իսլամ Գիրեյ II-ը համաձայն Սմիրնովի Ղրիմի խան դարձել է 1644 թ. հունիսին (էջ 527) և մահացել է 1654 թ. հունիսի վերջերին (էջ 561), իշխելով 10 տարի 5 ամիս։ Համմտ. Hammer „Geschichte..." dritter Band, s. 929:

XVI

# ՀԱԿՈԲ ԿԱՐՆԵՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII Դ.)

*Մեծ մասամբ ժամանակակցի ստույգ վկայություններ է ընդգրկում Մատենադարանի № 8184 ժողովածուի 5բ—11ա էջերում գտնվող ժամանակագրությունը, որից բացի ժողովածուի մեջ տեղ են գտել նաև.*

*ա. Հակոբ Կարնեցու հոր՝ Գեորգ քահանայի կենսագրությունը, որ գրել է Հակոբ Կարնեցին։*

*բ. Հակոբ Կարնեցու «Շինուած Կարնոյ քաղաքին» աշխատությունը։*

*գ. Էջմիածնի կաթողիկոսների աթոռակալության ցանկը, որը սկսվում է Բարսեղ Անեցու մահվան (1113 թ.) հանգամանքների բավական մանրամասն շարադրումից։ Ցանկը հասնում է մինչև Հակոբ Ջուղայեցու ժամանակները և ընդհատվում։*

*Այս ժամանակագրությունն սկսվում է 1482 թվի դեպքով և հասնում մինչև 1672 թ.՝ Հակոբ Ջուղայեցու Կ. Պոլսից վերադառնալը։ Հաճախ հանդիպում են այնպիսի դեպքերի հիշատակություններ, որոնք շարադրված են նաև «Շինուած Կարնոյ քաղաքին» աշխատության մեջ։ Նկատի ունենալով այս, ինչպես և № 8184 ժողովածուի մեջ գտնվող Հակոբ Կարնեցու կողմից գրած իր հոր կենսագրությունը, կարծում ենք, որ ժամանակագրությունն էլ պատկանում է Հ. Կարնեցու գրչին։*

*Այս ենթադրությունը հաստատվում է ի միջի այլոց նրանով, որ ժամանակագրության մեջ հեղինակը, հիշելով 1655 թ. Կարինի ավագ երեց Գեորգի մահը, վերջինիս համարում է «հայր մեր»։ Սկզբում կարծում էինք, որ այդ դարձվածքը գործածված է հոգևոր հայր իմաստով, սակայն նույն Գեորգ երեցի կենսագրության մեջ, որը շարադրել է Հակոբ Կարնեցին, եղբոր՝ Մաղաքիայի և այլոց խնդրանոք, մի շարք դեպքերում գործածել է «վասն հօրն մերում» (վերնագրում), «հայրն մեր Գէորգ», «հայրն մեր» դարձվածքները։ Այստեղից էլ ժամանակագրությունը առանց տատանվելու վերագրում ենք Հակոբ Կարնեցուն։ Այսպիսով հիմա է պարզ դառնում, որ Հակոբ Կարնեցին «Շինուած Կարնոյ քաղաքին» աշխատությունից բացի գրել է իր հոր՝ Գեորգ երեցի կենսագրությունը և կազմել սույն ժամանակագրությունը, որոնք մինչև հիմա չկային հրապարակի վրա։ Այդ պատճառով էլ վերջիններս մուծեցինք սույն ժողովածուի մեջ։*

*Հեղինակը ժամանակագրության սկզբի մի շարք դեպքերն ընդհանուր առմամբ վաղակատար անցյալով է հիշում. օրինակ՝ «ՌԻԴ Լէլա փաշան Արզրում մէչիտ է շիներ» կամ «ՌԿԷ փետրվարի ամսոյն Յակոբն և Սուգիասն են ծնեալ» և այլն, իսկ ՌՀԶ (1627) թվից հետո դեպքերը հիշվում են անցյալ կատարյալով կամ ներկա ժամանակով, օրինակ՝ «Ապազան ապստամբեցաւ», «կամէին», «վարէին», «ոչ կարաց» և այլն։ Ուշական այս տարբերությունները մեզ ենթադրել են տալիս, որ Հակոբ Կարնեցին 1627 թվից սկսած ժամանակակից դեպքերն է արձանագրել, իսկ մինչ այդ տեղի ունեցած դեպքերի հիշա-*

տակությունը գրավոր աղբյուրներից օգտվելու կամ լսածի արդյունքն են։ Ժամանակագրության մեջ կան դեպքեր, որոնք պատմության համար քիչ նշանակություն կարող են ունենալ (օրինակ՝ ոմն Անանիայի քահանա ձեռնադրվելու վկայությունը և այլն), սակայն դրանց կողքին կան և շատ հետաքրքիր տեղեկություններ, որոնք հաստատվում են այլ աղբյուրներով։

Ժամանակագրության մեջ հիշված շահ Իսմայիլի 1501 թվին վարած պատերազմների մի էջը, որը վերաբերում է Բաբերդի 6-ամսյա անօգուտ պաշարմանը և, որը կատարվել է շահ Իսմայիլի զորավարներից մեկի՝ Ղարաճայ Ելիազի գլխավորությամբ, հաստատվում են այլ վկայություններով, որոնք վերաբերում են այլ վայրերում, դարձյալ 1501 թվին մղած կռիվներին։ Այդ աղբյուրներից մեկը Բարսեղ Արճիշեցու տարեգրության վկայությունն է։[1]

Ավելի հետաքրքիր է ժամանակագրության այն վկայությունը, որը վերաբերում է Հակոբ Ջուղայեցու 1664 թվին Երուսաղեմ մեկնելուն։ Հակոբը ճանապարհորդում է 1664 թվին և հասնում մինչև Թոխաթ, սակայն այստեղ լսում է, որ Էջմիածնում անեղի են ունենում գժտություններ, ստիպված վերադառնում է Էջմիածին։ Թե ի՞նչ գժտություններ են տեղի ունեցել Էջմիածնում այդ ժամանակ, մեզ պարզում է Զաքարիա Սարկավագը,[2] սակայն վերջինս չի նշում այդ դեպքերի տարեթիվը։ Օրմանյանը, օգտվելով Զաքարիա Սարկավագի վկայությունից, գրում է. «... Յակոբ կաթողիկոս կանուխեն (1665 թ. առաջ— Վ. Հ.) ալ Կ. Պոլիս երթալու միտք մր ունեցած էր...»։[3]

Մինչդեռ միայն ժամանակագրությունն է մատնացույց անում այդ ճանապարհորդության տարեթիվը, բացի այդ, ըստ ժամանակագրության Հակոբ Ջուղայեցին գնալու էր ոչ թե Կ. Պոլիս, ինչպես կարծում է Օրմանյանը, այլ Երուսաղեմ։

Հակոբ Կարնեցու ժամանակագրությունը հնարավորություն է տալիս ոչ միայն պատմական որոշ դեպքեր մանրամասը շարադրել, այլև վերջինիս օգնությամբ ճշտել որոշ ուսումնասիրողների սխալ հետևությունները։

Հայագետներից Ա. Խաչատրյանը,[4] Հակոբ Կարնեցու կյանքը դնում է 1622—1662 թվերի շրջանում, մինչդեռ ժամանակագրության մեջ ունենք պարզ ցուցում, որ Հակոբ Կարնեցին ծնվել է 1618 թվի փետրվարին։ Նկատի ունենալով ժամանակագրության վերջին եզրը՝ 1672 թ., կարծում ենք, որ նա մինչև 1672 թ. դեռ կենդանի է եղել։

---

[1] Վերոհիշյալ տարեգրությունը տես ներկա հրատարակության 126—129 էջերում։

[2] «Զաքարիայ Սարկաւագի պատմագրութիւն» 1870, Վաղարշապատ, հատոր երկրորդ էջ 72։

[3] Օրմանյան «Ազգապատում», էջ 2562։ Օրմանյանը այս դեպքի առթիվ օգտագործել է միայն Զաքարիա Սարկավագի վկայությունը, իսկ վերջինս իր վկայության մեջ Հակոբ Ջուղայեցու Կ. Պոլիս ուղևորվելու մասին ոչինչ չի նշում, ընդհակառակը, նրա վկայությունը հաստատում է ժամանակագրությունը. այնտեղ ասված է. «...Կաթուղիկոսն Յակոբ բերեալ դձեռնասուն աշակերտն իւր Իսահակ վարդապետ Մակուեցի՝ արար եպիսկոպոս, և եդի տեղի իւր Աթոռակալ և Տեգապահ և ինքն ելեալ գնաց ի սուրբ Երուսաղէմ (ընդգծումը մերն է Վ. Հ.) «Պատմագրութիւն» հատ. Բ, էջ 71—72։ Իսկ թե ինչպես է Երուսաղեմ մեկնելու վկայությունը դարձել Կ. Պոլիս մեկնելու ենթադրություն, մեզ թվում է անհասկանալի։

[4] «Հույն պատմիչների վկայությունը հին Հայաստանի ոսկեհանքերի և նրանց տեղի մասին» (Պետ. Համալսարանի Տեղեկագիր № 1, 1925 թ. էջ 50)։ Խաչատրյանի բերած տվյալը օգտագործել է պրոֆ. Հ. Աճառյանը «Հայոց անձնանունների բառարան» Երևան, 1946, հատոր 3, էջ 511։ Սակայն Տեղեկագրի հրատարակիչ Կ. Կոստանյանը հարցին ավելի ճիշտ է մոտենում, նա գրում է «Հ. Կարնեցին նկարագրել է դեպքեր, որոնց ժամանակն ընկնում է 1622—1662 թվերի մեջ»։ (Տեղեկագիր էջ 3)։

## XVI

Թվականութեանս մերում ՋԼԱ (1482) մայիս ամ[ս]ոյ ԻԶ ծբ (26) Արզրումա երկիրս այնպէս սաստիկ ձուն է եկեր, որ ոչխարն և տաւարն ճնացեալ են շարաթով ի տուն և խոտ են կերեալ։ Տանուտէրն եկաւորն է եղեալ, Թ (9) և տասն երակի տարի է եղեալ, և կէտ սուգականն ի ԿԴ (64) տարին է մտեալ։

Ի թվականիս մերոյ ՋԾ (1501) զօրացաւ ազգն Պարսից, որ Սօֆի ասեն, որ է Ղզըլպաշ, որոյ անուն թագաւորին շահ Իսմայիլ, ելեալ ի Սպահանայ և եկեալ էառ զԹարվէզ։ Եւ առաքեաց զօրս բազումս երկիրս Հայոց՝ գերեաց. աւերեաց և ապատակեաց բազում գիւղք և գաւառք։ Եկն և ե՛հաս ի գաւառն Խախտեաց, որ է Բաբերթ և պաշարեաց զամուր բերթ՛ն նորա և արար խսար Զ (6) ամիս և ոչ կարաց առնուլ զնա, եւ և կորեաւ. և անուն գլխաւորին էր Ղարաճայ Էլիազ։

Ի թվականիս մերոյ ՋՁԴ (1535) սաստիկ շարժ եղև Երզնկա քաղաքն և երկիրն ամենայն, որ Կապոսի վանից Լուսաւորչի եկեղեցոյ գուպէթն թռաւ և այլ բազում շինուածք տապալեցան և մարդիկք կորեան։

Ի թվականութեանս մերում Ռ (1551)-ն սուլթան Պայեազիտն և Սէլիմ եկեալ են Արզրում. փոքր եղբայր Պայեազիտն ծա փախեր է Ղզըլպաշն, և Սէլիմն եկեալ ոչ է գտեալ[1] զեղբայրն. բարկացեր է ի վերայ Այեաղ փաշին։ Եւ ելեալ Սէլիմն գնացեր է Համիթ և զԱյեազն կապանօք և բոկոտամբ տարեալ է ի դուռն Ամթա կախեալ է, և ապա ինքն մտեր է յԱմիթ։ Եւ տէր Մկրտիչն[2] տղա է եղեալ։

Ի թվականութեանս ՌԺԸ (1569) Վէզիրօղլին ի դուրսն պարիսպէ պտըտեր, Արզրումա։

Ի թվականութեանս ՌԻԴ (1575) Լէլա փաշան Արզրում մէչիտ է շիներ։

Ի թվականութեանս ՌԽԴ (1595) տէր Գէո[ր]գն[3] Արզրում է եկեր։

Ի թվականութեանս մերում ՌԾԵ (1606) սով սաստիկ է եղեար,[4] որ մարդ զմարզ, շուն և կատու կերեալ են այս վերին աշխարհս բովանդակ՝ Ցանկիւրու և Ղայսարու հետ մինչև ի Թարվէզ, Վան և Բաղէշ, Համթայ սանճախն, բոլորն Գ (3) տարի։ Աստուած ազատէ այնպիսի պատուհասէ զամենայն մարդ։

Կաթողիկոսն էջմիածինն Ցուրհայեցի Սրապիոնն է եղեալ

ե Մելքիսէթն բռնում փորձանս և չարչարանս է հաներ ի վերայ նորայ շահ Ապասի հրամանաւն։ Այս այն Ապասն է, որ Բասենու հետ զազգս Հայոց սուրկուն արար տարաւ ի Սպահան։ ‖ 6բ Իսկ Սրապիոն կաթողիկոսն մաղապուրծ եկն Ցամիթ. և Նոսան կաթողիկոս Աւետիս և Դաւիթն։ Եւ Մելքիսէթ կաթողիկոսն եկեալ գնաց յետոյ ի Լէհ և անդ վախճանեցաւ։ Սրապիոնն ի Ցամիթ էառ վախճան. և մնաց Դաւիթն մինչև որ Մովսէս վարդապետն, որ տիրեաց Էջմիածնա և յետոյ եղև կաթողիկոս։ Ընդ այն ժամա[նա]կն Թարվէզ, Շրվան և Շամախի բովանդակ Օսմանցոց էր, Ըստամպօլա թագաւորին, բայց յետոյ զամենայն շահ Ապասն էառ։

Ի թվականի[ս] մերում ՌԿ (1611) տէր Գէորգն և տէր Անանիան քահանայ են եղեալ, ձեռամբ Սահակ եպիսկոպոսին, առաջնորդ քաղաքիս և Լուսաւորչի վանիցն։

Ի թվականութեան ՌԿԷ (1618) փետրվարի ամսոյն Յակոբն և Սուղիասն են ծնեալ։

Ի թվականիս մերում ՌՀ (1621) յոյժ մահ է անկեր Արզրրում և շրջակա բոլորքն։ Եւ ծափ Ըստամպօլա սառեր է այնպէս,[6] որ շուն և մարդ է անցեր Ղալաթիա։

Եւ Աղազա փաշան, ի մէջ Արզրումա քաղաքիս, զԱճայմօղլանին հաւատոյ վերայ կրակն ձգեաց։ Եւ նա ամենևին ոչ ի սպառնալեացն երկեաւ և ոչ խոստմանցն ունկն եդիր, այլ արիաբար եմուտ ի հուրն, որ տղայքն ‖ 7ա ի դէմն կուլային և հազարք հազարաց հայ և տաճիկ շրջապատեալ հայէին տեսանել զկատարումն. և նայ ուրախութեամբ եմուտ ի հուրն և ձայնեաց ասելով. «Ալլայի սէվդան, ալլայ չաղըրրաւնս»[7]։ Եւ ամենեքեան ձայն արձակեցին և նոյն ժամայն էառ զկատարումն, վասն անւանն Քրիստոսի, զի Նուրիճան էր անունն, նորին յիշատակն աւրհնութեամբ եղիցի։[8] Եւ ի գիշերին պահապանք բերթին տեսին ակներև լոյս, պայծառ ծագեալ ի վերայ ոսկերացն և ընդ առաւօտն բերին զմնացեալ ոսկերսն ամենայն և եդին իւիր տապանի ի մէջ եկե[ղ]եցուն, որ կա մինչև ցայսօր ի պահպանութիւն քաղաքիս։

Ի թվականութեանս մերում ՌՀԶ (1627)-ն Ապազն ապըստամբեցաւ ի թագաւորէն։[9] Զի առաքեաց թագաւորն սէրասքէր Դիշլանիկ Հուսէինն ԺԲ (12) փաշաով և ԵՌ (5000) ենիկիչարի ընդ նմա։ Եւ եկեալ բանակեցան ի մէջ դաշտին և կամէին խաբկանօք զԱպազն ի դուրս հանել ասելով թէ՝ «եկ երթիցուք ի վերայ Ախըլցխոյ» և նա խորամանկութեամբ պատրաստութիւն եառ. և խմում[9ա] գիշերի ել և գնաց և կոտորեաց զամենեսեան և զԴիշլանիկն ըմբռնեաց և բերեալ ի մէջ բերթին ‖ 7բ չարաչար մահուամբ սատակեցոյց. և զկողոպուտս նոցա զամենայն էառ և բազմացոյց զօրք բաղում։ Եւ քինախնդիր եղեալ սուլթան Օսմանին, որ ենկիչարիք ըսպաննեցին ի Ստամպօլ և դրին զեղբայրն Մուրատ թագաւոր։

Եւ ինքնագլուխ եղեալ Ապազայն տիրեաց վերին աշխարհիս և բերթորեաքն ամենայն, մինչև ի Սեբաստիայ. այնպէս

հուքմ և հրաման ունէր, որ Դ (4) կողմն քուրթ և կամ գող ոչ նրևէին, Ա (1) կին Ա (1) աւուր ճանապարհ կու գնայր, զի ենկիչարոց չար ժամա[նա]կն ոչ կին, ոչ լամուկ տղա քաղաքէն ելանել ոչ կարէին, և ի մէջ քաղաքին ևս ըմբռնեալ պղծէին զի աստուած յարոյց զԱպազան, որ իբրև զոչխար զեննեաց զնոսա չարաչար։ Եւ ելեալ ԿՌ (60000) ձիաւորօք գնաց յԱնկուրիա ղաշարեաց զբերթն և պատերազմեցաւ. և ոչ կարաց աւնուլ զնա և դարձաւ Արզրում։ Եւ ի հասանել [Ռ]ՀԷ (1628) թվականին առաքեաց թագաւորն Չէթոնցի հայի աղա, Խալիլ փաշա վէզիրն ի վերայ Ապազին բազում զօրօք. և Ապազան զերկիրն ամենայն այրեաց և ինքն ամրացաւ ի բերթն, բազում պատրաստութեամբ։ Եւ Գ (3) ամիս խոսարեաց զնոսա և պատերազմեցաւ ‖ 8ա և ոչ կարաց առնուլ զբերթն, մինչ որ ձիւն եկն ի վերայ գլխոյ նորա, ել և կորեաւ։ Եւ Ապազան ընթացաւ զկնի նոցա և բազումս կոտորեաց և էառ զամենայն թօփ և ջէպախանա և երեր ի բերթն Արզրումոյ։

Ի թուականիս մերում ՌՀԸ (1629) սուլթան Մուրատն եսպան զԽալիլն և արար առնաւուտ Խոսրով փաշան վէզիր և եա ի ձեռս նորա ԳՃՌ (300,000) ոգի։ Եւ դարնան եղեալ առեալ զօրսն Խոսրով բազում պատրաստութեամբ և եկն ի վերայ Արզրումա կրկին անգամ։ Եւ Ապազան փակեաց զդրունքն ամենայն. և պատերազմեցան մինչև ի սուրբ Խաչն։ Եւ զօրք Ապազին օրըստ օրէ փախեան ի դուրս և մնաց շիւար, զի բերթն մեծ էր և ոչ կարէր պահել, այնպէս քակեցին թօրով զԵրզնկու դռան վերևն, միջի պարիսպն, բռնէ ի բուռն, որ գետինն հասուցին, մինչ որ անճարացեալ Ապազան առաքեաց ելչի և արար խաղաղութիւն ընդ Խոսրովին. և ել ի բերթէն իւր մարդովն և խաղնաովն և եղև որդէգիր Խոսրովին։ Եւ շինեաց դքակեալ պարիսպն Խոսրով և եդիր փաշա զԹայեարն Ուրհոեցի. և ետ հէտի շէրիֆ և կանչեցոյց Գ (3) օր, ‖ թէ Ապազին բանքն մի այլ ևս յիշեսցի։ 8բ Եւ առեալ Խոսրով զԱպազայն և գնաց ի Սաամպօլ և սուլթան Մուրատն խլաթեաց և ետ Պուտուում։

Ի թվականիս մերում ՌՁ (1631) եղև կաթողիկոս Մովսէսն[10] և արար բազում կարգս և ուղղութիւնս և Էջմիածին նոր նորոգեաց և ԲՃ (200) միաբանիւք և բազում վարդապետս եհան։ Եւ Սրսոյ Քացախ կաթողիկոսն եկն Արզրում ի տեսութիւն Մովսէսին։

Ի հասանել ՌՁԲ (1633) թվին վախճան էառ Մովսէսն[11] և մեր առաջնորդ աստուածաբանն Մինաս,[12] որ էր աշակերտ Կեղեցի մեծ Ղուկասին, և եդաւ ի մէջ ատենին, նաև Սրսոյ կաթողիկոսն՝ Մինաս[13] գնացեալ Երզընկա քաղաք և էառ անդ վախճան և եդին մերձ առ Կեղեցի Ղուկաս վարդապետին։

Ի թվականիս մերոյ ՌՁԲ (1633) յաւուր Ցայտնութեան մերոյ Ցիսուսի Քրիստոսի նստաւ կաթողիկոս տէր Փիլիպոսն։[14]

Ի թվականիս մերոյ ՌՁԳ (1634) Հոռոմք զատիկն ծռեցան։ Տէր Մկրտիչն վախճան էառ[15] և եղև տէր Գէորգն աւագ երէց։

ՌՉԴ (1635) սուլթան Մուրատն եկն ԴՃՌ (400,000) ոգով Վարդավառին[16] և գնաց էառ զԵրևան Ը (8) օրն.[17] և հասեալ ի Թարվէզ, ‖ էանց ի Վան և գնաց ի Ստամպօլ։ 9ա

ՌՉԵ (1636) ձմեռն շահ Սէֆին եկն և էառ զԵրևան[18]

ՌՉԶ (1637) Արզրումու բերթին մէջն ժամատուն շինեցին։

Ի թվականիս ՌՉԸ (1639) սուլթան Մուրատն գնաց ի Պաղտատ և էառ զնա և գնացեալ ի Ստամպօլ մեռաւ և եղբայրն Իպրահիմ թագաւորեաց ՌՉԹ (1640)։

Ի թվականիս ՌՂ (1641) Յակոբն և Սուկիասն քահանայ եղեն. Մկրտիչն և Ղևոնդն տղա եղեն և յետ տարոյ միոյ Սողոմոնն։

ՌՂԲ (1643) Ջափարն Թէհրիր երաւ. Արզրումայ փաշալխո և օգոստոս ամսոյն մահ անկաւ։ Էմին Ամիրխանն, Իղնատիոսն և բազում կորիճ մեռան աստուած ողորմեսցի նոցունց. ամէն՝

Ի թվականին ՌՂԴ (1644) Մուստաֆա վէզիրն [ս]պաննեցին ի Ստամպօ[լ] և Ջիւան Ղափուճին եղև։

ՌՂէ (1648) մեծ տէրտէրն[10] էջմիածին գնայ։ Եւ օգոստոսի ամսոյն սուլթան Իպրահիմ [ս]պաննեցին ի Ստամպօլ և զորդին դրին թագաւոր Մէհըմմատ անուն Թ (9) տարեկան։[20]

Եւ աւր ըստ օրէ զարգացաւ և յո[յ]ժ հանճարեղութեամբ նըւաճեաց զաշխարհս ամենայն և Լ (30) տարի պատերազմեցաւ ընդ ֆռ‖անկին Վէնէտիկոյ, և զծովն Ովկիանոս ելից ղրամով և 9բ
լաշով, և էառ զԿրիտէս կղզին թէմով և վիճակով և Է (7) բերթով զամենայն ՌՃԺԹ (1670) թվականին և դարձաւ. խնդութեամբ յԱտրանայ.[21]

Ի սոյն թվականիս ՌՃԺԹ (1670) առաջնորդ մայրաքաղաքիս Արզրումա Սարգիս աստուածաբան և ձայնեղ վարդապետն, որ արար շատ շէնք և երեր աղբիւր ի դուռն Մուտուռկու[22] վանիցն, և ինքն հանգեաւ ի նոյն վանսն և եդաւ խղիր տապանի օգոստոսի ամսոյ ի ԺԵ (15)։

Ի թվականիս մեր ՌՃԺԱ (1662) Ըստամպօլա Դ—Ե (4—5) եկեղեցիքն հայի և հոռոմի քակեցին։ Արզրում ևս ամր զրկեցին, բերթի միջի եկեղեցին մէչիդ արարին և ամենայն քրիստոնէից գլուխն սեաւ կտակ անցուցին։

Ի թվականիս մերոյ ՌՃ (1651) Փիլիպոս կաթողիկոսն եկն և գնաց Երուսաղէմ։

Ի թվականիս մերոյ ՌՃԲ (1653) Մուրթազան էմին Պետրոսն զուր տեղն կախեաց. եւ Ղազար եպիսկոպոսն վախճան էառ։ Փիլիպպոս կաթողիկոսն եկն Երուսաղէմայ. եւ մեր եկեղեցին գողք մտան։ Եգիտ Մուրթազայ փա[շա]ն և ըմպոնեաց՝ զերկոքին ցըցեաց և զվեցին ձեռն կարեաց և ուրախութիւն անպատմելի եղև ազգիս Հայոց, որ այսչափ Թուրք սատակեցան և կորեան։

Ի թվականիս մեր ՌՃ և Դ (1655) էառ վախճան կաթողիկոսն Փիլիպպոս[23] ի սուրբ էջմիածինն, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։ Եւ յետ նորա եղև Յակոբն ‖ կաթողիկոս Հայոց։ 10ա

Եւ ի սոյն ամի վախճանեցաւ հայրն մեր, աւագ էրէց տէր Գէորգն և որդին իւր խոճայ Մելքոնն և եղաւ ի դուռն քաղաքի Արզրումայ եկեղեցւոյ, յիշատակ նոցին աւրհնութեամբ եղիցի. ամէն։

Ի թվականիս մերոյ ՌՃԺԱ (1662) Մուրթազան ի Մուսուլ |գլուխն| կտրեցին և Ռուստամ փաշայն ի Ախըլցխայ գլուխն կտրեցին։

ՌՃԺԲ (1663) գիսաւոր աստղ մի երևեցաւ յերկինս աշնանմտէն մինչև ի զատիկն.[24] բայց շատ պակասութիւն եղև ընչից ազգիս Հայոց վաճառականաց։

Ի թվականիս մերոյ ՌՃԺԳ (1664) եկն Յակոբ կաթողիկոսն Արզրում գնալ յԵրուսաղէմ և հասեալ ի Թոխաթ։ Ընկերակիցքն և աշակերտ վարդապետքն իւր Էջմիածինն չփոթեալ,[25] ընդ իրեար ադմկեցան և դարձուցին զկաթողիկոսն յաթոռն իւր։[26] Եւ լուաւ Եղիազար վարդապետն, ճարտասան առաջնորդ սուրբ Երուսաղէմայ, եկն ի Հալապ և եղև կաթողիկոս իքնագլուխ և կամէր ընդիմանալ և հակառակիլ Յակոբայ կաթողիկոսին։ Եւ լուեալ զայս Մարտիրոս վարդապետն ի Կաֆայ ել և եկն։

ՌՃԺԴ (1665) թվին գնաց Էջմիածինն էառ զկաթողիկոսն Յակոբ և տարաւ ի Ստամպօլ և անկան ի դուռն թագաւորին. || զի ոմանք վարդապետք և ժողովուրդք ի կողմն Յակոբա 10բ կաթողիկոսին եղեն և ոմանք Եղիազարու[27] եղեն և անկան ի դրունս վէզիրին և թագաւորին, և տային դրամ քէսայով, զի տարի մի տային զԵրուսաղէմ Եղիազարին և առնէին բազում քէսա և միւս տարին տային Մարտիրոսին և առնէին բազում քէսա, մինչ որ Բ (2) կողմն ևս անկան ի ներքոյ բազում պարտուց։[28] Այսպիսի ադմկով և զմիմեանս խաբելով երևելիս բարեկամ և սէր քարոզելով և ի ներքողոյն գործելով մինչ Է (7) տարի, որ անկան Բ (2) սուրբ աթոռքն՝ Էջմիածին և Երուսաղէմ, ի ներքոյ պարտուց, որ եղև մինչ ԲՃ (200) քէս[ա] դրամ։ Յետ Է (7) ամին ոչ եղև սրտիւ հաշտութիւն և կրկին էառ Եղիազարն Երուսաղէմ և ոչ եղև հաշտութիւն ընդ Մարտիրոսին։ Եւ ձանձրացեալ կաթողիկոսն Յակոբ ել ի թվականիս մերոյ ՌՃԻԱ (1672) ի Ստամպօլա և եկեալ ի սուրբ աթոռն իւր Էջմիածինն։[29]

Ի թվականիս մերոյ ՌՃԺԶ (1667), Նոյեմբեր ամսոյն ել 11ա շարժ սաստիկ Երզնկան, որ քաղաքի Բ (2) եկեղեցին և բաղանիք, տունք և ապարանք տապալեցան, անթիւ հայ և տաճիկ կորեան ի ներքոյ հողին, զոր տէր աստուած Արզրումա քաղաքս հանդերձ երկրեաւն ազատեալ փրկեաց, զի սակաւ մի ենաս առ մեզ, որ մինչ էաք ի ժամ աղօթից և կատարէաք զերեկոյի ժամն սակաւ մի երերեալ և եթող, և օրն էր չորեքշաբթի։[40]

Դարձեալ ՌՃԺԷ (1668) յաւուր նաւակատեաց Յայտնութեան տեառն մերոյ ի լուսանալ առաւօտին, որ յասելն փառք ի բարձունս, ահաղին որոտմամբ և սաչիւն դողաց երկիրն Շամախու, Գանճայու և Թիւլիսու և Երևանա։ Ապա ումմեք երկրի վնաս ոչ եղև, բայց միայն Շամախու, տեսցուք եղբայրք և զգուշասցուք, որպէս ասէն մարգարէն՝ «ո՜ հայի երկիր և տա դողալ սմա» և

*այլն. զի եղև յայանի և մեծ հրաշք, որ աղօթից զօրութիւնն ցուցաւ յայտնապէս, զի որչափ ժողովուրդ, որ կային ի Շամախոյ քաղաքին յեկեղեցին ընաւին ոչ քար մի անկաւ, ոչ Ա (1) մարդոյ զարար եղև, այլ արտաքոյ եղեալքն ընդ հողով կորեան և կործանեցան։*[31]

* * *

Մատենադարանի № 8184 ժողովածուի մեջ գտնվում է նաև Հակոբ Կարնեցու հոր՝ Գեորգ քահանայի կենսագրությունը։ Ինչպես երևում է կենսագրության վերնագրից, Հակոբ Կարնեցին այն գրել է իր եղբոր՝ Մաղաքիայի,[1] իր որդիների և ազգականների խնդրանոք։ Կենսագրության վերջում հեղինակը խոստովանվում է, որ այն գրել է. «...ոչ թէ ամբարհաւճ բարուք և կամ վասն գովութեան, այլ ի խրատ և ուսումն թոռանց նորին և մանկանց սրբոյ եկեղեցոյ քահանայից և սարկաւագաց, որք ականատեսք էին վարուց նորա»։

Կենսագրականում բացի Գեորգ քահանայի կյանքին վերաբերող տեղեկություններից, կան նաև պատմական տեղեկություններ՝ ջալալիների, 1606 թ. սովի, Կեղի քաղաքի և մի շարք անձնավորությունների մասին։ Նկատի ունենալով, որ այս կենսագրականը Հակոբ Կարնեցու մի նոր, մինչև այժմ անհայտ աշխատությունն է և բովանդակում է պատմական հետաքրքիր տեղեկություններ, տեղավորեցինք սույն ժողովածուի մեջ Հակոբ Կարնեցու ժամանակագրության առընթեր։

---

[1] Հակոբ Կարնեցին Մաղաքիայի խնդրանոք գրել է նաև «Տեղագիր վերին Հայոց» աշխատությունը։

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ՀՕՐՆ ՄԵՐՈՒՄ ԳԷՈՐԳԱ ՔԱՀԱՆԱՅԻՆ Է, ԹԷ ՈՐՊԷՍ Է ԵԿԵԱԼ Ի ԹԷՈԴՈՒՊՕԼԻՍՍ ԵՒ ԿԱՄ, ՈՐ ՅԵՐԿՐԷ Է ԵՂԵԱԼ, ՃԱՌԵՑԻՑ ՔԵԶ ԿԱՐԳԱՒ ԵՂԲԱՅՐ ՄԱՂԱՔԻԱ ԵՒ ՈՐԴԻՔ ՄԵՐ՝ ՍԿՏՐԻՉ, ՍՈՂՈՄՈՆ ԵՒ ՊՂՈՒՋ ՅՈՎԱՆՆԷՍ ԵՒ ԱԶԳԱԿԱՆՔ ՄԵՐ 1ա

*Զի եղեալ է հայրն մեր ի բնիկ գիւղաքաղաքէն Կեղոյ[32]
որդի բարէպաշտ ծնօղաց զաւակ։ Անուն հօր իւրոյ Միրաք և
մօրն՝ Գուլինար։ Եւ առեալ է նոցա աստուած Բ (2) որդիս՝ Դա-
ւիթ և Մարգարէ։ Եւ մայրն առաւել երկիւղած է եղեալ յաս-
տուծոյ և սիրօղ ժամատեղաց և մեծատան դուստր։ Եւ յաւուր
միում գնացեալ է եկեղեցին ապրիլի ԻԳ (23) և լուեալ է զաս-
մաւուրաց պատմութիւնն բազմաչարչար նահատակին Գէորգա
և խնդրեալ է յաստուծոյ և սրբոյն Գէորգա, թէ լինիցի ինձ այ-
սուհետև զաւակ արու, եդից զանուն նորա Գէորգ և նուիրեմ յաս-
տուծոյ։ Եւ տէր տա զհայցուածս նորա։ Եւ յետ ժամանակաց
յղանա և ծնանի զաւակ երկոքեակ ի մի փորոյ ՌԼԲ (1583)
թվականին. մինն արու և միւսն էգ և մկտրեալ դնէ անուն
տղային Գէորգ և քվերն Մարիամ։ Եւ աստուծով սնանին երկո-
քին յոյժ։ Եւ ըսգաստն Գիւլինար աչ ըսդինն տղային տա հա-
նապազ և ձախն՝ աղջըկանն։[38]*

*Եւ լինին տղայքն Է (7) ամեա և տա Գէորգ յուսումն գրոց 1բ
առ անուանի վարպետն Մակար, զի ընդ այն ժամանակն յար և
նման երաժիշտ և բանիբուն ոչ է եղեալ շրջակա բոլորքս նման
Մակարա, զի Կեղեցի Ղուկաս վարդապետն, որ է ի շարս փիլիսոփա-
յից վարդապետաց և է վարպետ Սրապիոն կաթողիկոսին և Մովսէ-
սին, զի Մակարն և Ղուկասն միատեղ են պաշտեցեալ։ Զի այն ժա-
մանակն յոյժ շէն եղեալ է Կեղի, բովանդակ հայք և անուանիք և
դասատուն վարդապետաց։ Եւ Գէորգ պատանին լինի ԲԺ (12)-
ամեա և կարդա Զ (6) կանոն Սաղմոսն և զՑիսուս որդին բուն.
և բարեպաշտն Միրաք խնդայ ընդ կարդալ տղուին և առնու նմա
Ցիսուս որդի և շարակնոց։ Եւ ինքն հանապազ ի յառ և ի տուր
վաճառականութեան շրջի՝ գնալով Արզրում և ի Ցամիթ։ Եւ ի
ժամանակին յայնմիկ պեղծ ազգն քրգաց ապըստամպ և ջալալի
բազում են եղեալ, որ զմիմեանց զերկիրն ասպատակեն, և թալ-
նեն և գողանան եղեր հանապազ և յանցս ճանապարհաց և ի լե-
րինս բազումք որսան և ըսպանեն, որ դեռևս սովորութիւն նոցա
այն է, որ մինչև Բ (2) և Գ (3) անգամ զերկիրն Կեղու և Բալ-
վա թալաներ և աւիրեալ են, զի դեռ ‖ ևս Օսմանցիք ոչ են եղ- 2ա*

նալ այնչափ հզօր զօրութեամբ և նուաճեալ զամենայն աշխարհ, զի անախրացեալ է ի Թագաւորացն։ Վասն որոյ ասրի վերայ տարոյ աւերումն է սկսեալ և ողութիւն հացի։ Եւ բարեպաշտն Միրաք ելեալ կա Արզրում և,առնու ապըրշմեղէնս և ասպապեղէն ե ցորեանս, զի տարցէ ի տուն, և գնացէ ինքն Համիթ, վաճառել զինչս իւր, բազում ընկերօք։ Եւ մինչ հասեալ են երկիրն Հանտերձու,[29] բազում զօրք Մարաց հասեալ են ի վերայ նոցա և զամենեսեան սրախողխող արեալ են և զինչս ամենեցուն տարեալ են։ Եւ գուժ գան աղաղակի նոցա, հասանի ի Կեղի։ Եւ ելան տեարք մեռելոցն ընդանեօք և Գուլինարն ես չորեսին աղայոք զան ի գանդատ Արզրում առ փաշայն, զի թերևս ողորմեսցի ընդանեաց մեռելոցն և գտցէ զապրանքն նոցա։ Եւ առաքէ փաշայն բազում զօրք և ոչ գտանեն։ Եւ նկհալքն ոմանք կու գնա աշխարհն իւրեանց և կէսք մնացեալ են աստ։ Եւ մայր Գէորգին ասէ՝ «որդեակք երկիր մեր ողութիւն է, կացցուք աստ տարւոյ մի և յետոյ գնասցուք»։ Եւ այսու պատճառաւս մնացեալ լինին աստ։ Եւ Գէորգ պատանին հանապազ ընթանա եկեղեցին և աւագ || 3բ երէցն տէր Մկրտիչ տեսանէ զԳէորգ աջողակ և փոյթ առ ի յուսումն, առնու յաշակերտութիւն։ Եւ ձայնէ զմայրն և որդիացուցանէ զնա։ Իսկ մայրն Գէորգի ասէ՝ «զխոստումն, որ առ աստուած» և ուրախութեամբ առեալ ձեռանէ աղային և տա ի տէր Մկրտիչն ասելով՝ «ի քեզ յանձնեցի Գէորգս առաջի աստուծոյ, որպէս ի հնումն Աննա եւ Սամուէլ Հեղի քահանային և ես տայց քեզ»։ Եւ Գէորգ մնացեալ առ ոտս տէր Մկրտչին և պաշտէ զՍաղմոսն և զշարակա[ն]սն ամենայն։ Եւ մայր Գէորգին հարսնացուցանէ զաղջիկն և ինքն Բ (2) որդովքն վախճան առնու։ Եւ մնա Գէորգ միայն և օր ըստ օրէ անկանի սով մինչ, որ թվականն Մ և Ե լինի,[30] այնպէս սաստկանա սովըն ամենայն երկիր, որ շուն և զկատուն և մարդ զմարդ ուտեն, որ ինքն տէր Գէորգն պատմէր, որ բազում նեղութիւնն եկեալ էր ի վերայ նորա։ Ապա տէրաէրին թարկն ոչ էր տուեալ, նոյնպէս տէր Մկրտիչն առաւել սիրէ զնայ։ Եւ Գէորգն ճշմարտութեամբ ծառայէ նմա և օր ըստ օրէ զարդանա, և հասեալ ի չափ հասակի ուսանի գիր տէր Մեսրոպէն, որ էր որդի տէր Մկրտիչին։ Եւ լինի ջահրնկալ և փոյթ ||[36] ի սաղմոսերգութիւնն, և ի սպասաւորութիւնն 3ա եկեղեցոյ և քահանայիցն։ Եւ տէր Մկրտիչն քան զորդի առաւել սիրէ, զի յաւուր նեղութեանն օգնեաց նմա և փեսայեայցուցանէ զԳէորգ և տա եղբօր թոռն իւր Մանանայ անուամբ, յոյժ անմեղ և այսպէս մտանէ ի կարգ աշխարհի։

Եւ ի հասանել ՌԿ (1611) թվականին հաւանութեամբ քահանայիցն և ժողովրդոցն ձեռնադրի քահանայ։ Եւ տայ աստուած նմա զաւակ՝ յետ ու առաջ է (7)։ Բ (2) որդին և Ա (1) աղջիկն մեռանի և մնա Գ (3) որդի՝ Մելքոնն, Յակոբ և Մաղաքիա և աղջիկ մի Գուլինար անուն։ Եւ տէր Գէորգն օր ըստ օրէ յառաջանա ի քահանայութիւնն և ժիր ի ժամակարգութիւնն մինչ որ եհաս թվականն Ջր[37] և վախճանեցաւ Մանանայն, որ ըսաուղ գոր-

ծով զանուննն ելից, որ Մանանայ էր, զոր տէր աստուած ողոր-
մեսցի նմա։ Եւ Յեսայ տէր Գէորգն այրի և եռ առաւել ստացաւ
սրբութիւն և ուանակացութիւն. մինչ որ էանց տարի մի և փոխ-
ճանեցաւ տէր Մկրտիչն յաւուր Ցայտնութեան տեառն մերոյ,[39]
որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի։ Չի հաւանութեամբ քա-
ղաքիս և հրամանաւ Փիլիպպոս ‖ կաթողիկոսին նշին զաեղի 3բ
վարպետին իւրոյ զտէր Գէորգն, աւագ էրէց մայրաքաղաքիս
Արզրումա։ Եւ նա հով[վ]էր զժողովուրդն փառաւորապէս։ Եւ
որդիք նորա զարգացան և եղեն յոյժ վարժ գրոց և նշանակաց
տաղի և շարականի և հնազանդ հօրն իւրեանց, հլու և հպատակ
ամենեցուն։ Եւ եմոյծ զնոսա ի կարգ աշխարհի և եա նոցա աստ-
ւած ուստերս և դստերս՝ բազում թոռունք Գէորգ քահանային,
որ ծաղկեցաւ հոգով և մարմնով, որ բնաւին պակասութիւն ոչ
ունէր մարմնաւոր և թէ հոգևոր։ Եւ մեծ որդին Մելքոնն եղև
այր կատարեալ և խորհրդական իմաստուն և յոյժ վաճառական
և անուանի քէրվանպաշի և խոճայ. և Սաղաքիտն ընդ նմա.
և Ցակոբն և ձեռնասուն աշակերտն իւր՝ Սուղիասն առաքեաց,
աւագ էրէցն տէր Գէորգ, ՌՂ (1641)[39] թվին էջմիածինն առ կաթո-
ղիկոսն Փիլիպպոս, և նայ ձեռնադրեաց զնոսա քահանայ. և եղեն
նոքա այր կատարեալ ի կրթութիւնս աստուածային գրոց հին
և նոր կտակարանաց. եկին և եղեն ժամասացք ի դէմս հօրն
իւրեանց Գէորգա։ Եւ ընդ այն ժամանակն[40] ‖ ժողովուրդքն ամե- 4ա
նեքեան ընչեղք և փարթամք էին գոյիւք և իշխանք բազում.
էմին և զօմրուկչի, զի այնպէս ջերմ սէր ունէին ի վերայ քա-
հանայից և եկեղեցաց, որ բնաւ ոչ հրաժարին վարդապետաց
կշտէն, մինն ելանէր և միւսն մտանէր, կերակրօք և ողորմու-
թեամբ և հարցաքննութեամբ գրոց, զի զեռևս պիղծ Օսմանցիքն*
ի քուն էին, այսպիսի չար շլթախ և շամաթայ չունէին։ Եւ ինքն
տէր Գէորգ յաջող ժամու հանդիպեալ և բարի կարգաւորութեամբ
հովուեաց զժողովուրդն իւր և արար բազում կարգս և ուղղու-
թիւնս եկեղեցոյ և եղև ՀԲ (72) ամաց կատարեալ թվով. և
Մելքոնին եղեն ամք ԽԲ (42) և ցաւք պատեցին զնա ի յաղիսն,
որ է քէսմա, և բազում աւուրս հիւանդացաւ և բարի խոստո-
վանութեամբ վախճան էառ առաջի հօրն իւրում։
Ի թվականիս մերոյ ՌՃ և Դ (1655)-ն, ապրիլի Բ (2)-ն զոր
տէր աստուած ողորմեսցի նմա և զորդին Սողոմոնն ընդ յիր-
կայն աւուրս արասցէ։ Եւ եթող սուգ մեծ եղբարցն և ծերունի
հօրն իւրոյ Գէորգա, որ անմխիթար լայր ևասէր՝ «և ես մե-
ռայց ընդ որդոյ ‖ իմոյ սիրեցելոյ»։ Այլ ոչ մնկուսացաւ եկեղե- 4բ
ցուն, մինչ որ լուաւ աստուած աղօթից նորա և յետ Գ (3) ամ-
սոյ ցաւք մահու պատեցին զինքն Ը (8) օրեա. և յարաժամ պա-
տարաղէր և յանկողնի եւ հաղորդեցաւ և խօսէր և աւրհնէր զա-
մենեսեան քահանայքն և ժողովուրդքն սիրով կեալ ընդ միմեանս։
Եւ ամենեքեան ժողովեալ էաք ընդ նմա և ունկն դնէաք խօսից
նորա հանդերու. և էառ վախճան այնպէս հեշտ, որպէս խնծոր մի
հանէ ոք ի ծոցոյ իւրմէ, և ուրախութիւն մեր ի տրամութիւն

* Բնագրում «Օսմանցիքս» ձևով։

փախեցաւ. և լացաք զմեծ ժամս, զի բարձաւ խորհրդականն ի
միջոյ և եթող զմեզ որբս։ Քանզի էր հայրն մեր Գէորգ անձամբն
երկայն և լայն, կարմիր երես և երկայնաքիթ, ճաղատ և բոլո-
րամօրուս, սևակն և փառահեղ, ամենայն բարութեամբ լի։ Հան-
գաւ հայրն մեր, ի սոյն թվականի ՌՃ և Դ (1655), յուլիս ամ-
[ս]ոյի Բ (2). ի նոյն աւուր յուրում ծնեալն էր և վախճանե-
ցաւ, զի ինքն ի կենդանութեանն իւրում ասէր հանապազ թէ՝
«Ես յաւուր Ներսէսի առնին իմ ծնեալս», ի նոյն օրն ‖ և էառ վախ- 5ա
ճանն։ Եւ բարձեալ տարաք զմարմին սաղմոսիւք և պատարա-
գօք և եդաք ի դուռն միաբան սուրբ Աստուածածնի. որոյ յիշա-
տակն աւրհնութեամբ եղիցի. ամէն։ Ապա այս, որ գրեցի ոչ թէ
ամբարհաճ բարուք և կամ վասն գովութեան, այլ ի խրատ և
ուսումն թոռանց նորին, և մանկանց սրբոյ յեկեղեցոյ քահանա-
յից և սարկաւագաց, որք ականայանք էին վարուց նորա։ Բեր-
ցեն զբարի վարս նորին առ իւրեանս և ինքեանք պատմեսցեն
զնանամնացից իւրեանց, զի և նոքա ժառանգօղք լիցին մասին
ի լոյս Եւ. Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս. ամէն։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում գրված է «գտնեալ» ձևով, այնուհետև «ն» տառը ջնջված է. այդ ձևով էլ պահեցինք։*

*2. Բնագրում ամենուր «մկտրել» և «Մկտրիչ» ձևով։*

*3. Տեր Գեորգը Հակոբ Կարնեցու հայրն էր։*

*4. Թերևս «եղեալ» ձևով։*

*5. Հակոբ Կարնեցին է։*

*6. Համաձայն Ա. Դավրիժեցու, այս տեղի է ունեցել 1621 թ. հունվարի 14-ին (էջ 638)։*

*7. Թուրքերեն նշանակում է «Դու առածում սիրիր, առածուն էլ կանչիր» (պետք է լինի առածուն սիրողը, թող աստված կանչի՝ «Ալլահի սեվան, ալլահ չաղրսուն»։*

*8. «Եղիցի» բառը բնագրում գրված է 7ա էջի աջ լուսանցքում։ «Հայոց նոր վկաները» ժողովածուի մեջ Նուրիջանի նահատակությունը չի հիշված։*

*9. Կարինի Ապաղա փաշայի ապստամբության և նրա վարած կռիվների մասին տես նաև Գր. Կամախեցու ժամանակագրության մեջ, էջ 184, 212—233։ Համտ. Ա. Դավրիժեցի, էջ 573, 638—640։*

*9ա. պետք է լինի «ի նոյն» կամ «ի միում»։*

*10. Ա. Դավրիժեցու համաձայն Մովսես Տաթևացին կաթողիկոս է օծվել 1629 թ. հունվարի 13-ին (էջ 439, 640), իսկ Ալիշանը նշանակում է 1630 թ. («Այրարատ», էջ 231)։*

*11. Մովսես Տաթևացին ըստ Ա. Դավրիժեցու մահացել է 1632 թ. մայիսի 14-ին (էջ 439), Ալիշանը նշում է՝ 1633 թ. մայիսի 14-ին (նույն տեղ, էջ 231)։*

*12. Սույն Մինասը և Գր. Կամախեցու մոտ հիշված Մինաս վարդապետ Կարնեցին, կարծում ենք, միևնույն անձնավորություններն են։ (Համտ. «Ժամանակագրութիւն», էջ 180, 181, 188, 349, 390, 391)։*

*13. Ասի կաթողիկոս Մինասի մասին հետաքրքիր տեղեկություններ է պահել Գր. Կամախեցին, ըստ որի նա կաթողիկոս լինում է 1619 թվին։ Մականվամբ կոչել են Քացախ «Վասն ահարկու և խրոխտ զրուցատրութեան գոլոյն, որ էր ի նոյն երկրէն Կիլիկեցւոց ի Սիս քաղաքամիջէն...» (էջ 333)։ Քացախը մահացել է 1632 թ. (էջ 335)։ Ըստ Չամչյանի վերջինս Ղուկաս Կեղեցու աշակերտն էր («Պատմութիւն Հայոց», հ. Գ, էջ 519), մինչդեռ Գր. Կամախեցու համաձայն «... Ի տիս մանկութեանն առ ոտս Յովաննէս (Անթափցի— Վ. Հ.) կաթողիկոսն էր սնեալ և վարժեալ» (էջ 333)։ Համաձայն Ալիշանի Մինաս Քացախը Սսի կաթողիկոսն է եղել 1627—1632-3 թ. թ. («Սիսուան», էջ 218)։*

*14. Այսինքն՝ 1633 թ. հունվարի 6-ին, մինչդեռ ըստ Ա. Դավրիժեցու Փիլիպպոս Աղբակեցին կաթողիկոս է օծվում 1633 թ. հունվարի 13-ին (էջ 316, 641։ Համտ. Սամ. Անեցու շար. էջ 178)։*

*15. Տեր Մկրտիչը Կարինի ավագ երեցն էր, որի մահից հետո հաջորդեց Հակոբ Կարնեցու հայրը՝ Գեորգը։ Հակոբ Կարնեցին իր հոր Գեորգի կենսագրության մեջ հիշում է, որ տեր Մկրտիչը մահացել է 1634 թ. հունվարի 6-ին։*

*16. Սույն նախադասությունը մեր կարծիքով նշանակում է, որ Մուրադ IV-ը 1635 թ. Վարդավառին (հուլիսի 15-ին) հասել է Կարին։ Մինչդեռ Համմերի կարծիքով թուրքերը Կարինում լինում են 1635 թ. հուլիսի 10-ին, շարժվելով Երևան, նրանք յոթերորդ օրը, այսինքն հուլիսի 17-ին Կարսի առջև ճամբար են դրել* („Geschichte des Osmanischen Reiches", dritter Band s. 148): *Կարինի գրավման Հակոբ Կարնեցու վկայությունը մեզ հավանական է թվում, որովհետև այդ դեպքերի ժամանակ նա 17 տարեկան պատանի էր և ականատես դեպքերին։*

*17. Բնագրի «էառ զԵրևան Ը օրն» հատվածում հեղինակը հավանորեն ակնարկում է Երևանի նվաճումը օգոստոսի 8-ին 1635 թ.։ (Տես և համտ. «Ազգապատում», էջ 2433,* J. Hammer „Geschichte des Osmanischen Reiches", dritter Band, s. 150): *Սակայն Երևանի գրավման մասին XIII ժամանակագրությունը այլ տեղեկություն է տալիս։ Տես վերևում, էջ 196, 199, ծանոթ. 36։*

18. Օրմանյանի հաշվումներով պարսիկները Երևանը գրավել են 1636 թ. սեպտեմբերին (Նույն տեղ, էջ 2435)։ Տես և հմմտ. XIII ժամանակագրությունը, էջ 196։

19. Բնագրում սույն բառը գրված էր հապավված՝ «տր·որ»․ նախընտրեցինք կարդալ «տերտեր» և ոչ «Տիրատուր»։

20. Հմմտ. «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», Երևան, 1938, էջ 31։

21. Հմմտ. «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 32։

22. Մուտուրկը գյուղ է Կարինի գավառում։

23. Ըստ Ա. Դավրիժեցու (էջ 439) և Զաքարիա Ագուլեցու (էջ 45) Փիլիպպոս կաթողիկոսը մահացել է 1655 թ., մարտի 25-ին։

24. Այսինքն՝ 1663 թ. սեպտեմբերի 22-ից մինչև 1664 թ. ապրիլի 10-ը։

25. Բնագրում «շփթոթեալ» ձևով։

26. Հեղինակը նկատի ունի Օնոփրիոսի խառնակությունները Էջմիածնում (տես «Զաքարիա Սարկաւագի պատմագրութիւնը», հ. Բ, էջ 71—72։

27. Բնագրում «Եղիազարըլու» ձևով։

28. Եղիազարի և Հակոբ Ջուղայեցու միջև անդի ունեցած պայքարի ժամանակ գործադրված կաշառքների մասին հետաքրքիր տեղեկություններ է տալիս ֆրանսիացի ճանապարհորդ Շարդենը։ Տես և հմմտ. „Путешествие Шардена по Закавказью в 1672—1673 гг." Тифлис, 1902, стр 279, Հմմտ. նաև «Զաքարիա Ագուլեցու օրագրությունը», էջ 66։

29. Հակոբ Ջուղայեցին իբրք 7 տարի մնացել է Կ. Պոլսում։ Այդ բանը հիշատակում է նաև ինքը, 1672 թ. օգոստոսի 28-ին լեհահայերին ուղղած կոնդակի մեջ. «... Եօթն տարի է որ ի սուրբ աթոռոյս հեռացեալ՝ ար ըստ արէ հաշիմք և մաշիմք ի տառապանս, և ոչ կարեմք աստի ելանել, զի մի կաշառօք աւերեսցեն ղուղղեալն մեր...» («Ալիշան «Կամենից», էջ 264)։ Տես և հմմտ. Սրուանձտեան «Թորոս աղբար», Բ մաս, էջ 398—410։

30. Սույն երկրաշարժի մասին պահվել է մի այլ տեղեկություն Մատենադարանի № 1773 ժողովածուի 430ա էջում. «Թվին ՌՃԺԶ (=1667) նոյեմբերի ԺԴ (14), յաւուր չորեքշաբթի, յիններորդ ժամու շարժ եղև ի Ցեղընկան քաղաքի, յառաջ ի խորոց անդընդոց գոռալոյ ձայն եկաւ, ապա յանկարծակի ի թարթելական շարժ եղև, բաղում շինուածք, տունք և մաշիթներ, և եկեղեցիք, և բաղանիքներ, փութկայներ, և քաղաքի պարիսպն և այլ շինուածք փլան և բաղում մարդիկք ոպանին ղորոց որքանութիւնն աստուած միայն գիտէ»։

31. Սույն երկրաշարժի մասին դարձյալ պահվել է հետաքրքիր տեղեկություն. «Թվին ՌՃԺԷ (=1668) յունվար ամսոյ Դ (4) սաստիկ և ահագին շարժ եղև յամենայն սահմանս Ատրպատականի, ի յառաւօտուն մինչ զհարցի ժամն ասէաք։ Եղև թնդումն և զկնի նորին եկն շարժն և այնքան ուժգին եղև, մինչ զի կանթեղք և ջահք, որք կախեալք էին յեկեղեցոյն ամենեքեան տարաբերեալք երթային և գային. և մարդիկք, որք ընդ երեսս որմոյ յեցեալք կանգնեալք կային ի տեղւոյն ի բաց ձգեաց. և եղև շարժս այս յԱրտաւել քաղաք, ի Թավրէզ, յԵրևան, ի Տփխիս, ի Գանջայ, ի Շամախի, ի Դամուրղափուն և յամենայն սահմանս իւրեանց։ Եվ յայսմ շարժմանէ Հախպատայ վանից եկեղեցոյ Ներսի երեսէն որմոյ քարինքն թափեցան և եկեղեցին, որում անուն Տեսեանց ասէին, որ ի մէջ Հախպատայ և Սանահնոյ կար շինեալ, բնաւին բլաւ։ Եվ ի Տփխիս քաղաքին մէկ նոր շինեալ եկեղեցոյ որմն և վերին բերդի որմն խախտեցաւ։ Իսկ Շամախի քաղաքն հիմն ի վեր լեալ ամենեւին տապալեցաւ, որ բնաւին ոչ մնաց շինուածք և անթիւ մարդիկք մեռան, ղորոց զթիւն աստուած միայն գիտէ»։ (Ձեռ. № 1773, էջ 430ա և բ)։

32. Կեղի գյուղաքաղաք, որի անունով էլ կոչվում է գավառը։ Այն գտնվում էր 4-րդ Հայքում, հնում կոչվել է Խորձունեաց։ Հմմտ. Ա. Դաւրիժեցի, էջ 441։

33. Բնագրի 1ա, բ և 2ա էջերի ներքևի լուսանցքում գրված է՝ «Վասն հօրն մերում Գէորգա և վարուց նորին» ենթավերնագիրը։

34. Հանտերձու երկիրն արդյո՞ք պատմական Հանձիթը չէ։

35. Այսինքն 1606 թ.։ Տես վերևում, էջ 185—186։

36. Բնագրի 2բ և 3ա էջերի ներքևի լուսանցքում գրված է՝ «Վասն վարուց Գէորգա քահանային» ենթավերնագիրը։

37. Այսինքն՝ 1633 թ.։

38. Այսինքն՝ 1634 թ. հունվարի 6-ին։

39. Տես նաև վերևում, էջ 242։

40. Բնագրի 3բ և 4ա էջերի ներքևի լուսանցքում գրված է «Վասն վարուց Գէորդ քահանային և որդոյ նորա Մելքոնին» ենթավերնագիրը։

XVII

## ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XVII Դ.)

*Այս ժամանակագրության մեզ հասած երկու տարբերակներից, համեմատաբար լավ պահպանված է № 1495 ձեռագրինը։ Սա ընդօրինակված է 1684 թ. Եփրեմ վարդապետի կողմից, որը և ընդունեցինք հիմք, իսկ ժամանակագրության երկրորդ՝ № 6354 տարբերակի տարընթերցվածքները դրեցինք տողատակ։ Ժամանակագրությունն սկսվում է Ալ. Մակեդոնացու Պարսկաստանի նվաճման համառոտ վկայությամբ, այնուհետև թվարկվում է վերջինիս հաջորդների, պարթևական դինաստիայի և հայկական նախարշակունի և Արշակունի թագավորների հաջորդական կարգը, ընդ որում թվարկման այս կարգի մեջ գտնում ենք յուրաքանչյուրի թագավորության տարիների քանակը միայն։ Ժամանակագրությունն այնուհետև թվում է Հայաստանի մարզպանների կարգը, մինչև Դավիթ Սահառունին, դարձյալ նրանց իշխանության տարիների քանակով, իսկ Դավիթ Սահառունուց հետո, մինչև Բագրատունիների հաստատումը, տրված է ոչ միայն յուրաքանչյուրի մարզպանության տարիների գումարը, այլև յուրաքանչյուր մարզպանի իշխանության տարեթիվը։ Մարզպանների կարգին հաջորդում է Բագրատունիների թագավորների, Կիլիկիայի հայկական իշխանների և ապա թագավորների գահակալության տարեթվերը, ինչպես նաև նրանց իշխանության տարիների քանակը։*

*Կիլիկիայի հայկական թագավորության կարգը ժամանակագրության մեջ հասնում է մինչև Լևոն Ե-ի թագավորության շրջանին (1321+16), որից հետո ժամանակագրության հեղինակը հանրագումարի է բերում իր թվարկած կարգը, թե որ դեպքից, մինչև որ դեպքը քանի տարի է լինում և այլն։ Ժամանակագրության վերջին եզրը, ինչպես ասացինք, վերջանում է 1337 թվականով (1321+16)։ Սակայն այդ բանը մեզ հիմք չի տալիս ենթադրելու, թե ժամանակագրությունը կազմվել է XIV դարի առաջին կեսում, որովհետև ժամանակագրության վերջում հանդիպում ենք այսպիսի մի հաշվի «Եւ յառաջնոյ ամէ թագաւորութեանն Լեւոնի վերոյ գրեցելոյ (Լեւոն Բ.— Վ. Հ.) մինչև ցվերջին ամն Լեւոնի Ե-երորդի, որդւոյ Օշնի, են ամք՝ ՃԽ. և թագաւորք՝ ԺԱ, և ի Քրիստոսէ՝ ՌԳՃԼՁ. և Հայոց ՉՁԵ։ Իսկ ի վերջնոյ ամէ հինգերորդի Լեւոնի թագաւորին Սըսոյ, մինչ* ցառ մեզ *են ամք՝ ԳՃԽԳ, և ի Քրիստոսէ մինչև* ցառ մեզ *են ամք՝ ՌՈՀԹ (=1679) և Հայոց ՌՃԻԸ»։*

*Այսպիսով 1679 թիվն (1336+343) իրավամբ կարող ենք համարել ժամանակագրության կազմելու տարեթիվ։ Չնայած սույն ժամանակագրության № 1495 տարբերակի ընդօրինակությունը կատարվել է նրա կազմվելուց հինգ տարի հետո՝ 1684 թվին, Եփրեմ վարդապետի ձեռքով, սակայն չենք կարող*

ենթադրել, թե հենց Եփրեմ վարդապետն էլ եղել է առաջարկվող ժամանակագրության հեղինակը, որովհետև Ձ։ 1495 ժողովածուի մեծ մասը (նաև ժամանակագրությունը) Եփրեմ վարդապետի ինքնագիր օրինակը լինելով, ժամանակագրության մեջ հանդիպում ենք այնպիսի հատվածների, որտեղ առանձին բառեր բաց է թողնված, ասենք Սմբատ Բ-ի հոր անունը և այլն։ Արդ՝ ժամանակագրության հեղինակը եթե Եփրեմը լիներ, բնական է ենթադրել, որ նա բնագրից առանձին բառեր բաց չէր թողնի. միևնույն բառերը բաց են թողնըված նաև ժամանակագրության № 6354 տարբերակում։ Այդ բանը մեզ ենթադրել է տալիս, որ վերջինս ամենայն հավանականությամբ ընդօրինակված է Եփրեմ վարդապետի օրինակից։ Այսպիսով ժամանակագրության հեղինակի հարցը թողնում ենք առկախ։

Ժամանակագրության առաջին մասը՝ պարթևական նախարշակունի և Արշակունի հայ թագավորների կարգը կազմված է Մ. Խորենացու «Հայոց պատմության» երկրորդ գրքի հիման վրա։

Մարզպանների և Բագրատունի թագավորների կարգը տարբերվում է մինչև հիմա մեզ հայտնի հեղինակների՝ Սեբեոս, Ղևոնդ, Հով. Դրասխանակերտցի, Ասողիկ, Կ. Գանձակեցի, Մխ. Այրիվանեցի, Մխ. Անեցի վկայություններից, ինչպես և Կիլիկիայի հայկական թագավորների շարքը Սմբատ Գունդստաբլի վկայություններից։ Ըստ երևույթին ժամանակագրության հեղինակն իր ձեռքի տակ ունեցել է այնպիսի աղբյուրներ, որոնց հիման վրա կատարված հաշվումները (եթե ոչ ընդօրինակությունը) տարբերվում են մեզ հայտնի հեղինակների վկայություններից։ Այդ պատճառով ժամանակագրության վկայությունների մասին ծանոթագրությունների մեջ կտանք առանձին դիտողություններ։

XVII

## ԿԱՐԳ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԱԶԳԻՍ ՀԱՅՈՑ ԵՒ ՊԱՐՍԻՑ ԹԷ ՈՒՍՏԻ ՍԿՍԵԱԼ ԹԱԳԱՒՈՐԵՑԻՆ. 86r

*Աղէկսանդր թագաւոր Մակեդոնացի, յաղթեալ զԴարեհ արքայն Պարսից,[1] և փոխեաց առ ինքն զթագաւորութիւնն Պարսից։ Իսկ ի մեռանելն իւրում թագաւորեցին Դ (4) հարճ որդիք նորա, այսինքն՝ Պտղոմէոս, Սիլեքոս, Փիլիպպոս և Անթիկանոս։ Իսկ Փիլիպպոս թագաւորէ ամս Է (7) և սորին առաջնոյ ամին լցաւ Ռ (1000) ամ, որ ի շինութենէ Ռոմայու։ Եւ զկնի սոցա զօրացաւ թագաւորութիւնն Հայոց։ Նախ և առաջին Արշակ, վեհ թագաւորն Հայոց, յետ Կ (60) ամաց մահուանն Աղէքսանդրի, յազգէ Պարթևաց, յորմէ կոչեցան Արշակունիք։ Այս Արշակս էառ զԲալխ քաղաք, յորմէ անուանեցան Բալհաւունիք։ Եւ փախոյց զԱղէքսանդրեանսն և էառ զգահ Դարեհի արքային Պարսից, յեառյ որդի իւր Արտաշէս առաջին։ Արշակ քաջն, որ է երկրորդն, եղբայրն Վաղարշակայ։ Զորորդն՝ Արշական, հինգերորդն՝ Արշակ. վեցերորդն՝ Արտաշէզ, եօթներորդ Արշաւիր Գ (3) որդի և Կոշմ, ութերորդ՝ Արաաշէս, իններորդն՝ Դարեհ, տասներորդ՝ Արշակ, տասնևմէկերորդ՝ Արաաշէս, երկոտասաներորդ՝ Պերոզ, երեքտասաներորդ՝ Վաղարշ, չորեքտասաներորդ՝ Արաաւան։ Եւ այս ԺԴ (14) թագաւորքս են սերեալ ի մեծէն Արշակայ և են թագաւորք Պարսից։ Իսկ եղբայր Արշակայ Քաջին, Վաղարշակ, թագաւորէ ի վերայ Հայոց առաջին։ Եւ յետ սորա Արշակ երրորդն, Արտաշէս երկրորդն, Տիգրան երկրորդն, Արտաւազդ առաջինն, որդի նորին, Արջամ, որդի Արտաւազդայ, Աբգար, որդի Արջամայ թագաւորեաց ամս ԼԸ (38)։ Եւ յերկրորդում ամի թագաւորութեանն Արգարու ծնաւ Քրիստոս։ Անանուն որդի Արգարու ամս։ Սանատրուկ, քվեր որդի Աբգարու, ամս Լ (30)։ Երուանդ Արշակունին ամս Ի (20)։ Արտաշէս երրորդ ամս ԽԱ (41)։ Արտաւազդ երկրորդ, որդի նորին ամս Բ (2)։ Տիգրան առաջին, որդի Արտաշիսի, ամս ԻԱ (21)։ Տիգրան երրորդն, որդի Արտաշիսի ամս ԽԳ (43)։ Վաղարշ երկրորդ, որդի Տիգրանայ, ամս ԻԱ (21)։*

---

*3 Աղէքսանդր։ 14 երրորդն փխ. երկրորդն։ 16 եօթներորդն։ 17 ութերորդն, տասներորդն։ 18 ԺԱ.-երորդ փխ. տասնմեկերորդ, ԺԲ-երորդ փխ. երկոտասաներորդ, ԳԺ-երորդն փխ. երեքտասաներորդ։ 19 ԴԺ-երորդն փխ. չորեքտասաներորդ, Արտան փխ. Արտաւան։ 24 Արկար։ 29 երկրորդն։ 30 Արտաշիսին։*

Խոսրով առաջին, որդի Վաղարշայ ամս ԽԸ (48)։ Եւ յետ այսորիկ անթագաւորք մնացին Հայք ամս Իէ (27)։ Տրդատ որդի Խոսրովու, որ կոչեցաւ Յոհաննէս ամս ԾԶ (56)։ Խոսրով, որդի Տրդատայ ամս Թ (9)։ Տիրան երկրորդ՝ որդի Խոսրովու երկրորդի ամս ԺԳ (13)։ Արշակ չորրորդ՝ որդի Տիրանայ, ամս Լ (30)։ Պապ, որդի Արշակայ հինգերորդ, ամս Է (7)։ Արաւազդ երրորդ ամս Դ (4)։ Արշակ և Վաղարշակ ամս Դ (4)։ Խոսրով երրորդ ամս Ե (5)։ Վռամշապուհ պարսիկ ամս ԻԱ (21)։ Յաւուրս սորա սուրբ վարդապետն Մեսրոպ արար զգիր Հայոց և զկնի Վրաց և Աղուանից։

Ի Փրկիստոսի թուին ԴԾԻԴ (424) Շապուհ պարսիկ ամս Դ (4)։ Արտաշէս չորրորդ, որ և Արտաշիր ամս Զ (6)։ Աստանօր բարձաւ թագաւորութիւնն յազգէ Արշակունեաց և քահանայապետութիւնն ի ցեղէ Լուսաւորչին։ Արդ՝ յառաջնոյ Արշակայ մինչև զԱրդար, թագաւորք Թ (9)։ Եւ յառաջնոյ ամէն Արգարու մինչև յառաջին ամն Տրդատայ, են ամք ԲՃՂԲ (292) և թագաւորք Ժ (10)։ Իսկ ի Տրդատայ առաջնոյ ամէն մինչև զԱրտաշիսի վերջին ամն են ամք ՃԿ (160) և թագաւորք ԺԱ (11)։ Զկնի բարձման թագաւորութեան Արշակունեաց նստան իշխանք Հայոց ԺԶ (16)՝ Վարդան մարզպան ամս ԺԷ (17), Վահան ամս ԻԱ (21). Մեժեժ Գնունի իշխան ամս ԼԴ (34), Եօթն ամի իշխանութեան սորին եղաւ թուական Հայոց ԵԾԾԱ (551) թուայն Փրկիստոսի, ի ԸԾՀԱ (8?1) թուին Ասորոց, երեսուներեք ամին Ուստինոսի կայսերն Յունաց, առ տէր Ներսիսիւ հայրապետիւ, ի թագաւորութեան Խոսրովու Պարսից արքայի, և այլք առ Մովսիսիւ հայրապետիւ. ասեն, զկնի Խ (40) ամի հալածմանն Միխայիլին։

Ի թուականին Հայոց ԾԸ (609) Դաւիթ Սահառունի իշխան, ամս Լ (30)։[3]

Թուին ՁԸ (639) Թէոդորոս Ռշտունի իշխան, ամս ԻԵ (25) և այլք Լ (30) ասեն։[4]

Թուին ՃԺԳ (664) Համազասպ, ամս Է (7)։[5]

Թուին ՃԻ (671) Գրիգոր Մամիկոնեան, ամս Ժ (10)։[6]

Թուին ՃԼ (681) Ներսեհ Շիրակացի, ամս Գ (3)։[7]

Թուին ՃԼԳ (684) Աշոտ առաջին, ամս Գ (3)։[8]

Թուին ՃԼԶ (687) Ներսեհ Կամսարական ամս Գ (3)։[9]

Թուին ՃԼԹ (690) Սմբատ առաջին, Բագրատունի Բիւրատեան, ամս Ի (20)։[10]

Թուին ՃԿ (711) այսմ ժամանակի այրեցին ի Նախջևան զիշխանսն Հայոց և մնացին անիշխան, ամս ԾԱ (51)։[11]

Թուին ՄԺԲ (763) Աշոտ երկրորդ Բագրատունի, ամս ԺԹ (19)։[12]

3 ԺԶ փխ. ԾԶ։ 8 Յամս փխ. Յաւուրս. 9 գիր, և զկնի չիք։ 10 Թվին ՆԻԴ փխ. ԴԾԻԴ։ 13 առաջնոյ։ 14 ամէ։ 15 ՄՂԲ փխ. ԲՃՂԲ։ 16 ամէ։ 19 մարզպանն։ 20 իշխան չիք, Է փխ. Եօթն։ 21 թվական, ՇԾԱ փխ. ԵԾԾԱ, թվոյն։ 22 ՊՀԱ թվին փխ՝ ԸԾՀԱ թուին, ԼԴ փխ. երեսուներեք։ 23 Ներսէսիւ 24—25 Մովսէսիւ 25—26 Միխայէլին։ 27 թվականին։ 29 թվին, իշխան չիք։ 31 թվին։ 32 թվին։ 33 թվին, Ներսէհ։ 34 թվին։ 35 թվին, Ներսէհ։ 36 թվին։ 38 թվին։ 40 թվին, Աշոտ։

*Թուին ՄԼԱ (782) Լեւոն առաջին, որ է որդի[13] ամս Ե (5)։*

*Թուին ՄԾԱ (802) Աշոտ երրորդ, որ է որդի Սմպատայ Մսակերի, ամս Ի (20)։[14]*

*Թուին ՄՀԳ (824) Սմբատ երկրորդ, որ է որդի Աշոտոյ, որ Ապլապատն կոչեցաւ, ամս ԼԲ (32)։[15]*

*Թուին ԳԾԳ (854) Աշոտ չորրորդ Բագրատունի, որ է որդի Սըմբատայ երկրորդի, թագաւոր ամս ԼԱ (31)։[16] Արդ՝ ի վերջնոյ ամէն Արտաշիսի մինչև ԼԱ (31) ամն Աշոտոյ չորրորդի Բագրատունոյ, որ յետոյ թագաւորեաց, են ամք ԳԾՂԱ (391), և իշխանք ԺԶ (16)։[17]*

*Թուին ԳԾԼԳ (884)[18] Աշոտ չորրորդ Բագրատունի, որ է որդի Սմբատայ երկրորդի. թագաւորեաց ամս Ե (5)։*

*Թուին ԳԾԼԹ (890) Սմբատ երրորդ, որ է որդի,[19] թագաւորեաց ամս ԻԴ (24)։*

*Թուին ԳԾԾԳ (904) Աշոտ հինգերորդ, որ է որդի ‖ Սմբատայ երրորդի, ամս Ը (8)։[20]* 87ա

*Թուին ԳԾՁԸ (939) Ապաս, որդի Սմբատայ երրորդի, որ է եղբայր Աշոտոյ հինգերորդի, ամս ԻԵ (25)։*

*Թուին ԴԾԵ (956) Աշոտ վեցերորդ, որ է որդի Սմբատայ երրորդի, ամս ԻԷ (27)։[22]*

*Թուին ԴԾԼԲ (983) Սմբատ չորրորդ Շահնշահ, որ է որդի Աշոտոյ հինգերորդի, ամս ԺԳ (13)։[21]*

*Թուին ԴԾԽԵ (996) Գագիկ Շահնշահ, որ է որդի Աշոտոյ վեցերորդի և եղբայր Սմբատայ Շահնշահի, ամս ԻԹ (29)։[24]*

*Թուին ԴԾՀԳ (1025) Յոհաննէս որ և Սմբատ, որ է որդի Գագկայ Շահնշահի, ամս Ի (20)։[25]*

*Թուին ԳԾՂԳ (1044) Գագիկ երկրորդ, որ է որդի Աշոտոյ վեցերորդի և եղբայր Սմբատայ Շահնշահի, ամս Բ (2)։[26]*

*Արդ՝ յԱրտաշիսէ վերջնոյ մինչև ցԱշոտ թագաւոր Բագրատունեաց, են ամք ԴԾԽ (440)։ Եւ յառաջնոյ ամէն թագաւորին Աշոտոյ մինչև ցվերջին ամն Գագկայ երկրորդի, են ամք ԾԾԸ (158)։*

*Թուին ԵԾԻԲ (1073) Օշին իշխան եկեալ ի Սիս, և էառ զբերդն Լամբրօն ամս։[27]*

*Թուին ՇԻԷ (1078) Ապլղարիպ իշխանաց իշխանն, որդին Հասանայ, մեռաւ։*

*Թուին ՇԻԸ (1079) Ռուբէն իշխան, ազգական թագաւորին Գագկայ, ամս Ի (20)։[28]*

*Թուին ՇԽԸ (1099) Կոստանդին, որդին Ռուբենի առաջնոյ, ամս Ե (5)։[29]*

---

*1 Թվին։ 2 Թվին։ 4 Թվին։ 6 Թվին ՑԳ։ 7 ամէ։ 9 ՑՂԱ փխ.՝ ԳԾՂԱ։ 11 Թվին ՑԼԳ։ 13 Թվին ՑԼԹ։ 15 Թվին ՑԾԳ, Ե.-երորդ փխ. հինգերորդ։ 17 Թվին ՑՁԸ։ 18 Ե.-երորդի փխ. հինգերորդի։ 19 Թվին ՆԵ, Զ.-երորդ փխ. վեցերորդ։ 21 Թվին ՆԼԲ, որ է չիք։ 22 Ե.-երորդի փխ. հինգերորդի։ 23 Թվին ՆԽԵ։ 24 Զ.-երորդի փխ. վեցերորդի։ 25 Թվին ՆՀԳ։ 27 Թվին ՆՂԳ։ 28 Զ.-երորդի փխ. վեցերորդի։ 30 ՆԽ փխ. ԳԾԽ։ 33 Թվին ՇԻԲ։ 35 Թվին 37 Թվին։ 39 Թվին։*

Թուին ՇԾԳ (1104) Թորոս առաջին, որ է անդրանիկ որդի Կոստանդեայ, ամս ԻԶ (26)։[30]

Թուին ՇՀԹ (1130) Լևոն երկրորդ, որ է կրտսեր որդի Կոստանդեայ, ամս Դ (4)։[31]

Թուին ՇՂԴ (1145) Թորոս երկրորդ, որ է անդրանիկ որդի Լևոնի, ամս ԺԳ (13)։[32]

Թուին ՈԷ (1158) Մլեհ, կրտսեր որդի Լևոնի, ամս Ե (5)։[33]

Թուին ՈԺԲ (1163) Ռուբէն երկրորդ, որ է անդրանիկ որդի Ստեփանէի և թոռն Լևոնի, ամս ԻԲ (22)։[34]

Թուին ՈԼԶ (1187) Լևոն երրորդ, որ է կրտսեր որդի Ստեփանէի, որ և թոռն նոյնոյ Լևոնի, պարոն եկաց ամս ԺԲ (12) և ի Կիլիկէ թագաւորեաց ամս ԺԱ (11), ՋԾԽԷ (1198) թուին։[35]

Վեց ՃՀԳ (1224) թուին Փիլիպ, որդի կոյր փրնչին և փեսայ Լևոնի, ամս Ե (5)։[36]

Թուին[37] ՈՀԸ (1229) Հեթում առաջին, որ է փեսայ Լևոնի և որդի Կոստանդեայ, ամս ԽԵ (45)։[38]

Թուին ՉԻԳ (1274) Լևոն չորրորդ,[39] որ է որդի Հեթմոյ, սորա էին որդիք Է (7), ամս ԻԳ (24)։

Թուին ՉԽԲ (1293) Հեթում երկրորդ, որ է որդի Լևոնի և թոռն Հեթմոյ, ամս ԽԵ (45)։[40]

Թուին ԷԾ[41] Լևոն երրորդ,[42] որ է որդի Հեթմոյ և թոռն Լևոնի, ամս ԺԹ (19)։

Թուին ՉԽԲ (1293) Հեթում երրորդ, որ է անդրանիկ որդի Լևոնի թագաւորի և թոռն Հեթմոյ, ամս ԺԷ (17)։[43]

Թուին ՉԽԹ (1300) Սմբատ հինգերորդ, որ է որդի Լևոնի, որ ղողացաւ զթագաւորութիւն եղբօրն, ամս։[44]

Թուին ՉԾԷ (1308) Լևոն վեցերորդ, որ է որդի պարոն Թորոսին սպանեցելոյ, ամս Ա (1)։[45]

Թուին ՉԾԸ (1309) Օշին երկրորդ, որ է եղբայր աւագ պարոնին Հեթմոյ, ամս ԺԳ (13)։[46]

Թուին ՉՀ (1321) Լևոն Է (7)-երորդ, որ է որդի Օշնի, ամս ԺԶ (16)։[47] Այսուհետև բարձաւ թագաւորութիւնն Սիսոյ յազգէ Ռուբինեանց։ Արդ՝ ի թագաւորելոյն Աբգարու մինչև ի սպանումն Խոսրովու են ի Քրիստոսէ ամք ԲՃԿԲ (262) և թագաւորք Ժ (10)։ Անիշխան մնացին, ի ներքոյ տէրութեանն Պարսից Հայք, զամս ԻԷ (27)։ Ի Տրդատայ մինչև յվերջին ամն Արտաշրի ի սպառումն թագաւորութեան Արշակունեաց՝ են թագաւորք ԺԱ (11) և ամք ՃԿ (160)։ Արտաշրի վերջնոյ ամէն, որ է Արտաշէս, մնացին Հայք անթագաւոր ի ներքոյ տէրութեանն Պարսից մինչև յԴաւիթ իշխանն Սահառունի, զամս ՃԾԱ (151)։

1 թվին։ 3 թվին։ 5 թվին։ 7 թվին, Մլեհ։ 8 թվին ՈԺԲ։ 9 Ստեփաննէի։ 10 թվին։ 10—11 Ստեփաննէի։ 11 և [թոռն] փխ. է, պարոն։ 12 ՈԽԷ թվին փխ. ՋԾԽԷ թուին։ 13 ՈՀԳ թվին փխ. Վեց ՃՀԳ թուին։ 14 Լևոնին։ 15 թվին։ 17 թվին, սորայ։ 19 թվին, Լևոնի թագաւորի։ 20 ԺԷ փխ. ԽԵ։ 21—24 տողերը չկա։ 25 թվին, Ե.-երորդ փխ. հինգերորդ։ 26 եղբօրն։ 27 թվին ՉԾԵ փխ. թուին ՉԾԷ, Զ.-երորդ փխ. վեցերորդ։ 29 թվին։ 31 թվին։ 33 Ռուբէնեանց։ 34 ՄԿԲ փխ. ԲՃԿԲ։ 36 ի վերջին փխ. յվերջին։ 39 անթագաւորք։



504—17

Յաւուրս Մեժեժի Գնունւոյ իշխանին Հայոց և կաթողիկոսին տեառն Մովսիսի եդաւ թուական Հայոց ԵՃԾԱ (551) թուոյն Քրիստոսի. վասն որոյ մինչ վերարերի ՇԾԱ (551) թիւ ի վերայ թուականին Հայոց, լինի կատարեալ թուականք Քրիստոսի։

Ի Դաւթէ իշխանէ մինչև յԱշոտ իշխանն Բագրատունեաց, որ յետոյ թագաւորեաց, են իշխանք ԺԴ (14) և ի Քրիստոսէ ՊՁԴ (884) և Հայոց ՅԼԳ (884)։ Եւ Աշոտոյ յառաջնոյ ամէ թագաւորութեանն մինչև ի սպառումն թագաւորութեան Բագրատունեաց ի վերջին ամն Գագկայ, են ամք ՃԾԸ (158) և թագաւորք Թ (9) և ի Քրիստոսէ են ամք ՌԽԲ (1042) և Հայոց ԴՃՂԱ (1042)։

Եւ Գագկայ վերջնոյ ամէն մնացին Հայք անիշխան, ի ներքոյ տէրութեանն Յունաց և Տաճկաց մինչև յՕշին իշխանն, զամս ԼԳ (33), որ էառ զբերդն Լամբրոն,[48] մատ Սըսոյ և զկնի տիրեաց Ռուբէն՝ են ամք ի Քրիստոսէ ՌՀԶ (1076) և Հայոց ՇԻԵ (1076)։ Եւ ի Ռուբինէ մեծէ իշխանէ մինչև ցպարոնն Լևոն, որդին Ստեփանէի և եղբայր փոքու Ռուբինի, որ եղև առաջին թագաւոր Սըսոյ, են ամք ՃԻԱ (121) և իշխանք և պարոնք Ը (8)։ Եւ ի Քրիստոսէ՝ են ամք ՌՃՂԷ (1197) և Հայոց ՈԽԶ (1197)։ Եւ յառաջնոյ ամէ թագաւորութեանն Լևոնի վերայ գրեցելոյ մինչև ցվերջին ամն Լևոնի Ե (5)-երորդի որդւոյ Օշնի, են ամք ՃԽ (140) և թագաւորք ԺԱ (11) և ի Քրիստոսէ ՌԳՃԼԶ (1336) և Հայոց ՉՁԵ (1336)։ Իսկ ի վերջնոյ ամէ հինգերորդի Լևոնի թագաւորին Սըսոյ, մինչ ցառ մեզ, են ամք ԳՃԽԳ (343) և ի Քրիստոսէ մինչև ցառ մեզ են, ամք ՌՈՀԹ (1679) և Հայոց ՌՃԻԸ (1679)։

---

1 Գնունւոյ։ 2 Մովսէսի, ՇԾԱ փխ. ԵՃԾԱ, թվոյն։ 3 Քրիստոսի աստուծոյ։ 4 թուականն։ 5 իշխան։ 11 ՆՂԱ փխ. ԴՃՂԱ։ 15 ՇԻԶ փխ. ՇԻԵ։ 16—17 Ստեփանէի։ 17 Ռուբենի։ 21 վերջին։ 22 ՌՑԼԶ փխ. ՌԳՃԼԶ։ 23 և ի Հայոց։ 23 Ե-երորդի փխ. հինգերորդի։ 24 մինչև, ՑԽԳ փխ. ԳՃԽԳ։ 25 ՌՃԽԸ փխ. ՌՃԻԸ։

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Բնագրում հիշյալ հատվածը գրված է կարմիր թանաքով։*

*2. Ինչպես այստեղ, այնպես էլ № 6354 ժողովածուի տարբերակում տարիների քանակը բաց է թողնված։*

*3. Պատմիչներից միայն Հով. Դրասխանակերտցին է Դավիթ Սահառունու իշխանությունը նշում 4 տարի (Թիֆլիս, 1912, էջ 80—81)։*

*Առաջարկվող ժամանակագրության համաձայն Դավիթ Սահառունին իշխել է 609 թվից մինչև 639 թ.։ Մինչդեռ համաձայն Ասողիկի մարզպան Սուրենի սպանությունից հետո վերջինիս հաջորդում է Դավիթ Սահառունին «ի խնդրոյ նախարարացն» (Ս. Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն Տիեզերական», Ս. Պետերբուրգ, 1885, էջ 86)։ Նույն Ասողիկի վկայությամբ Սուրեն մարզպանին Վարդան Մամիկոնյանը սպանել է «յամի քառասներորդի առաջնորդի թագաւորութեանն Խոսրովու, որ է ամ եօթներորդ թագաւորութեանն Յուստինիանոսի, յամսեանն արեգի քսաներկուսն ամսոյն, որ է փետրուարի, յաւուր երեքշաբթւոջ» (Նույն տեղ, էջ 84—85)։ Այս հիման վրա Դյուլորիեն ցույց է տալիս, որ այդ սպանությունը տեղի է ունեցել 572 թ. փետրվարի 2-ին, երեքշաբթի օրը* (Ed. Dulaurier, „Recherches sur la chronologie armenienne tome 1er, Paris, 1859, p. 206—207):

*4. Ասողիկը մի տեղ (էջ 98) 637 թվին Թ. Ռշտունուն արդեն մարզպան է հիշում։ Իսկ Ս. Անեցին Թ. Ռշտունու իշխանության սկիզբը համարում է 641 թ. (էջ 80)։ Օրմանյանի հաշվումներով Թ. Ռշտունին մահացել է 658 թ. («Ազգապատում», էջ 732)։*

*5. Մեր պատմիչներից Ասողիկը Համազասպի իշխանության սկիզբը նշում է 655 թ. (Նույն տեղ, էջ 99)։ Իսկ Ս. Անեցին 666 թ. (էջ 84)։ Ուսումնասիրողներից Յուստին Համազասպի մարզպանությունը նշում է 654—658 թ. թ.* („Iranisches Namenbuch" Marburg, 1895, s. 125

*6. Տես և համտ. Ասողիկ, էջ 100, Ղևոնդ երեց, էջ 14, Հով. Դրասխանակերտցի, էջ 93, Ս. Անեցի, էջ 84։ Ուսումնասիրողներից Յուստին 683 թ. է նշում Գրիգորի մահը։ (Նույն տեղ, էջ 424)։ Իսկ Բ. Առաքելյանը Գրիգորի սպանությունը նշում է 695 թ. («Տեղեկագիր» ԱրմՖանի, 1941 թ., № 1, էջ 63)։*

*7. Մեր պատմիչներից միայն Ս. Անեցին է Ներսես Շիրակացու մարզպանության սկիզբը նշում, այն դնելով 683 թ. ներքո (էջ 84)։ Յուստին նշում է 690—693 թ. թ. շրջանում, (էջ 425)։*

*8. Ըստ Ասողիկի, Հայոց ՃԼԵ (=686) թ. (էջ 100), Ս. Անեցու՝ 686—688 թ. թ. (էջ 84)։ իսկ Յուստին նշում է 685—688 թ. թ. շրջանում (էջ 417)։*

*9. Ըստ Ս. Անեցու 689 թվին (էջ 84)։*

*10. Ըստ Ասողիկի (էջ 101) և Ս. Անեցու (էջ 84) 691 թվին։ Համաձայն Յուստիի Սմբատ Բյուրատյանն իշխել է 695—704 թ. թ. և մահացել է 706 թ. հետո (էջ 314, 417)։*

*11. Սույն եղելության ժամանակն Ասողիկը երկու անգամ է նշում, նախ «... յառաջնում ամի իշխանութեանն» (էջ 124) արաբ ոստիկան Վլիթի և երկրորդ՝ Հայոց ՃԾԳ (=704) թվին. (Համտ. Մխ. Այրիվանեցի, էջ 51, Հ. Դրասխանակերտցի, էջ 98)։ Ս. Անեցին նշում է Հայոց ՃԾԸ (=709) թ. ներքո (էջ 85)։ Վերջինս մի այլ վկայություն էլ ունի. «Զէ (=707) Կասմ ամիրայ զՎասպուրականի իշխանսն կոտորեաց» (էջ 85)։ Օրմանյանը Նախիջևանում և Խրամում հայ իշխանների այրումը նշում է 707 թ. ներքո («Ազգապատում», էջ 804)։*

*12. Մեր պատմիչներից ոմանք Աշոտի իշխանության տարիները նշում են 17 (Ղևոնդ, էջ 124, Կ. Գանձակեցի, էջ 72, Մխ. Այրիվանեցի, էջ 15), ոմանք 15/(Ասողիկ, էջ 104, Մխ. Անեցի, էջ 9)։ Ս. Անեցին հաստատում է Աշոտի մարզպան դառնալու ժամանակագրության վկայությունը (էջ 88), Յուստին Աշոտի իշխանության առաջին տարին նշում է 743 թ., կուրացումը՝ 758 թ., մահը՝ 771 թ. (էջ 44, 417)։*

13. Ինչպես այստեղ, այնպես էլ № 6354 տարբերակում Լևոնի հոր անունը բաց է թողնըված։ Սույն անձնավորության մասին մեր մյուս պատմիչներից մեզ ոչինչ հայտնի չէ։ Նրանք Լևոնի փոխարեն նշում են Սմբատ, տալով նրան 22 տարի իշխանություն։ Հմմտ. Justi „Iranisches Namenbuch" s. 417):

14. Հմմտ. Ս. Անեցի (էջ 91)։ Յուստին Աշոտ Մսակերի մարզպանությունը նշում է 780—820 թ. թ. (էջ 44, 417) չնայած մեր պատմիչները միաբերան նրան տալիս են 20 տարվա իշխանություն։ Հավանաբար տեղ է գտել Խ (40) և Ի (20) տառերի շփոթումը։

15. Հմմտ. Ս. Անեցի (էջ 91)։ Ասողիկը նշում է միայն մարզպանության տարիները՝ 30 (էջ 106), իսկ Գանձակեցին՝ 35 (էջ 72)։

16. Բագրատունիների դինաստիայի հիմնադիրը։ 31 տարին վերաբերում է իշխանաց իշխան լինելուն։ Աշոտ Ա-ն ըստ Ասողիկի թագավորել է 888 թ. (էջ 157), 5 տարի, իսկ Կ. Գանձակեցին հիշում է, որ իշխանաց իշխան եղել է 32 տարի, թագավոր 5 տարի, իսկ թագավոր օծվել է Հայոց ՅԼԴ (=885) թվին (էջ 75)։ Աշոտ Ա-ի մասին Յուստին հետևյալ թվերն է առաջարկում՝ ծնվել է 819 թ., իշխանաց իշխան նշանակվել է 859 թ., թագավոր օծվել 885 թ., թագավորելով մինչև 890 թ. (էջ 44, 418)։ Ս. Անեցին Աշոտ Ա-ի իշխանաց իշխան լինելը նշում է 874 թ. (էջ 95), որն անշուշտ սխալ է, իսկ թագավոր օծվելը՝ 887 թ., մահը՝ 892 թ. (էջ 95)։ (Հմմտ. «Ազգապատում», էջ 967։ Մանանդյան «Հայաստանի քաղաքները 10—11-րդ դարերում», Երևան, 1940 թ., էջ 6)։

17. Տես և հմմտ. Ս. Անեցի, էջ 95։ Կ. Գանձակեցի, էջ 75։ Մխ. Անեցի, էջ 9։ Պետք է լինի 458 տարի (428 թ.—886 թ.)։

18. Խոսքը վերաբերում է Աշոտ Ա-ին (տես ծանոթ. 16)։ Կարծում ենք բնագրի սկզբնական օրինակում եղել է «ԳՃԼԴ», որովհետև Աշոտը Հայոց 303 թ. լինում է իշխանաց իշխան և մնում 31 տարի։

19. Այստեղ, ինչպես և № 6354 տարբերակում Սմբատի հոր անունը բաց է թողնված։ Ըստ Ասողիկի Սմբատը թագավորել է 891 թ. (էջ 159)։ Յուստին նշում է 890/1—913/4 թվականները (էջ 315), իսկ Մանանդյանը 890/1—913/4 թ. թ. (Նույն տեղ, էջ 6)։

20. Ժամանակագրության այն վկայությունը թե Աշոտը (Երկաթը) թագավորել է Հայոց ԳՃԾԳ (=914) թվին, ճիշտ չէ, որովհետև Սմբատ Ա-ի սպանությունից (914 թ.) հետո նա պայքար էր մղում Արքայատականի արաբ ոստիկան Յուսուֆի դեմ, այդ պայքարը տևեց մոտավորապես 7 տարի, որից հետո նա միայն հնարավորություն ստացավ թագավորել 8 տարի։ Հետևապես ժամանակագրության այն վկայությունը, թե Աշոտը թագավորել է 8 տարի, ճիշտ է, բայց այդ տարիները չպիտի հաշվել 914 թվականից, այլ սրա վրա պետք է ավելացնել նաև «անիշխան ամս է (=7)» ժամանակը, ինչպես մատնացույց է անում Մխ. Անեցին (էջ 9)։ Հմմտ. Սամվել Անեցի, էջ 99։ Կ. Գանձակեցին չնայած Աշոտ Երկաթի թագավորության տարեթիվը չի նշում, սակայն հետաքրքիր վկայություն է տալիս «... քանզի յետ մահուանն Սմբատայ Բագրատունւոյ թագաւորէ Հայոց Աշոտ որդի նորա հրամանաւ Ռոմանոսի կայսեր, յետ եօթն ամի սպանման նորն ամս ութ» (էջ 78, ընդգծումը մերն է— Վ. Հ.): Հմմտ. Ասողիկ 170։ Վերջինս Աշոտի մահը դնում է 929 թ. (էջ 170)։ Յուստին Աշոտ Երկաթի իշխանության տարիները նշում է 914—928 թ. թ. (Նույն տեղ, էջ 45, 418)։ Օրմանյանը անիշխանության շրջանը դնում է 914—921 թ. թ. («Ազգապատում», էջ 1039), իսկ Աշոտի մահը՝ 929 թ. կամ 930 թ. (Նույն տեղ, էջ 1072)։

21. Սույն վկայությունը ստույգ չէ, հենց իր նախորդ վկայության հիման վրա կատարած հաշվումներով։ Ասողիկը Աբաս Ա-ի մահը դնում է 953 թ. (էջ 180), և որովհետև վերջինս էլ իշխել է 24 տարի (Ասողիկ, էջ 171, 180, Մխ. Անեցի, էջ 9, Մխ. Այրիվանեցի, էջ 15), հետևապես ըստ Ասողիկի Աբասը գահ է բարձրացել 929 թ. (953—24)։ Հմմտ. Ասողիկ, էջ 170։ Ըստ Ս. Անեցու Աբաս Ա-ն գահ է բարձրացել 931 թ. (էջ 99)։ Օրմանյանն Աբասի համար նշում է 930—954 թ. թ. («Ազգապատում», էջ 1106), Յուստին՝ 928—951 թ. թ. (էջ 418), Մանանդյանը՝ 928—953 թ. թ. (Նույն տեղ, էջ 11)։

22. Ըստ Ասողիկի Աշոտ Ողորմածը թագավորել է «զկնի Աբասայ» (էջ 180) թերևս 953 թ. և մահացել է 977 թ. (էջ 187), թագավորելով ԻԵ (=25) տարի. վերջին թիվը հաստատում է նաև Մխ. Անեցին (էջ 9)։ Ս. Անեցու համաձայն՝ 955 թ. (էջ 100)։ Վերջինս, ինչպես և Մխ. Այրիվանեցին (էջ 15) Աշոտ Ողորմածի թագավորության տարիները նշում են ԻԷ (27)։ Ստույգ է առաջինը, այստեղ տեղ է գտել «Ե» և «Է» տառերի շփոթումը։ Մ. Ուռհայեցին (էջ 3) Աշոտ Ողորմածի (Նույն ինքը Գագիկ) օծումը նշում է Հայոց ՆԺ (=961) թվականին, հմմտ. Ս. Ա-

նեցի (էջ 100), Յուստին՝ 951—977 թ. թ. (էջ 418), Իսկ Մանանդյանը՝ 953—977 թ. թ. (նույն տեղ, էջ 14)։

23. Ասողիկի համաձայն, որը և ստույգ է, Սմբատ Բ. թագավորել է 977 թ. (էջ 187) և մահացել է 989 թ. (էջ 225)։ Ս. Անեցին նրա թագավորելը նշում է 982 թ. (էջ 102), իսկ մահը 994 թ. (էջ 103)։ Օրմանյանն ընդունում է 977 թ. (նույն տեղ, էջ 1028), Յուստին (նույն տեղ, էջ 315, 418) և Մանանդյանը (նույն տեղ, էջ 14) 977—989 թ. թ.։

24. Համաձայն Ասողիկի Սմբատ Տիեզերակալի մահը և Գագիկ Ա-ի թագավորելը տեղի է ունենում «ի նոյն օր..... ի ՆԼԸ (=989) թուականին, յաւուրս ձմերայնոյ, ի քաղաքին Անւոյ» (էջ 255)։ Ս. Անեցին նշում է 995 թ. (էջ 103—104), իսկ մահը՝ Հայոց 470=1021 թ. (էջ 105)։ Մ. Ուռհայեցու (էջ 7) և Ս. Գունդստաբլի մոտ (էջ 26) Գագիկ Ա-ի մահը նշված է Հայոց 420 թ. (=971), որը բացահայտ սխալ է։ Գագիկ Ա-ի թագավորության համար Օրմանյանը նշում է 990—1020 թ. թ. (էջ 1191), Յուստին՝ 989—1020 թ. թ. (նույն տեղ, էջ 107)։

25. Ս. Անեցին Հովհ. Սմբատի թագավորելը նշում է 1024 թ. (էջ 105), մահը՝ 1050 թ. (էջ 107), իսկ Մ. Ուռհայեցին Հովհ. Սմբատի մահը նշում է 1041 թ. ներքո (էջ 84), համմտ. Ս. Գունդստաբլ, էջ 56։ Ընդունված է 1020—1041 թ. թ., սակայն Յուստին առաջարկում է 1020—1039 թ. թ. (էջ 315)։

26. Գագիկ Բ-ի օծումը համաձայն Ս. Անեցու տեղի է ունեցել 1043 թ. (էջ 107), Ս. Գունդըստաբլի՝ 1042 թ. (էջ 57), Օրմանյանի հաշվումների՝ 1043 թ. սկզբին (էջ 1224)։ Գագիկ Բ-ի համար Յուստին նշում է 1042—1045 թ. թ. (էջ 418)։

27. Ինչպես այս, այնպես էլ № 6354 տարբերակում տարիների քանակը բաց է թողնված։

28. Հմմտ. Հեթում Բ-ի տարեգրության, էջ 74։

29. Հմմտ. նույն տեղ, էջ 74։

30. Հմմտ. նույն տեղ, էջ 74, տես էջ 90, ծանոթ. 9։

31. Հմմտ. նույն տեղ, էջ 75։

32. Հմմտ. նույն տեղ, էջ 75։

33. Հմմտ. նույն տեղ, էջ 75, տես էջ 91, ծանոթ. 20։

34. Հմմտ. նույն տեղ, էջ 114։ Տես էջ 91, ծանոթ. 21։

35. Հմմտ. նույն տեղ, էջ 76։

37. Բնադրում «թուին» բառը կրկնված է։

38. Հմմտ. նույն տեղ, էջ 80։

39. Հմմտ. նույն տեղ, էջ 83։

40. Հմմտ. նույն տեղ, էջ 85։

Բնադրի «ԽԸ» գրչագրական սխալ է, գուցե եղել է «ԻԸ», համենայն դեպս այդ էլ սխալ է։ Պետք է լինի մոտավորապես 20 տարի՝ 1288—1307 թ. թ.։

41. Բնագրում վերջին թիվը բաց է թողնված։

42. Բնագրի «երրորդ» բառը պետք է լինի «հինգերորդ», որովհետև մինչ այդ խոսվել է «Լևոն Չորրորդ»-ի մասին։

43. Խոսքը վերաբերում է Հեթում Բ-ին։ Թե ինչու է այս վկայությունը կրկնված, մեզ մնում է անհասկանալի. սակայն, տարիների քանակի սույն վկայությունը ստույգ է։

44. Տարիների քանակը երկու տարբերակներում էլ բաց է թողնված։ Այդ դեպքերը տեղի են ունեցել 1296 թ.։

45. Խոսքը վերաբերում է Լևոն Գ-ին, որը սակայն սպանվել է Հեթում Բ-ի հետ 1307 թ. դավաճանությամբ։ Տես և հմմտ. էջ 88, 89։

46. Տես էջ 100, ծանոթ. 143։

47. Տես էջ 100, ծանոթ. 144։

48. Խոսքը վերաբերում է Օշին Գանձակեցուն, որը համաձայն Ալիշանի Լամբրոնը գրավել է 1037 թ.։ («Սիսուան», էջ 48, 77, 550)։

XVIII

# ԱՆԱՆՈՒՆ ԼԻՎՈՌՆԱՑՈՒ(?) ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII Դ.)

«Համառօտ վիպասանութիւն յաղագս ժամանակաց կենցաղոյս ի յիսկզբանէ ստեղծման աշխարհի մինչև ցներկայական ժամանակս մեր» խորագիր կրող ժամանակագրությունը գտնվում է Մատենադարանի հետևյալ ժողովածուներում՝

№ 1786, 78ա—85բ էջերում՝ A տարբերակ,

№ 82, 248ա—253բ էջերում՝ Б տարբերակ, իսկ մի փոքրիկ հատվածը № 6562 ժողովածուի 31ա էջում՝ B տարբերակ։ Ինչպես վերնագրից երևում է, հեղինակն իրեն նպատակ է դրել համառոտ կերպով շարադրել մի ժամանակագրություն, որը սկսվում է աշխարհի ստեղծագործությունից և հասնում մինչև իր ժամանակը։

Ժամանակագրությունն սկսվում է Ադամից, որի հնագույն շրջանին վերաբերող մասը հասնում է մինչև 3925 թվականը՝ Հրեաստանի Հերովդես թագավորը։ Այս ամենի համար հեղինակին աղբյուր են ծառայել Աստվածաշունչը և այլ աստվածաբանական գրքեր։

Այս մասում հեղինակը երբեմն կատարել է շեղումներ, զետեղելով Հայոց պատմության հնագույն՝ վիպական ու առասպելական շրջանի, տվյալներով՝ Հայկի և Բելի, Արա Գեղեցիկի և Շամիրամի, Տիգրանի և Աժդահակի պատերազմների մասին, շարադրելով Մ. Խորենացու «Հայոց պատմության» Ա գրքի համապատասխան։

Քրիստոսի ծնունդը և սրա հետ կապված մի քանի դեպքեր հիշատակելուց հետո հեղինակն անցնում է ժամանակագրության պատմական մասի շարադրությանը։ Այն սկսվում է Ներոնի կողմից քրիստոնյաների հալածանքներից և հասնում մինչև 1582 թվականը՝ լատինական տոմարի ընդունումը։ Այնուհետև կատարում է ողջ շարագրածի ամփոփում և թվում աշխարհի 7 դարագլուխները քրիստոնեական պատկերացման համաձայն։ Ապա հեղինակը վերադառնում է Մահմեդի ծննդին և խիստ համառոտ ժամանակագրական կարգով դեպքերի հիշատակությունը հասցնում մինչև 1582 թ.։

Սրանից հետո նա կրկին վերադառնում է մեր թվականության 1369-ին և մեծ մասամբ Իտալիայում տեղի ունեցած պատահարների ու հրաշքների հետ միասին հիշատակում· զանազան պատմական դեպքեր, որոնք ժամանակագրական կարգով հասնում են մինչև 1577 թվականը։ Այստեղից հեղինակը երրորդ անգամ ետ է գնում մինչև մեր թվականության առաջին տարին և շարադրում «բազում զարմանալիք», որոնք ըստ էության մեծ մասամբ ժողովրդի մեջ տարածված առասպելական զրույցներ և բնական արհավիրքներին

վերաբերող տեղեկություններ են։ Նման դեպքերի հիշատակությունը ժամանակագրական կարգով հասցնում է մինչև 1223 թվականը։

Այսպիսով, ժամանակագրությունն ամբողջությամբ վերցրած պատմական դեպքերի ժամանակագրական հաջորդականությամբ չի շարադրված, ընդհակառակը, ժամանակագրական կարգը պահպանված է վերևում թված ժամանակագրության առանձին հատվածների մեջ, որոնք ունեն ենթավերնագրեր, այսպես. «Ամք ի ծննդենէն Քրիստոսի», «են և այլք բազումք զարմանալիք որք եղեն ի վերայ երկրի, զորոց զսակաւ ինչ շարագրեցաք աստ», «են և այլք ինչը բազում զարմանալիք զորոց զսակաւս շարագրեցից յետ ծննդեան Քրիստոսի» և այլն։

Թե ո՞վ է եղել այս ժամանակագրության հեղինակը, չկարողացանք պարզել, բայց դժվար չէ որոշել ժամանակը, որովհետև միայն A տարբերակում պահպանվել է ուղղակի ցուցում այդ մասին. այնտեղ կարդում ենք. «Եւ ի սկզբանէ աշխարհի մինչև ցայժմ, որ է թիւ մարդեղութեան Փրկչի 1683, են ամք 6864», թեև մի այլ անուղղակի ցուցումով էլ մեկ տարի ետ է բերում, աշխարհի ստեղծագործությունից մինչև իր ժամանակագրության կազմելու տարին հաշվելով 6884 տարի, իսկ «Յառաջ քան զմարդեղութիւն բանին աստուծոյ էին ամք 5200», այսինքն՝ 6884—5200=1684, հետևապես հեղինակը XVII դարի երկրորդ կեսի անձնավորություն է։ Եթե նկատի ունենանք ժամանակագրության պատմական մասի, Եվրոպայի, առավելապես Իտալիայի պատմության վերաբերվելը մի կողմից և ժամանակագրության նախորդող՝ 77-րդ բ էջում Մարտիրոս դի Առաքելի Լիվոռնո հասնելու փաստի հիշատակումը[1] մյուս կողմից, ենթադրում ենք, որ ժամանակագրությունը կազմվել է Իտալիայում, ամենայն հավանականությամբ Լիվոռնոյում ապրող, հավանաբար կաթոլիկ, մի հայի կողմից,[2] որից և Մարտիրոս դի Առաքելը այնտեղ գտնված ժամանակ ընդօրինակել է ճանապարհորդական իր տետրում։

Իսկ ժամանակագրության B տարբերակը, որն ընդօրինակել է Իսայի վարդապետ Թոխաթեցին՝ 1760 թվականին (մինչև հունիսի 2-ը)[3] հավանորեն Մարտիրոս դի Առաքելի ընդօրինակությունից չի կատարվել, այլ մի ուրիշ

[1] № 1786 ժողովածուն, որի Մարտիրոս դի Առաքելի ճանապարհորդական տետրն է, որտեղ ընդօրինակած կամ արձանագրված նյութերը կատարվել են տարբեր վայրերում և ժամանակներում։ Այսպես, նա եղել է Շիրազում (էջ 70բ), հեռավոր վայրերում զանցվելու փաստը հեղինակն ակնարկում է ոՈՒ Աղաւիլլին Նվիրված ոտանավորում (էջ 70բ)։ 1722 թ. Մարտիրոսը լինում է Բենդեր Սուրաթում, Բենդեր Աբասում (էջ 77բ)։ Հավանաբար եղել է Հնդկաստանում (տե՛ս. Ցեյլոն կղզու նկարագրության հետ, էջ 73ա) և այնտեղ ընդօրինակել կամ կազմել 17[illegible]3—1720 թթ. Հնդկաստանում տեղի ունեցած պատերազմական կռիվների ժամանակագրությունը (էջ 4[illegible]բ—43ա) և «Անունք ականաց» աշխատությունը (էջ 7[illegible]ա—76բ)։ 1723 թ. սեպտեմբերի 1-ին Մարտիրոսին գտնում ենք Լիվոռնոյում (էջ 77բ), հավանաբար եղել է Ֆլորենցիայում (հմմտ. 56ա էջի անուղղակի վկայությունը)։

[2] Տակավին XVII դարի սկզբին, գուցե և ավելի շուտ Լիվոռնոյում գոյություն ուներ հայ գաղթականություն (տես Լեո, «Հայոց պատմություն», 1946 թ., Երևան, հատոր 3, էջ 441)։

[3] Պրոֆ. Աշ. Աբրահամյանը Իսայի վարդապետ Թոխաթեցուն սխալմամբ համարում է առաջարկվող ժամանակագրության հեղինակ («Գիտ. նյութերի ժողովածու» (Մատենադարան), Երևան, 1941 թ., էջ 208), տես մեր գրախոսականը Հայկական ՍՍՌ Գիտութ. Ակադեմիայի «Տեղեկագիր» հասարակական գիտություններ, 1948 թ. № 7, էջ 83)։

առայժմ մեզ անհայտ բնագրից։ Այդ են ցույց տալիս տարբերակների մեջ նկատվող զգալի շեղումները։

Ժամանակագրության խորագրում հեղինակը թեև խոստանում է դեպքերը շարադրել աշխարհի ստեղծագործությունից մինչև «ցներկայական ամանակս մեր», բայց այդ խոստումը չի կատարում, որովհետև ժամանակագրության պատմական մասը 1582 թ. այս կողմ չի անցնում, մինչդեռ այն կազմվել է 1683 թ.։ Սա նշանակում է, թե հեղինակը, ժամանակով իրեն մոտ 101 (1582—1683 թ. թ.) տարվա դեպքերը չի արձանագրել։ Ուստի այս ժամանակագրությունը, որպես սկզբնաղբյուր, կարող է քիչ արժեք ունենալ, այն պարզ պատճառով, որ ժամանակակցի վկայություններ չեն և երկրորդ պատմական մասի համար հեղինակը առանձին սկզբնաղբյուրների հետ միասին օգտագործել է նաև ոչ ստույգ աղբյուրներ, ինչպես նաև ժողովրդի մեջ տարածված այլևայլ զրույցներ։ Հենց դրանով պիտի բացատրել մի շարք հայտնի դեպքերի սխալ արձանագրումը։ Այսպես են՝ Կոլոմբոսի կողմից Ամերիկայի գյուտի, Իսպանիայի դեմ հոլանդացիների ապստամբության, Գուտենբերգի կողմից տպագրության գյուտի վերաբերյալ վկայությունները և այլն։ Ժամանակագրությունն ընդհանուր առմամբ լավ է պահպանված A տարբերակում, այդ պատճառով էլ այդ դարձրինք հրատարակության հիմք, իսկ Б տարբերակի և № 6562 ժողովածուի մեջ պահված փոքրիկ հատվածի (B) տարընթերցվածքները տվինք տողատակ։

XVIII

## ՀԱՄԱՌՕՏ ՎԻՊԱՍԱՆՈՒԹԻՒՆ ՅԱՂԱԳՍ ԺԱՄԱՆԱԿԱՑ ԿԵՆՑԱՂՈՅՍ Ի ՅԻՍԿԶԲԱՆԷ ՍՏԵՂԾՄԱՆ ԱՇԽԱՐՀԻ ՄԻՆՉԵՒ ՑՆԵՐԿԱՅԱԿԱՆ ԱՄԱՆԱԿՍ ՄԵՐ 78ա

Արդ՝ ուրեմն պարտ է գիտել զի յԱդամայ մինչև ի Յովսէփ են ամք 2198։[1]

Ի Յովսեփայ և ի գերութենէն Եբրայեցւոց մինչև ի Մովսէս և յայնմանէ մինչև ի Սաւուղայ թագաւորելն, են ամք 2889։

Ի Մովսիսէ մինչև ի Սաւուղ դատաւորք էին ամենեքեան։ Ի Սաւուղայ մինչև ի գերութիւնն Եբրայեցւոց առ Նաբուգոդոնոսորաւ արքայիւ թագաւորք էին և են ամք 3372։ Զկնի ստեղծման Ադամայ և ամենայն արարածոց 60 ամին Կայէն սպան զԱբէլ, զեղբայր իւր և եգիտ զչափ և զկշիռ։

170 ամին Յօբէլ եգիտ զվրանս և Յօբալ զերաժշտականութիւն՝ զքնար և զտաւիղ։

Եւ Թօբէլ էր ճարտարապետ դարբին պղնձի և երկաթի։ Եւ Նոյեման, քոյր Թօբէլի, եգիտ մանել զբուրթս։

130 ամին ծնաւ Սէթ։

135 ամին Սէթ ծնաւ զԵնովս։ 1056 Ղամէք ծնաւ զՆոյ։ 1556 ամին Նոյ ծնաւ զՍէմ և զեղբարս նորայ։

1615 Ենովք վերացաւ յերկինս։

1656 եղև Ջրհեղեղ ի վերայ ամենայն երկրի։

1658 Սէմ ծնաւ զԱրփաքսաթ։

1693 Արփաքսաթ ծնաւ զՍաղա։

Սաղիմ, որ է Երուսաղէմ, շինեցաւ ի Սեմայ յորդւոյն Նոյի, 1769։

1788 եղև աշտարակաշինութիւն և բաժանումն լեզուաց, որ յետ կործանման աշտարակին եղև անլուր բարբառ բաժանմամբ

---

1—3 Б տողերը չիք։ 4 Б պարտ է գիտել ուրեմն թէ որքան ամք անցեալք են ի ստեղծմանէ աշխարհի և ի ժամանակս նախնեաց և զթիւս տարեաց նոցա փխ. ուրեմն պարտ է գիտել ։8 Б ի [Մովսիսէ] չիք։ 9—10 Б Նաբուգոդոնոսորու։ 10—11 Б ստեղծմաննե։ 11 Б ամին չիք։ 13 Б 170 փխ. 170 ամին։ 16 Б քուր Թօբէլայ։ 17 Б ծնաւ Սէթ ամին 130։ 18 Б Սէթ ծնաւ զԵնովս ամին 1056, Ղամէք ծնաւ զՆոյ ամին 1556։ 19 Б Նոյ ծնաւ զՍէթ և զեղբարս նորա, ամին ի վեր անդր փխ. 1556 ամին Նոյ ծնաւ զՍէմ և զեղբարս նորա։ 20 Б ամին 1615 փխ. 1615։ 21 Б ամին 1656 փխ. 1657, Б ջրհեղեղն եկն։ 22 Б ամին 1658 փխ։ 1658։ 23 Б ամին 1693 փխ. 1693։ 24 БВ Երուսաղէմ, В որդոյն Նոյին։ 25 Б ամին 1769 փխ. 1769, В թվին ՌՆՃԿԹ փխ. 1769։ 26 Б ՌՆՁԸ ամին 1786 փխ. 1788։

*լեզուացն և խրոխտանօք ի վերայ միմեանց տիրել կամէին։
Ներրովթ, որ և Նեմրութ, որ է Բէլ եղև առաջին թագաւոր,
որ շինեաց զԲաբիլօն. առ. որոյ էր նախնին մեր՝ Հայկ, որդի
Թորգոմայ։ Եւ Հայկն ի մէջ հսկայիցն մի էր ի ‖ շինելն աշտա- 79ա
բակին։*

*Սա ամբարձ զձեռն իւր ընդդէմ Բէլայ, առնու զորդի իւր զԱրամանեակ[1] չուեալ արաս ոգովք 300 և երկոքումբք յարեցելովք գայ հասանէ յերկիրն Արարատայ։ Իսկ միապետեալ Բէլայ զայլսն ամենայն և կոչէ զՀայկն ի Բաբիլօն. յորում ոչ առեալ յանձն։ Դայ Բէլ ի վերայ նորա խրոխտանօք։ Անդանօր ուշիմ և խոհեմ հսկայն քաջազանդուրն և խայտակն, աճապարեալ հաւաքէ զզօրս իւր, հասանէ յեզր ծովակի միոյ, որոյ աղի են ջուրք, մանունս ունելով յինքեանս ձկունս։ Եւ յառաջ կոյս անցեալ հասանէ ի դաշտաձև լեառն մի, տեսանէ զբազմութիւն ամբոխին Բէլայ։ Ծանեաւ Հայկն զԲէլ առաջի բազմութիւն ամբոխին, եկեալ հասանէ ընարիւք վառելովք արամբք կորովիւք յառաջ մատուցեալք յերկոցունց կողմանց հսկայիցն առ միմեանս զահագին զզրգմունս ի վերայ երկրի առնէին շահաաակելով հրսկայացունքն զմիմեանս արկանէին։ Անդ ոչ սակաւք յերկոցունց կողմանցն արք յաղթանդամք ի բերանոյ որոյ դիպեալք աապալ յերկիր կործանէին։ Յայնպիսի անակն ունելի դիպուածս տարակուսանաց անեալ արքային տիտանեան, զարհուրեցաւ և ի բլուրն ուստի էջ, վերջոտնեալ ելանէր։ Զայս իմացեալ աղեղնաւորին Հայկայ յառաջ վարէ զինքն, մօտ հասանէ առ արքայն՝ Բէլ, քարշէ զլայնալիճն զիպեցուցանէ զերեք թեւանն կրծից տախտակին և շեշտ ընդ մէջ թիկանցն թափ անցիկ լեալ յերկիր հարստի սլաքն և այսպէս ճոխացեալն տիտանեանն յերկիր զալկուցեալ փչէ զոգին։ Իսկ ամբոխին տեսեալ զայնպիսի ահագին քաջութիւնն փախեան։ Զայս և զայլ բազում քաջութիւնս արարեալ Հայկայ ընդդէմ ներհակաց մեռանի։*

*1804 շինեցաւ Նինուէ ի Ցելասուրէ։*

*1810 Ռագաւ ծնանի զՍերուք։* 79բ

*1889 Սերուք ծնանի զՆաքովր։*

*1898 Նաքովր ծնանի զԹարայ։*

*1905 Նինոս առաջին ինքնակալ թագաւոր եղև ի Ցասորեստան։ Սա եմոյծ զկռապաշտութիւն։*

*1948 Թարա ծնանի Աբրահամ։*

*2033 Ծնաւ Իսմայէլ որդի Աբրահամու ի յաղախնոյն Հագարայ։*

---

*1 Б կամէին։ 2 Ներրովբ, զՆեմրութ։ 6 Б համբարձ։ 7 Б զԱրմանեակ, չու. արարեալ, ոգւովք։ 7—8 Б այրեցելովք։ 10 Ь անդանօր։ 11 Б խոհեմ Հայկն հսկայն, հաւաք փխ. հաւաքէ։ 12 Б ծովակի։ 13 Б յինքեան։ 14 Б լեռն։ 15 Б բազմութեան։ 25 Б զլայնալիճն, թեեանն։ 31 Б 1810 փխ. 1801, B Նինուէ շինեցաւ ի Ցելասուրէ ՌՇԾԴ։ 32-րդ տողը Б չիք։ 34 Б զԹարա։ 35 B ՌՇԾԺ փխ. 1905։ 37 B ՌԹՃԽԸ փխ. 1948։ 38 B ԲՌԼԳ փխ. 2033, ի չիք։*

2046 Սոդոմ և Գոմոր երկնային հրոփ այրեցան։
2047 Թլփատութիւն հրամայեցաւ ի տեառնէ յաստուծոյ Աբրահամու։
2048 Աբրահամ ծնաւ զԻսահակ։
2108 Իսահակ ծնաւ զՅակոբ։
2198 Յակոբ ծնաւ զՅովսէփ։
2227 Յովսէփ մեկնեաց զտեսիլն փարաւոնի։
2237 Յակոբ նահապետն պանդխտեցաւ երկրին Քամայ։
2372 ծնաւ Մովսէս։
2452 Մովսէս մարգարէ եղև ազատիչ ազգին Իսրաէլի։

Ի ժամանակին Նինոսի, յամին 1905, էր Արամ, որդի Արեմանեկայ, թոռն Հայկայ։ Սայ եղև այր պատերազմօղ և աշխարհասէր, որ սիրելով զհայրենիս իւր, լաւ համարէր մեռանել ի վերայ ազգի, քան թէ օտար ազանց թշնամեաց կոխել զսահմանս իւր։ Սա ելեալ ի պատերազմ բազմօք, քաջ արամբք յարեւելս կոյս, երթեալ պատահէ Մեդացւոց զօրաց, որոց զօրավարին Մադէս անուն կոչեցելոյ, որ էր այր հպարտ և պատերազմօղ. եկեալ ի սահմանս Հայոց և ամբակակոխ արարեալ ծառայեցոյց ամս ինչ։ Յայնմ ժամանակի հասեալ ի վերայ նորա Արամայ զօրօք բազմօք, սատակէ զզօրս նորա և զզօրավարն ձերբակալ արարեալ բերէ յԱրմաւիր և անդ ցից վարսեալ երկաթի ընդ ճակատ նորա և հրամայէ դնել ի վերայ պարսպին ի տեսիլ անցաւորաց։ Եւ ինքն խաղայ զօրօք զկողմամբն Ասորեստանեաց և գտանէ անդ զապականիչս երկրին իւրոյ Թ (9) բիւր հեծելոց և հետևակաց զօրաց և ճակատ տուեալ պատերազմաւ սատակէ սպառ զզօրսն և զԻարձամ զգլխաւոր նոցա։ Զսա իբրև զաստուած ‖ 80ա պաշտել ասեն Ասորիք ժամանակս բազումս։ Եւ յանդրէն խաղացեալ գնայ յարեւմուտս կոյս ի Կեսարիայ, Կապադովկացւոց և պատահէ Պայապիս արքայի, որ բռնեցեալ ունէր զմիջոցս երկուց, այսինքն՝ Պոնտոսի և Ովկիանօսի և դիմի հարեալ յաղթէ բռնաւորին և զզօրս նորա բնաջինջ արարեալ բառնայ ի միջոյ։ Եւ այսպէս ընդարձակեալ զսահմանս Հայոց քաջութեամբն իւրով, մինչ դի ամենայն ազգք ի յանուն Արամայ Արմէն կոչեն զհայ ազգ։ Եւ զկնի Արամայ, որդի նորա Արայն Գեղեցիկ աիրէ Հայոց։ Եւ զկնի Բէլայ Թագաւորէ Նինոս յամս 52։ Ի սորա 45 ամին ծնանի Թարա զԱբրահամ։ Եւ կինն Նինոսի վավաշն այն և բորբորիտոնն Շամիրամ, փախուցանէ զայր իւր զՆինոս ի Կրիտայ կղզին և ինքն ժառանգէ զթագաւորութիւնն առն իւրոյ։ Լուեալ ի բազմաց զգեղեցկութիւն Արային, առաքէ զհրեշտակս առ Արայն Գեղեցիկ բազում ընծայիւք աղաչել գնալ, դի կատա-

1 B ՍԽԶ փխ. 2046, 5 չիք, հրով։ 2 B ՍԽԷ փխ. 2047։ 4 B ՍԽԸ փխ. 2048։ 5—8-րդ տողերը B չիք։ 9 B ՍՅՀԲ փխ. 2372։ 10 B ՍՆԾԲ փխ. 2452։ 11 БВ ժամանակի, B ՌԹԾԵ յամին փխ. յամին 1905։ 11—12 Б Արամանեկա, Б Արամանեկայ։ 12 Б Սա, այր չիք, պատերազմող։ 14 Б կոխել զթշնամիս։ 17 Б կոչեցելոյ։ 18 Б ծառայեցոյ։ 20 Б զօրավարն։ 23 Б Ասորեստանեայց։ 30 Б Ովկիանոսի։ 33 Б մինչև։ 35 Б Բէլաւ 36 Б վաւաշն։ 39 Б Սա լուեալ։ 40 Б գնա։

ընդդէ զկամս նորա, կամ առնուլ զնա ի կնութիւն և տիրել թագաւորութեան նորա, կամ կատարել զվավաշ ցանկութիւն նորա։ Եւ դառնալ յանդրէն բազում պարգևօք ի յերկիր իւր, որում ոչ հաւանեալ Արայի։ Իսկ Շամբուշն այն առեալ զբազմութիւն զօրաց իւրոց գայ հասանէ ի սահմանս Արային, որ ի պատերազմին մեռանի։ Եւ զօրք նորին, Արայի մինչդեռ կամէին միւս անգամ տալ ճակատ պատերազմի ընդ Շամիրամայ, ասէ Շամիրամ՝ Արայն Գեղեցիկ ոչ է մեռեալ, այլ կայ կենդանի ընդ իս. և հաւատացեալ զօրացն Արայի խաղաղացան։ Եւ այնուհետև սկսեալ Շամիրամայ շինել զքաղաքս բազումս և զտեղիս և շինէ զարմանալի շինուածով զՇամիրամ քաղաք, որ է Վան և դնէ զաթոռ իւր անդ։

2889 Սաւուղ եղև առաջին թագաւոր Իսրաէլի։

2961 եղև շինուած տաճարին Սօղոմոնի։

3140 եղև վաղճան ինքնակալ թագաւորութեան Ասորոց ի Սարդանապալոյ։

3210 եղև հիմնարկութեան Հռոմայ։

3239 եղև վաղճան թագաւորութեան Երրայեցւոց։

3372 եղև գերութիւնն Երրայեցւոց ՝ի Բաբիլօն։

3402 եղև առաջին թագաւոր Կիւրոս Պարսից։

3442 Դարեհ արքայն Պարսից ազատեաց զազգն Իսրաէլի։

3444 եղև վաղճան թագաւորութեանն Բաբելացւոց։

3623 Աղէքսանդր Մակեդոնացի ‖ եդ զինքնակալութիւն իւր ի մէջ Յունաց։ Իսկ ըստ Հայոց ի սոյն ժամանակի, յետ մահուանն Արայի, պայազատէ որդի նորա Կարդոս[8] և որդի սորա Պարոյր,[9] առաջին թագաւոր Հայոց, պսակեալ ի Վարբակայ Մարաց առաջի թագաւորէն։[10] Եւ գեղեցկագոյն վկայ ունի զմարգարէն Երեմիայի, որ ի բանս իւր հրաւիրէ ընդդէմ Բաբելոնի ի պատերազմ՝ հրաման տուր, ասէ, Արարատեան թագաւորութեան և Աղգա[նա]զ[ե]ան գնաին։[11] Այլ զկնի սորա Հռաչեայ թագաւորէ Հայոց։ Եւ սորա ասեն, զմի ի գերելոցն գլխաւորաց Երրայեցւոցն, խնդրեալ ի Նաբուգոդոնոսորայ անուն Շամբաթ ածեալ բնակեցուցանէ յերկրին Հայոց մեծաւ պատուով և ի սմանէ ասեն ազգն Բագրատունեաց. և հաւաստի է։[12] Եւ յետ սորա թագաւորէ Տիգրան, որ դաշնաւորեալ ընդ արքային Մարաց Աժդահակայ, տայ նմա զքոյր իւր Տիգրանուհի ի կնութիւն։ Եւ Աժդահակայ նենգեալ դաւաճանութեամբ ի վերայ Տիգրանայ չար խորհեալ նմա, զոր իմացեալ օրիորդին Տիգրանուհւոյ, ազդ 80բ

3 Б յորում։ 9 Б յիս։ 12 Б անդ զաթող իւր։ 13 Б ամին 2289 փխ. 2889։ 14 Б ամին 2961 փխ. 2661, Սողոմոնի։ 15 Б ամին 3170 փխ. 3140, վախճան։ 16 Б Սանդանապալոյ։ 17 Б ամին 3210 փխ. 3210, հիմնարկութեանն։ 18 Б ամին 3239 փխ. 3239, վախճան թագաւորութեանն Երրրայեցւոց։ 19 Б ամին 3372 փխ. 3372, Երրաեցւոց։ 20 Б ամին 3402 փխ. 3402։ 21 Б ամին 3442 փխ. 3442, զա[զ]գն Իսրաելի զալ Երուսաղէմ փխ. զազգն Իսրաէլի։ 22 Б ամին 3444 փխ. 3444, վախճան։ 23 Б իւր չիք։ 24 Б «Իսկ ըստ հայոց»-ից առաջ վերնագիր՝ «Վասն Հայոց»։ 28 Б Բաբիլօնի։ 30 Б Աղքա[նա]զան, Հոչեաւ։ 31—32 Б Երրրաեցւոց։ 33 Б երկրին, զսա փխ. ի սմանէ։ 36 Б զքույր զՏիգրանուհի։ 38 Б Տիգրանուհոյ։

առնէ եղբօր իւրում զխորամանկութիւն առն իւրոյ։ Եւ իբրև լուաւ զբանս արքայն Տիզրան, զօրու ծանու խաղայ և հասանէ ի վերայ Աժդահակայ։ Ի խմբել պատերազմին Նիզակաւ օրինակ իմն, որպէս ջուր հերձեալ զերկաթ ի հանդերձն շամփրէ. զԱժդահակ յընդարձակ աէգ Նիզակին և յամփոփել միւս անգամ ոձեռն արտաքս ղկէս մասին Թոքոցն հանդերձ զինուն ի դուրս բերէ։ Իսկ վաղճան զործոյն առնէր մահն Աժդահակայ։ Զայս և զայլ բազում յաղթութիւնս արարեալ խարախաւչս այս և աղղերեկ ծայրիւ հերուաց Երուանդեանս Տիգրան, երեսօք զունեան և մեղուակն անձնեղ և Թիկնաւէտն, առոյգաբարձ և գեղեցկոտն, պարկեշտ ի կերակուրս և յըմպելիս և առ խրախճանութիւնս, օրինաւոր մեծիմաստ և պերճաբան և ամենայն որ ինչ մարդկութեանս պիտանի։ Զի սա ամենեցունց Թագաւորացն մերոց հարստագոյն և խոհեմագոյն այր արանց գլուխ արութեան ցուցեալ ղազգս մեր բարձրացոյց || և ընդ լծով կացեալս լծաղիրս 81ա արար բազմաց ե հարկապահանջս կացոյց՝ մԹերս ոսկւոյ և արծաԹւոյ և քարանց պատուականաց. և զգեստուց և պէսպէս զունից և անկուածոց արանց միանգամայն ե կանանց հասաբարակաց բազմացոյց ազեղագոյնքն, իբրև ղգեղաւոր երևէին գեղեցիկք և գեղաւորքն։ Ըստ ժամանակին առ հասարակք գիւցազանց հետեւամարաքն ի վերայ ուսուց ձիոց բերեալք և պարսաւորքն առ հասարակ դիպ աղեղունք և շեշտաւորք ի սուսեր և ի Նիզակ վառեալք մերկքն վահանօք և զգեստիւք երկաԹեօք պարսպածկեալք. զինուց փայլմունք և շողիւք ղԹշնամիս արտահալածէր։ Սորա լեալք որդիք երեք՝ Բար, Տիրան և Վահակն, որ ընդ վիշապի կռուեալ նմա և յաղԹեալ կարի իմն նմանագոյնս զՀերակլեա նահատակութիւնս նմա երգեն. այլ ասեն զսա և աստուածացեալ և անդր ի Վրաց աշխարհին կանգնեալ դչափ հասակի Նորա պատուէին պահօք։ Սա ընդվզեալ մեռանի յԱղէքսանդրէ Մակեդոնացւոյ և յայսմ հետէ ղադարէ Թագաւորութիւնն Հայկազունեաց մինչև ցԹագաւորութիւնն Վաղարշակայ Արշակունւոյ։[13]

3797 եղև վաղճան Թագաւորութեանն Մակեդոնացւոց առ Պէրսէիւ արքայիւ։

3802[14] Անտիօքոս Թագաւոր էառ զԵրուսաղէմ.

3804 Յուդայ Մակաբայեցի եղև այր հզօր զօրութեամբ ի մրցմունս պատերազմի։

3912 Յուլիոս առաջին Թագաւոր Հռոմայեցւոց եղև կայսր և յաղԹեաց Պոմփէէի զօրավարին։

2 Б Տիգրան արքայն յայնժամ։ 3 Б խմպել։ 4 Б հերծեալ։ 4—ó Б զԱշտահակ։ 7 Б վախճան գործոյն, զմահն։ 10—11 Б գեղեցկոտն պարկեշտ։ 11 Б յըմբելիս։ 13 սա չիք։ 15 Б ազգս։16 Б ոսկոյ։ 16 –17 Б արծաԹոյ։ 18 Б հասարակաց։ 23—23 Б ի սուսեր և ի Նիզակ վառեալք չիք։ 23 Б երկաԹվօք։ 25 Б 3 փխ. երեք, Բար փխ. Բար։ 26 Б և զՀերակլա։ 28 Б զանգնեալ։ 32 Б ամին 3797 փխ. 3797, և վախճան փխ. եղև վաղճան, Թագաւորութեան։ 34 Б ամին 1802 փխ. 3804, Անտիոքս։ 35 Б ամին 1804 փխ. 3804։

3918 Օքթաւիանոս, որ և Գայիոս, թոռն Յուլիոս, կայսեր եղև։ Օգոստոս կայսր Հռոմայեցւոց ի թագաւորութեան սորին ծնանի Քրիստոս ի Բեթղեհէմ Հրէաստանի։

3925 Հերովդէս այլազգի եղև առաջին թագաւոր Հրէից։ Առ այսու ժամանակաւ եկին մոգք յարևելից Յերուսաղէմ առ ի երկրպագութիւն նորածին թագաւորին Քրիստոսի։

Ամք ի ծննդենէն Քրիստոսի[16]

1 ծնաւ Քրիստոս փրկիչն մեր ի սրբուհւոյ կուսէն Մարիամայ։

2 դառնայ մանուկն Յիսուս Քրիստոս ի Եգիպտոսէ ի Գալիլեայ։

12 զաւին ծնօղքն զմանուկն Յիսուս Յերուսաղէմ ի մէջ 81r
վարդապետաց ի տաճարին։

30 գայ Յիսուս ի մկրտութիւն առ Յօհաննէս և ընտրէ զերկոտասան զառաքեալսն և յետ երից ամաց գայ ի չարչարանս և մեռանի։

35 սուրբ առաքեալն Պօղոս դառնայ ի հաւատս Քրիստոսի։

44 սուրբ առաքեալն Պետրոս նախ հաստատէ զաթոռ հայրապետութեան ի Յանտիոք և ապա դնէ զաթօռ ի Հռոմ․

45 եղև վերափոխումն սրբուհւոյ Աստուածածնին։

56 սուրբն Մարկոս եղև առաջին եպիսկոպոս ի Յագէքսանդրիայ։

67 եղև առաջին հալածումն քրիստոնէից ի Ներոնէ։

68 սուրբ առաքեալքն Պետրոս և Պօղոս եղեն մարտիրոսք ի Հռոմայ։

73 եղև աւերումն Յերուսաղէմի ի Վէսպիանոսէ թագաւորէն։[16] Ի ծննդենէն Քրիստոսի մինչև ի մեծն Կոստանդիանոս են ամք 313։[17]

318 եղև առաջին ժողովն ի Նիկիայ ընդդէմ Արիոսի։[18]

319 գիւտ սրբոյ խաչին փրկչական Յերուսաղէմ ի Հեղինայ, մօրէն Կոստանդիանօսի մեծի։

331 Կոստանդիանոս շինեաց զԿոստանդինուպօլիս։

383 եղև երկրորդ ժողով ի Կոստանդինուպօլիս։[19]

402 Հռոմ առաւ ի Գոթացւոց։[20]

420 Թէոդոսիոս եղև առաջին թագաւոր ի Գալիլլացւոց։

421 եղև սկիզբն շինուածոյն Վէնէտիկոյ։

---

1 Б Յուլիոսի։ 4 Б ամին 3925 փխ. 3925, В 3925 չիք, Б Հերօդէս։ 5—6 Б յերկրպագութիւն։ 7 Б ամք ի սուրբ ծննդենէն Քրիստոսի թուին 8 Б սուրբ փխ. սրբուհւոյ։ 10—11 Б Գալիլիայ։ 14 Б ի Յորդանան առ Յօհաննէս։ 16 Б և մեռանի և յառնէ յարութեամբ 33։ 17 Б ամին 35 փխ. 35, В Լ5 փխ. 35, Б Պօղոս։ 18 Б ամին 44 փխ. 44, В ԽԴ փխ. 44։ 19 В դնէ զաթոռ ի չիք, Б ամ փխ. Հռոմ։ 20 Б ամին 45 փխ. 45, սուրբ։ 21 Б ամին 56 փխ. 56, եպիսկոպոս եղև։ 23 Б ամին 67 փխ, 67։ 24 Б ամին 68 փխ. 68, В ԿԸ փխ. 68։ 26 В ամին 73 փխ. 73, В ՀԳ փխ. 73, БВ Երուսաղէմի, Б Վիսպիանոսէ, Б Վեսպիանոսէ։ 28 В ԳԺԺԳ փխ. 313։ 29 Б ամին 318 փխ. 318, Նիկայ։ 30 Б Երուսաղէմ։ 31 Б Կոստանդոսի։ 32 Б Կոստանդինոս, В ԳՃԼԱ փխ. 331, В զԿոստանդիանուպօլիս, Б զԿոստնդինուպօլիս։ 33 Б Կոստնդինպօլիս։ 34 Б Հռոմ, Գոթացւոց։ 35 Б 402 փխ. 420, ի չիք։ 36 В ԳՃԻԱ փխ. 421, Б զկիսբն։

433 եղե. երրորդ ժողով ի Եփեսոս։[21]

455 եղև ժողովն Քաղկեդոնի։[22]

595 ծնաւ սուտ մարգարէն Մահմէտ։

615 զԵրուսաղէմ էառ Խոսրով արքայն Պարսից։

621 Մահմէտ եղև առաջին իշխան Հագարացւոց։

627 Մահմէտն զրեաց զՂուռանն։

636 զԵրուսաղէմ և զԴամասկոս առին Սարաճինացիք։[23]

801 Մեծն Կառլօ եղև կայսր ի Հռոմայ։[24]

964 ազգն Լեհաց ընդ իւրեանց[25] թագաւորին եղեն քրիստոնեայք։[26]

968 դադարեաց թագաւորութիւն Իտալիոյ։[27]

975 սկիզբն եղև թագաւորութեանն Մաճարից։[28]

1013 Սարաճինացիք միանգամայն հալածեալք եղեն Իտալիոյ ի ձեռն կայսեր։

1208 սուրբն Դոմինիկոս կացոյց ըզկարգ քարոզողաց։ 83ա

1240 Սարաճինացիք հալածեալք եղեն ի Սպանիոյ։[29]

1300 կարգեցաւ և կացուցաւ ամ յոբելեան ի Հռոմ։

1305 փափն ել ի Հռոմայու և գնաց ի քաղաքն Ավինիօն և անդ եդ զաթոռ հայրապետութեանն իւրոյ։[30]

1375 փափն փոխեաց զաթոռ հայրապետութեան իւրոյ ի Ֆրանցոյ ի Հռոմ։

1397 Բայազիտ սուլթանն ըմբռնեցաւ ի Լանկ Թամուրէն։[31]

1453 Կոստանդինուպօլիս առաւ ի Թուրքաց։

1464 Բօսնայ առաւ ի Թուրքաց։

1473 Մահմէտ խոնդքարն էառ զՏրապիզոն և ձերբակալ արար զկայսր Կալթիան։[32]

1480 Յոհաննէս Կօրինպէրն եգիտ զտպագրութիւնն ի Մակօնցայ։[33]

1492 Հրէայք համանգամայն հալածեալք եղեն ի Սպանիոյ։

1503 Իսմայէլ Սօֆի եմոյծ զնոր աղանդ իւր ի յաշխարհ։[34]

1517 Մարթին Լութէր սկսաւ մուծանել զիւր աղանդն ընդդէմ ուղղափառ եկեղեցւոյ։

1523 Ըռադօզ էառ սուլթան Սէլիմն։[35]

1526 Լուտովիկոս թագաւորն Մաջարաց սպանաւ ի Թուրքաց և կորոյս զիւր թագաւորութիւնն։[36]

1527 զօրքն Բօրբօնի ասպատակեցին զՀռոմ։[37]

---

1 B Եփեսոսի ժողովն ՆԼԳ։ 2 B Քաղկեդոնին ՆԾԵ։ 3 B ծնաւ Մահմետ ՇՂԵ։ 4 Б Խոսրով, 4-րդ տողը B չիք։ 5 Б սուտ մարգարէն Մահմետ, B եղև առաջին իշխան հագարացոց Մէհմետն ՈԻԱ։ 6 Б սնոտի օրինաց զղուռանն, B գրեաց զղուռանն ՈԻԷ։ 7 Б Երուսաղէմ։ 9 Б են փխ. եղեն։ 11 Б թագաւորութիւնն։ 12 Б 915 փխ. 975, թագաւորութեան։ 15 Б զկարգ։ 18 Б Հռոմայ։ 19 B ետ փխ. եդ, հայրապետութեան։ 20 Б իւրոյ չիք։ 21 Б Ֆրանցիոյ։ 23 Б Կոստնդինուպօլիս։ 24 Б Բօոնա։ 25 Б խոնթքարն, ձերպակալ։ 27 Б Կօրենպէրն, B ՌԴՃԶ փխ. 1480,Կօրինպերն։ 30 Б ի չիք, աշխարհ։ 31—33 Б ընդ փխ. ընդդէմ։ 32 B ՌԵՃԺԷ փխ. 1517, B ուղղափառ եկեղեցւոյ չիք։ 33 Б Ըռատօզ։ 34 Б Լուտովիկոս Մաճարաց։ 36 Б Բօրբօնի ասպա[տա]կեցին։

1575 եղև բաժանումն և մեծ աղմուկ խռովութեան ի Ջէնուայ վասն հնոյ և նորոյ ազգի և տոհմի։

1581 Հօլանդիայ ապստամբեցաւ ի Սպանիոյ։[38]

1582 Լատինացիք զնոր տոմար շինեցին։[39]

Արդ՝ աշխարհ զսկիզբն էառ ըստ Եբրայեցւոց ի մարտի ամսոյ, յաւուր կիրակէի։ Եւ ի յսկզբանէ աշխարհի մինչև ցայժմ, որ է թիւն մարդեղութեան փրկչին 1683, են ամք 6884։ Յառաջ քան զմարդեղութիւն բանին աստուծոյ էին ամք 5200։ Արդ՝ առաջին դարն զսկիզբն առնու ի ստեղծմանէ Ադամայ և անէ մինչև ի ջրհեղեղն. ներայսքան ժամանակի ոչ տեղեաց անձրև ի վերայ երկրի և ոչ կերաւ միս, և տևեաց զամս 2242։[40] || Երկ- 83բ րորդ դարն տևեաց ի Նոյէ մինչև ծնունդն Աբրահամու. և են ամք 943։[41] Երրորդ դարն լինի ի ծննդենէն Աբրահամու մինչև ի ծնունդն Դաւթի և լինին ամք 153։[42] Չորրորդ դարն առնու զսկիզբն ի Դաւթէ մինչև ի գերութիւնն Եբրայեցւոց ի Բաբիլօն և են ամք 485։ Հինգերորդ դարն ի գերութենէն մինչև ի ծընունդն Քրիստոսի և են ամք 598։ Վեցերորդ դարն, որ է վերջին, առնու զսկիզբն ի ծննդենէն Քրիստոսի և անէ ոււս վարդապետաց կարծեաց մինչև ի յեօթներորդ դարն, որ լինի եօթն հազար ամ և յայնժամ լինի վաղճան աշխարհի։ Եւ յետ 550[43] ամաց զկնի մարդեղութեան փրկչին Յիսուսի, ծնաւ Մահմէտն, և յետ 700 ամաց սկսաւ ազանդն Թուրքաց։

Ի թուին մարդեղութեանն Քրիստոսի 1358[44] ի յարևելս կոյս անկան առ ի վերուստ, ի յերկնից, այնքան բազմութիւնք շնչոց կենդանեաց ի յերկիր և ի նոյն ժամայն սատակեալք զազրալի և գարշելի հոտովք ապականեցին զօդն. և եղև սաստիկ մահ ապաբաժամ և տևեաց զամս երիս։ Եւ յետ այսր ամենայնի ի կողմանն հիւսիսոյ երևեցաւ զիսաւոր աստղ մի և ապա եկն հողմն տապախառն այնքան սաստիկ մինչ զի բազումք ի կենդանեաց մեռան։

Եւ ի Սպանիայ երևեցաւ սիւն մի հրեղէն ի յերկինս և եղև շարժ ահագին։

1378 առաւ Յերուսաղէմ ի թշնամեացն Քրիստոսի։

1383 գտին զարհեստ թօփի և թֆանկի. զայս գործ, քան զամենայն յառաջ, Վէնէտիկցիք ի կիր առին ընդդէմ Ջէնուիզաոոց։

1582 գտեալ եղև նոր աշխարհ, որ է յարևմտական Հնդստան ի Քրիստափորէ Կօլումպէ Ջէնուիզացւոց։[45] Եւ այլք ասեն եթէ ի թուին 1497 Ամէրիկոս Վէսպինճինոսն եգիտ զնոր աշխարհն Հընդկաց։

---

1 Ђ մեծ և, խռովութեան։ 2 B ՌԵՃՁԱ փխ. 1581։ 4 B ՌԵՃՁԲ փխ. 1582։ 6 կիւրակէի։ 7 որ է թիւն մարդեղութեան փրկչին 1683 չիք։ 12 ցծնունդն։ 14 են փխ. լինին։ 15 Յերրաեցւոց։ 16 և են չիք։ 17 568 փխ. 598, Ձ-երորդ։ 18 զսկիզբն։ 19 7 փխ եօթն։ 20 վախճան։ 21 և յետ չիք։ 22 ե սկսաւ ազանդն Թուրքաց որք են ամք 700։ 27 3 փխ. զերիս։ 29 մինչև։ 31 երկինս, 33 են ամք 1378 փխ, 1378, Երուսաղէմ։ 34 1582 փխ. 1383, այս, նախքան փխ. քան։ 35 Ջէնուբիզացւոց։ 36 1583[46] փխ. 1582։ 37 ջէնուիզացւոյ, թէ փխ. եթէ։ 38 ի թուին Քրիստոսի, Ամէրկիոս։

ԽՆ և այլք բազումք զարմանալիք որք եղեն ի վերայ երկրի, 83ա
զորոց զսակաւ ինչ շարագրեցաք աստ:

Ի թուին 1369 եղև այնպիսի մեծ զիղացումն Ջուրց ծովուն, մինչ զի ելեալ ի սահմանաց իւրոց ընդ 3000 քայլս և ապականեաց դրագում տեղիս։ Եւ զկնի երկրաշարժ, անձրև սաստիկ, կայծակունք և արար զնաւս բազումս։ Եւ ի Կոստանդինուպօլսի եղև այնպիսի մահ տարաժամ, մինչ զի սակաւ ոմանք մնացին։ Եւ ի յամսեանն Նոյեմբերի եղև ցուրտ սաստիկ սառնամանեաց ի բազում տեղիս, և ծովն Պոնտոսի պաղեցաւ մինչև ի 400 միլս. և յետոյ անեղեաց ի վերայ երկրի ձիւն 39 կանգուն և մնաց մինչև ի յամիսն փետրվարի. և ցամաքեցան գետք և աղբիւրք։ Եւ Թուրք անցին ընդ զբունս Կասրից ի Հայաստան։

Ի թուին 1520 անկան յերկնից 1200 քարինք մեծամեծք, մինչ զի մինն ի նոցանէ կշռէր 160 լտերս և այլքն ոմն 60 և ոմն աւելի և ոմն պակաս և ունէին զգոյն երկաթի և գոյն ծծմբոյ։

1471 Թուրքն էառ զՆեգրոպոնթ[17] և ետ բազում մնաս և գերութիւն քրիստոնէից։ Եւ ի յայսմ ամի ի Բրէշայ[18] կին մի ծնաւ զկատու և եկաց ամիսս վեց և մեռաւ։ Ներայսմ ամի եղև շարժումն մեծ, սրստումն, կարկուտ և կայծակունք յոյժ սաստիկ և ապականեաց զամենայն պտղաբերս և զբոլոր երկրի և սպան զբազումս ի կենդանեաց և ի մարդկանէ. և կարկուտքն այնքան մեծամեծք, մինչ զի մինն ի նոցանէ կշռէր լտերս 25։ Եւ քար մի անկաւ ի յերկնից, որ կշռէր լտերս 1000։

1494 եղև այնպիսի սաստիկ անձրև ի Իտալիայ, մինչ զի 400.000 մարդիկք ջրասուղեալք մեռան և բազումք քակտեալք աւերեցան։

1498 ի Միլան քաղաքի տեսին զերիս արեգակս. և ի գիշերի տեսին զբազում հեծեալս, ընդ ընթանալն ի յօդս և բազումք մարդակերպք կենդանիք պատերազմել ընդ || միմեանս։ Եւ կին 83բ
մի ծնաւ զերկուս զաւակս, կցեալս ընդ միմեանս, զարու և զէգ և երկաքանչիւր ունէր զԴ (4) բարձս և զԴ (4) բազուկս։ Եւ ի նոյն ժամանակի ծնաւ կին մի ի Ցալամանս գորդի, որ ունէր զԲ (2) գլուխս, զԴ (4) ձեռս և զվեց զականջս։ Եւ կին մի եղև ընդ առն իւրում զամս Ժ (10) և յետոյ փոխեցաւ ի բնութենէ կանացի և եղև այր։

1502 Լուտովիկոս[19] թագաւորն Ֆրանցացոյ զուխտ եա ընդ թագաւորին Սպանիոյ, առնուլ զթագաւորութիւնն Ֆերդինանդոյ, թագաւորին Նապօլոյ և բաժանել ընդ իւրեանցս։ Եւ երկաքանչիւր առնուլ զբաժին իւր։ Եւ ի բաժանելն ոչ միաբանե-

1 և ԵՆ։ 2 սակաւ 3 այս եղև ի թուին 1369 փխ. ի թուին 1369։ 3 զկղեցումն։ 4 մինչև։ 6 Կոստնդնպօլսի։ 7 Ի չիք։ 8 հոգահմբերի։ 12 Կապկոց։ 14 մինչև, զի չիք։ 15 հոաւ։ 17 Ի Բրէշայ չիք։ 18 կատու, 6 փխ. վեց։ 19 կարկուտ չիք։ 21 ի [կենդանեաց] չիք։ 22 Նոցունց փխ. Նոցանէ։ 23 ի չիք։ 24 1498 թուին փխ. 1494, ի չիք։ 25 բազում, գլխոդրայք քակտեալք։ 28 լագումս։ 29 պատերազմիլ։ 31 իւրաքանչիւր։ 32 զոր, Բ փխ զԲ։ 33 զՉ փխ. զվեց։ 34 10 փխ Ժ։ 35 և եղև այր ամենայն անգամօք։ 36 Ֆրանցացոց, եղեալ փխ. եաւ 37 Սպանիոյ։ 38 բաժանելն, իւրեանս։

*ցան և յարեան ի վերայ միմեանց ի պատերազմ և յաղթեցաւ թագաւորն Ֆրանցոյ և ձեաց թագաւորութիւնն ի ձեռն թագաւորին Ըսպանիոյ։*[50]

*1515 սուլթան Սէլիմ ձերբակալ արար զՄսրա սուլթանն և էառ զամենայն թագաւորութիւնս նորա։*[51]

*1541 հինգերորդ Կառլօ թագաւորն*[52] *մեծաւ զօրութեամբ զընաց ի վերայ Ջազայիրին, զմեծ նաւակածութիւնս կրեաց՝ 70 նաւք ընկղմեցան և դարձաւ։*

*1566 ի Ֆրանցայ երևեցաւ կենդանակերպ մի աննման կենդանեաց, որ ունէր զգլուխ մայմոնի, զականջս ընծոյ, զեղջիւրս խոյոյ, զաչս բուի, զատւա օձի և զմարմին մարդոյ, բայց թուամորթ և ոաք ձիոյ։ Ի նոյնում ամի ի յերկիրն Ինկլիզաց լեառն մի մեծ վերացաւ ի տեղւոջէ իւրմէ և եկաց*[53] *յայլում տեղի։ Եւ ի Սպանիայ կին մի յետ 16 ամի ի կանացի բնութենէ փոխեցաւ ի յայրական բնութիւն ըստ ամենայն անդամոց։*

*1568 ի Տրապիզօն քաղաքի, մերձ առ ծովն Պոնտոսի. յաւուր միում, ի յերրորդ ժամուն ի լինիլ օդոյն պարզ և պայծառ երևեցան 3 արեգակք։ Եւ ի վերա նորա աղեղ ամպեղէն և կացին և ՚Ռացին զերիս ժամս։ Եւ յետ այնօրիկ մինն չոզաւ դէպ յարևելս և միւսն յարևմուտս և ձեաց առաջի արեգակն ի || բնական ընթացմունս իւր։ Եւ յետ ոչ բազում աւուրց ի նոյն տեղւոջն ուր երևեցան արեգակքն երևեցաւ լոյս մեծ և պայծառ և խաչ մի ընդ լուսոյն և աստղ մի յոյժ մեծ և պայծառ և այս նշան եղև ի մէջ գիշերի։* 84ա

*1571 Դոնջիվան զի Աւուստրիոնն, եղբայր թագաւորին Սպանիոյ միաբանեալ հետ Փիոյ փափին և Վէնէտիկացւոց, ել բազումք նաւօք ընդդէմ Թուրքաց և յաղթեաց նոցա քաջապէս և դարձաւ յաղթութեամբ։*[54]

*1577 թագաւորք Փորթուկալին բազում անգամ, բազում զօրօք յարեան ի վերայ Արաբացւոց, որ մերձ է առ Նոսա և կոչին Մարօքօ և Ֆէսա և բազում պատերազմ պատերազմեցան, բայց ոչ ինչ օգտեցան և անկան անդրէն 3 թագաւորք և զօրք բազումք իւրեանց։ Երկիրն այն Աֆրիկա կոչի։*

Եվ և այլք ինչք բազում զարմանալիք, զորոց զսակաւս շաբաղրեցից յետ ծննդեանն Քրիստոսի:

*Եւ յաւուր ծննդեանն Քրիստոսի, որ էր օր կիրակէի, ի Հռոմ աղբիւր մի բղխեաց զձէթ զերիս տիւս և զերիս գիշերս։ Եւ երևեցաւ շուրջ զարեգակամբն մանեակ մի ոսկի, և յետոյ երևեցան 3 արեգակք և յայնմ աւուր անկաւ տաճարն խաղաղութեան և բագինն Ռոմուլայ, որ հիմնադիր էր Հռոմայ։ Եւ երևեցաւ աստղ*

*3 Սպանիոյ։ 6 Կարլոս 7 գնաց։ 8 դարձաւ յետոս 9 Ֆրանցիայ։ 16 գեղջուրս։ 12 և ի նոյնում։ 14 և ի չիք։ 15 այրական։ 16 Տրապիզոն, ծովն։ 17 յօդոյն։ 18 նորա չիք։ 18 և [կացին] չիք։ 19 չոքաւ։ 25 Այս ի թուին 1571 փխ. 1571, Դոնջիվանի զի Աւուստրիոնն։ 26 զհետ, բազում։ 27 Նաւուք, նոցայ։ 28 յաղթութեամբն։ 29 Այս եղև թուին 1577 փխ. 1577։ 33 Աֆրիկայ։ 34 բազումք։ 38 եր[և]եցաւ։ 40 Հռոմուլայ։*

մի յոյժ պայծառ և լուսաւոր ի վերայ Բեթլեհեմի, ի վերայ մսրոյն, ուր ծնաւ Քրիստոս և ամենայն բադինք ի Ցեզիպտոս անձեալ յերկիր կործանեցան։

200 ի Հռոմայ երևեցան ի յօդս բազում բադինք. որք պատերազմէին ընդ միմեանս և լռելի լինէին ճայթմունք և բոնբիւնք զարհուրելիք և կայծակ էհար զդիս Լուսնթադի և մանրեաց և զԹէատրօնն Պօնփէի հրդեհեալ փլոյց։ Եւ ի նոյնում ժամանակի ի Կանդիայ[ն] դին Լուսնթադի խօսեցաւ մարդկային բարբառով։ Եւ ծնաւ անդ մանուկ մի, որ ունէր զԲ (2) գլուխս։ Եւ ի Հռոմ եղև շարժ մի մեծ և քակտեցան տունք և ապարանք աւելի քան զհազար։ Եւ ծովն ելեալ ի սահմանաց ծածկեաց զբազում քաղաքս։ Եւ արեգակն խաւարեցաւ բազում աւուրս մինչ զի լուսով ճրագի շրջէին մարդիկք։

Եւ յերկրաշարժէ դեօթն քաղաքս տապալեաց, ‖ շուրջ զԱնտիօք 84բ քաղաքաւ։ Ե[ւ] ի Ֆրանցիայ տեղեաց քար յերկնից։ Եւ ի Ասորեստան երևեցաւ խաչ մի մեծ ի բազում աւուրս ի յօդն։

Եւ ի Անդրիանուպօլսի տեղեաց արիւն յոյժ սաստիկ։ Եւ ի Արաբիայ տեղեաց բուրթ բազում յոյժ։

326 եղև սաստիկ զարհուրելի երկրաշարժ ընդ ամենայն երկիր և քաղաքն Նէսիայ բոլորովին քակտեցաւ այնպէս, մինչ զի ոչ ինչ նշան մնաց քաղաքի և ծովն ելեալ ծածկեաց։

Եւ ի Սիճիլիայ կղզոյն բազում քաղաքք զանբաւելի վնաս կրեցին։ Եւ ի Կօստանդինուպօլսի եղև յոյժ սաստիկ հողմուռուցիչ և ամպահարութիւն և մրրիկ, անձրև ռատտադին, մինչ զի սպտն աւելի քան զԺՌ (10,000) մարդ։

Եւ ի Յերուսաղէմ տաճարն Սողոմոնի անկեալ քակտեցաւ։ Եւ ի յերկրորդում աւուր էջ հուր երկնից և էկեղ զնա, մինչև զերկաթեղէն զինչս կիզեալ աճի[ւ]ն դարձոյց։ Եւ երկուցեալ հրէիցն բազումք դարձան ի հաւատս Քրիստոսի։

172 ի Կոստանդինուպօլսի եղև շարժումն այնպիսի սաստիկ մինչ զի քաղաքին կէսն քակտեցաւ. ի քաղաքին Անթէպրատայ, ի Ռումէլի յերկրին, ի յառաւօտու ժամուն մինչև ցերեկոյեան ժամն տեղեաց բուրթ ի վերուստ՝ յերկնից և եղև խաւար բազում աւուրս։ Եւ ապա երևեցաւ սիւն մի հրեղէն ի յերկինս թռուցեալ և երկինքն երևէր իբրև հուր վառեալ։ Եւ Իտալիայ եղև շարժ և կործանեաց բղբազում քաղաքս։ Եւ քաղաք մի ի Կալապրիայ ինքնըստինքեան այրեցաւ զերիս աւուրս և ոչ եղև հնար անցուցանելոյ զհուրն։

1 Բէթղհէմի։ 3 երկիր։ 4 200 չիք։ 5 ռոմբիւնք։ 7 Պոմփէի։ 9 Հռոմ։ 11 սահմանեաց։ 14 երկրաշարժէ, 7 փխ. զեօթն։ 15 երկնից։ 17 ի [Անդրիանուպօլսի], չիք։ 18 յԱրաբիայ, բուրբ փխ. բուրթ։ 10 360 օր, երկրաշարժութիւն։ 20 քակեցաւ։ 21 ի քաղաքի, ծովն։ 22 ի չիք, Սիճիլեա, քաղաք։ 23 ի չիք, Կոստանդինոպօլիս, հողմուռուցիկ, սաստկադին։ 20 Երուսաղեմ, քակեցաւ։ 27 ի [յերկրորդում] չիք, երկրորդումն, մինչ։ 28 և չիք։ 30 Կոստնդնուպօլսի։ 31 ի քաղաքին, քակեցաւ։ 32 ժամոյն։ 33 բուրբ փխ. բուրթ, երկնից։ 35 զհուր,․ ի Իտալիայ։ 36 զբազում։

432 ի Կոստանդինուպօլսի եղև շարժ և անհաց դամխոս 6։ Եւ յետ այնորիկ երևեցաւ մանուկ մի սքանչելեօք, որ ասէր թէ պարտ է երգել զերգս զայս առ ի դադարեցուցանել զշարժն՝ «Սուրբ աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, ողորմեա մեզ»։[56] Եւ ըն[ու] երգելն նոցա զայս երգ, նոյն ժամայն դադարեցաւ շարժն։ Եւ ի Արաբիայ տեսին զբազում շունչ կենդանի ի յօդս։ Եւ ի գաւառին Ֆլօրէնցոյ, յուռւր մխում ի վազորդենէ մինչև ‖ ցերեկոյ, բղխեաց արիւն ի յերկրէ, ի քաղաքին որ կոչի 85ա Թոսկանայ։ Ի Կոստանդինուպօլսի տեղեաց աճիւն։

532[57] ի Միլան եղև սով մեծ, մինչ զի կանայք զօրդիս իւրեանց կերան։ Եւ ի քաղաքին, որ կոչի Վէրչէլում ծնաւ էշ մի, որ ունէր զերեսս մարդոյ և զականջս խշոյ։

530 ի Իտալիայ եղև սով սաստիկ, մինչ զի մարդիկ զմիմեանս ուտէին և ծնօղք՝ զզաւակս։ Եւ ի Հռոմ ձայն սոսկալի լինէր և արեգակն ամ մի սակաւ մի տայր զլոյս իւր և եղև սով ի յընթանուր տիեզերս։

595 ի Հռոմ եղև մահ։ Եւ ի յօդս երևէին մարդիկ սպառազինեալք, որք պատերազմէին ընդ միմեանս։ Եւ եղև հողմ սաստիկ և ապականեաց զբազում շինուածս և զբնակութիւնս և Իտալիայ մնաց սակաւ բնակութիւն։

547 ի գաւառին Թոսկանոյ, ի Իտալիայ տեղեաց արիւն ի յերկնից ի միջօրէի։ Եւ արեգակն խաւարեցաւ և երկիր երէրէր։ Եւ ի Հռոմ ծնաւ երեխայ մի, որ ունէր զԲ (2) գլուխս և զմօրուս։ Ի Կոստանդինուպօլսի, ի Կալապրիայ և ի յայլ տեղեաց ցորեան և ի Հռոմ ոսւնկք։

761 եղև այնքան սաստիկ ձմեռն և ցուրտ ահագին թէ ի յարևելս և թէ յարևմուտս, մինչ զի ծովք և գետք, ծովակք և լիճք սառեցան և բազումք մեռան։ Եւ ի յամառնային եղանակին եղև այնքան սաստիկ տօթ և ջերմութիւն, մինչ զի գետք և աղբիւրք ցամաքեալ չորացան, նըմանապէս բոյսք և տունկք. և մեռան բազումք ի կենդանեաց և ի մարդկանց։

778 ի Յասորեստան մի օՖն անհաւատ հրէա, բորբոքեալ ի բարկութենէ ընդդէմ քրիստոնէից, տեսեալ զպատկերն Քրիստոսի՝ էհար զնա և առ ժամայն ել արիւն։ Եւ առեալ պահէ ի յամանի միոջ, զի մի ոք գիտասցէ և գհեղեալն ի յերկիր սրբեալ ժողովէ։ Եւ ի մի յաւուր կամեցեալ զզօրութիւն արեանն Քրիստոսի փորձել, թանայ զմի մասն ի յարիւնն և մերձե ‖ ցուցանէ առ ճակատն հիւանդի ումեմն, որ իսկոյն առողջացեալ նստի։ Եւ յետ 85բ

1 Կոստանդնուպօլսի։ 4 սուրբ և անմահ, որ խաչեցար վասն մեր ողորմեայ։ 7 վաղիրդենէ։ 9 Կոսանդնպօլիս։ 10 որդիս։ 13 ի չիք, մարդիկք։ 14 ծնողքն։ 15 ամի, ի չիք։ 16 ընթանուր։ 17 ի [յօդս] չիք, մարդիկք։ 18 որ, հողմն։ 19—20 և ի Ցիտալիայ։ 21 ի [Իտալիայ] չիք։ 21—22 ի [յերկնից] չիք։ 22 երկնից, մէջօրէի։ 23 տղայ փխ. երեխայ։ 23—24 զմորուսքս։ 24 և Կոստնդնապօլսու, ի [Կալապրիայ] չիք, և [յայլ] չիք։ 28 յամառային։ 30 աղբիւր ցամաքեալք։ 32 ոՖն, հրէայ։ 35 և [գհղեալն] չիք։ 37 թանա, յարուննե։ 37—38 ճակատ։

*այնորիկ բազումք հիւանդք և ախտաժէտք օծմամբ արեանն առողջացեալք լինէին, և անեալ հրէիցն բազումք հաւատացին ի Քրիստոս։ Եւ զայն արիւնն բերեալ յԻտալիայ ի քաղաքն Մանթուայ, ի յեկեղեցի սրբոյն Անդրէի առաքելոյն հանգուցին անդ։*

*832 ի Ֆրանցիայ եղև սաստիկ հողմ մրրկախառն, կարկուտք և կայծակունք և որոտմունք։ Կարկուտքն կարի մեծամեծք այնքան, մինչ զի մինն երկոտասան ոտից չափով և էր կարծր, որպէս մարմար և սպանին զբազումս ի կենդանեաց և ի մարդկանց։ Ի Պօնօնիայ անկան ի յօդոյն բազում օձք, և ի յօդս երևէին բազում այլակերպք կենդանիք, որք թռչէին։*

*890 ի Ֆրանցայ ծնաւ տղայ մի, որ ունէր զձեռս շան և զականջս իշոյ և զոտս խոզի։ Եւ ի Վիթէրպայ, որ մերձ է Հռոմայ, ծնաւ կին մի զկատու։*

*1160 Հռոմայ առաւ ի Կոթացւոց և ապստամբեցաւ և մեծ մասն այրեցաւ։*

*1162 ի Միլան եղև այնքան մեծ ձմեռն և ձիւն սաստիկ մինչ զի 400,000 անձինք մեռան. և չորացան ամենայն պտղաբերք և բոյսք։*

*1173 ի սեպտեմբերի ամսոյն երևեցան 3 լուսնեակք և 3 արեգակք։[8] Ի Սիճիլիայ եղև այնքան մեծ շարժ, մինչ զի բազում քաղաքք տապալեցան ի հիմանց։*

*1180 սուլթանն Եգիպտոսի էառ զԵրուսաղէմ։[9] և զԱսորեստան։*

*1203 Վէնէտիկցիք առին զԿանդիայ և զԴ (4) ձի ձուլեալ ի պղնձոյ, բերին ի Կոստանդինուպօլսոյ և եդին ի վերան եկեղեցւոյ սրբոյն Մարկոսի և կան մինչև ցայսօր. նաև զմարմին սրբուհւոյ կուսին Լուցիայ։*

*1223 ի յերկիրն Թօսկանայ, Գրանզուքի, տեղեաց քար ի յերկնից և շարժ մեծ և սպան 300.000 զանձինս։*

---

*1 բազումք 3 ի Հռոմ ի Ցիտալիայ, ի [քաղաքն] չիք։ 4 եկեղեցի։ 6 հողմ։ 7 զի կարկուտքն։ 9 կածր, մարմարեայ։ 13 առւա, Վէթէրպայ։ 14 կատու։ 15 այս եղև ի թուին 1160 փխ. 1160, և առաւ Հռոմայ։ 17 այս եղև ի թուին 1102 փխ. 1162, ի չիք, Մելան։ 20 այս եղև ի թուին 1173 փխ. 1172, 28 լուսինք։ 21 Սիճիլայ։ 25 այս եղև ի թուին 1303 փխ. 1203, Վէնէտկցիք, զԿանդիա, զչորս փխ. զԴ, ձու[լ]եալ։ 26 Կոստնդնպօլիսոյ։ 27—28 սրբուհոյ։ 29 այս եղև թուին 1223 փխ. 1223, Գրանտուքի։*

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Բնագրում տարեթվերը գրված են կարմիր թանաքով։

2. B տարբերակում տարեթվերը սկզբից մինչև աշտարակաշինությունը, հակառակ A բնագրի, գրված են նախադասության վերջում. այսպես «Յոբէլ եդիտ զվրանս և Յորալ զերաժըշտականութիւն՝ զքնար և զտաւիղ 170» փոխանակ՝ «170 ամին Յօբէլ եդիա զվրանս և Նոբալ զերաժշտութիւն՝ զքնար և զտաւիղ»։ Այսպես պատմում է նաև 250ա և այլ էջերում։

3. Բնագրում «զԱմամանեակ» ձևով։

4. Սույն ընդարձակ հատվածը տես և հմմտ. «Մ. Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Ա, գլ. Ժ—ԺԱ։

5. Բնագրում «ի»-ի փոխարեն գրված էր «և»։

6. B տարբերակում տարեթվերը ընդհանրապես գրված են նախադասության վերջում։

7. Տես և հմմտ. Մ. Խորենացի, նույն տեղ, գիրք Ա, գլ. ԺԲ—ԺՁ։

8. Մ. Խորենացին այլ բան է գրում. «Այլ անդէն իսկ ի կենդանութեան իւրում Շամիրամ զծնեալ ի Նուարդայ սիրելւոյ կնոջէն Արայի, որ էր երկոտասան ամաց մնացեալ ի մահուանն Արայի, վասն առաջին իւրոց խանդաղատանացն որ առ Արայն Գեղեցիկ, կոչէ զանուն նորա Արայ...» (գիրք Ա, գլ. Ի)։

9. Մ. Խորենացու համաձայն Արա Գեղեցիկի որդու Արայի որդին եղել է Անուշավան Սոսանվերը (նույն տեղ, գիրք Ա, գլ. Ի)։

10. Հմմտ. «Մ. Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Ա, գլ. ԻԱ, ԻԲ։

11. Երեմիա ԾԱ, 27։

12. «Մ. Խորենացւոյ Պատմութիւն Հայոց», գիրք Ա, գլ. ԻԲ։

13. Նույն տեղ, գիրք Ա, գլ. ԻԴ—ԼԱ։

14. Բնագրում սույն տարեթիվը գրված է փակագծի մեջ, իսկ մոտը գրված է «1802», այնուհետև վերջինիս վերևում գրված է «սղ[ա]լ», այդ պատճառով վերցրինք սկզբնական՝ «3802» թվականը։

15. Բնագրում սույն տողը գրված է կարմիր թանաքով։

16. Հրեական ապստամբությունը ճնշելու նպատակով Ներոնը 67 թ. (մ. թ. ա.) Վեսպասիանոսին ուղարկում է Պաղեստին։ Վերջինս Պաղեստինում մնում է մինչև 69 թ. (մ. թ. ա.) հուլիսը։ Ներոնի սպանությունից հետո Վեսպասիանոսը վերադառնում է Հռոմ, Երուսաղեմի պաշարման ղեկավարությունը հանձնելով որդուն՝ Տիտոսին, որն այն գրավում է 70 թ. (մ. թ. ա.)։

17. Հեղինակը սույն վկայությամբ եթե նկատի ունի Կոստանդին մեծի Միլանի էդիկտը (313 թ.), ապա այն ստույգ չէ, որովհետև Կոստանդին մեծն իշխել է 306—337 թ. թ.։

18. Նիկեայի տիեզերական առաջին ժողովը տեղի է ունեցել 325 թ., որին մասնակցել են նաև Հայաստանից Գր. Լուսավորչի որդին Արիստակեսը և Ակրիտեսը (հմմտ. Markwart „Die Entstehung der armenischen Bistumer" Roma, 1932, s. 199—209.

19. Կոստանդնապոլսի տիեզերական ժողովը տեղի է ունեցել 431 թ.։

20. Հեղինակը նկատի ունի Հռոմի նվաճումը վեստգոթերի թագավոր Ալարիխի կողմից։ Ալարիխը Հռոմը գրավել է Ստիլիխոնի սպանությունից հետո, 410 թ. օգոստոսի 24-ին։

21. Եփեսոսի տիեզերական ժողովը տեղի է ունեցել 431 թ.։

22. Քաղկեդոնի տիեզերական ժողովը տեղի է ունեցել 451 թ.։

23. Արաբները 636 թ. աչնանը Յարմուկ գետի մոտ ջախջախեցին բյուզանդական կայսր Հերակլի բանակները և 638 թ. գրավեցին Երուսաղեմը, ապա Դամասկոսը։

24. Կարլոս Մեծի թագադրությունը տեղի է ունեցել 800 թ. դեկտեմբերի 25-ին, նրա իշխանությունը տևել է մինչև 814 թ.։

25. Բնագրում «ընդ իրեանց»-ը կրկնված է։

26. Համաձայն „Польский летописец с 964 по 1764 г. или хронологическое изображение происшествий королевства польскаго, со включением как Российской, так и других сопредельных Польше Держав, краткой истории" (перевел с французскаго языка капитан Иван Одинцов в Санкт—Петербурге, 1782 года) աշխատության լեհերը քրիստոնեություն ընդունել են Մեչիսլավ թագավորի ժամանակ 965 թ., այնտեղ կարդում ենք. „в 964 году Мечислав бракосочетался с княжною Богемскою Домбровкою, с тем чтобы принять христианскую веру. В 965 года Мечислав крестился", стр. 4.

27. Հեղինակն ըստ երևույթին նկատի ունի Գերմ. կայսր Օտտոն I-ի (936—977 թ. թ.) Իտալական արշավանքը, սակայն Հյուսիսային Իտալիայի նվաճումը տեղի է ունեցել 951 թ.։ Իսկ Հռոմը Օտտոն I-ը գրավել է 961 թ. և վերականգնել Հռոմեական արևմտյան կայսրությունը։

28. Արպադների իշխանական տան ներկայացուցիչներից Ստեփան I Արպադը 1000 թ. ընդունեց թագավորի տիտղոս, իշխելով 997—1038 թ. թ.։

29. Հեղինակն ըստ երևույթին նկատի ունի Կորդովայի խալիֆաթի կենտրոն Կորդովայի գրավումն իսպանացիների կողմից, սակայն այն տեղի է ունեցել 1236 թ.։

30. Հռոմեական պապերի «Ավինիոնի գերությունը», ինչպես հայտնի է, տեղի է ունեցել 1308—1378 թ. թ.։

31. Լենկ-Թեմուրի և Բայազիդ I-ի զորքերի միջև ճակատամարտը տեղի է ունեցել Անկարայի մոտ, 1402 թ. հունիսի 20-ին։

32. Ինչպես հայտնի է օսմանական սուլթան Մուհամմեդ II-ը Տրապիզոնը գրավել է 1461 թ.։ Բնագրի «Կալթիան» աղավաղումն է Տրապիզոնի կայսր Կալո Իոհանի (Հովհան IV) անվան (համեմ. Կատերինո Զենո. «Ուղեգրություններ», հ. Ա, էջ 154)։

33. Հով. Գուտենբերգի կողմից տպագրության գյուտը տեղի է ունեցել Մայնցում շուրջ 1450 թ.։ Բնագրի «Մակոնցան» վերաբերում է Մայնց քաղաքին, Ֆրանկֆուրտի (Մայնի վրա) մոտ։

34. Հեղինակը նկատի ունի Սեֆյան դինաստիայի հիմնադիր շահ Իսմայիլին, նա պատկանում էր իսլամի Շիա ուղղությանը, որը դարձավ Սեֆյան դինաստիայի պետական կրոնը։

35. Սույն վկայությունը հավանաբար վերաբերում է Ռագուզա քաղաքի նվաճմանը, որը գտնվում է Ադրիատիկ ծովի ափին և հիմա կոչվում է Դուբրովնիկ (Հարավ-Սլավիայում)։

36. Հեղինակը նկատի ունի 1526 թ. թուրքերի և հունգարների միջև տեղի ունեցած Մոհաչի ճակատամարտը, որտեղ հունգարները պարտվեցին, իսկ նրանց թագավոր Լուդովիկոս II-ը սպանվեց։

37. Հեղինակը նկատի ունի Ֆրանսիայի կողմից 1494—1559 թ. թ. կազմակերպված իտալական արշավանքներից մեկը, որի ժամանակ՝ 1527 թ. մայիսի 6-ին Հռոմը կողոպտվեց (Sacco die Romma):

38. Խոսքն Իսպանիայի դեմ ուղղված նիդեռլանդական ապստամբության մասին է, սակայն այն սկսվել է 1572 թ., երբ ծովային գյոզերից մեկը՝ 1572 թ. ապրիլի 1-ին գրավեց Բրիլ քաղաքը, որի գրավումն ազդանշան հանդիսացավ ընդհանուր ապստամբության։

39. Այս մասին մանրամասն տես Օրմանյան «Ազգապատում», էջ 2274—2275։ Այստեղից ընդհատվում է B տարբերակը։ Շարունակվող տարընթերցվածքները վերաբերում են Б տարբերակին, ուստի տարընթերցվածքներից առաջ Б-ն չենք նշի։

40. Բնագրում սույն թվի մոտ գրված է «սղալ է», միաժամանակ լուսանցքում ավելացրել են «4000»։

41. Բնագրում սույն թվի մոտ գրված է «սղալ է», միաժամանակ լուսանցքում ավելացրել են «1656»։

42. Բնագրում սույն թվի մոտ գրված է «սղալ է», միաժամանակ լուսանցքում ավելացրել են «194»։

43. Բնագրում սույն թվի մոտ գրված է «սղալ է», միաժամանակ լուսանցքում ավելացրել են «595»։

44. Բնագրի Б տարբերակում այստեղից մինչև 1520 թ. տարեթվերը դրվում են վկայությունների վերջում։

45. Սույն վկայությունը բացահայտ սխալ է, այն կատարվել է 1492 թ. հոկտեմբերի 12-ին։

46. Բնագրում գրված է «1382», հավանաբար գրչի կողմից, ուղղված է «1383»։

47. Էվրեյա կղզին, որը նվաճեց Մուհամմեդ II-ը։

48. Քաղաք Լոմբարդիայում Միլանի և Վերոնայի միջև։

49. Լուդովիկոս XII-ը, որն իշխել է 1498—1515 թ. թ.։

50. Խոսքը վերաբերում է 1494—1559 թ. թ. իտալական պատերազմների առաջին շրջանին, որը մղվում էր Ֆրանսիայի և Իսպանիայի կողմից Իտալիան նվաճելու համար։

51. Խոսքը վերաբերում է Սելիմ 1-ի գրավումներին։ Իրականում Սելիմ 1-ը մամլյուկներից Սիրիան, Արաբիան, Եգիպտոսը գրավել է 1517 թ. (Համմտ. Лэн-Пуль „Мус- династий" стр. 160—161.)։ Եգիպտոսում այս ժամանակ իշխում էր մամլյուկների Բուրջի դինաստիայի վերջին ներկայացուցիչ Աշրաֆ Թուման բեյը 1516—1517 թ. թ.

52. Իսպանական թագավոր Կարլոս 1-ը իշխել է 1516—1555 թ. թ., որը միաժամանակ իշխել է նաև Գերմանիայում Կարլոս V անվամբ 1519—1555 թ. թ.։

53. Բնագրում «եկայս» ձևով։

54. Հեղինակը նկատի ունի 1571 թ. հոկտեմբերի 7-ին Լեպանտոի ծոցում տեղի ունեցած ծովային նշանավոր ճակատամարտը, որտեղ թուրքական նավատորմը ջախջախվեց և կապուտան փաշան (ծովակալ) գերվեց դաշնակից՝ իսպանական, Վենետիկի և պապի, ուժերի կողմից, որոնց գլխավորում էր Դոն Ժուան Ավստրիացին։

55. Կրետե կղզու գլխավոր քաղաքը, որի անունով էլ հաճախ կոչում են կղզին։

56. Սույն հատվածը գրված է կարմիր թանաքով։

57. Պրոֆ. Ա. Աբրահամյանը ենթադրում է, որ սույն և հաջորդող մի քանի տարեթվերի հազարավոր ցույց տվող թվանշանը պակասում է գրչի հանցանքով, ուստի նա առաջարկում է այդպիսի տարեթվերին ավելացնել հազարավոր ցույց տվող թվանշանը, այսպես՝ բնագրի 532, 536, 595 և այլ տարեթվերը նա կարդում է 1532, 1536, 1595 և այլն (տես «Մատենադարանի գիտական նյութերի ժողովածու», № 1, 1941, էջ 208)։ Պրոֆ. Աբրահամյանի ենթադրությունը սխալ է երկու պատճառով. նախ՝ վերոհիշյալ թվերի շարքում գտնում ենք 778, 832, 890 և այլ տարեթվեր, որոնց հազարավոր ցույց տվող թվանշան եթե ավելացնենք, կստանանք 1778, 1832, 1890, մինչդեռ ինչպես արդեն ցույց ենք տվել, սույն ժամանակագրությունը կազմվել է 1683 թ.։ Այլ բան է, եթե պրոֆ. Աբրահամյանը առաջարկեր ավելացնել, ասենք, 551 տարի մինչև հազարամյակը։

Երկրորդ՝ հեղինակը ենթավերնագրում գրում է, որ «են և այլք ինչք բաղում զարմանալիք ղորսց զսակաւս շարադրեցից յետ ծննդեանն Քրիստոսի» և այնուհետև զարմանահրաշ դեպքերը Քրիստոսի ծննդյան օրվանից հաջորդաբար թվարկելով հասցնում է մինչև XIII դարի առաջին քառորդը։ Այսպիսով բնագրում գրված թվերը կարծում ենք նույնությամբ էլ մնալու են։

58. Սույն վկայության նման (Համմտ. վերևում էջ 273, 274) մի տեղեկության էլ հանդիպում ենք հետագայում,ականատեսի կողմից արձանագրված, որը պահվել է Մատենադարանի № 3050 ձեռագրում, որտեղ կարդում ենք. «Գրեցաւ ՌՃԽԸ (=1699) թվին, յորում ամին տեսաք Գ (3) ար[ե]գակն» (էջ 225 բ)։

59. Եթե խոսքը վերաբերում է Սալահեդդինի կողմից Երուսաղեմի գրավմանը, ապա այն տեղի է ունեցել 1187 թ. հոկտեմբերի 3-ին։ (Տես վերևում, էջ 77, 92, ծանոթ. 28)։

## XIX

## ԱՆԱՆՈՒՆ ՎԱՆԵՑՈՒ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVII Դ.)

Սույն ժամանակագրությունը ծավալով մեծ չէ. այն գտնվում է № 4618 ժողովածուի 99-րդ ա էջում, որը գրված է անվարժ նոտր գրով և սկսվում է 1695 թվի հոկտեմբերի 25-ին գիսավոր աստղի երևալու վկայությամբ։ Չնայած ժամանակագրությունը վերջանում է 1692 թ. ապրիլի 12-ին տեղի ունեցած արևի խավարման հիշատակությամբ, սակայն նկատի ունենալով դեպքերի ժամանակագրական կարգը, այն կարող ենք համարել սկիզբը։ Եվ որովհետև ժամանակագրության նախավերջին հատվածը վերաբերում է 1701 թ. հունիսի 1-ին տեղի ունեցած երկրաշարժին, կնշանակի ընդգրկված է 10 տարվա անցուդարձ՝ 1692—1701 թվերի շրջանում։ Ժամանակագրության հեղինակը իր վկայությունների մեջ մի քանի անգամ հիշում է իր մասին. այսպես՝ հեղինակր 1699 թվին լինում է Դիադինում, որտեղ իր տեսածի մասին հիշատակում է «... աչօք մերօք տեսեալ տղչիկ մի վեց ամեայ, իբր կատարեալ երիտասարդ պիղով և մորուսով...» կամ 1701 թվի հունիսի 1-ի երկրաշարժի առթիվ հեղինակը դրում է. «... ես վախեցայ թէ աշխարհս կործանի, բայց ատծով վնաս չեղև», այլ հատվածներում ևս հանդիպում են նման վկայություններ։ Այս և այլ հանգամանքները թույլ են տալիս սույն ժամանակագրությանը վերաբերվել որպես ստույգ և վստահելի սկզբնաղբյուրի։

1699 թ. սեպտեմբերի 13-ին տեղի ունեցած արևի խավարման մասին հեղինակր գրում է «... ամենայն ազինք ելաք ի թափօր ի Վան քաղաք և լալով աղաչեցաք զաստուած...»[1] (Ընդգծումը մերն է—Վ. Հ.)։

Ինչպես այստեղ, այնպես էլ ուրիշ հատվածներում հեղինակն անդրադառնում է Վանում տեղի ունեցած դեպքերին, այս փաստերը մեզ ենթադրել են տալիս, որ նա վանեցի է։ Ժամանակագրության հատկապես մի քանի տվյալները պատմական որոշ հարցերի լուսաբանության համար ունեն բացառիկ նշանակություն։ Այսպես՝ Ստեփանոս Ջուղայեցու կաթողիկոս դառնալու, բանտարկության և մահվան հանգամանքների մասին Օրմանյանի հաշվումները սխալ են ստացվում, նա կարծում է, թե Ստ. Ջուղայեցին կաթողիկոս է եղել 1695—1696 թ. թ.,[2] բանտում մնացել երկու տարի և այլն։

Մինչդեռ այլ վկայություններ է տալիս դեպքերին ժամանակակից մեր հեղինակը. նա գրում է. «Դարձեալ ի թվին ՌՃԽԵ (1696) անկաւ Նահապետն ի

---

[1] Այս, ինչպես և 1692 թ. արևի խավարման վկայությունները հաստատվում են մեկ ուրիշ վանեցի ժամանակագրի վկայություններով, տես՝ ներքևում, XXV ժամանակագրություն։

[2] «Ազգապատում» էջ 2674։ Ըստ Ալիշանի՝ 1697—1698 թ. թ. («Այրարատ», էջ 231)։

կաթողիկոսութենէ և աւրհնեցաւ Սաեփանոսն կաթողիկոս էջմիածնայ, և շատ աւերութիւն եղև սուրբ տանն։ Եւ յորժամ մտաք ՌՃԽԶ (1697) թիւն դարձեալ Նահապետն էառ զտեղին և զՍտեփանոս եդ ի բանտի։ Եւ տարի մի ի բանտն մնաց, և ՌՃԽԷ (1698) թվին բազում չարչարանօք սպանին թագուն, ի մէջ բանտին, որ և բազում հրաշս եցոյց այլազգաց և մեր ազնայց»։ (Ընդգծումը մերն է— Վ. Հ.)։

Ինչպես տեսնում ենք, Նահապետ Եդեսացին կաթողիկոսության աթոռից հեռացվում է, ոչ թե 1695 թվին, այլ 1696 թվին։[1] Նահապետին հաջողվում է երկրորդ անգամ ստանձնել կաթողիկոսությունը, Ստեփանոսին գահընկեց անելուց հետո ոչ թե 1696 թվին, այլ 1697 թվի սկզբներին (ըստ ժամանակագրության «Եւ յորժամ մտաք ՌՃԽԶ թիւն...»)։ Այսպիսով Ստեփանոս Ջուղայեցուն բանտարկում են 1697 թվի սկզբներին։ Հետևապես Ստեփանոսը բանտում մնում է ոչ թե երկու տարի, այլ մեկ տարի։ Եվ իսկապես, Ստեփանոսի մահվան ստույգ տարեթիվը մեզ հայտնի է. նա մահացել է 1698 թ. հունվարի 4-ին։[2] Եվ որովհետև Ստեփանոսին, ըստ ժամանակագրության, բանտարկել են 1697 թվի սկզբին, կնշանակի նա բանտում մնացել է 1697 թվի փետրվարից մինչև 1698 թվի հունվարի 4-ը՝ մինչև սպանությունը, այսինքն մոտավորապես մեկ տարի, ինչպես ժամանակագրության մեջ է նշված։

Այնուհետև, ինչպես հայտնի է, Օրմանյանը ելնելով Ստեփանոսի վերոբերյալ ժամանակագրական ոչ ճիշտ տվյալներից, գտնում է, որ Նահապետը չէր կարող 1695 թ. սեպտեմբերի 5-ին նամակ գրել Հռոմի Իննովկենտիոս 12-րդ պապին։[3]

Մինչդեռ, ինչպես մեր ժամանակագրությունն է մատնացույց անում, Ստեփանոսի կողմից Նահապետը կաթողիկոսական աթոռից զրկվել էր 1696 թվին, հետևապես Նահապետի պապին գրած վերոհիշյալ նամակը, ոչ թե հորինված բան է, այլ իրողություն, որովհետև այդ ժամանակ նա տակավին կաթողիկոս էր։[4]

Ստեփաննոս Ջուղայեցու մահվան հանգամանքները, որոն միայն հիմա է որոշ չափով պարզվում, ցարդ նույնպես անհայտ էին։ Զաքարիա Սարկավագը, հիշելով Ստեփանոսի համախոհների բանտարկությունից ազատվելու փաստը, գրում է. «... և ետուն տուգանս նոքա՝ (Ստեփանոսի համախոհները— Վ. Հ.) և արձակեցան։ Իսկ Ստեփանոս հանին ի թեթև բանտէն, և եդին ի մթին և դարշահոտ զնտան, ... և ի զազրութենէ հոտոյն՝ և յաճմանէ հերացն՝ և ի բազմանալոյ որդնացն, վշտացեալ, մեռաւ անդէն...»։[5]

Մինչդեռ ըստ այս ժամանակագրության, Ստեփանոս Ջուղայեցին մահա-

---

[1] Մատենադարանի արխիվային բաժնի կաթողիկոսական ֆոնդի մի վավերագիր ես, որը XVII-ի դարի ժամանակագրություն է, հաստատում է վերոհիշյալ վկայությունը, այնտեղ կարդում ենք «Թվին ՌՃԽԵ (1696) սեպտեմբերի ամսոյն աքսորեցին զՆահապետ կաթողիկոսն և աւրհնեցին զՋուղայիցի Ստեփաննոսն նոյեմբերի Ա (1)»։ Ժամանակագրական այդ վկայությունները տես Ներքևում XXII ժամանակագրություն։

[2] Զաքարիա Սարկավագի «Պատմագրություն» Վաղարշապատ, 1870, հատ. Բ, էջ 138։

[3] «Ազգապատում», էջ 2670, 2677։

[4] Հմմտ. Չամչեան «Պատմութիւն հայոց», հատոր Գ, էջ 724։ Ալիշան, «Այրարատ», էջ 232, 233։

[5] Զաքարեայ Սարկաւագ «Պատմագրութիւն», հատ. Բ, էջ 18։ Սույն վկայությունը հաստատում է Խաչատուր Ջուղայեցին։ Տես «Պատմութիւն Պարսից», Վաղարշապատ, 1905 թ., էջ 153։

ցել է ոչ թե իր բնական մահով, այլ նրան գաղտնի սպանել են բանտում։ Այստեղ արդեն ակամա կասկած է առաջանում, թե արդյո՞ք սպանության մեջ այս կամ այն չափով մասնակցություն չի ունեցել նրա անհաշտ հակառակորդ Նահապետ կաթողիկոսը։[1]

Հետաքրքիր է նաև ժամանակագրության այն վկայությունը, որ վերաբերում է ժողովրդի աթեիստական տրամադրություններին։ Այդ մասին կարդում ենք. «Ի թվին ՌՃԽԹ (1700) մայիսի Լ (30) երկիրն Մահմուտանայ ի գիւղն որ ասի Հասպըստան, վարդապետ Հոգոց վանից նստել ի տան ուրումն քրիստոնէի և ընթեռնոյր գիրս աստուածայինս, և եկեալ ոմն թերահաւատ քրիստոնեա Ատոմիկ անուն, ի նոյն գեղջէ, և տնազ արարեալ, ասաց վարդապետին թէ՝ բերեալ քիչ մի մուր սևացուցեալ էք ղթուղտն կու խաբէք զմեզ, կասէք երկնից յաստուծոյ մօտէն է իջեր»։

Դժբախտաբար ժամանակագրությունը չի վկայում թե Ատոմիկն ինչ հայացք է ունեցել պաշտոնական եկեղեցու մասին, կամ այդ տեսակետին արդյոք միայն Ատոմիկն էր, թե նա հետևորդներ էլ է ունեցել, սակայն ինչպիսին էլ որ եղած լիներ այդ, համենայն դեպս վերոհիշյալ փաստը բնորոշ է։ Բացի վերոհիշյալ դեպքերի վկայությունից, ժամանակագրության մեջ հանդիպում ենք նաև բնական երևույթների (երկրաշարժ, արևի խավարում և այլն), առանձին փաշաների կամայականությունների և այլ հետաքրքիր հիշատակություններ։

[1] Դեպքերին ժամանակակից Զաքարիա Սարկավագը թե ինչու է այդ մասին լռել, հեշտ է բացատրել՝ կամ Զաքարիան վախեցել է Նահապետ կաթողիկոսի խստություններից, կամ էլ Ստեփանոսի սպանության մանրամասնությունները գրել Զաքարիան անհարմար է զգացել, մտածելով, որ դրանով կմերկացներ Ամենայն Հայոց կաթողիկոսական աթոռի շուրջը մղված պայքարի պատմությունը։

## XIX

Ի թվականիս ՌՃԽԴ (1695) հոկտեմբեր ամսոյ ԻԵ (25) օրէն մինչ ի նոյեմբերի կէսն ագևոր աստղ մի երևեցաւ յարևելից կողմն և ապա անյայտ եղև: 99ա

Դարձեալ ի թվականիս ՌՃԽԵ (1696) առաջնորդն Վարագայ Կարապետ վարդապետն Մոկացի, կարի հակառակութիւն արար Աղթամարայ Թոմայ կաթողիկոսին և ածեալ զոմն իւր նմանի, բարուքն չար Կարմիր եպիսկոպոս վերաձայնեալ և ձեռամբ հաղարու պարոն Եղդինչէրի, որդի Իպրահիմ պէկին, մեծադին ընծայիւք յղեաց յԷջմիածին առ Նահապետ կաթողիկոսն Հայոց: Եւ նոքա յահէ անօրինաց արարին կաթողիկոս զնա և ուղարկեցին ի վիճակն Աղթամարայ. եղեն Բ (2) կաթողիկոսք միոյ աթոռոյ:[1] Եւ Թումէն ևս ապստամբեցաւ յԷջմիածնայ և վրէժխնդրութեամբ կամեցաւ յափշտակել զՎան քաղաք իւր սանճախովն ի ձեռաց Նահապետին: Եւ ոմն Իղնատիոս էրէց[2] անուամբ, ի քաղաքէն Վանայ, գոլով վէքիլ սուրբ Էջմիածնայ ընդդէմ եկաց Թումային և Գ (3) քէսայ փող խարճեաց ի դուրս արքունի և զԹումայն արտաքսեաց:[3]

Դարձեալ ի թիւն ՌՃԽԵ (1696) ապրիլի ԺԵ (15) սաստիկ շարժ եղև բոլոր Հայաստանս և սուրբ Թադէոս առաքելոյ պարիսպն հանդերձ Նորակերտ խցերօքն ըլաւ. և Կաթուղիկէն յարեելից կուսէ պատառեցաւ և Վանից գեղն այլ ըլաւ, բայց մարդոյ վնաս ոչ արար: Եւ Զալարանայ զեղորայքն բնաւին կործանեցան և յայլ տեղ աստուծով վնաս ոչ եղև:[4]

Դարձեալ ի թվին ՌՃԽԵ (1696) Փոխանայ Իմիրզայ պէկն գոլով ի բերթն իւր անառիկ, որ ասի Պայաղիա, սպանաւ յեղբօրէ իւրմէ՝ Իպրահիմ պէկէն և ինքն էառ զտեղին:[5]

Դարձեալ ի թվին ՌՃԽԵ (1696) Վանայ փաշէն գնաց ի գեօղն Ծավանց[6] և անդէն կայր Բ (2) թօփ ի Նաւին[7] տանելոյ ի Շրվանք, յաղագս փորձելոյ և մանաւանդ թէ ստոյգ հակառակութեան յեկեղեցող Հայոց, լցեալ զթօփն ուղղեցին յեկեղեցւոյ Կաթուղիկէն որ պիտ էր ի փուլ ածէին, զՇոլապաան[8] սուրբ Յովհաննէսու Երբ կրակեցին աստուծով առ ժամայն պատռեցաւ և բազում մասունս լեալ ցրուեցաւ և նոքա յամենայնի հարեալ դարձան ի տունս իւրեանց, իսկ քրիստոնեայք ուրախացեալ փառս ետուն աստուծոյ:

Դարձեալ ի թվին ՌՃԽԲ (1693) յերկիրն Դիադինու աչօք մերօք տեսեալ աղչիկ մի վեցամեայ, իւր զկատարեալ երիտասարդ

պիղով և մորուսով, մեծերես և լայնասիրտ, թաւամազ և ուժեղ մարմին և հայեցն իբրև զարջու և տեսոգացն ահարկու։"

Դարձեալ ի թվին ՌՃԽԵ (1696) անկաւ Նահապետն ի կաթողիկոսութենէ և աւրհնեցաւ Ստեփանոսն կաթողիկոս Էջմիածնայ, և շատ աւերութիւն եղև սուրբ տանն։ Եւ յորժամ մտաք ՌՃԽԶ (1697) թւին դարձել Նահապետն էառ զտեղին և զՍտեփանոսն եդ ի բանտի։[10] Եւ տարի մի ի բանտն մնաց և ՌՃԽԷ (1698) թվին բազում չարչարանօք սպանին թագուն ի մէջ բանտին, որ և բազում հրաշս եցոյց այլազգեաց և մեր ազն[ե]այց։

Դարձեալ ի թվին ՌՃԽԸ (1699) սեպտեմբերի ԺԳ (13) սուրբ Խաչի պահոց չորեքշաբթին, Զ (6)-երորդ ժամուն, ի ծովացեալ մեղաց իմոց արեգակն խաւարեցաւ, Բ (2) ժամ աւելի խաւար մնաց, աստեղք բազումք երևեցան, որպէս ի մէջ գիշերի, կարմիր, դեղին և սեաւ գոյն ունէր։ Ամենայն ազինք ելաք ի Թափօբ ի Վան քաղաք և լալով աղաչեցաք զաստուած, և ապա սակաւ սակաւ խաւարն մերժեցաւ և լոյսն բացաւ։

Ի թվին ՌՃԽԹ (1700) մայիսի Լ (30) յերկիրն Մահմուտանայ,[11] ի գիւղն որ ասի Հասպըստան,[1] վարդապետն Հոգոց վանից նստեալ ի տան ուրումն քրիստոնէի և ընթեռնոյր գիրս աստուածայինս. և եկեալ ոմն թերահաւատ քրիստոնեա Ատոմիկ անուն, ի նոյն գեղջէ և անազ արարեալ, ասաց վարդապետին, թէ բերեալ քիչ մի մուր սևացուցեալ էք զթուխտն, կու խաբէք զմեզ, կտսէք յերկնից յաստուծոյ մօտէն է իջեր։ Զայս լուեալ վարդապետին ոչ ինչ պատասխանեաց և ելեալ գնաց յայլ գիւղ, սակս գործոյ իւրոյ։ Դեռ վարդապետն ի ճանապարհին էր, յանկարծ անկաւ յերկնից կրակացեալ մեծ կայծակ ի մէջ գեղին, նոյն մարդոյ տան առջևն ի վերայ իւրոյ տղային և հարսինն և այրեաց զնոսա, բայց խոստմամբ և պտրգևօք ապրեցան և ոչ մեռան։ Փառք աստուծոյ։[13]

Ի թվին ՌՃԾ (1701) յունիսի Ա (1), ի կիրակի օր, Յըռումէլի Իսմայիլ քաղաք,[14] առաւօտուն ժամու ատենն, այնպիսի ահագին շարժ եղև, որ բնաւ մարդ տեսած չէր, կէս աւուրն այլվի եղև, ես վախեցայ թէ աշխարհս կործանի, բայց աստծով վնաս չեղև։

Ի թվին Հայոց ՌՃԽԱ (1692) ապրիլի ԺԳ (13), յաւուր չորեքշաբթի, ի տուընջեան առաջին պահուն մինչ ի Ժ (10)-րդ ժամն խաւար կալաւ մառախլապատ զաշխարհս ամենայն և կարմիր փոշի մաղեցաւ յերկնից ի յերեսս երկրի և խանգարեաց զամենայն բոյսս, կարծեմ թէ ի մեղաց իմոց լինիւր։[15]

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. 1696 թ. Վարագա վանքում անցի ունեցած սույն դեպքերն Օրմանյանի մոտ մի փոքր այլ ընթացք են ստացել։ Վերջինս խոսելով Նահապետ կաթողիկոսի և Աղթամարի կաթողիկոսության հարաբերությունների վատացման մասին, գրում է. «Որոշ գրուած չէ, բայց այս միայն յայտնի է, որ Նահապետ Թովմայի վրայ բարկանալով, զայն պաշտօնէն կը զրկէ, և Աւետիս եպիսկոպոս մը կաթողիկոս ձեռնադրելով Աղթամարի աթոռին տիրանալու կը ղրկէ» («Ազգապատում», էջ 2663—2664։ Հմմտ. Ն. Ակինեան «Գաւազանագիրք կաթողիկոսաց Աղթամարայ», Վիեննա, 1920, էջ 144)։ Օրմանյանը դժբախտաբար չի նշում իր օգտագործած աղբյուրը։ Մինչդեռ ժամանակագրությունն այս առթիվ նշում է որոշ մանրամասնություններ, ըստ որի Վարագի առաջնորդ Կարապետ վարդապետ Մոկացին, մեզ անհայտ պատճառներով հակառակվում է Թովմասի (ըստ ժամանակագրության Թոմա. Աղթամարում կաթողիկոս է եղել 1681—1698 թ. թ., Ակինեան, «Գաւազանադիրք...», էջ 142։ Հմմտ. Մ. Մաքսուդեանց, «Հաւաքարանս», Էջմիածին, 1916, էջ 67) հետ և վերջինս փոխարեն «...ածեալ զոմն իւր նման, բարուքն չար Կարմիր եպիսկոպոս վերայձայնեալ...»։ Այդ քայլը օրինական դառնալու նկատառումով, Կարապետ Մոկացին Վանի փաշա Եզդինշերի միջոցով («մեծագին ընծայիւք» տալով, իմա՝ կաշառք) ուղարկում է Էջմիածին Նահապետ կաթողիկոսի մոտ օծումը հաստատելու։ Սա էլ «յահէ անօրէնաց արարին կաթողիկոս զնա և ուղարկեցին ի վիճակն Աղթամարայ»։ (Այս մասին մի փոքր այլ ձևով տես «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 115, 117)։

«Ազգապատում»-ում (էջ 2663—2664) և «Հաւաքարտն»-ում (էջ 67) հիշված է, որ Աղթամարի կաթողիկոս ձեռնադրվում է Ավետիս եպիսկոպոսը, մինչդեռ ըստ ժամանակագրության՝ Կարմիր եպիսկոպոսը։ Ըստ էության խոսքը վերաբերում է միևնույն անձնավորության՝ Ավետիս եպիսկոպոսի մականունը եղել է Կարմիր (Հմմտ. Ակինեան, «Գաւազանագիրք...», էջ 196։ «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 115)։

2. Բնագրում անունը ջնջված է. «Իգնատիոս էրէց» գրված է լուսանցքում։

3. Այս դեպքերի մասին Օրմանյանին այլ բան է հայտնի, ըստ որի Թովմասը գրգռվելով Նահապետ կաթողիկոսի քայլից «...Վանայ մէջ նստող Էջմիածնի հպատակ եպիսկոպոսին ալ հեռացնել տուաւ, և Վանայ վիճակին վրայ աղթամարական եպիսկոպոս հաստատեց» («Ազգապատում», էջ 2664։ Հմմտ. Ակինեան, «Գաւազանագիրք...», էջ 145)։ Մինչդեռ, ըստ ժամանակագրության, Թովմասի վերոհիշյալ քայլը չի հաջողվում։ Վանեցի Իգնատիոս երեցը, որն էր «...Վէճիլ սուրբ էջմիածնայ ընդդէմ եկաց Թումային և Գ (3)ճէսայ փող խարեաց ի դուրս արճունի և զԹումայն արտաքսեց»։ (Ընդգծումը մերն է—Վ. Հ.)։ Հմմտ. «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 122)։

4. Մի այլ հեղինակ սույն երկրաշարժը նշում է ապրիլի 14-ին (XXII ժամանակագրություն)։ Տես և հմմտ. «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 115—116)։

5. Այս սպանությունը տեղի է ունեցել հունիսի 1-ին (տես XXII ժամանակագրություն)։

6. Ավանց գյուղը գտնվում է Վանա լճի հարավ-արևելյան ափին, Վանից հյուսիս-արևմուտք մոտավորապես 5 կիլոմետր հեռու։ Թուրքերն այն կոչում են Իսկելէ քէօյի (Նավահանգստի գյուղ)։ Գյուղի հնությունը մեր ավանդությունը վերագրում է IV դարին (մ. թ. ա.)։

Այստեղ գտնվել է նաև Ս. Հովհաննես եկեղեցին։

7. Բնագրում առաջին տառը պարզ չի երևում, նմանեցրինք «Ն»-ի։

8. Մի այլ վկայությամբ Ծովապատը տեղադրվում է Կտուց կղզում. «Ցամի ՌՃԿԲ (1713) նորոգեցաւ Կտուց Ծովապատ անապատն ս. Կարապետու սրբատաշ վիմօք» («Հանդէս Ամսօրեայ», 1939 թ., էջ 25)։

9. Տես և հմմտ. վերևում XXII ժամանակագրություն։

10. Ըստ որքան հիշտ է ժամանակագրության Ստեփանոս Ջուղայեցու բանտարկության և Նահապետ Եդեսացու Երկրորդ անգամ կաթողիկոս դառնալու վկայությունը, ցույց է տալիս Մաղաղաթեա մի Հայսմավուրի հիշատակարան, որի ընդօրինակության տարեթիվը դժբախտաբար անընթեռնելի է։ Այնտեղ կարդում ենք. «Դարձեալ որպէս գրեցաք զկիրս Ստեփանոս կաթողիկոսին որ ի ՌՃԽԶ (=1697) թուին ի փետրուարին եդին ի բանտի հրամանաւ Շահին։ Եւ մնացեալ անդ ի մէջ դառն նեղութեանց մինչև ի մուտս ՌՃԽԷ (1698) ամին, յունուար Դ (4) վախճանի ի նոյնում բանդի...» (Դ. Սրուանձտեան «Թորոս աղբար...», մասն Բ, էջ 410)։ Այսպիսով սույն հիշատակարանն ավելի կոնկրետացնում է ժամանակագրության վկայությունը Ստեփանոս Ջուղայեցու բանտարկության մասին, որ տեղի է ունեցել 1697 թ. փետրվարին։ Նույն հիշատակարանի համաձայն Ստեփանոս Ջուղայեցին կաթողիկոս եղել է ՌՃԽԵ (1696) թվին (էջ 408)։ Մի այլ վկայություն Ստեփանոս Ջուղայեցուն կաթողիկոս է համարում դեռ 1697 թ. վերջերին («Դիւան...», գիրք Ժ, էջ 117), որն անշուշտ սխալ է, իսկ նրա մահը նույն աղբյուրը նշում է 1698 թ. փետրվարի մեջ (էջ 117). այստեղ սխալ է նշված ամիսը (հմմտ. «Զաքարեայ Սարկաւագի պատմագրութիւն», հատոր Բ, էջ 138)։

Հաղբատի վանքի «Քոթուկում» (Ձեռ. № 3031) Ստեփանոսի մասին պահվել է հետաքրքիր հիշատակագրություն. «Ես Վարդան վարդապետ եկի Սանահին նուիրակ ի թվին ՌՃԽԶ (1697) յաւուրս Բ (2) հայրապետացն՝ Նահապետին և Ստեփանոսի որ... կայր ի կալանս Դ (4) վարդապետօք Յերեւան քաղաքի», էջ 1ա։

11. Խոշաբ գավառի և բերդաքաղաքի մի այլ անունը, որը գտնվում է Վանից հարավ-արևելք, 7 ժամվա ճանապարհ հեռու, Խոշաբ գետի ափին։ Մահմուտանա գավառի մեջ մտնում էին հին Անձևաց և Մարդաստան գավառների մի մասը։ Բերդաքաղաքը եղել է քուրդ բեկերի նստավայրը։ Այստեղ է գտնվում Հոգոց վանքը, որի կառուցումն ավանդությունը վերագրում է Բարդուղիմեոս առաքյալին։ Հմմտ. Ձեռ. № 737, էջ 110 բ։

12. Անվան ուղիղ ձևը «Ասպիստան»։

13. Բնագրում սույն հատվածի դիմաց, աջ լուսանցքում գրված է. «ՌՃԽԹ (1700) թվին տես զթերահաւատի պատուհասն»։

14. Ռումել կոչվում է օսմանական Թուրքիայի եվրոպական տերիտորիան։ Արդյո՞ք խոսքը վերաբերում է Իսլամպոլի—Կոստանդնուպոլսի եվրոպական մասին։

15. Հմմտ. «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 115)։

XX

## ԲԱՐՍԵՂ ԴՊՐԻ ԵՎ ՄԵԼԻՔ ՔԵՄԱԼԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVIII Դ.)

Ժամանակագրությունն ասածը վերաբերում է վերոհիշյալ անձնավորությունների ժամանակակից մի քանի դեպքերի հիշատակության, որոնք տեղի են ունեցել 1660—1719 թվականներին։ Սակայն որոշակի երևում է, որ ողջ ժամանակագրությունը մեկ անձնավորություն չի կազմել։

Ժամանակագրության առաջին մասը՝ սկսած 1660 թվականից մինչև 1703 թվականի դեպքերը կազմել է № 713 ժողովածուի երկրորդ գրիչը՝ Բարսեղը։[1] Այդ երևում է նախ՝ նրանից, որ ժողովածուի երկրորդ մասը (էջ 66բ—138 բ), որն ընդօրինակել է Բարսեղը, և ժամանակագրության առաջին մասը գրության միևնույն ձևն ունեն։ Երկրորդ՝ ժողովածուի Բարսեղի ընդօրինակության տարեթիվը՝ 1687 թ. և ժամանակագրության առաջին մասի վկայությունները՝ 1660—1703 թ. թ. վերաբերում են միևնույն ժամանակաշրջանին։ Հետևապես կարելի է հաստատ եզրակացնել, որ Բարսեղը ժողովածուի ընդօրինակությունից հետո, նրա վերջին թերթում արձանագրել է իր ժամանակակից դեպքերը։

Ժամանակագրության երկրորդ մասը, որը վերաբերում է 1703—1706 թվականներին տեղի ունեցող դեպքերին, արձանագրել է մեկ ուրիշը՝ Մելիք Քեմալը։ Վերջինիս և Բարսեղի գրության ձևը տարբեր լինելուց բացի, 1706 թվականի տակ կարդում ենք. «Սուրբ Աստուածածնի կիրակի օրն, ես Մէլիք Քեմալս եկի...»։ Նշանակում է ժամանակագրության վերջին մասը պատկանում է Մեկիք Քեմալի գրչին։

Իսկ վերջին՝ 1719 թվականին վերաբերող վկայության գրության ձևը տարբերվում է և Բարսեղի և Մելիք Քեմալի գրության ձևից։ Հետևապես այդ վկայությունն էլ հետագայում ժամանակագրության բնագրին ավելացրել է մեկ ուրիշը։ Ուրեմն կարելի է ասել, որ ժամանակագրության բոլոր տեղեկությունները հեղինակների ինքնագիր օրինակներն են և նրանց ժամանակակից դեպքերի հիշատակությունները, այդ պատճառով էլ նրանց հաղորդած տեղեկությունները չնայած համառոտ են, բայց ստույգ են և արժանահավատ։ Մասնավորապես արժեքավոր են Գանձակի խաների հաջորդական կարգին վերաբերող տեղեկությունները։

---

[1] № 713 ժողովածուի առաջին մասը (1—62բ էջերը) ընդօրինակել է Հովհաննեսը 1636 թ. Գանձակի Շաասխ գյուղում (էջ 57ա). իսկ երկրորդ մասը՝ 66բ էջից մինչև վերջ (Ներառյալ ժամանակագրության առաջին մասը) Բարսեղը, 1687 թ. (էջ 138ա)։

XX

Թուն ՌՃԹ (1660) էր, որ Թամրազ խանն շահն գնաց։[1] 137բ

Թուն ՌՃԷ (1658) էր, որ Ցրոուստամ խանն մեռաւ Վրաց տուն։[2]

Թուն ՌՃԻԵ (1676) էր, որ Շահնավազ խանն Թիփլիզու գնէր շահն. Ղում մեռաւ, Իսպահան չհասաւ։[3]

Թուն ՌՃԺԲ (1663) էր, որ Մըրթուզա Ղուլի խանն մեռաւ, խանութիւնն[4] տուին Ցօղըրլու խանին։

Թուն ՌՃԻԶ (1677) էր, որ Ցօղըրլու խանն մեռաւ, խանութիւնն տուին Ապազ Ղուլի խանին։

Թուն ՌՃԻԵ (1676) էր, որ Շահնավազ խանն Թիփլիզու, շահ ուզէլ էր, ըազում հեծելօք գնէր Ասպահան. Ղում մեռաւ, Իսպահան չհասաւ։[5]

Թուն ՌՃԽԳ (1694) էր, որ Ապազ Ղուլի խանի խանութիւնն տուին Քալբալայ խանին։

Թուն ՌՃԽԶ (1697) էր, որ Գօրկի խանն[6] ‖ շահն ուզէլ էր, 138ա գնաց Նրէվանայ վերայ, վերճն աստուած գիտէ։

Թուն ՌՃԼԷ (1688) էր, որ Գօրկի խանի տղայ Բագրատ իմիրզէն,[7] իւր եղբայր Լէվան իմիրզէն, շահ Սուլէյմանն ուզէլ էր,[8] եկին Գոնճայ, գնացին Իսպահան։

Թուն ՌՃԾԲ (1703) էր, որ Թիփլիզու խանութիւնն տուին Գօրկի խանին։[9]

Թուն ՌՃԾԲ (1703) էր, որ Վալի խանն շահ սուլթան Հիւսէինն ուզէց.[10] Նախճուանայ Մահամաա Իռիզայ խանն տարաւ։ Կախէթու խանութիւնն տվին Վալի տղին։[11]

Թուն ՌՃԾԴ (1705) էր, մարտի ամսոյ ԺԵ (15), օրն հինկշաբթի, Գ (3) սհաթին Քեալպալի խանն Գանճու դուրս եկաւ առ թագաւոր գնաց, Փափուղ Աստառապատա[12] սարդար՝ Թուրքման Ատինայ վերայ, վերջն աստուած գիտէ (դուրտին?)։

Թուն ՌՃԾԵ (1706) Նաւասարդի ութրաթ օրն, Վալի խանի 138բ տղայ Իմամ Ղուլի խանն[13] եկաւ ի Գանձա՝ Թօփղաբաղաճն, վերճն աստուծոյ է գիտելի։

Թուն ՌՃԾԵ (1706) էր, որ Միրզա Ղասումն գնաց ի Ջակամ[14] ղօշուն դուրս անիլ։ Սուրբ Աստուածածնի կիրակի օրն[15] ես՝ Մէլիք Քեամալս եկի, որ բանին սուրաթ տվի։

Թուն ՌՃԿԸ (1719) որ Մէհրալի խանն գնաց Լակզին վերայ, վէրճն աստուած գիտէ։[16]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Խոսքը վերաբերում է Կախեթիայի թագավոր Թեյմուրազ I-ին, որը վերջին անգամ իշխել է 1634—1648 թ. թ., որից հետո անցնելով Իմերեթիա փորձեց Իրանի դեմ մղվող պայքարը շարունակել, սակայն հաջողություն չունեցավ։ Ի վերջո 1660 թվին նրա դաշնակից, Իմերեթիայի թագավոր Ալեքսանդրի մահից հետո, երբ ուժեղացան միջֆեոդալական կռիվները, Թեյմուրազը որոշեց գնալ Իրան՝ շահի հետ համաձայնության գալու։ Այս վկայությունը վերաբերում է Թեյմուրազի հենց այդ ուղևորությանը։ Թեյմուրազը մահանում է Իրանում, 1663 թվին։

2. Սկսած 1632 թվականից Վրաստանում իշխում էին մուսուլմանացած թագավորները, որոնք կրում էին «վալի» տիտղոսը, այսինքն փոխարքա։ Սույն վկայության Ռոստոմը եղել է հարկադրաբար մահմեդականություն ընդունած առաջին թագավորը, որը հաստատվեց Քարթլիի գահի վրա։ Ռոստոմը մահացավ 1658 թ. անզավակ։ Վերջինիս գահը շահը հանձնեց Թեյմուրազի (ծանոթ. 1) որդի Վախթանգ V-ին, որի մուսուլմանական անունը եղել է Շահ-Նավազ։

3. Վախտանգ V-ը (նույն ինքը Շահ-Նավազ) թագավորել է 1658—1675 թ. թ.։ Վերջինիս Սպահան գնալու և նրա մահվան հանգամանքների մասին բավական մանրամասն տեղեկություններ տալիս է Զաքարիա Ագուլեցին։ Բերում ենք նրա ընդարձակ վկայություններից մեկը. «1125 օգոստոսի ԺԵ-ումն Շահնուաստ խանն, որ էր աղդաւ վրացի, առաջ Շահաբաս սայ տարավ Ըսպհան, քուրդացրուց (իմա՝ թուրքացրեց), Թիվլիսու խանութիւն կուտայ սորայ։ Յայսմ յամի Շահ-Սլէման թագաւորն Ղուչու-բաշու տղայ Մուստաֆայղուլի բէկն րոաղամով ղրկեց, թէ գնայ Թիվլիս, Շահնուստ խանի մէհմանդար-բաշի։ Այսօր զօրօք, որ մինչի Ռ ձիոյ դարի տային, եկին Յին Ջուղայ, որ դնում են Ըսպահան։ Սորայ ալաֆ ուլուֆէն ամէն քաղաքէ, դէղորէից կու տային զուլում ու սիթամով։ Սայ հասանէ Խոշկառու անվան մանձիլն, անդ կու մեռանի. ոմն ասաց. թէ աջալով ոմն ասաց, թէ դէղատու մեռաւ. ըստուգն Աստուած գիտէ։ Սայ տարան Ղում քաղաք, անդ թաղեցին։ Զօրքն ամէն գնաց Ըսպհան...»։ «Օրագրություն». էջ 140։ Հմմտ. նույն տեղ, էջ 129)։

4. Խոսքը վերաբերում է Գանջայի խանությանը։

5. Մեզ անհասկանալի պատճառով Շահ-Նավազի ուղևորությունը և մահը կրկնված է։ Տես վերևում, ծանոթ. 3։

6. Շահ-Նավազի մահից հետո (ծանոթ. 3) թագավորում է նրա որդին՝ Գեորգի XI-ը 1678—1688 թ. թ.։ (Հմմտ. Զ. Ագուլեցու «Օրագրությունը», էջ 140)։ Պարսկական շահի դեմ վերջինիս նախապատրաստած ապստամբության անհաջողությունից հետո նա զրկվում է գահից և փոխարենը նշանակվում Թեյմուրազ I-ի թոռ Հերակլ I-ը 1688—1703 թ. թ.։ Սրա անսովոր միջոցառումների դեմ դուրս են գալիս խոշոր իշխանները։ Այդ պատճառով 1703 թ. երկրորդ անգամ թագավոր նշանակվում է Գեորգի XI-ը իշխելով 1703—1709 թ. թ.։

7. Իմիրզա, այսինքն՝ միրզա-արքայազուն, երբ ասվում է անձնանունից հետո։

8. Շահ Սուլեյմանն իշխել է 1667—1694 թ. թ.։

9. Նկատի ունի Գեորգի XI-ի երկրորդ անգամ գահին բարձրանալը (տես ծանոթ. 6)։

10. Բնագրի «Վալի խանն» բառերի տակ պետք է հասկանալ «փոխարքա խանը», տվյալ դեպքում Հերակլ I-ը, որին շահ Հյուսեյինը (1694—1722 թ .թ.) 1703 թ. կանչեց Պարսկաստան և գահազրկեց։

11. Հերակլ I-ին շահ Հյուսեյինը 1703 թ. գահազրկելուց հետո Կախեթիայի կառավարումը հանձնեց նրա որդուն՝ Դավիթին, որին մուսուլմանները կոչել են Իմամ-Կուլի խան։ Դավիթ II-ն իշխել է 1703—1722 թ. թ.։ Սույն հատվածից հետո սկսվում է Մելիք Քեամալի ժամանակագրությունը։

12. Բնագրի «Աստաւապատ» բառի տակ պետք է հասկանալ Աստրապատ քաղաքը,- համանուն ծոցից մի փոքր արևելք։ Կասպից ծովի հարավ-արևելյան անկյունում։ Աստրապատ քաղաքը պատմական Հյուրկանիայի (հետագայում Գուրկանի) կենտրոնն էր։

13. Դավիթ II-ը (ծանոթ. 11)։

14. Կա երկու Ջակամ՝ վերին և ներքին, որոնք մտնում են Կողթ գավառի մեջ և տարածված են Ջակամ գետակի և Աղստև գետի աջ ափի միջև։ Ներքին Ջակամում է գտնվել Արշակունիների ձմեռանոց՝ Խաղխաղ քաղաքը։ (Տես Բարխուդարյան, «Արցախ», էջ 57)։

15. Այսինքն՝ 1706 թ. օգոստոսի 18-ին։

16. 1719 թ. վերաբերող վկայությունն ավելացրել է մեկ ուրիշը։

## XXI

## ԳՐԻԳՈՐ ԵՎ ՈՒՐԱԽ ԿԱՐԻՆՑԻՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVIII Դ.)

*Առաջարկվող անխորագիր ժամանակագրությունը (№ 7715 ժողովածու, էջ 102բ—106ա) սկսվում է 1661 թ. ոմն Գրիգորի ծննդյան և վերջանում 1742 թ., երևի սրա թոռ Գրիգորի մահվան հիշատակությամբ։*

*Սույն ժամանակագրությունը կազմել են երկու անձնավորություն՝ տարբեր ձեռագրերով, որ հաստատվում է նաև առանձին վկայություններով։*

*Ժամանակագրության առաջին մասը՝ 1661—1710 թ. թ. (102բ—103բ էջերը) կազմել է ավագ Գրիգորը, որն ինչ որ վանքում ռասանելուց հետո 1685 թվականից հաստատվում է Կարինում և այստեղ էլ հավանորեն կազմում իր ժամանակագրությունը։*

*Երկրորդ մասը, որ ընդգրկում է 1719—1742 թ. թ. դեպքերը (104ա—106բ էջերը) կազմել է Ուրախը (Ուրախությունը), որն իր մասին գրում է. «Թվին ՌՃՀԴ (1725) փետրվարի Բ (2) օրն... Ուրախս ամուսնացայ...»։*

*Վերջինս առաջին մասի հեղինակ Գրիգորի որդին է։*

*Ժամանակագրությունը փաստորեն 82 տարվա ընթացքում մի ընտանիքում ծնվածների և մահացածների գրանցում է։*

XXI

Թվին ՌՃԺ (1661) փետրվարի ԻԲ (22) օրն ես՝ Գրիգորս 102բ
մօրէս ընծայեցայ։

Թվին ՌՃԻԷ (1678) ապրիլի Ը (8) օրն ելի ի աշխարհէս և գնացի վանքն սա ի կարդալ։

Թվին ՌՃԼԴ (1685) յունիսի ԻԸ (28) օրն ելի ի վանիցն և Արզրում քաղաք եկի։

Թվին ՌՃԼԶ (1687) նոյեմբերի Ա (1) օրն, աստուծոյ հրամանի վրայ աշխարհի ամուսնացայ։

Թվին ՌՃԼԷ (1688) նոյեմբերի Գ (3) օրն աստուծոյ հրամանովն արու տղայ մի եղաւ, ապա մեռաւ։

Թվին ՌՃԼԸ (1689) սեպտեմբերի Ա (1), օրն կիրակի, Աննա անուն Ա (1) աղջիկ մի եղաւ, ԺԶ (16) օր ապրեցաւ, մեռ[աւ]։

Թվին ՌՃԼԸ (1689) նոյեմբերի Ա (1) օրն, շաբաթ օր, մարիկս աշխարհէս փոխեցաւ։

Թվին ՌՃԻ (1671) մարտի ԻԹ (29), օրն հինգշաբթի, Խաթունճանն աշխարհ եկաւ։

Թվին ՌՃԼԹ (1690) Սիմաւոն անուն տղա մի եղաւ, ԺԲ (12) օր ապրեցաւ առ աստուած փոխեցաւ։[1]

Թվին ՌՃԽԱ[2] (1692) նոյեմբերի ամսոյ Ա (1) օրն, որ լու- 103ա
սինն այլ Ա (1) աւուր էր, երկուշաբթի երեկունն Ուրախութիւնն մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ։

Թվին ՌՃԽԳ (1694) յուլիսի ԺԵ (15) օրն Լուսաւորչու եկեղեցին շինեցաւ։

Թվին ՌՃԽԵ (1696) հոկտեմբերի ամսոյ Ե (5) օրն, որ լուսինն այլ Ի (20) աւուր էր, արեգակն ի կշեռն էր, երկուշափաթի յերեկունն Ասաննեթն մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ։

Թվին ՌՃԽԹ (1700) յունվարի ԻԳ (23), օրն չորեքշաբաթի, Թ (9) սահաթին, Խաղաղութիւնն մօրէն ընծա[յ]եցաւ և աշխարհ եկաւ, որ լուսինն այլ ԺԳ (13) աւուր էր. Բ (2) տարի ապրեցաւ, ծաղիկ հանեց, գնաց առ ըստեղծողն իւր։

Թվին ՌՃԾԲ (1703) յուլիսի Ժ (10) օրն Ասերովգն մօրէն 103բ
ընծայեցաւ և աշխարհ եկաւ, որ լուսինն այլ Ը (8) աւուր էր, մկրտեցինք, տուն բերինք, էն գիշերն առ աստուած փոխեցաւ։

Թվին Քրիստոսի ՌԷՃԴ (1704), իսկ Հայոց ՌՃԾԳ (1704) յուլիսի ԺԵ (15) օրն, Վարդավառի պասմտի շաբաթ օրն, յետի ժամէն յետ, որ լուսին[ն] այլ ԻԳ (23) աւուր էր, Օգոստինոսն

մոլէն ընծայիցաւ շնորհօքն Քրիստոսի և աշխարհ եկաւ, մէկ սարէն մէկ օր պակաս ապրեցաւ, փորն ցաւեցաւ, գնաց առ ընտեղծողն իւր։

Թվին ՌՃԾԵ (1706) նոյեմբերի ԺԸ (18) օրն Օղուրխաթունն մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ. որ օրն էր երկուշաբթի, հեա լուսուն, որ լուսինն ԻԲ (22) աւուր էր, արեգակն ի կոյսն էր։

Թվին ՌՃԾԹ (1710) սեպտեմբերի ԻԴ (24), օրն կիրակ[ի], Արզրում բերթի միջի չարսուներն էրեցաւ՝ սառաճոցէն մինչև ի պապուչչնոցն, ադրնոցն, պիչտիչնոցն, քուրչնոցն ամէնն այրեցաւ։[3]

Թվին[4] ՌՃԿԸ (1719) յունիսի ամսոյն Արզրում մեծ շարժ 104ա եղաւ, մէկ տարի յետ Թաւրէզ եղաւ։

Թվին ՌՃՀԳ (1724) սեպտեմբերի ԺԴ (14) օրն մայրս առ աստուած փոխեցաւ։

Թվին ՌՃՀԴ (1725) փետրվարի Բ (2) օրն, աստուծոյ հրամանօքն Ուրախս ամուսնացայ մղասի Պօղոսի դուստր Ալմաս առի ինձ ի կնութիւն, Գ (3) ամիս ապրեցաւ Ալմասն [և] առ աստուած փոխեցաւ։ 104բ

Թվին ՌՃՀԴ (1725) դեկտեմբերի Զ (6) օրն աստուծոյ հրամանովն կրկին ամուսնացայ և առի ինձ կնութեան Ագուլեցի Գրիգորի դուստր Աննան. և խնդրեմ ի տեառնէ իմէ, Յիսուսէ միջնորդութեամբ մօր նորա, կուսին Մարիամու, որ զմեզ ի միասին հասուցանէ մինչ ի խորին ծերութիւնն բարի կենօք. ամէն։

Թվին ՌՃՀԵ (1726) սեպտեմբերի ԺԳ (13) օրն Ասանէթն աս աստուած փոխեցաւ։

Թվին ՌՃՀԷ (1728) սեպտեմբերի Ի (20) օրն Նռանան առ աստուած փոխեցաւ։ 105ա

Թվին ՌՃՀԹ (1730) հոկտեմբերի ԻԵ (25) օրն Պետրոսն մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ, կիրակի երիկունն, Դ (4) ռահաթին։ Խնդրեմ տեառնէ իմէ Յիսուսէ միջնորդութեամբ կուսին սրբուհւոյ նմայ կեանք պարգևեսցէ և մեզ բարի յիշատակ արասցէ։ Ուխտեալ եմ առաջի աստուծոյ, որ ամիսն մէկ պատարագի և Ժ (10) փարայ աղքատաց տամք, վասն հոգոց քաւարանի, քանի որ կենդանի Յիայ տամք և յետ անցման մերոյ, աստուած իւրն որչափ կենդանութիւն տայ և ինքն տացէ։ 105բ

Թվին ՌՃՁԱ (1732) ապրիլի Ա (1) օրն, որ օրն է շաբաթ լուսոյմոտն Ովսէփն մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ։ Խնդրեմ ի տեառնէ իմէ Յիսուսէ, որ միջնորդութեամբ սրբուհւոյ կուսին Մարիամու և սրբոյն Օվսեփայ աստուածահօրն բարեխօսութեամբն տէր Յիսուս սմայ կենդանութիւն պարգևեսցէ. տարին Ժ (10) պատարագի տանք հոգւոց քաւարանին, քանի որ կենդանութիւն տայ աստուած նմայ և սայ տացի. մինչ ի խորին ծերութիւն։

Թվին ՌՃՁԳ (1734), մարտի Ի (20) օրն Խաթունճան խաթունն մօրէն ընծայեցաւ, երեքշաբթի կէս աւուրն և աշխարհ

եկաւ, տէր Յիսուս սմայ կենդանութիւն պարգևեսցէ միջնորդութեամբ սրբուհւոյ կուսին աստուածածնին և սրբուհոյն Կատարինէ ‖ բարեխօսութեամբն տէր Յիսուս սմայ կենդանութիւն 106ա
պարգևեսցէ. և սմա տայ տարին Ժ (10) պատարագի և հոգոց քաւարանի, օժանդակութեամբ տէր Յիսուս կենդանութիւն տացէ սմայ և մինչ ի խորին ծերութիւն բարի կենօք հասուցանիցէ, ամէն։

Թվին ՌՃՁԴ[5] (1735) նոյեմբերի Է (7) օրն Թադուհին մօրէն ընծայեցաւ և աշխարհ եկաւ կիրակի կէս գիշերեն յետ, որ կիրակի կու լուսանար, Թ (9) սահաթ և կիսուն. տէր Յիսուս սըմայ երկար կեանք պարգևեսցէ մինչև խորին ծերութիւն, անսասան կենօք սրբութեամբ հասուցանիցէ, միջնորդութեամբ տիրածին կուսին և սուրբ Մաթէոսի աւետարանչին. և սմայ տացի տարին Ժ (10) պատարագի մինչև խո[ր]ին ծերութիւն, տացի աստուծով։

Թվին ՌՃՁԵ (1736) նոյեմբերի Է (7) օրն. որ կիրակի լուսանար, Ժ (10) սահաթին, Գրիգորն մօրէն ընծայեցաւ ե աշխարհ եկաւ ողորմութեամբն աստուծոյ. և սմայ տացի տարին Ժ (10) պատարագի. տէր Յիսուս սմայ երկար կեանք կենդանութիւն պարգևեսցէ մինչև ի խորին ծերութիւն, բարի կենօք հասուցանիցէ միջնորդութեամբ սուրբ աստուած[ած]նին և սըրբոյն Օհանու՝ աւետարանչին և սրբոյն Գրիգորի Լուսաւորչին և ամենայն սրբոց և սրբուհեաց բարեխօսութեամբ, ամէն։ Թվին ՌՃՂԱ (1742) ապրիլի Ե (5) օրն գնաց առ ստեղծօղն իւր։

Թվին ՌՄԸ (1759)-ին, փետրվարի Ը (8)-ին օրը յաշխար[հ] եկաւ. Անդառան, տէր Յիսուս կենդանութիւն տացէ. ամէն։[6]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Սույն հատվածը գրված է 102բ էջի ձախ լուսանցքում։

2. Բնագրում սկզբում գրված է «ՌԾԽԵ», այնուհետև վրան ուղղված է «ՌԾԽԱ»։

3. Արզրումի հրդեհին վերաբերող հատվածը գրված է 103բ էջի ձախ լուսանցքում, միևնույն ձեռագրով։

4. Այստեղից ժամանակագրության գրության ձևը փոխվում է, այն շարունակել է առաջին մասի հեղինակի որդին՝ Ուրախությունը։

5. Ձեռագրում գրված է «ՌԾԶՋ», այնուհետև վերջին թվի՝ «Ջ»-ի վրա ջնջյալ համարելու նշան է դրված, բայց իսկական թիվը չի գրված։ Նկատի ունենալով, որ նախորդ տարեթիվը նշված է «ՌԾԶԳ», իսկ հաջորդը՝ «ԾՌԶԵ», ուստի մոռացված տարեթիվը նշեցինք «Դ», այսինքն «ՌԾԶԴ»։

6. Սույն հատվածը բնագրում գրված է 105ա էջում, ուրիշի կողմից։ Ժամանակագրության հաջորդական կարգը պահպանելու նպատակով այն տեղափոխեցինք ժամանակագրության վերջում։

XXII

## ԻՍԱՀԱԿ ՎԱՐԴԱՊԵՏԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVIII Դ.)

*Այս ժամանակագրությունը գտնվում է № 8233 ժողովածուի 60բ—62բ էջերում։ Ժամանակագրության վերջին մասը (սկսած 61բ էջի վերջին տողերից) ժամանակակիցների առանձին հիշատակություններ են, որոնք կապ չունեն բնագրի հետ, այլ գրվել են տարբեր անձնավորությունների կողմից։ Սրանք վերաբերում են 1735—1744 թվերին տեղի ունեցած դեպքերին և իրենց իսկության վրա ոչ մի կասկած չեն թողնում։ Այսպիսով, բուն ժամանակագրությունը տեղավորված է ժողովածուի 60բ—61 էջերում «Պարսից թագաւորի թախտ նստիլն ի Թարվէզ» խորագրով։ Վերջինիս տակ շարադրված դեպքերն սկսվում են 1576 թ. շահ Թահմազին բաղնիսում սպանելու և վերջանում 1723 թ. պարսիկներից Մակու բերդի ետ գրավման վկայություններով։ Ժամանակագրության մեջ հեղինակն ակնարկում է իր մասին, այսպես՝ 1697 թ. տակ կարդում ենք. «Օգոստոս ամսոյն մակաբայեցոց տօնին, Մուժամպարայ եկեղեցւոյ հիմն* ձգեցաւ *և ի գալ տարին հոկտեմբերի ԻԸ (=28)* աւարտեցաւ *տէրամբ»։ Կամ, հեղինակը խոսելով 1702 թվին հուլիսի 13-ին Իսահակ վարդապետի մահվան մասին ավելացնում է. «Երեքշաբթի* թաղեցաւ *Ուչքիլիսի ձախակողմին խորանն»։*

*Վերոգրյալ տեղեկությունները, ինչպես տեսնում ենք, մատնացույց են անում, որ ժամանակագրության հեղինակը XVII դարի երկրորդ կեսի և XVIII դարի սկզբի անձնավորություն է։ Սակայն ո՞վ է ժամանակագրության հեղինակը։ Այդ հարցը պարզելու համար անհրաժեշտ է մի քանի խոսք ասել № 8233 ժողովածուի գրիչների մասին։ Այս գիրքը զանազան, երբեմն հատուկտոր նյութերի հավաքածու է։ Եթե բացառենք 1785/6 թվերին վերաբերող մի շարք հիշատակությունները (էջ 39բ, 58ա, բ, 94ա և այլն) ապա ժողովածուի նյութերի ընդօրինակությունը և զանազան նշումները կատարել են մի քանի անձնավորություններ, որոնցից միայն երկուսից է մեզ հասել հիշատակարան։ 69ա էջում գրիչ Հովհաննես դպիրը, ընդօրինակելով տոմարի մեկնությունը, հարց ու պատասխանի ձևով, թողել է մի փոքրիկ հիշատակարան. «Գրեցաւ տոմարամեկնիչս ի թվաբերութեանս հայկազեան սեռիս ՌՃԽԲ (=1693)-իս ձեռամբ անիմաստ Յոհաննէս անուամբ դպրի, ի դրան սուրբ առաքելոյն Թադէոսի և նորին առաջ[ն]որդ Սահակ և Սարգիս աստուածաբան վարդապետացն և ես նոցին ծառայից ծառայ» (81ա էջ)։ Սակայն հետաքրքիրն այն է, որ տոմարի մեկնության առաջին (69ա) էջն ընդօրինակել է ոչ թե վերոհիշյալ Հովհաննես դպիրը, այլ ժողովածուի հիմնական գրիչը, Իսահակ վարդապետը, որին շարունակել է Հովհաննես դպիրը։*

*Ժողովածուի երկրորդ գրիչը՝ Իսահակ վարդապետը 90բ էջում թողել է*

հետևյալ հիշատակարանը. «Յարմարող սորին[1] Իսահակ վարդապետս, սպասաւոր սուրբ առաքելոյն Թադէոսի, յիշել աղաչեմ ի տէր. գրեցաւ թվին ՌՃԽԴ (–1695), յունիս ամսոյ մուտն, ի սուրբ աթոռն առաքելոյն Թադէոսի և Հայաստանեաց լուսաւորչի, ի խնդրոյ Ռամիսցի[2] պարոն Անուշին» (էջ 90բ)։

Ժամանակագրության, արեգակի և լուսնի խավարման գրույցի, հիշատակարանի, ինչպես և բազմաթիվ այլ հատվածների գրության ձևը մեկ է, այսինքն մեկ ձեռագրով է։ Այստեղից եզրակացնում ենք, որ ժամանակագրությունը ևս, ժողովածուի մեջ մուծել է Իսահակ վարդապետը։ Սակայն սխալ կլիներ, եթե Իսահակ վարդապետին վերագրեինք ժամանակագրության ընդօրինակման պատիվը միայն։ Նկատի ունենալով, որ Իսահակ վարդապետի գործունեության և սույն ժամանակագրության ընդգրկած ժամանակաշրջանը համընկնում են իրար և որ նա մի գրասեր, բանիմաց անձնավորություն էր,[3] պետք է չկասկածել, որ նա ինքն է և ժամանակագրության հեղինակը։ Սակայն ինչպե՞ս բացատրենք, որ ժողովածուի հիշատակարանը վերաբերում է 1695 թ., մինչդեռ ժամանակագրության տեղեկությունները հասնում են մինչև 1723 թվականը։ Կարծում ենք, որ Իսահակ վարդապետն իր ժամանակակից դեպքերին վերաբերող մի ժամանակագրություն ունեցել է ձեռքի տակ, որը լրացնելուց և կարգավորելուց հետո, ավելի ուշ, մուծել է № 8233 ժողովածու մեջ։ Այս ենթադրությունը ճշտվում է հետևյալ փաստով։ Մատենադարանի արխիվային բաժնի, կաթողիկոսական ֆոնդի 1-ին թղթապանակի 46-րդ վավերագիրը[4] (Б) բովանդակում է ժամանակագրության բազմաթիվ տեղեկություններ, որոնք վեց տարբեր ձեռագրերով գրված են ոչ հաջորդական կարգով և վերաբերում են XVII դարի 60-ական թվականներից մինչև 1787 թվականին՝ Թադեոս առաքելի վանքում և շրջակայքում տեղի ունեցած դեպքերին։ Սույն վավերագրի վերջին ձեռագրով, որ նշանակեցինք E տառով,[5] արձանագրված են 1663—1703 թ. թ. տեղի ունեցած եղելությունները։ Այս և Իսահակ վարդապետի ձեռագիրը չեն տարբերվում իրարից. ուստի, վերոհիշյալ վավերագիրը № 8233 ժողովածուից ընկած 8 թերթերն են։ Հենց այդպիսի ժամանակագրական ավելի փոքր հատված են նաև № 8233 ժողովածուի 60ա էջում գտնվող մյուս տեղեկությունները (А), որոնք կապ չունեն բուն ժամանակագրության հետ, բայց գրվել են Իսահակ վարդապետի կողմից։ Այս երեք բնագրերի համեմատությունը ցույց տվեց, որ նախօրոք կազմված ժամանակագրական այս երկու հատվածներից բազմաթիվ անցքերը մտել են բուն ժամանակագրության մեջ։ Օրինակ՝ № 8233 ժողովածուի 60ա էջում կարդում ենք. «Թվին ՌՃԽԶ (=1697)-ին Մուժամպարայ եկեղեցին սկսաք շինել օգոստոսի

[1] Սույն հիշատակարանը գրված է «Վասն արեգական և լուսնի խաւարման» գրույցից հետո. և եթե նկատի ունենանք հիշատակարանի «Յարմարող սորին» հատվածը, կարող ենք աներկրա եզրակացնել, որ վերոհիշյալ գրույցի հեղինակն ինքն Իսահակ վարդապետն է։

[2] Գողթանի այս գյուղը, Ցղնայի մոտ կոչվում է Ռամիս, թեև ասում էին նաև Ռումիս կամ Ուռումիս։

[3] Հիշենք, որ նրա գրչին է պատկանում «Վասն արեգական և լուսնի խավարման» գրույցը։

[4] Սույն վավերագրի մասին մեզ տեղյակ պահեց ընկ. Ա. Հովհաննիսյանը, որի համար հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը։ Այդ վավերագիրը այժմ մուծված է № 8233 ժողովածուի մեջ։

[5] Ռուսական տառերը ցույց են տալիս գրության տարբեր ձեռագրերը։

Ր., Մակաբայեցոց տօնին հիմն արկաք»։ Իսկ արխիվում գտնվող ժամանակագրական վերոհիշյալ հատվածում կարդում ենք.

«Թվին ՌՃԽԸ (=1699) [աւարտեցա]ք Մուժամպրայ եկեղեցին տօն Մակաբայեցոցն բան մտ[աւ]»։ Այս երկու տարբեր հատվածները խմբագրելուց հետո բուն ժամանակագրության մեջ մտել են այսպես. «Թվին ՌՃԽԶ (=1697) օգոստոս ամսոյն, Մակաբայեցոց տօնին Մուժամպրայ եկեղեցոյ հիմն ձգեցաք ե. ի գալ տարին հոկտեմբերի ԻԸ (=28) աւարտեցաք տէրամբ»։

Հենց այն հանգամանքը, որ արխիվի ժամանակագրական հատվածում տեղ են գտել այնպիսի մանրունքներ, ինչպես ասենք. «Թվին ՌՃԼԲ (=1683)-ին սկսայ է (=7) ողջոյնն ամէն օր ասել, յունվարի Զ (=6) աւուր մկրտութեանն Քրիստոսի», տեղեկությունը ցույց է տալիս, որ լուրջ ժամանակագրության մեջ նման տեղեկություններ չէին կարող տեղ գտնել, և որ ժամանակագրական վերոհիշյալ հատվածը ամենայն հավանականությամբ նախնական բնագիր է։ Այսպիսով, անկասկած է, որ վերջին երկու բնագրերի և բուն ժամանակագրության հեղինակն Իսահակ վարդապետն է։ Այս ամենից պարզվում է, որ հեղինակը՝ Իսահակ վարդապետը Թ. առաքելի վանքն է գալիս 1664 թ., և 1667 թ. ձեռնադրվում է քահանա, 1671 թ. նա գնում է Սպահան, 1677 թ. ձեռնադրվում է եպիսկոպոս, 1685 թ. Իսահակ (Արդար Սահակ) վարդապետից, որը Թ. առաքելի վանքի առաջնորդն էր, ստանում է «Դաւազան էքլէսիաստական իշխանութիւն ի վերայ դամբարանի սուրբ առաքելոյն»։ Նա կատարել է մի շարք շինարարական աշխատանքներ Թ. Առաքելի վանքում և այլն։

Բուն ժամանակագրության բազմաթիվ տեղեկություններից ավելի հետաքրքիր և արժեքավոր են XVII դարի 30—40-ական թվականներին Նոր-Ջուղայի կյանքում տեղի ունեցած հասարակական հարաբերություններին, դասակարգային հարաբերություններին վերաբերող փաստերը։[1]

Այդ պայքարի մասին որոշ տեղեկություն տալիս է Խաչատուր Ջուղայեցին և այդ մասին կա առաջին ուսումնասիրության փորձը,[2] սակայն ժամանակագրության հեղինակի վկայությունը հետաքրքիր է ոչ միայն նրանով, որ նա ժամանակով ավելի մոտ է դեպքերին, քան Խաչատուր Ջուղայեցին, այլև նրանով, որ ժամանակագրությունը որոշ լրացումներ է կատարում մեզ արդեն հայտնի տեղեկություններին։

Մեր նպատակից հեռու է Ջուղայում գոյություն ունեցող այդ նոր աղանդի առաջադրած պահանջները քննել ըստ էության, բայց այստեղ կառանձնացնենք միայն այն նորը, ինչ հաղորդում է մեզ առաջարկվող ժամանակագրությունը։

Նոր-Ջուղայի աղանդավորական շարժման Խաչատուր Ջուղայեցու վկայությունը եթե համեմատենք ժամանակագրության համապատասխան վկայության հետ, կնկատենք, որ նախ՝ երկու վկայություններն էլ շարժման ղեկավարին տարբեր անուններ են տալիս։ Խ. Ջուղայեցին գրում է՝ Թոմաս (Զաքարիա Սարկավագի մոտ՝ Թումիկ), իսկ ժամանակագրությունը՝ Սև Պետրոս։ Երկրորդ՝ երկու վկայության համապատասխան հատվածները, որոնք վերա-

[1] Հմմտ. Խ. Ջուղայեցի «Պատմութիւն Պարսից», էջ 115—116, Զաքարիա Սարկավագը ունի փոքրիկ վկայութիւն, «Պատմագրութիւն» հատոր Բ, էջ 69։

[2] «Անհայտ աղանդավորներ հայոց մեջ ԺԶ ու ԺԷ դարերում («Հանդէս Ամսօրեայ», 1926 թ., էջ 59—63, 169—171, 245—257)։

ըՙնրում են աղանդավորների առաջադրած հինգ պահանջներին և սրանց նկատմամբ Ջուղայի առաջնորդ Խաչատուր վարդապետի ձեռնարկած միջոցառումներին, համարյա նույնն են։ Նկատի ունենալով աղանդավորական շարժման առաջնորդների մասին երկու վկայությունների տարբեր ցուցումները, կարծում ենք, որ Խ. Ջուղայեցու և ժամանակագրության հեղինակի համար հիմք են ծառայել նույն շարժման մասին եղած տարբեր սկզբնաղբյուրներ։

Դժվար է ենթադրել, թե Սև Պետրոսը Թոմասի մականունն է, որովհետև Զաքարիա Սարկավագի վկայության համաձայն էջմիածնում Օնուփրիոսի դատավարության ժամանակ Սև Պետրոսը պատմում է իր և Օնուփրիոսի խոսակցությունը Թումիկի (իմա Թոմասի) մասին։[1]

Այսպիսով ժամանակագրության վկայությունը չի բացասում Խ. Ջուղայեցու վկայությունը (Թոմասի փոխարեն Սև Պետրոս), ընդհակառակը, Խ. Ջուղայեցու վկայությունը ժամանակագրության շնորհիվ լրացվում է, և վերևում հիշված շարժման մեջ հանդես են գալիս ոչ թե մեկ, այլ երկու ղեկավարներ։

Որ Սև Պետրոսը աղանդավորական է եղել, այդ մասին առաջարկվող ժամանակագրությունից բացի կա և մի այլ վկայություն, որ բերում է Զաքարիա Սարկավագը, ըստ դրա, Օնուփրիոս Երևանցուն դատելու համար, Հակոբ Ջուղայեցու հրավերով, էջմիածին «... եկին ամենեքեան հանդերձ իշխանաշուք արամբք։ էր անդ և կաթողիկոսն Աղուանից Տէր Պետրոսն՝ և արք փառաւորք Ջուղայեցիք...»:- Մի այլ առիթով Զաքարիան հիշում է, որ «... էր անդ այր մի Ջուղայեցի, որ ունէր ճերձուած ինչ, որում ասէին Սէաւ-Պետրոս..»[3] (ընդգծումը մերն է)։

Զնայած Զաքարիա Սարկավագի վկայությունը փոքր է և շատ բան չասող, համենայն դեպս հաստատում է Սև Պետրոսի աղանդավոր լինելը։[4] Մինչդեռ ժամանակագրության համապատասխան Սև Պետրոսը եղել է այդ շարժման լիդերներից մեկը։ Նկատի ունենալով վերջինիս մասին ժամանակագրության «այր ոմն» և Զաքարիա Սարկավագի «այր մի» տեղեկությունները, ենթադրում ենք, որ նա եղել է աշխարհական, բայց թե հասարակական որ շերտից, այդ մասին ոչ մի ցուցում չունենք, հավանաբար խոջաներից մեկը, մանավանդ, որ նրա ընկեր Թումիկն էլ դերձակ է եղել։

Հետաքրքիր է ժամանակագրության շարժման հետևորդներին վերաբերող

---

[1] Զաքարիա Սարկավագ, «Պատմագրութիւն», հատոր Բ, էջ 69։

[2] Զաքարիա Սարկավագ, «Պատմագրութիւն», հատոր Բ, էջ 68։

[3] Նույն տեղ, էջ 68։

[4] Կա ենթադրություն՝ Սև Պետրոսն եղել է Թոմասի հետևորդներից մեկը, և վերջինիս ուսմունքին հավատարիմ է մնացել նույնիսկ նրա ուսմունքը դատապարտվելուց մի երկու տասնամյակ հետո էլ («Հանդէս Ամսօրեայ», 1926 թ. էջ 352—253)։ Այս ենթադրությունը հավանական չէ, որովհետև Սև Պետրոսը Հակոբ Ջուղայեցու կողմից հրավիրվել է էջմիածին՝ մասնակցելու Օնուփրիոս վարդապետ Երևանցու դատավարությանը։ Ինչպես կարող էր այդ պատահել։ Ժամանակագրության և Խ. Ջուղայեցու վկայությամբ 1642 թ. Ն. Ջուղայում Խաչատուր պատրիարքը փակում է եկեղեցին և «սինոդոս» հրավիրելով, հերքում աղանդավորների ուսմունքը, իսկ ժամանակագրությունն ավելացնում է «Ուղղեաց զբաղումս»։ Ըստ երևույթին սրանց մեջ է եղել նաև Սև Պետրոսը, որը հավանաբար հրաժարվել է շարժման դավանանքից և երկին հակվել պաշտոնական եկեղեցուն, պարզ ասած, շարժմանը դավաճանել է։ Այլ կերպ անհասկանալի կմնա աղանդավորական Սև Պետրոսի ներկայությունն Օնուփրիոս վարդապետի դատավարությանը։

*վկայությունը, որոնց մասին Խ. Ջուղայեցին ոչինչ չի գրում։ Այդ մասին այնտեղ կարդում ենք. «... Եւ Պետրոս նոր հերձուած խօսեցաւ իւր համախոհիւքն, իբրև զԱրիոս և Նեստոր և ստացաւ իւրն համախոհք բազում։ ... Եւ Խաչատուր վարդապետն ի մէջ սինոդոսին հերքեաց զհերձուածս նոցին չար և ուղղեաց ղրաղում» (ընդգծումը մերն է— Վ. Հ.)։*

*Սույն վկայությունը ցույց է տալիս, որ Ջուղայում հանդես եկած աղանդավորական շարժումը չի սահմանափակվել նեղ շրջանակներում։*

*Հետաքրքիր տեղեկություններ են պահվել նաև ժամանակագրության արխիվային բաժնի և № 8233 ժողովածուի 60ա էջի բնագրերում։ Վերջիններս բերում ենք նույնությամբ, սակայն նրանք դնելով բուն ժամանակագրությունից հետո։*

XXII

## ՊԱՐՍԻՑ ԹԱԳԱՒՈՐԻ ԹԱԽՏ ՆՍՏԻԼՆ Ի ԹԱՐՎԷԶ 60ր

*Թվին ՌԻԵ (1576)-ին շահ Թամազն ի բաղանիսն մորթեցին,[1] սուլթան Հայտարն[2] սպանեցին, շահ Իսմայիլն բերդէն հանեցին թախտ դրին։*

*Թվին ՌԾԲ (1603) շահ Աբասն եկաւ Հատրպէճան։[3]*

*Թվին ՌԾԳ (1604)-ին Հին Ջուղայ զերեալ քշեց Սպահան։[4]*

*Թվին ՌԿԵ (1616) շահ Աբասն գնաց Վրաց տունն և գերեալ տարաւ ի Ֆահրապատ։*

*Թվին ՌՀԱ (1622) շահ Աբասն էառ զՀուրմուզ ի Ֆռանկաց և նոյն ամին էառ զՂանտահար։*

*Թվին ՌՀԳ (1624) շահ Աբասն էառ զԲաղդատ ի Տաճկէն, այսինքն Օսմանցւցէն։*

*Թվին ՌՀԸ (1629) շահ Աբբասն մեռաւ ի Ֆահրապատ։[5]*

*Թվին ՌՀԸ (1629) թոռն շահ Աբասին, որ է շահ Սէֆին թախտ նստաւ։*

*Թվին ՌՁԴ (1635) սուլթան Մուրատն էառ զԷրէվան։[8]*

*Թվին ՌՁԵ (1636) շահ Սէֆին գնաց ի վերայ Էրէվանայ բազում զօրօք, և կոտորեաց զՕսմանցիսն և էառ զԷրէվան մեծաւ յաղթութեամբ։[9]*

*Թվին ՌՁԷ (1638) սուլթան Մուրատն եկն բազում զօրօք և էառ զԲաղդատ, բուզում կոտորմամբ։ Եւ այնու ելից զցանկութիւն սրտին և եղին դաշինս և արարին հաշտութիւն։ Շահ Սէֆին և սուլթան Մուրատն ոչ առնել պատերազմ ի վերայ միմեանց և արարին խաղաղութիւն։*

*Թվին ՌՂ (1641) սվղան[10] ամսուն, ահագին շարժ եղև ի Թարվէզ, և շատ աւերութիւն եղև, և բազում մարդիք՝ այր և կին ի ներքոյ հողոյն մնացին։ Եւ Գ (3) ամիս գետինն երերալոյ և դողալոյ ոչ դադարէր։*

*Թվին ՌՂԱ (1642) պատրիարքն Խաչատուր վարդապետն Ջուղայու առաջնորդ, ջատագով եղև Քրիստոսի օրինացն, փակեաց զեկեղեցիսն և արար սիւնհոդոս, զի այր ոմն մականուամբ Սև Պետրոս Նոր հերձուած խօսեցաւ իւր համախոհիւքն, իբրև զԱրիոս և Նեստոր և ստացաւ իւրն համախոհք բազում։ Նախ ասէին, որ զՔրիստոս ոչ հաւասար հօր, այլ կր[տ]սեր, և ևս Քրիստոսի մարդ ասէին և Մարիամու մարդածին և ոչ աստուածածին։ Բ. զխաչն կենսատու և պատարագն հաշտարար և հաղորդութիւնն*

ուրբ չարաչար հայհոյէին։ [Երրորդ՝] զդատաստանն Քրիստոսի և դյարութիւն մեռելոց ոչ ընդունէին։ Չորրորդ՝ զկանոնս և զխորհուրդս եկեղեցոյ և զխոստովանութիւնն և զպատարագն սուրբ անարգէին։ Ե. զառաջնորդս և զվարդապետս և զքահանայս սուրբ եկեղեցոյ բամբասէին և խափանայ ասէին։[11] Եւ Խաչատուր վարդապետն ի մէջ սիւնոդոսին հերքեաց[12] զհերձուածս նոցին չար և ուղղեաց զբազումս։

Թվին ՌՁԴ (1635) սուլթան Մուրատն էառ զԷրէվան։[13] Մահմատ պէկն էառ զՄակու թվին ՌՁԴ (1635)։

Թվին ՌԾԶ (1607) Մուստաֆայ պէկն փախաւ գնաց Ուռում։

Թվին ՌԾԲ (1603) շահ եկաւ Թարվէզ։

Թվին ՌԾԹ (1610) Մուրատ փաշան եկաւ։

Թւին ՌԿԵ (1616) Մահմատ փաշան եկաւ Երէվան, Ամիրկունայ խանին վերայ և չի կարաց առնուլ զԷրէւան, գնաց Արզրում դշլամիշ արար։

Թվին ՌՂԲ (1643) թագաւորեաց շահ Աբաս, որ է որդի շահ 61ա
Սէֆուն.[14] Թագաւորեաց ԻԲ (22) ամ և ունէր յոյժ սէր առ քրիստոնեայս և արար բազում հնարս։

Թվին ՌՃԺԴ (1665) թագաւորեաց շահ Սուլէյմանն,[15] որ էր որդի փոքր շահ Աբասին։

Թվին ՌՃԺԵ (1666) ահագին շարժ եղև յերկիրն Շրվանու և Շամախու և բազումք ի ներքոյ հողոյն մնացին՝ այր և կին։[16] Եւ սոյն տարիս Ալի Ղուլի խանն Հայոց ազգէս վատ ասաց շահ Սուլէյմանին և թագաւորն կամէր կոտորել զհայ ազգս, որք էին ի Ջուղայ, բայց Ալի Ղուլի խանն կրկին ինքն բարեխօս անկաւ, շահն բաշխեց նմա զղաթլամ առնելն և էառ ճանիմայ ԴՌ (4000) թուման, որ կանէ Ձ (80) քիսայ։

Թվին ՌՃԺԶ (1667) Շխալի խանն եղև էհդիմայ տօվլայ։[17] Եւ սոյն ամին Թուրքացաւ Շխմումինն[18] և վատ ասաց Շխալի խանին և եդ հարկ ի վերայ եկեղեցեացն Ջուղայու։

Թվին ՌՃԻԲ (1673) ահագին շարժ եղև Մաշատ և բազումք այր և կին մնացին ի ներքոյ հողին։ Եւ բլաւ գումպէթն Իմամ Ռըզին. և շահ նեդ զԱլխանն տարքար, որ կրկին շինեց։

Թվին ՌՃԻԷ (1678) ահագին շարժ եղև Երևանայ երկիրն և քաղաքն։ Եւ բլաւ պարիսպն Երևանայ և բազումք այր և կին ներքոյ հողոյ մնացին և մեռան։[19] Շահ Սուլէյմանն Դ (4) տարի բնաւ ոչ հեծաւ ի ձի, յետ Դ (4) տարոյ, որ էր թիւն ՌՃԼ (1681) այրամ[20] ամսոյն ԺԵ (15), ձիաւորեցաւ բազում հեծելօք։

Թվին ՌՃԺԶ (1667) Պահլուլն պէկն մեռաւ։

Թվին ՌՃԼԲ (1683) շահ Սուլէյմանն ջրաւհնեաց օրն Ջուղայու Հայոց ԻԷ (27) հարսն և աղջիկ քաշեց և ուրացոյց զնոսա։

Թվին ՌՃԼԶ (1687) Օսմանցիքն զսուլթան Մէհէմէտն խաֆաս եդին և զմեծ եղբայրն նորին, սուլթան Սուլէյման թագաւորեցուցին։[21]

Թվին ՌՃԽ (1691) մեռաւ սուլթան Սուլէյմանն։

Թվին ՌՃԾԷ (1708) լուսարար տէր Սահփանոսն աշունք մեռաւ։

Թվին ՌՃԾԴ (1705)-ին, յունիսի ԺԳ (13) վախճանեցաւ Նահապետ կաթողիկոսն Ետարկու անապատն, Թ (9) ժամուն. և տարեալ թաղեցին Էջմիածնա Շողակաթն։[22]

Թվին ՌՃԾԴ (1705)-ին Մակուայ բերդն շինեցին։

Թվին ՌՃԾԴ (1705)-ին Սուլէյման պէկն զփոքր Մահմատ պէկն վերի բերդն սպանից և ինքն դափանմիշ եղև Զ (6) ամիս Լ (30) հոգով։

Թուին ՌՃԾԵ (1706) Աղէքսանդրն կաթողիկոս ձեռնադրեցաւ դեկտեմբերի Է (7), Յակոբ Մծբնայ հայրապետին։

Յովսէփ վարդապետն թուին ՌՃԾԷ (1708) ապրիլ ամսոյ Դ (4), Զատիկ շաբաթ օրն, Ը (8) ժամուն վախճանեցաւ։ Սոյն թվին Մարտիրոս վարդապետն վախճանեցաւ, յուլիս ամսոյն։

Թուին ՌՃԾԱ (1702) վախճանեցաւ Իսահակ վարդապետն, 61բ
յուլիս ամսոյ ԺԳ (13), աւուր ի Վարդավառին երկուշաբաթին արշալուսոյն. երեքշաբթի թաղեցաք Ուչքիլիսի ձախակողմին խորանն։[23]

Թուին ՌՃԽԶ (1697) օգոստոս ամսոյն [Բ] (2), Մակարայեցոց տօնին, Մուժամպրայ[24] յեկեղեցոյ հինն ձգեցաք և ի դալ տարին հոկտեմբերի ԻԸ (28) աւարտեցաք տէրամբ։

Թվին ՌՃԾԹ (1710) պարոն եղին Պայազիտ զՇէրպէկի տղէն և Ապտիպէկն ձգեցին։

Թվին ՌՃԿ (1711) զՇէրպէկի տղէն իջուցին ի բերդէն և զՕսման պէկն դրին պարոն։ Եւ ի սոյն ամին մեռաւ Ապտիպէկ Արզրում թվին ՌՃԿԱ (1712)։

Թվին ՌՃԿԱ (1712) Աղուլեաց Յոհան և Աստ[ա]պատու Խաչատուր վարդապետքն վ[ա]խճանեցան։

Ի թվին ՌՃԿԱ (1712) Թորոս պարոնտէր վախճանեցաւ Էջմիածին և Ահարոն վարդապետն՝ Յալաշկերտ։

Ի թվին ՌՃԿ (1711) Աղէքսանդր կաթողիկոսն գնաց Սպահան և միւս տարին դարձեալ եկն և օր Շողակաթին եմուտ Էջմիածին։ Եւ ի սոյն թվին ՌՃԿԱ (1712) սաստիկ մահ անկաւ վանքն, Պայազիտ և ամենայն շրջակայ գաւառքն։

Թվին ՌՃԿԱ (1712) փաշէն եկաւ Պայազիտու վերէն և յոյժ աւիրեց երկիրն, չի կարաց բերդն առնուլ, դարձաւ գնաց։

Թվին ՌՃԿԱ (1712) Ովանէս վարդապետն Թարվէզ մեռաւ։

Թվին ՌՃԿԲ (1713), յունվարի ԻԵ (25), առաջաւոր բարեկենդանի կիրակի առաւօտն, մեռաւ Դաւիթ վարդապետն։

Թվին ՌՃԿԲ (1713) մեռաւ Ստեփանոս վարդապետն, որ է Համզէն։[25]

Թվին ՌՃԿԳ (1714), նոյեմբերի ԻԲ (22) վախճանեցաւ Աղէքսանդր հոգևոր տէրն։

Թվին ՌՃԿԴ (1715) երևման խաչին, մայիսի Ը (8), Աստուածատուր կաթողիկոսն օծաւ հայրապետ ամենայն Հայոց։

Թվին ՌՃԿԹ (1720) Մէլիքսէթն մեռաւ սուրբ Յակոբայ պաքին։

Թվին ՌճԿԶ (1717) առաջաւորաց պաքի երկուշաբթին, փետրվարի ԺԱ (11), մեռաւ Աստուածատուր վարդապետն։

Թվին ՌճԿԷ (1718) յունիսի Է (7), օրն շաբաթ, Հայոց ահկի ԺԸ (18), խաւարեցաւ արեգակն, երեկոյի ժամուն։

Թվին ՌճԿԷ (1718) Օսման պէկն իջուցին Գայեաղիաու բէրդէն և եդին Աւտիրէկի լաճն՝ Մահմուտ բէկն պարոն։

Թվին ՌճԿԸ (1719) Սպահանցի Մաթէոս վարդապետն եղև առաջնորդ, յունվարին մէկն։

Թվին ՌճՀ (1721) ահագին շարժ եղև Թարվէզ քաղաքն, բաղում այր և կին ի ներքոյ հողոյ մնացին, շատ վնաս եղև այն քաղաքին։

Թվին ՌճՀԲ (1723) Ռաստւլն Մակուայ բերդըն էառ Ղըըլ-պաշէն, ապրիէլի Ե (5)-ին։[25]

Թվին ՌճՂ (1741), յունիսի Ը (8), օրն ուրբաթ, Մակվեցի Սարդիս վարդապետն մեռաւ։

Թվին ՌճԽ և Թ (1700) առ աստուած փոխեցաւ Թարվիզցի Կիրակոսի որդի, երեցփոխան Սիմօնն, որոյ տէր ողորմեսցի ըստ մեծի ողորմութեանն իւր։ 62ա

Թվին ՌճՁԴ (1735)-ին և յամրսեանըն յօզօստոսի մուտն, եւ՝ Ղափանցի Գաւիթ վարդապետի եղբօր որդի, Զաքարիայ վար-դապետս, Թաթեոս Առաքեալ առաջնորդ եկայ։

Ի ՌճՁ և Է (1738) թվին, յունվար ամսոյն, Սահակա Պար-թևի տօնին, ի հոգւոյն սրբոյ ընտրեալ, օծեցաւ սիւնն ուղղա-փառութեան տէր Ղազար գերընտիր հօվւապետն ամենայն Հա-յոց,[26] որ և սկսեալ զարմանալի շինւածօվք զարդարեաց զսուրբ Էջմիածին, որ ոչ ունէր յառաջ, այսինքն զվեհարանն ցանկալի և զՂազարապատ նաև մեծ պարիսպն խարտեալ քարիւ։

Ի ՌճՂԲ (1643) թվին, դեքտեմբերի ԻԳ (23), ուրբաթ օրն, Զաքարեա մեծ վարդապետն, արքեպիսկոպոսն վանից և վիջակի սուրբ Առաքելոյն Թադէոսին, առ աստված փոխեցաւ և մեզ որբ եթող, որ հոգին տէր լուսաւորեսցէ և աւրհնութիւն նորա ի վե-րայ մեր։

Ի ՌճՂ (1641) թվին, ապրիլի Ե (5) Ղափանցի Զաքարիայ վարդապետի [illegible] նաս վարդապետն ի սուրբ Էջմիածին եպիսկոպոս օրհնեցաւ, Նոր կիրակին, Ղազարու կաթուղիկոսէն ամենայն Հայոց, Ճահկեցոյ։

Թվին ՌճՂԳ (1744)-ին ի սուրբ Էջմիած[ն]էն առ աստուած փոխեցաւ, սրբոյ Առաքելոյն Թադէոսի միաբան, Մելքոն Կաֆա-յեցի վարդապետն, որոյ այց աէր արասցէ մաղթանօք սուրբ առաքելոյն։ 62բ

504—20

A

Թվին ՌՃԳ (1654) արեգակն խաւարեցաւ։ 60ա

Թվին ՌՃԽԸ (1699) կրկին խաւարեցաւ արեգակն։ Նոյն օրս առին Լէհէցիք զԿամէնից բերդն Օսմանցոցէն յետ և զաֆաեցին։

Թվին ՌՃԾԲ (1703) ամսոյն զՕսմանցոց թագաւորն զսուլթան [Ահմատ] խաֆաս եղին և զեղբայրն, որին զսուլթան [Մահմուտ ասեն] թախտ հանին,[29]

Թվին ՌՃԾԲ (1703) Այիպխանն մանզուլ արարին և զՇահտպազխանն եղին։

Թվին ՌՃԻԶ (1677) եպիսկոպոս աւրհնեաց, Յակոբ կաթողիկոսն էջմիածին, զԿաֆայեցի Սարգիս վարդապետն։

Թվին ՌՃԾԶ (1707)-ին իշխանութիւն ետու Թորվեզցի Սաեփանոս վարդապետին և քահանայ աւրհնեցի զեղբայրն ղտէր Ալէքսանն։

Թվին ՌՃԾԵ (1706) ղտէր Աղէքսանդրն կաթողիկոս աւրհնեցին Յակոբայ Մծբնայ հայրապետի տօնին.[30] և թվին ՌՃԿԳ (1714) վախճանեցաւ նոյեմբերի ԻԲ (22)։

Թվին ՌՃԿԴ (1715), մայիսի Ը (8), երեման խաչին Աստուածատուր հոգևոր տէրն օծաւ կաթողիկոս ամենայն Հայոց։[31]

Մուժամպար Ա (1) գերեզման գտաք թվին ՌՃԽԸ (1699)-ին, որ էր թաղած այն մեռեալն Ե.Ճ.ՀԴ (574) թվին։

Թվին ՌՃԽԶ (1697)-ին Մուժամպարայ եկեղեցին սկսաք շինել. օգոստոսի Բ (2) Մակարայեցոց տօնին, հիմն արկաք։

Թվին ՌՃԽԷ (1698) յունվար ամսոյն Դ (4) վախճանեսաւ Էրևան քաղաքն Ստեփանոս կաթողիկոսն Ջուղայեցի բանդի մէջն։

Թվին ՌՃԺԳ (1664) Յակոբ կաթողիկոսն գնաց Ստամպօլ և Սահակ վարդապետն եկն ի վանքն սուրբ Առաքելոյն Թադէոսի աւագ տօներին։ Եւ գարունն սկսաք հիւսայի[ն] կողմի պարիսպն շինել։

Թվին ՌՃԴ (1655) Յակոբ հոգևոր տէրն օծաւ կաթողիկոս, և թվին ՌՃԸ (1659)-ին վախճանեցաւ,[32] և թաղեցին Ստամպօլ՝ Պէկօղլին։

Թվին ՌՃԽԱ (1692) մահ անկաւ ի սուրբ Առաքելոյն Թադէոսի վանքն և ի դեղն։[33] Եւ մեռաւ տէր Պօղոսն Վարդավառի պասի չորեքշաբթի։[34] Եւ սոյն թվին մեռաւ Տիլանն և Անդրէասն ե. տէր Աւետիսն Կաֆայեցի և Մարաղեցի տէր Սարգիսն։ Եւ Գեղարքունեցի Ստեփանոս վարդապետն թվին ՌՃԽԲ (1693)-ին մեռաւ։

Թվին ՌՃԽԴ (1695), յունվարի ԺԱ (11), եաք ի կեօղն Տևի,[35] եաք Գողթան դաւառն։ Ամոյն սաստիկ ցրտայ փայլատակմամբն և գիշերն շարժ եղաւ։

Թվին ՌՃԳ (1654) ղկնի Աստուածածնին, չորեքշաբթի օր,[36] կէս օրն անցած արեգակն խաւարեցաւ, որ էր մէջ առիւծ կենդանակերպին արեգակն։

Б

Թվին ՌՃԿԸ (1719)-ում, փետուրվարի ԺԴ (14) աստուծով 1ա
գնացի սուրբ Էջմիածին, առաջնորդութիւնն տվին ինձ սուրբ Առաքելոյն Թադէոսին վանքին, ինձ մեղաւոր Մաթէոսիս, որ սուտ վարդապետ ասի, Շորանցի ասի։ (A)

Թվին ՌՃՂ (1741) Մակուեցի Սարգիս վարդապետն վախճանեցաւ, յունիսի ԺԲ (12)-ին։ (Б)

Թվին ՌՃՂԲ (1743) Թադէոս Առաքելոյ առաջնորդ Զաքարեայ վարդապետն վախճանեցաւ դեկտեմբերի ԻԳ (23)-ին։[37] (Б)

Թուին ՌՄԼԶ (1787)-ին Փառակեցի տէր Իսահակ շինարար յառաջնորդ վարդապետն գեղէն դուրս վարեաց ըռէս Սարգիսի որդիքն՝ Մանուչարն և Սալմաստցի Եաւրին և նդովիւք փակեաց, որ ոչ կարիցե ասել եկող և բնակողքն թէ՝ այս արտս և կամ այս ինչ տեղ իմ է, բոլորն հողն և ջուրն վանքին [է]։[38] (B)

Ի ՌՄԺԱ (1762) թվին սուրբ Թադէոս Առաքելոյ միաբան Յովսէփ վարդապետն վախջանեցաւ մարտի ԺԷ (17)-ին, որ պատվիրանի կիրակին։ (Г)

1834 նոյեմ[բերի] 20-ին վէքիլ Եսայի վարդապետն ստ տէր փոխեցաւ, սրոյ հոգին տէր լուսաւորեսցէ։ (D)

Թվին ՌՃՂԶ (1747)-ին Ղազար կաթուղիկոսն եկաւ ի սուրբ 2ա
Թադէոս Առաքելոյ վանքն, ինձ Եսայի անարժան վարդապետիս, որ եմ ի գեղջէն սուրբ Առաքելոյն Թադէոսի, եպիսկոպոս օրհնեաց, ընկերքն իմ էին՝ Պետրոս վարդապետն Գայաղիտցի ի գեղջէն Սարուպեղայ, Մինաս վարդապետն Ղափանցի, ի վանքէն Տաթևու, օգոստոսի ԺԶ (16), յաւուրս վերափոխման սուրբ Աստուածածնի կիրակին։ (Б)

Թուին ՌՄԼԲ (1783)-ին եղև յառաջնորդ Թադէոսի Առաքե- 3բ
լոյն հրաշափառ աթոռոյս Փառակեցի Իսահակ եպիսկոպոսն մարտի ամսոյ ելն և չորր[որ]դ կիրակին յինանց,[39] զհետ բազմութեամբ քահանայից և ժողովրդոց մտաւ ի սուրբ աթոռս և երեք տարի թարց առաջնորդի մնացեալ էր սուրբ տունս և յամենայն կողմանէ աղքատացեալ էր։ Բայց ինքն ունէր ընչըռ բազում և հաւատն անբիծ, յոյսն աներկբայ և զսէրն անկեղծ միայն թէ գիւղն ոչ ուզէր և մեծ վնաս համարէր մերձ լինին դոքայ, հոգևոր և մարմնաւոր վտանկէ մեզ այսպէս ասէր։ || Ահ եղբարք 4ա
դկնի Փառակեցի Իսահակ շինայսէր և շինարար արքեպիսկոպոսին և հանճարայհեղ վարդապետին, ով ոք է նստելոց ի սուրբ

աթոռս Թադէոսի Առաքելոյն և որպէսի բարուց տէր բռնաւորաց ձեռնէ լինելոց երկիրն և սուրբ վանքս, քան զի այս խզճոյս ժամանակն յոյժ զառն էր և դժուար, զի թէպէտ միշտ ջանայր, թէ ին:քն իւր ի վերայ վանից շինարարութեան խարճէ, չարաչար բռնաւորքն Խօյայ և Մակուայ անկանոն և անսահման կեղէքէին և ինքն տարակուսի լեալ սսէր, թէ թողում ի բաց, ի սպառ կու խանգարի վանքն, այլ նստօղ չի կայ, ապայ թէ տանք, նորինք աստուած հոգայ և այց առնէ. Բաւ է ՌՄԼԵ (1786) թւոյն։ (B)

Շինեցաւ ամբարով ջաղացն ՌՄԼԶ (1787) թւոյն, զկնի 7ա երեք ամսոյ աւարտ էհաս օգոստոսի ելն, հրամանաւ և արդեամբ տեառն Իսահակ շինարար արքեպիսկոպոսին Փառակեցի լուսահողի վարդապետին, որք վայելէք և հանդիպիք դուք զողորմին և տէր առատն յամենայնի ձեզ և մեզ ողորմեսցի աւուր սոսկալի դատաստանին։ ամէն։ (B)

Աստուած միշտ բարի է և բարերար, տացէ ա[շխ]արհիս խա- 8ա ղաղութիւն և մեզ կեանս։ Շինեցուցանեմք զգաւիթն սուրբ ե. գ[ջ]րաղացն ամբարով սրբատաշ քարի. և այլ շինուածք ևս։ Եւ զսուրբ տաճարն սպիտակացեալ տեսանեմ աչօք և ապա մարմնոյ և արեան ճաշակման արժանացեալ մեռանիմ. ակն ունիմ[40] հոգւով և մարմնով յարացեալ տեսանել յարուցիչն մեր Քրիստոս, որ հեշտալուր է և կատարօղ. Բաւ է։ (B)

Թվին ՌՃԻԹ (1680) Յակոբ հոգևոր տէրն վախճանեցաւ.[41] 9ա

Թվին ՌՃԻԹ (1680) Ուչքիլիսէն սկսաք շինել։[42] (E)

Թվին ՌՃԽԱ (1692) սուրբ Գրիգորի պասին, ամառն մահ անկաւ սուրբ Թադէոսի Առաքելոյ վանքն,[43] որ տէր Պօղոսն և Խ (40) ճան մեռան գեղէն և վանքէն։ (E)

Սոյն թվին նոյեմբերին մեռաւ տէր Աւետիսն։

Թվին ՌՃԽԵ (1696) Վարդավառին[44] Գալուստն եկաւ Երուսաղէմայ. (E)

Թվին ՌՃԽԵ (1696), հոկտեմբերի մինն, Այիպխանն կրկին խան եղև և մտաւ ի Թարվէզ. Սոյն թվին ներքի պուռն, գոմերն և թավլէքն շինեցաք, որ ի շարժէն բլաւ ամէնն։ (E)

Թվին ՌՃԺԲ (1663), դեկտեմբեր ամսոյն, ի տօնի գլխաւոր առաքելոցն՝ Պետրոսի և Պօղոսի,[45] Իսահակ վարդապետն եկն Թադէոս Առաքելոյ վանքն առաջնորդ. (E)

Թվին ՌՃԺԶ (1667)-ին, և տօնի Հրեշտակայպետացն,[46] 9բ աւրհնեցին զիս քահանայ անապատն Տաթևու։ (E)

Թվին ՌՃԺԹ (1670), մէջ Վարդավառին և Աստուածածնին, իշխանութիւն ետ ինձ վարդապետն։[47] Դ (4) շաբաթ ուտիք էր մէջն, Գ (3) շաբաթ անցաւ, կիրակին առի, որ առաջի միւս կիրակին բարեկենդան էր, Աստուածածնին շաբաթ օրն՝ Անտոնինոսի և Փոտինոսի տօն էր և իշխանութիւն առած կիրակին հարցն բկ անսկիզբն։ Տարէգիր Խ (40) էր։ (E)

Ի թվին ՌՃԻԶ (1677) եպիսկոպոս աւրհնեցին զիս, ի տօնի հոգոյ գալստեանն Պենտէկոստէին, յունիսի Գ (3), տարեգիրն Չ (700) էր. ԺԳ (13) եպիսկոպոս աւրհնեցին՝ Ստեփ[ա]ն[ո]ս Գեղարդեցին, Յովսէփ Տաթևացին, Սարգիս Քաֆայեցին, Միքայէլ

Ծուղայեցին, Աւետիս Բաղիշեցին, Եղիայ Լիմացին, Առաքել սուրբ Աղբէրկեցին, Յովանէս Դոշեցին, Կիրակոս Տեղերավանքեցին,[49] Վարդան Օձնեցին, Պօղոս Հոսոմէրէցին, Բարսեղ և Փիլիպպոս Հաղբատեցին։

Թվին ՌՃԼԲ (1683)-ին սկսայ Է (7) ողջոյնն ամէն օր ասել, յունվարի Զ (6) աւուր մկրտութեանն Քրիստոսի։

Ի թվի[ն] ՌՃԻ (1671) գնացաք Սպահան։ (E)

Թվին ՌՃԼԹ (1690) Փիլիպպոսն գնաց Ֆռանկստան նոյեմբերի ԺԵ (15)։ (E)

Թվին ՌՃԻԸ (1679)-ին սկսայ նորոգել ղտաճար սուրբ Առաքելոյն Թաղէոսի և աւարտեցի թվին ՌՃԼԴ (1685)-ին։ Եւ թվին ՌՃԼԴ (1685)-ին Իսահակ վարդապետն ետ ինձ գաւազան էքլէսիաստական իշխանութիւն, ի վերայ դամբարանի սուրբ Առաքելոյն, ի տօնի Պէնտէկոստէին։ (E)

Թվին ՌՃԼԱ (1682)-ին եկն Եղիազար հոգևոր տէրն ի սուրբ էջմիածին շքեղ փառօք և բուռն իշխանութեամբ, յամսեանն օգոստոսի, Ցսվակիմայ և Աննայի տօնին։[50] Եւ թվին ՌՃԽ (1691), օգոստոսի ԺԹ (19), վախճանեցաւ։ (E)

Ի թվին ՌՃԽ (1691), օգոստոսի Ի (20) ղնահապետ հոգևոր տէրն աւրհնեցին կաթողիկոս։ (E)

Թվին ՌՃԽԵ (1696) սեպտեմբերի ամսոյն աքսորեցին ղնահապետ կաթողիկոսն և աւրհնեցին ղՋուղայեցի Ստեփանոսն նոյեմբրի Ա (1)։[51] (E)

Թվին ՌՃԼԶ (1687) սուլթան Մէհէմէտն խաֆաս եղին, սորին մեծ եղբայր սուլթան Սուլէյմանն թագաւորեցուցին։ (E) 11ա

Թվին ՌՃԼԸ (1689), հոկտեմբերի ամսոյն ԻԵ (25) մեռաւ Շիաալի խանն։ (E)

Թվին ՌՃԽ (1691) մեռաւ սուլթան Սուլէյմանն։

Գայազիտու. պարոն Մէհմէտ պէկն թվին ՌՃԼԷ (1688), դեկտեմբերի Ա (1) մեռաւ, շաբաթ օր կէս օրին։ Նստաւ պարոն Իպրահիմ պէկն Գ (3) տարի։ (E)

Միրզա պէկն եղև պարոն թվին ՌՃԽ (1691) յունիս ամսին։ Թվին ՌՃԽԵ (1696), մայիս ա[մս]ոյն, սպանին ղՄիրզա պէկն, եղին կրկին Իպրահիմ պէկն պարոն, յունիս ամսոյն։ (E)

Թվին ՌՃԽ (1691) եղև Այիպխանն խան, յունիսի ամսոյն և թվին ՌՃԽԳ (1694)-ին մանդուլ արարին հոկտեմբերի ԺԵ (15), և եղին ղԱլամշախան գեկտ[և]բրի մինն, եկաւ չօրս։

Թվին ՌՃԽԵ (1696) կրկին Այիպխանն եղև խան նոյեմբերին, եկաւ չօրս։ (E)

Թվին ՌՃԼԹ (1690), նոյեմբերի Ի (20) գնաց Փիլիպոսն Ֆռանկստան։[52]

Թվին ՌՃԺԴ (1665) Սահակ վարդապետն եկն առաջնորդ սուրբ Առաքելոյն։ (E)

Թվին ՌՃԾԱ (1702), սեպտեմբեր ամսոյ, եկաւ վանք Գ (3) օր ապրաւ և մեռաւ Փիլիպոսն։ (E)

Թվին ՌՃԽԳ (1694) մեռաւ. շահ Սուլէյմանն։ Եղին որդի նորին շահ Հուսէնն Իէ (27) տարոյ։ (E)

Թվին ՌՃԽԹ (1700), օգոստոսի ԺԵ (15), փոքր Մահմատ պէկն եղին պարոն, որ փաշէն եկաւ երկիրն աւերեց։ (E)

Թվին ՌՃԽԱ (1692) շինեցաք պուճի քօշկն և հարաւոյ կողմի խցերն։ (E)

Թվին ՌՃԽԲ (1693) շինեցաք զանտես տունն և միւս տարին՝ սեղանատունն և արևմաեան և հիւսիւսոյ կողման խցերաց կէսն։ (E)

Թվին ՌՃԾԱ (1702), յուլիսի ԺԲ (12), Վարգավառի երկուշաբթին մեռաւ Իսահակ վարդապետն։[53]

Թվին ՌՃԽԵ (1696) Միրզա պէկն սպանեցին յունիս ամսոյ մինն, Մեծահրաշի կիրակին սպանեցին, կրկին Իպրահիմ պէկն եղև պարոն։ (E)

Թվին ՌՃԾ (1701), սեպտեմբերի Ժ (4), խեղդեցին զԻպրահիմ պէկն և եղին զփոքր Մահմատ պէկն պարոն։ (E)

Թվին ՌՃԽԵ (1696), ապրիլի ԺԴ (14), եղև շարժ ահագին սուրբ Թադէոս Առաքելոյ վանքն և շարժ ահագին։ (E)

Սոյն թվին, յունվարի Ա (1) շ[ա]հի ղուլն եկն վերայ վանիցն։ (E)

Թվին ՌՃԾԲ (1703), մարտի ԼԱ (31) մեռաւ Կոփեցին։

Մահմետն թվին Կ (611) երևեցաւ։[54] 12բ

Թվին ԿԲ (613) բաժանեցան Վիրք ի միաբանութեն[է] Հայոց։ Ի թվին ծ (561) կարգեցաւ հինկ հարիւրական, որով ուղղեցաւ Ջատկին։ (E)

ՀԶ (677) թվին տէր Կումիտասն շինեաց զՀռիփսիմէն և ասաց զԱնձինքն։ (E)

Թվին ՃԺԳ (664) երևեցաւ սուրբ Խաչն Վարագայ։

Թվին ՃՀԱ (722) Յոհան Օձնեցին պայծառացաւ ի Հայս։ Ի թուին կենարարին մերոյ Քրիստոսի աստուծոյ ՌՈԿԷ (1667) ամին և ի Հայոց թվականին ՌՃԺԵ երևեցաւ սուտ Քրիստոսն ի Զմիւռին և ապայ դարձաւ օրէնս Մահմետի։ (E)

Թվին ՌՃԻԸ (1679), յունիս ամսոյ Դ (4), հինկերորդ ժամու աւուրն, եղև շարժ ահագին ի քաղաքն Էրևան և Գառնի և բազում շինուածք տապալեցան և թէ պարիսպն քաղաքին փլաւ ի հիմանց և կամուրճ, որ ի վերայ Հուրաստան գետոյ բլաւ, որ ամենևին նշմարանք ոչ մնաց և Զորագեղ և Քանաքեռ ևս շատ ղարար եղև մարդ, քան զչափն աւել մեռան այր և կին։[55] (E)

Ես Գէորգ անարժան և յոգնամեղ վարդապետս շնորհիւն 14բ
աստուծոյ և օգնութեամբ սուրբ Առաքելոյն ի ՌՄԽԳ (1794) թվանիս մեր ղխաչկալն սրբոյ սեղանոյն, որ էր փայտեայ, ի սրբատաշ վիմաց և ի ծաղկահիւս յօրինեալ քարանց բազմաշխատ տքնութեամբ յորդաջան աշխատութեամբ և յոլով խարճագնացութեամբ նոտու շինել, որոյ տեսողաց և [հ]այելողացդ խնդրեմ ||| հանդերձ ||| մեղայ |||։ (B)

Ի ՌՄԽԲ (1793)-ն զաղբիւրն նորոգել ետու։

Ի ՌՄԽԵ (1796) ղՉրաղացն առաջինն այլ նոր ի նորոյ հանդերձ իւրովք պարագայիւքն մեծաւ աշխատութեամբ շինել ետու.[56] (B)

Թվին ՌՃԽ? (169?) պարիսպն շրջապատեցաք, որ սոյն տա- 15ա
րին Այիպխանն եկն։ (E)

Թվին ՌՃԽԱ (1692) քօշքն և իմ խուցն ծածկեցաք։

Թվին ՌՃԽ (1691) աղչիկ մի ծնաւ Գայաղիաու երկիրն. երբ Զ (6) տարոյ եղև մորուքն բուսաւ և պեղն երկայն, որպէս Լ (30) ատրոյ մարդ.[57] (E)

Թվին ՌՃԽԱ (1692) դեկտեմբերի ամսոյ մ[է]կին, Ծ (50) ոսկի աթոռհակալ Մինաս վարդապետէն աստուծոյ փոխ առաւ Սարգիս վարդապետն, յորժամ ուղէ ա[ն]պատճառ տայ. գիտութեամբ տէր Դաւթին և տէր Յովսէփին։ (E)

Թվին ՌՃԽԲ (1693), յունիսի ԺԱ (11), Հոգոյ գալստեան տաւ[նին ե]տոււ իշխանութիւն Խաչատուր վարդապետին առաքելոյն ||| Թվին ՌՃԽԳ (1694) փետ ||| զտաճար սուրբ Առաքե[լոյն |||

Թվին ՌՃԽԳ (1694) ||| Դաւիթն '|| վարդապետն Խ |||

Թվին |||-ին շարժ մեծ եղև ի վանսն սուրբ [առ]աքելոյն գեղն ||| ածք վանիցն ամէնն խար[խլ]եցաւ և բոլորի ||| ես քրթեբացն զարար [շա]տ եղև. Է (7) մարդ մեռան մին քրիստոնէ էր։

Թվին ՌՃԽԸ (1699) [աւարտեցա]ք Մուժամպարայ եկեղեցին, տօն Մակարայեցոցն բան մտ[աւ]։ (E)

[Թվին] ՌՃԽԷ (1698), յունվար [ամսո]յն չորս, բանդի մէջն վա[խ]ճ[անեց]աւ Ստեփանոս կաթողիկոսն Երևան քաղաքն.[58]

[Թվին] ՌՃԺԳ (1664) կաթողիկոսն դն[աց Ստամ]պօլ և մեք եկաք ի վանքն սուրբ Առաքելոյ [Թաղ]էոսի. գարունն սկսաք պարիսպ[ն շին]ել.[59] (E)

Թվին ՌՃԴ (1655) Յակոբ հոգևոր տէրն կաթողիկոս ձեռնա[դրուեցաւ]։

[Թվ]ին ՌՃԻԸ (1679)-ին վախճանեցաւ Յակոբ [հոգևո]ր տէրն Ստամպօլ և թաղեցին Պէկօզլի.[60]

[Թվի]ն ՌՃՀԳ (1724) Օսմալուն առէց Խօյ և բսպնանեաց զամենայն Ղզըլպաշն և զկանայսն գերեաց.[61] (E)

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հմմտ. XXIII ժամանակագրություն, «Զաքարեայ Սարկաւագ պատմագրութիւն», Հ. Ա. էջ 11, Չամչեան, «Պատմութիւն Հայոց», Հ. Գ, էջ 529։ Սակայն Լեոն Թահմազ շահի սպանության հանգամանքների մասին բոլորովին այլ բան է հաղորդում, չհիշատակելով իր օգտագործած աղբյուրը («Հայոց պատմություն», Հ. երրորդ, էջ 197)։

2. Հեյդարը Թահմազ շահի որդին էր, մոր գծով վրացի, Թահմազի սպանությունից հետո, Հեյդարի մայրը, վրաց իշխանների օգնությամբ, փորձեց նրան թագավորեցնել, սակայն գահակալական կռիվների ժամանակ Հեյդարը սպանվեց 1677 թվին։

3. Ա. Դավրիժեցու հաղորդմամբ 1603 թ. Գանջա (Ադրբեջանի կողմերը) գնում է ոչ թե շահ Աբասը, այլ նրա զորավարներից՝ Ամիրգունա խանը («Պատմութիւն», էջ 27)։ Շահ Աբասը Գանջան և շրջակա վայրերը գրավել է 1606 թ. (Նույն տեղ, էջ 93—95)։

4. Խոսքը վերաբերում է 1604 թ. շահ Աբասի կազմակերպած գաղթին։

5. Հմմտ. Ա. Դավրիժեցի «Պատմութիւն», էջ 95—96, 106—242։

6. Հմմտ. Նույն տեղ, էջ 638։

7. Լեն-Պուլի հաշվումների համաձայն շահ Աբաս I-ը մահացել է 1628 թ.։

8. Հմմտ. XIII ժամանակագրություն, էջ 196, 199, ծանոթ. 36։

9. Հմմտ. XIII ժամանակագրություն, էջ 196, 199, ծանոթ. 38։

10. Օվդան ամիսը, Ջուղայի հայերի կողմից գործածվող, Ազարիա վարդապետի սահմանած նոր տոմարի 11-րդ ամիսն է։ Ազարիայի թվականը սահմանվեց 1616 թ.։ Օվդան ամիսը համընկնում է հուլյան տոմարի հունվարի 15-ից փետրվարի 13-ին (Ազարիայի տոմարի մասին մանրամասն խոսում է Դյուլորիեն» „Recherches sur la chronologie Arménienne" (tome 1er, Paris, 1859 թ. 111—117) աշխատության մեջ։

11. Այս նոր աղանդի պահանջները համեմատիր թոնդրակեցիների պահանջների հետ «Արիստակեայ Լաստիվերտցւոյ վարդապետի պատութիւն Հայոց», Վենետիկ, 1901, գլ. ԻԴ, էջ 125)։

12. «Հերքեաց» բառը բնագրում կրկնված է։

13. Տես և հմմտ. վերևում, ծանոթ. 8։

14. Ըստ Լեն-Պուլի հաշվումների շահ Աբաս II-ը թագավորել է 1642—1667 թ. թ.։

15. Ըստ Լեն-Պուլի հաշվումների Սուլեյման I-ը թագավորել է 1667—1694 թ. թ.։

16. Տես և հմմտ. XVI ժամանակագրություն, էջ 251, ծանոթ. 31։ Բնագրի ՌՃԺԵ-ն կարծում ենք գրչագրական սխալ է և պետք է լինի «ՌՃԺԷ»։

17. Էհդիմալ տովլայ (պարսկ.) արքունական պաշտոն, համապատասխանում է մեծ վեզիրի պաշտոնին։

18. Շխ-Մումինի մասին վկայություն է տալիս նաև Զաքարիա Ագուլեցին. Նա գրում է, «Թվին ՌՃԻ (1671) մայիսի ԻԲ (22) ումն Ըսպահանայ Ջուղայ մին Ոհան անուն չի վարդապետ Ջուղեցի, սայ քուրդացաւ, շատ զարար տվեց Ջուղու, եւ առավել հաւատի պակասութիւն։ Անունն եղին Շխ-Մումին» («Օրագրություն», էջ 103)։

19. Սույն տեղեկությունն իրականից մեկ տարով ցուտ է նշված, այն տեղի է ունեցել 1679 թ. հունիսի 4-ին, չորեքշաբթի լուսաբացին (ժամը 5-ին)։ Այս մասին տես XXVII ժամանակագրություն։

20. Բնագրի «Այրամ» ամիսը, Ազարիայի սահմանած տոմարի արամ (10-րդ) ամիսն է. այն համընկնում է հուլյան տոմարի դեկտեմբերի 16-ից հունվարի 14-ին (տես Դյուլորիե, նույն տեղ, հատոր 1, էջ 117)։ Արամ ամսի ԺԵ (15) համապատասխանում է դեկտեմբերի 30-ին։

21. Խոսքը վերաբերում է թուրքական սուլթան Մուհամմեդ IV-ին (թագավորել է 1648—1687 թ. թ.) և հաջորդ Սուլեյման II-ին (թագավորել է 1687—1691 թ. թ.)։

22. Տես և հմմտ. XXIII ժամանակագրություն, ծանոթ. 55։

22. Տես և հմմտ. XXIII ժամանակագրություն, ըստ որի մականունն Արդար էր։

24. Ճիշտ ձևը Մուժամպար, գյուղ Թավրիզից մոտավորապես 30—35 կիլոմետր հյուսիս։ Ըստ Զ. Ագուլեցու Մուժամպարը Թավրիզից հեռու է 4 աղաճ («Օրագրություն», էջ 22), իսկ «Մին աղաճ ճանապարհն ուղտն Բ (2) սհաթ գնայ», ասում է Զ. Ագուլեցին, նույն տեղ, էջ 6)։

25. Բնագրում «հմզլն» ձևով։

26. Այստեղից փոխվում է գրության ձևը։ Ուրիշները ժամանակագրությանն ավելացրել են առանձին հիշատակություններ։

27. Խոսքը վերաբերում է Ղազար Ջահկեցի կաթողիկոսին, որի օծումն ըստ Օրմանյանի, տեղի է ունեցել զատկին մոտ օրերից մեկում (զատիկը նշելով ապրիլի 2-ին։ «Ազգապատում», էջ 2918)։

29. Բնագրում ինչպես ամիրն, այնպես էլ սուլթանի անունը բաց է թողնված։ Խոսքը վերաբերում է օսմանական սուլթան Ահմեդ III-ին և նրա հաջորդ Մահմուդ I-ին։

30. Ալեքսանդր Ջուղայեցին կաթողիկոս օծվել է 1706 թ. դեկտեմբերի 7-ին (Հմմտ. Շահխաթունեանց «Ստորագրութիւն Կաթուղիկէ և հինգ գաւառաց Այրարատոյ», Էջմիածին, 1842, հ. Ա, էջ 224)։

31. Աստվածատուր Ա. Համատանցին կաթողիկոս եղել է 1715—1725 թ. թ.։

32. Հակոբ Ջուղայեցին մահացել է 1680 թ. օգոստոսի 2-ին, ըստ Զաքարիա Ագուլեցու («Օրագրության», էջ 151) և օգոստոսի 1-ին, կիրակի, ըստ Օրմանյանի («Ազգապատում», էջ 2615)։ Անշուշտ բնագրի ընդօրինակության ժամանակ «ի»-ն բաց է թողնված, որից «ՌՃԻԸ»-ի փոխարեն ստացվել է «ՌՃԸ»)։ Հ. Ջուղայեցուն թաղել են Կոստանդինոպոլի Բեկօղլի արվարձանի գերեզմանոցում։

33. Հեղինակը վերևում (էջ 309) նշում է այս դեպքի կոնկրետ ժամանակը «սուրբ Գրիգորի պասին ամառն», այսինքն 1692 թ. հունիսի երկրորդ կեսին։

34. 1692 թ. վարդավառի պասը կընկնի հունիսի 27-ից մինչև հուլիսի 2-ը, հետևապես «վարդավառի պասի չորեքշաբթի»-ն կլինի հունիսի 29-ին։

35. Տևի կամ Տևոց գյուղը գտնվում է Սեբաստիայի շրջակայքում, արդյո՞ք այդ մասին է խոսքը։

36. 1654 թվականի «Աստվածածնին չորեքշաբթի օրը» կընկնի օգոստոսի 16-ին։

37. Տես վերևում, էջ 305։

38. Սույն հատվածի գրության ճիշտ այս ձևով № 8233 ժողովածուի մի շարք դատարկ թերթերում գտնում ենք հիշատակագրություններ՝ օրինակ՝ էջ 39բ, 58ա և բ, 91ա և բ, 94ա, 97ա, 104բ և այլն։ Այդ հիշատակությունները վերաբերում են Թադեոսի առաքելի վանքի առաջնորդ Փառակեցի Իսահակ վարդապետի շինարարական գործերին։ 97ա էջի հիշատակագրության ներքևի մասում կարդում ենք. «Մեղապարտ Իսահակ եպիսկոպոս ՌՄԼԲ (1783) թւին, օգոստոսի Ժ (10)-ին գրեցի, էի աղքակալ սրբոյ գերեզմանին Թագէոսի»։ Այստեղից պարզվում է հետևյալը, որ գրության այն ձևը, որը նշանակել ենք B տառով, այս Իսահակ եպիսկոպոսի ինքնագիրն է։ Առաջարկվող տեղեկությունը մեզ համար որոշ չափով պարզվում է, № 8233 ժողովածուի 91 ա և բ էջերի հիշատակությունից, որը բերում ենք ամբողջությամբ... «Տեր Իսահակ յառաջնորդ շինարար վարդապետն (բնագրում միշտ «վրդպետն» ձևով) հնոց ժամանակաւ բնակեցեալքն ի գիւղն ժանդաքարուոյ մարդիքն տուրս հալածեաց տնով և նզովիւք փակեաց և բազմակնքով կանոնադրեաց, զի մի մտցեն ի գիւղն սրբոյ վանքին և ի թուլադրութենէ յառաջնորդաց։ Զարք ոմանք աստի և անտի փախուցեալ մարդիք, քան զի տեսցէ կանոնագիրն տէր Իսահակ շինարար յառաջնորդ վարդապետին և ինքն զգուշ լինիցի։ Վասն որոյ ի սորանէ յառաջ դէտըն միաբանից շատ գիւղէն էր եղեալ և որք լաւ տեղ և առտօրեաք սրբոյ վանքին, զայն եկամուտ ոչինչ, աշխարհականքն էին տիրապետեալք այնու կողմանէ աղաղակէին տղէտքն թէ՝ մեր է և նախնեաց մերոց մեզ մուլք մնացեալ է։ Եւ այնու վշտացեալ ողորմելին աւուրս հնձոց մինչև Ծ (50) թման խարճեաց և նոցա վարն և վաստակն առաւ և անով դուրս արաւ, գնացին Մակու՝ Մանուչարն, որ խօյայ էր եկաց նախնին, ըռէս Սարգիսի որդիքն, Խառակունսայ, Եաւրին Սալմաստու, ինչևիցէ շատ վնասակար էին, մերժեցան աստուծով, ՌՄԼԶ (1787) թւոյն, յուլիսի ԺԸ (18)-ին։

91բ. «Յում չարաչար Թշնամի Բոր դիւղացիք որքոյ վանքիս Թադեոսի առաքելոյն այլ աւուեւ չարաղոյն չիք նզովեալ որդի Մանուչարն և անիծեալ Նեռան որդի Մկրտիչն միշտ չարութեամբ ի ժամանակի Եսայի վարդապետին իբրև զդաղան կերեալ Լին և պլսպէս փորձանս յարուցեալ ի վերայ սբյոյ վանքին ձևռամբ Մակուայ սուլթանին։ Եւ երբ եկն Փառակեցի տեառն Իսահակ շինարար վարդապետն յառաջնորդ, որքան կարաց կարկեաց զըերանս չարեաց և այնու պատճաաւ շատ ծանծրութիւն կրեաց ի չարեաց խ (40) տարուան խանգարեալ բարին կամէր ի լոյս ածել ողորմելին։ ՌՄԼԵ (1786)-ին»։ Ձ 8233 ժողովածուի մի շարք դատարկ թերթերում տեղ գտած հիշատակարաններից հետաքրքիր են նաև հետևյալները. 39բ «Փառակեցի Նախիջևանու գիւղէն Իսահակ խոհեմառատ եպիսկոպոսն, որ եղև յառաջնորդ Նախկին լուսավորչին մերոյ Թադէոսի սրբազան առաքելոյն ՌՄԼԲ (1783) թւին մարտի ելն, Ղուկաս հայրապետին հրամանաւն Գ (3) տարի առանց առաջնորդի մնացեալ Լր սուրբ աթոռս որք և խղճալի։ Եւ երբ ի խնդրոյ բազմաց թլմիս ի մի հաւաքեալ գնացինք ի սուրբ աթոռն էջմիածին և անտի բաղում աղերսանօք առեալ բերինք և աէր տանն իւր տացէ Նորոգութիւն և շինութիւն ե զկեանս յասաջնորդին մերոյ երկար ամօք («ամօք» բառը բնագրում կրկնված է— Վ. Հ.) ե խաղաղական կենօք պահեսցէ— ամէն»։

94ա. «Մկրտիչ եպիսկոպոսի ժամանակն Լ շինեալ և Փիլիպպոս կաթողիկոսի սուրբ Թադէոսի առաքելոյ տաճարն թվին ՌՂԹ (1650) և դարբասն ՌՃԲ (=1653)։

Երբեմն գրեն այլ ոմանք թէ Յօսէփ և կամ Արդար Իսահակ վարդապետքն են շինեալ, բայց թէ գաւիթն ասես իրաւ է, և տաճարն միայն վերստին շինօղ և նորօգօղ և Զաքարեայ եպիսկոպոսն Լ պարոն Մանուէլի որդի ե որպէս դրեալ գոյ աջ կողմն ի վերայ աւազանին տեղոջն»։

114բ. «Ի թւոջն մեր ՌՄԼ չորսին (=1785) Բայազիտի սուրբ Կարապետ եկեղեցւոյ դէմն բաղում հանճարօք շինեցուց Բ (2) ամրար ցորէնի ե դարոյ տեառն Իսահակ յառաջնորդ վարդապետն որքոյ դահ/ին Թադէոսի Ա[ռա]քելոյն։ Եւ յոյժ արժան է լի բերանով ողորմիս տալ այս խղճալուն և որ շինեաց խորանն, զգեստի պահարան Գ (3) աչքէ, սաաուխ և գերեզմանն ևս, յասաջնորդ Եսայի վարդապետին այլև ի սուրբ վանքն բազում տեղիս, որ և տեսանողաց յայտնի Լ, զի աէր աստուած ողորմածն ողորմեսցի իւր հոգւոյն. ամէն» և այլն։

39.Այսինքն՝ մարտի 26-ին։

40. Բնագրի աջ լուսանցքում գրված է «ՌՄԼԶ» (1787)-ին սեպտեմբերի Ի (20)-ին»։

41. Տես վերևում, ծանոթ. 31։

42. Ուչ-Քիլիսէ (երեք եկեղեցի) եկեղեցին գտնվում է Բաղավանում, Բագրեվանդ գավառում, Նպատ լեռան հյուսիսային ստորոտին։ Բագավանի եկեղեցին կոչվում է սուրբ Գրիգորի անունով, որին մուսուլմանները կոչում են Ուչքիլիսէ։ Այստեղ խոսքը վերաբերում է եկեղեցու վերանորոգմանը։

43. Տես վերևում, ծանոթ. 32։

44. Այսինքն՝ հուլիսի 19-ին։

45. Այսինքն՝ դեկտեմբերի 27-ին։

46. Այսինքն՝ նոյեմբերի 2-ին։

47. Այսինքն՝ հուլիսի 10-ի և օգոստոսի 14-ի միջև։ Կարծում ենք հեղինակն ակնարկում Լ իր վարդապետական իշխանություն ստանալը։

48. Տեղերոյ վանքը գտնվում է Բյուրական գյուղում (Աշտարակի շրջան), համաձայն Մկրտիչ քահանայի հիշատակարանի Բյուրականի Սարգիս վարդապետը կառուցել է Տեղերոյ Ս. Աստվածածնի եկեղեցին (տես՝ «Հայրենասէր» (Նիկոմեդիա), 1853 թ., № 70)։

49. Այսինքն՝ հունիսի 7-ին։

50. Այսինքն՝ օգոստոսի 22-ին։

51. Այս տեղեկությունները տես և հմմտ. XIX ժամանակագրություն, էջ 285, 287, ծանոթություն 10։

52. Ոչ միայն սույն, այլև ուրիշ մի քանի վկայություններ ևս կրկնված են, երբեմն փոքրիկ շեղումներով։

53. Այստեղ կա մի փոքրիկ անճշտություն։ 1702 թ. վարդավառի տոնը կընկնի հուլիսի 12-ին, կիրակի օրը, հետևապես վարդավառի երկուշաբթին կլինի հուլիսի 13-ին։ Ճիշտ Լ Իսահակ (Արդար Սահակ) վարդապետի մահվան բուն ժամանակագրության վկայությունը, ըստ որի վերջինս մահանում է հուլիսի 13-ին երկուշաբթի և հետևյալ օրն էլ թաղում են (տես նաև ներքևում, XXIII ժամանակագրություն)։

*54. Հեղինակի ժամանակակից դեպքերի շարքում հիշատակված են նաև մեզ հայտնի դեպքերի ժամանակագրական մի, փոքրիկ հատուկտոր VII—VIII դարերին վերաբերող։ Տես և հմմտ. I ժամանակագրություն, էջ 24—25։*

*55. Բնագրում սույն հատվածին հաջորդում է 1577 թվականին վերաբերող մի հիշատակարան։*

*56. XVIII դարի 90-ական թվականների այս մի քանի տեղեկությունները գրել է դրության* B *ձեռի գրիչը։*

*57. Սույն վկայությունը չեղվում է Անանուն Վանեցու վկայությունից (էջ 284—285)։*

*58. Տես և հմմտ. Անանուն Վանեցու ժամանակագրությունը, էջ 285։*

*59. Հմմտ. վերևում, էջ 306։*

*60. Տես վերևում, ծանոթ. 32։*

*61. Հեղինակը նկատի ունի 1724 թ. հունիսի 7-ին Երևանի գրավումից հետո Օսմանյան բանակի առաջխաղացման ժամանակ Խոյի գրավումը։*

## XXIII

## ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (XXIII Դ.)

*Քննության ենթակա ժամանակագրությունը կազմված է Ս. Անեցու ժամանակագրության օրինակով, բայց ունի բավական ընդարձակ խորագիր. «Մասնաւոր ժամանակագրութիւն և գաւազանագիրք սկսեալ ի թուականութեան մարմնաւոր անօրէնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հազարորդի ինն յոթելի և երիւք թուովք աւելի, իսկ արամեանս ռոմարի եռից երրակ հարիւրի և անդուստ հաւաքեալ և վիպագանեալ մինչև նարդեանս ամանակի, որում զպիրս դրեցի և առ ապա եղելոցն ապառնի...»։*

*Ժամանակագրական աղյուսակը սկսվում է XV դարի կեսից, թուրքերի կողմից Կ. Պոլսի գրավման հիշատակությամբ, վերջանում է 1734 թ. Աբրահամ Բ. Խոշաբեցու մահվան և վերջինիս հաջորդ Աբրահամ Գ. Կրետացու կաթողիկոս օծվելու վկայությամբ, ընդգրկելով 280 տարվա անցուդարձ։*

*Եթե նկատի ունենանք հեղինակի խոստումը թե «... անդուստ (1453 թ.— Վ. Հ.) հավաքեալ և վիպագանեալ մինչև նարդեանս ամանակի, որում զպիրս գրեցի...» մի կողմից և ժամանակագրության վերջին եզրը՝ 1734 թվականը մյուս կողմից, կարելի է ենթադրել, որ հեղինակն իր կազմած ժամանակագրության վերջին դեպքերին եղել է ժամանակակից, ուրեմն նա XVIII դարի առաջին կեսի անձնավորություն է։ Ժամանակագրության աղբյուրները որոշակի մատնացույց անել հնարավոր չէ։ Կան մի շարք վկայություններ, որոնք գտնում ենք Սամվել Անեցու ժամանակագրության շարունակության մեջ, սակայն այդ չի նշանակում, թե առաջարկվող ժամանակագրության հեղինակը աչքերտել է Ս. Անեցու ժամանակագրության շարունակողին. ընդհակառակը, երկու բնագրերի համապատասխան վկայությունները ծավալի և մանրամասնությունների մեջ շեղվում են իրարից. այդ կարելի է ցույց տալ մի քանի օրինակով.*

| *Սամ. Անեցի ժամանակագրություն* | XXIII *ժամանակագրություն* |
|---|---|
| *1. էջ 175. «ՋԲ սուլտան Մահմատն էառ զՍտամբօլ ի Մանուէլ թագաւորէ Յունաց»։* | *1. «ՌՆԾԲ(ՋԲ) զԿոստանդինուպօլիս էառ սուլթան Մահմատն և անտ հաստատեաց զաթոռ թագաւորութեանն։ Ու էր թագաւոր Յունաց վերջին Կոստանդին, որ սպանաւ ի նմին»։* |
| *2. էջ 177. «ՌԿԳ Առաջին Շահ Աբասն զաջ Լուսաւորչին, և զքարերն Ս. Էջմիածնի տարաւ ի Սպահան»։* | *2. ՌՈԺԵ (ՌԿԲ) զՄելիքսեթ կաթողիկոսն չարչարեցին և Ը քար նշանաւոր սուրբ Էջմիածնի և զաջ Լուսաւորչին տարան ի Սպահան հրամանաւ շահ Աբասին»։* |

*Նման օրինակները կարելի է շարունակել։*

*Ժամանակագրության մեջ արձանագրված դեպքերին զուգընթաց հանդի-*

պում ենք ժամանակի կաթողիկոսների աթոռակալության տարիների վկայություններին։ Սրանք սկսվում են Գրիգոր Մակուեցի Ջալալբեկյանի աթոռակից Արիստակեսի 1455 թվականին կաթողիկոս դառնալու և վերջանում 1734 թվականին Աբրահամ Կրետացու կաթողիկոս օծվելու վկայությամբ։ Ընդհանուր առմամբ համապատասխանելով Ա. Դավրիժեցու[1] բերած և № 1721 ժողովածուի մեջ գտնվող կաթողիկոսների գահակալության վերաբերող ժամանակագրության[3] վկայություններին, ինչպես և Օրմանյանի հաշվումներին՝ հանդես է գալիս որպես արժանահավատ աղբյուր, թեև աղբյուրագիտական տեսակետից առանձին նորություն չի ներկայացնում այս բնագավառում։

Առաջարկվող ժամանակագրության վկայությունները չեն սահմանափակվում Հայաստանին վերաբերող տեղեկություններով, ընդհակառակը սրա հետ մեկտեղ գտնում ենք նաև բազմաթիվ վկայություններ, որոնք վերաբերում են՝ օսմանական սուլթանների և պարսկական շահերի գահակալություններին, սրանց վարած պատերազմներին, ապստամբություններին, պալատական ինտրիգներին, Եվրոպայի առանձին երկրներին և այլն։

Ժամանակագրության բազմաթիվ վկայությունները հաստատվում են ուրիշ սկզբնաղբյուրների կողմից, որոնք ցույց կտանք բնագրին առընթեր ծանոթագրություններում։

Ընդհանուր առմամբ ժամանակագրության վկայությունները արժանահավատ են, սակայն կան նաև այնպիսի վկայություններ, որոնք մի փոքր շեղվում են կատարված դեպքերի ստույգ ժամանակից, ասենք Ամերիկայի գյուտի, 1679 թ. Երևանում և այլուր տեղի ունեցած երկրաշարժի, Հակոբ Ջուղայեցու մահվան վկայությունները և այլն։

[1] «Պատմութիւն Ա. վարդապետի Դաւրիժեցւոյ», էջ 432—440։

[2] էջ 134ա—136բ։

[3] «Ազգապատում», էջ 2145—2883։ Հմմտ. նաև Շահխաթունեանց «Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ» 1842 թ., հատոր Ա, 211—226։ Վերջինիս առանձին վկայությունների համեմատությամբ ժամանակագրությունը տալիս է որոշ շեղումներ։

# XXIII

*Մանաւոր ժամանակագրութիւն և շարագրութիւնք, սկսեալ ի թուականութեան մարմնաւորին անօրէնութեան տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի հազարորդի ինն յորելի և երիւք թուովք աւելի. իսկ արամեանս տոմարի եռից երրակ հարիւրի և անդուստ հաւաքեալ և վիպաբանեալ մինչև Նարդեանս ամանակի, որում զգիրս գրեցի և առաջա եղելոցն ապառնի, աշխատասիրութեամբ ումեմն չարժանի յիշելոյ, քան զի վաթթար եմ զործովք քան զամենայն հողի և ժտեմ հանդիպողաց այսմ դիւզնաքեայ բանի յիշել զմեզ միով ողորմիայիւ։* 45ա

| | Թուականք | | | |
|---|---|---|---|---|
| | Ի Փրկչ. | Կաթողիկոսք | Հայոց | |
| | ՌՆԾԳ | | Ջ | |
| | ՌՆԾԴ | | ՋԱ | |
| | ՌՆԾԵ | | ՋԲ | —ԶԿոստանդինուպօլիս էառ[1] սուլթան Մահմատն և անտ հաստատեաց զաթոռ թագաւորութեանն. և էր թագաւոր յունաց վերջին Կոստանդին, որ սպանաւ ի նմին։[2] |
| —Ճհանշէն որդի Ղարայ Ուսուֆին գնացեալ էառ զՀամատան, զՍաւայ, զԱսպահան, զՌէյ, զՂազվին, զԳիլան, զՔաշան, զՇիրազ, զՔրման և զԽորասան և զքաղաքս անթիւ բազումս։ | ՌՆԾԶ | | ՋԳ | |
| | ՌՆԾԷ | Տէր Արիստակէս Զ | ՋԴ | |
| | ՌՆԾԸ | | ՋԵ | |
| | ՌՆԾԹ | | ՋԶ | |
| | ՌՆԿ | | ՋԷ | |
| | ՌՆԿԱ | | ՋԸ | |
| | ՌՆԿԲ | | ՋԹ | |
| | ՌՆԿԳ | Տէր Զաքարիայ Աղթամարցի Ե | ՋԺ | —Զիթարն զՏրապիզոն էառ։[3] |
| | ՌՆԿԴ | | ՋԺԱ | —Զաջ սուրբ Լուսաւորչին տարաւ տէր Զաքա[ր]այն ի Յաղթամար կղզին |
| | ՌՆԿԵ | | ՋԺԲ | |
| | ՌՆԿԶ | | ՋԺԳ | |
| | ՌՆԿԷ | | ՋԺԴ | |
| | ՌՆԿԸ | Տէր Սարգիս Ը | ՋԺԵ | |
| | ՌՆԿԹ | | ՋԺԶ | —Պարոնլոյսն նահատակեցին ի Կաֆայ։[4] |
| | ՌՆՀ | | ՋԺԷ | |
| | ՌՆՀԱ | | ՋԺԸ | |
| | ՌՆՀԲ | | ՋԺԹ | |
| | ՌՆՀԳ | Տէր Աբրահամ | ՋԻ | |

| | Ի Փրկ[illegible] | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՆՀԴ | | ՋԻԱ | |
| | ՌՆՀԵ | | ՋԻԲ | |
| | ՌՆՀԶ | Տէր Յովհաննէս Բ | ՋԻԳ | |
| | ՌՆՀԷ | | ՋԻԳ | —Զհափայ առին Տաճիկք ի ֆռանկաց։[5] |
| | ՌՆՀԸ | միւս Տէր Սարգիս | ՋԻԵ | —ԶԳողգոթա առին Վրացիք ի Հայոց։[6] |
| | ՌՆՀԹ | ԺԷ | ՋԻԶ | —Աջ սուրբ Լուսաւորչին բերաւ Ցաղթամարայ ի սուրբ Էջմիածին ձեռամբ Վրդանէս եպիսկոպոսին։ |
| | ՌՆՁ | | ՋԻԷ | |
| | ՌՆՁԱ | | ՋԻԸ | |
| | ՌՆՁԲ | | ՋԻԹ | |
| | ՌՆՁԳ | | ՋԼ | |
| | ՌՆՁԴ | | ՋԼԱ | —Օսմանցի Պայազիան թագաւորեաց ամս ԼԱ (31)։ |
| | ՌՆՁԵ | | ՋԼԲ | |
| | ՌՆՁԶ | | ՋԼԳ | |
| | ՌՆՁԷ | | ՋԼԳ | |
| | ՌՆՁԸ | | ՋԼԵ | |
| | ՌՆՁԹ | | ՋԼԶ | |
| | ՌՆՂ | | ՋԼԷ | |
| | ՌՆՂԱ | | ՋԼԸ | |
| | ՌՆՂԲ | | ՋԼԹ | |
| | ՌՆՂԳ | | ՋԽ | —Սկիզբն թագաւորութեան Ղզլպաշին։[7] |
| | ՌՆՂԳ | | ՋԽԱ | —Շահ Իսմայիլն, որդի շիխ Հայդարին, քեռորդի Եաղուբ փաղշային, թագաւորեաց ամս ԼԴ (34)։[8] |
| | ՌՆՂԵ | Տէր Արիստակէս Գ | ՋԽԲ | |
| | ՌՆՂԶ | | ՋԽԳ | |
| —Ամէրիգայ, որ է Նոր աշխարհ, գտեալ եղև յիտալացի Քրիստափորոս Գոլոմպունի արեգայէ։ Ցետոյ Փլորէնցացի Ամէրիգոս եգիտ զմասունս նորա և Ամէրգայ կոչեցաւ ըստ անուան նորա։[9] | ՌՆՂԷ | | ՋԽԳ | |
| | ՌՆՂԸ | Տէր Սարգիս | ՋԽԵ | —Յազգէն Նետողացն Ռստամ փաղշահն տիրէր Վասպուրականաց։ |
| | ՌՆՂԹ | | ՋԽԶ | |
| | ՌՇ | | ՋԽԷ | |
| | ՌՇԱ | Տէր Թադէոս Ե | ՋԽԸ | |

| | Ի Փրկութեան | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| —Շահ Իսմայիլն եկն և զԱլվանան էառ:[10] | ՌՇԲ | | ՋԽԹ | |
| | ՌՇԳ | | ՋԾ | |
| | ՌՇԴ | | ՋԾԱ | |
| | ՌՇԵ | | ՋԾԲ | |
| | ՌՇԶ | Տէր Եղիշէ Բ | ՋԾԳ | |
| | ՌՇԷ | | ՋԾԴ | |
| | ՌՇԸ | Տէր Ներսէս Թ | ՋԾԵ | |
| | ՌՇԹ | | ՋԾԶ | |
| | ՌՇԺ | | ՋԾԷ | |
| | ՌՇԺԱ | | ՋԾԸ | |
| | ՌՇԺԲ | | ՋԾԹ | |
| | ՌՇԺԳ | | ՋԿ | |
| | ՌՇԺԴ | | ՋԿԱ | —Մեռաւ սուլթան Պայազիտն և թագաւորեաց որդի նորա սուլթան Սելիմն, ամս Թ (9): |
| | ՌՇԺԵ | | ՋԿԲ | |
| | ՌՇԺԶ | | ՋԿԳ | |
| | ՌՇԺԷ | Տէր Զաքարիայ Ե | ՋԿԴ | —Սուլթան Սելիմն ել ի վերայ Սօֆուն և էառ զնա, որ ասի Չալտրանայ կռիւն, ընդ շահ Իսմայելին:[11] Նոյն թագաւորս էառ զԿամխայ բերդն և զԱմիթ, զՄսր և զՇամ, և արար տղայ ժողով ի քրիստոնէից: |
| | ՌՇԺԸ | | ՋԿԵ | |
| | ՌՇԺԹ | | ՋԿԶ | |
| | ՌՇԻ | | ՋԿԷ | |
| | ՌՇԻԱ | | ՋԿԸ | |
| | ՌՇԻԲ | Տէր Սարգիս ԺԶ | ՋԿԹ | |
| | ՌՇԻԳ | | ՋՀ | —Մեռաւ սուլթան Սելիմն և թագաւորեաց որդի նորա սուլթան Սուլէյման ամս ԻԵ (25):[12] |
| | ՌՇԻԴ | | ՋՀԱ | |
| | ՌՇԻԵ | | ՋՀԲ | |
| —Հոռմոց թագաւորն՝ եկն և շահ Իսմայելն փախեաւ: | ՌՇԻԶ | | ՋՀԳ | |
| | ՌՇԻԷ | | ՋՀԴ | |
| —Շահ Թահմազն թագաւորեաց ամս ԾԱ (51):[13] | ՌՇԻԸ | | ՋՀԵ | —Սուլէյմանն էառ զՊուասում թախան Ընկռուցայ:[14] |
| | ՌՇԻԹ | | ՋՀԶ | |

46բ

| Ի Քրիստոսէ | | Հայոց | |
|---|---|---|---|
| ՌՇԼ | | ՋՀէ | |
| ՌՇԼԱ | | ՋՀԸ | |
| ՌՇԼԲ | | ՋՀԹ | |
| ՌՇԼԳ | | ՋՋ | —Սկիզբն եղև ազայ ժողովելոյ։ |
| ՌՇԼԴ | | ՋՋԱ | |
| ՌՇԼԵ | | ՋՋԲ | —Սուլթան Սուլէյմանն բազում զօրօք գնաց ի վերայ Պարսից և նա փախեաւ ի Խորասան, և ինքն եկեալ ի Բաղդատ ձմերեաց և էառ զնա, և զարունն գնաց ի տեղի իւր։[15] |
| ՌՇԼԶ | | ՋՋԳ | |
| ՌՇԼէ | | ՋՋԳ | |
| ՌՇԼԸ | Տէր Գրիգոր Ե | ՋՋԵ | |
| ՌՇԼԹ | | ՋՋԶ | —Սա եսպան զՄիրրահիմ փաշայն, որ եղև պատճառ ազայ ժողովելոյ։ |
| ՌՇԽ | | ՋՋէ | |
| ՌՇԽԱ | | ՋՋԸ | |
| ՌՇԽԲ | | ՋՋԹ | |
| ՌՇԽԳ | Տէր Ստեփաննոս Սալմաստեցի ԺԶ | ՋՂ | —Սուլթան Մուստաֆան յԱմասիայ եկն և թագաւորեաց ի նմա ամս ԺԳ (13) և սպանաւ ի հօրէն։ |
| ՌՇԽԳ | | ՋՂԱ | |
| ՌՇԽԵ | | ՋՂԲ | —Թոխաթու Ը.(8) եկեղեցին ի միասին քակեցին այլազգիքն յապրիլի Թ (9)։[16] |
| ՌՇԽԶ | | ՋՂԳ | |
| ՌՇԽէ | | ՋՂԳ | —Դէրջնցի Մազաքիայ վարդապետն գնաց առ թագաւորն Սուլէյման և խափանեաց զազայ ժողովելն։ |
| ՌՇԽԸ | | ՋՂԵ | |
| ՌՇԽԹ | | ՋՂԶ | |
| ՌՇՄ | | ՋՂէ | — Շահին եղբայր՝ Ալխասն, եկեալ հնազանդեցաւ խոնթքարին և միւս տարին խոնթքարն գնաց ի վերա շահին։[17] |
| ՌՇՄԱ | | ՋՂԸ | |
| ՌՇՄԲ | | ՋՂԹ | |
| ՌՇՄԳ | | Ռ | |
| ՌՇՄԳ | | ՌԱ | |
| ՌՇՄԵ | | ՌԲ | |
| ՌՇՄԶ | | ՌԳ | —Սուլթան Սուլէյմանն գնաց ի վերայ Պարսից՝ և զԾրեան և զՆախչեան գերեալ տարան։[18] |
| ՌՇՄէ | | ՌԳ | |

| | Ի Քրիստոսէ | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՇԾԸ | | ՌԵ | |
| | ՌՇԾԹ | Տէր Միքայէլ Ը | ՌԶ | |
| | ՌՇԿ | | ՌԷ | —Սուլթան Պայազիտն հէն յԱմասիայ։ |
| | ՌՇԿԱ | | ՌԸ | —Դարձեալ գնաց ի Կոնիայ ի վերայ եղբօրն և յաղթեցաւ ի նմանէ և փախստական գնաց ի Ղզլպաշն և անտ մեռաւ հրամանաւ հօրն իւրոյ՝ սուլթան Սուլէյմանին։ |
| | ՌՇԿԲ | | ՌԹ | |
| | ՌՇԿԳ | | ՌԺ | |
| | ՌՇԿԴ | | ՌԺԱ | |
| | ՌՇԿԵ | | ՌԺԲ | |
| | ՌՇԿԶ | | ՌԺԳ | |
| | ՌՇԿԷ | | ՌԺԳ | |
| | ՌՇԿԸ | Տէր Բարսեղ Ջ | ՌԺԵ | |
| | ՌՇԿԹ | | ՌԺԶ | |
| | ՌՇՀ | | ՌԺԷ | |
| | ՌՇՀԱ | | ՌԺԸ | |
| | ՌՇՀԲ | | ՌԺԹ | |
| | ՌՇՀԳ | | ՌԻ | |
| | ՌՇՀԴ | Տէր Գրիգոր Գ | ՌԻԱ | |
| | ՌՇՀԵ | | ՌԻԲ | |
| | ՌՇՀԶ | | ՌԻԳ | —Զկիպրոս էառ սուլթան Սէլիմն։[19] |
| | ՌՇՀԷ | Տէր Ստեփաննոս Առնելի Բ | ՌԻԴ | —Մեռաւ սուլթան Սէլիմն և թագաւորեաց որդի նորա սուլթան Մուրատն, ամս Ի (20)։ |
| | ՌՇՀԸ | | ՌԻԵ | |
| —Շահ Թահմազն ի բաղնիսն խեխտեցին[20] և զՍիմայէլն եդին թագաւոր և նա եսպան զիւր է (7) եղբարսն և իշխանքն սպանին զՍիմայէլն և եդին զմիւս եղբայր նորա՝ զԽուտապանդան շեխ գոլով թագաւոր և ղաչացուս որ թագաւորեաց ամս Ե (5) | ՌՇՀԹ | Տէր Թադէոս Բ | ՌԻԶ | —Սա էառ զՇրուան և զմիւս տարին զԴամուր-Ղափուն։[21] |
| | ՌՇՁ | | ՌԻԷ | |
| | ՌՇՁԱ | Տէր Առաքել Է | ՌԻԸ | —Մեծ շահ Աբասն թագաւորեաց ամս Ծ (50)։[22] |
| | ՌՇՁԲ | | ՌԻԹ | |
| | ՌՇՁԳ | | ՌԼ | |
| | ՌՇՁԳ | | | |
| | ՌՇՁԵ | | ՌԼԱ | |
| | ՌՇՁԶ | | ՌԼԲ | |

—Ի փրկչական թվականին ՌՇՁԲ (1582) վեհապետ փափն Հռոմայ Գրիգորիոս ԳԺ (13)-րդ, էր հմուտ աստղաբաշխութեան, յարար մողով և քննութիւն և ուղղեաց զաօմարն զարնանամային այսպէս. քանզի ատրին ունի ՅԿԵ (365) աւուրս, և Զ (6) ժամս, բայց ոչ կատարեալ Զ (6) ժամս, այլ պակաս բոպէիւք ինչ և առաջինքն ի Դ (4) տարին Զ. Զ. (6. 6.) ժամս կատարեալ կարծելով զմի օրն ի մուտն մարտի ի բաց ձգէին. որ օրն այն էր վերջին օր փետրվարի ԻԹ (29) և կոչէին զայն առաջի օրն մարտի, զամն զայն և կոչէին ամ նահանջի։ Իսկ նահանջի օրն այն ոչ էր կատարեալ ԻԴ (24) ժամ, այլ բոպէիւք ինչ պակաս, և այնպէս պակաս ի դուրս ձգելով ի Նիկեայ ժողովոյն մինչև ի Քրիստոսի ՌՇՁԲ (1582) թվ. զարնանամուտն Ժ (10) օր յետ էր մնացեալ և արեգակն ի խոյն չմտած Ժ (10) օր յառաջ գայր և ծռէր զզատիկն։ Վասն որոյ զԺ (10) օրն ի յետ ձգել կանոնեաց. զի յորժամ հին աօմարն յունվարի Ա (1) լինի, նոցա նորն՝ ԺԱ (11)՝ լինի և մարտի Ժ(10)՝ Ի (20) լինի նոցա և զարնանամուտն ուղիղ ըստ տօմարական և աստղաբաշխական արհեստին ուղղեցին զզատիկն։[34]

—Շահ Աբասն եկն Հառապէյճան և զհայոց ազգն քշեց Իսպահան, զԵրևան և զՆախչևան և զՋուղայ և զայլ կողմանսն՝ յԱլաշկերտու ի Լօյայ և տարաւ ի Գիլան և յՍպահան և տիրեաց Ատրպատականու ի Թարվզու մինչև յԵրևան մինչ ի Գանձայ և ի Շրուան, Շամախի։

| Ի Փրկչ-ութեան | | Հայոց | |
|---|---|---|---|
| ՌՇՁԷ | | ՌԼԳ | —Ձնրեան առին և վերեցին. և նոր բերդ շինեցին, որ այժմ կայ հաստատուն։[35] |
| ՌՇՁԸ | | ՌԼԴ | |
| ՌՇՁԹ | Տէր Դաւիթ | ՌԼԵ | —Օսման փաշայն զԹարվեզ էառ և զՇրուան և Շամախի։[36] |
| ՌՇՂ | | ՌԼԶ | —Իսկ Ֆահրատ փաշայն էառ Գանձայ և զսմենայն սահմանս նորայ։[37] |
| ՌՇՂԱ | | ՌԼԷ | |
| ՌՇՂԲ | | ՌԼԸ | |
| ՌՇՂԳ | | ՌԼԹ | |
| ՌՇՂԴ | | ՌԽ | |
| ՌՇՂԵ | | ՌԽԱ | |
| ՌՇՂԶ | Տէր Մելքիսէթ Ժ | ՌԽԲ | |
| ՌՇՂԷ | | ՌԽԳ | |
| ՌՇՂԸ | | ՌԽԴ | - Մահմատ սուլթան թագաւորեաց ամս Ժ (10)։ |
| ՌՇՂԹ | | ՌԽԵ | |
| ՌՈ | | ՌԽԶ | |
| ՌՈԱ | | ՌԽԷ | |
| ՌՈԲ | | ՌԽԸ | |
| ՌՈԳ | | ՌԽԹ | |
| ՌՈԴ | | ՌԾ | — Ղարա Ծաղիչին զՍեաստ էառ և զբաղումս կոտորեաց։ |
| ՌՈԵ | | ՌԾԱ | |
| ՌՈԶ | Տէր Սրապիոն Բ | ՌԾԲ | —Սրապիոն վարդապետն Ուռհայեցի եղին կաթողիկոս ի սուրբ Էջմիածին և անուանեցին Գրիգորիս։[38] |
| ՌՈԷ | | ՌԾԳ | |
| ՌՈԸ | | ՌԾԴ | —Ջղալ օղլի սալտարն եկեալ յաղթեցաւ ի շահ Աբասէն և դարձաւ։ |
| ՌՈԹ | | ՌԾԵ | |
| ՌՈԺ | Նոյն Տէր Մելքիսէթ և Դաւիթ ԺԹ | ՌԾԶ | |
| ՌՈԺԱ | | ՌԾԷ | |
| ՌՈԺԲ | | ՌԾԸ | |
| ՌՈԺԳ | | ՌԾԹ | |
| ՌՈԺԴ | | ՌԿ | |

| | Ի Փրկու-թեան | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՈԺԴ | | ՌԿԱ | |
| —Զոէր Անգրէաս քահանայն նահատակէին յԱգուլիս և եղին ի Ծցաձորու եկեղեցին։[30] | ՌՈԺԵ | | ՌԿԲ | —ԶՄելքիսէթ կաթողիկոսն չարչարեցին և Ը (8) քար նշանավոր սուրբ Էջմիածնի և դաշ Լուսաւորչին տարան Իսպահան հրամանաւ շահ Աբասին։[30] |
| | ՌՈԺԶ | | ՌԿԳ | |
| | ՌՈԺԷ | | ՌԿԴ | |
| | ՌՈԺԸ | | ՌԿԵ | |
| | ՌՈԺԹ | | ՌԿԶ | —Թագաւորեաց սուլթան Մուստաֆայն Գ (3) ամիս և ընկեցին զնա. եդին թագաւոր զՕսմանն, ամս Դ (4)։ |
| | ՌՈԻ | | ՌԿԷ | |
| | ՌՈԻԱ | | ՌԿԸ | |
| | ՌՈԻԲ | | ՌԿԹ | |
| | ՌՈԻԳ | | ՌՀ | —Ենկիչէրիքն սպանին զՕսմանն և կրկին թագաւորեցուցին զՄուստաֆայն տարի և կէս։ |
| | ՌՈԻԴ | | ՌՀԱ | |
| —Շահ Աբաս զՂանդահար էառ, տնաի գործա. զԲաղդատ էառ։ | ՌՈԻԵ | | ՌՀԲ | |
| | ՌՈԻԶ | Տէր Իսահակ Ե | ՌՀԳ | —Եւ զնա վերացուցեալ եդին զՕսմանի որդին՝ զՄուրատն թագաւոր, ամս ԺԹ (19)։ |
| | ՌՈԻԷ | | ՌՀԴ | |
| | ՌՈԻԸ | | ՌՀԵ | |
| | ՌՈԻԹ | | ՌՀԶ | |
| | ՌՈԼ | | ՌՀԷ | |
| | ՌՈԼԱ | Տէր Մովսէս Գ | ՌՀԸ | —Մովսէս Սիւնեաց նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին. և նորոգեաց զսուրբ Կաթուղիկէն և պարսպեաց շուրջանակի և արար բազում ուղղութիւնս։ |
| | ՌՈԼԲ | | ՌՀԹ | |
| | ՌՈԼԳ | | ՌՁ | |
| | ՌՈԼԴ | | ՌՁԱ | |
| | ՌՈԼԵ | Տէր Փիլիպպոս ԻԲ | ՌՁԲ | —Փիլիպպոս Հաղբակցին նստաւ կաթողիկոս և յաւել ի նորոգութիւն և ի բարեձևութիւն կրկնապատիկ քան զՄովսէս կաթողիկոսն։ Սա զարձոյց զաջ սուրբ Լուսաւորչին Իսպահանայ ի սուրբ Էջմիածին։ |
| | ՌՈԼԶ | | ՌՁԳ | |
| | ՌՈԼԷ | | ՌՁԴ | —Սուլթան Մուրատն եկեալ էառ զԵրևան և գնացեալ ի Թարվէզ. ի նոյն ամի ի դարձ նորին եկն շահ Սէֆին յետ էառ զԵրևան։[31] |
| | ՌՈԼԸ | | ՌՁԵ | |
| | ՌՈԼԹ | | ՌՁԶ | |
| | ՌՈԽ | | ՌՁԷ | |
| | ՌՈԽԱ | | ՌՁԸ | —Ի նոյն թվին սուլթան Մուրատն էառ զԲաղդատ և գնացեալ ի Ստամպօլ մեռաւ։[32] |

| | Ի Փրկութեան | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՌԽԲ | | ՌՁԹ | —Յայսմ ամի հաշտութիւն եղև ի մէջ Բ (2)-ց թագաւորաց և թագաւորեաց եղբայր նորա սուլթան Իբրահիմ։[33] |
| —Մակուայ բերդն քակեցին։ | ՌՌԽԳ | | ՌՂ | |
| —Մեռաւ ի Քաշան շահ Սէֆին և թագաւորեաց որդի նորա երկրորդ շահ Աբասն ամս ԻԴ (24)։[34] | ՌՌԽԳ | | ՌՂԱ | —Շարժ եղև ի Թարվէզ և ի Թուխուրկան ՌԲՃ (1200) մարդ աւելի մեռան։ |
| | ՌՌԽԵ | | ՌՂԲ | |
| | ՌՌԽԶ | | ՌՂԳ | |
| | ՌՌԽԷ | | ՌՂԴ | —Օսմանցիք խաբէութեամբ զԿրիտն առին բերդ մի և Լ (30) ամ պատերազմեալ զբովանդակն առին ի Վէնէտկցւոյն։[35] |
| | ՌՌԽԸ | | ՌՂԵ | |
| | ՌՌԽԹ | | ՌՂԶ | |
| | ՌՌԾ | | ՌՂԷ | —Զսուլթան Իբրահիմ խեղդամահ արարեալ, զորդին իւր Մահմէտ թագաւորեցուցին, որ իշխեաց ամս Խ (40)։[36] |
| | ՌՌԾԱ | | ՌՂԸ | |
| | ՌՌԾԲ | | ՌՂԹ | |
| —Փիլիպպոս հոգևոր տէրն գնաց ի սուրբ Երուսաղէմ։ Զսուրբ Յակոբայ մէջն սալ կապ արար և գնացեալ ի Ստամպօլ։ Դարձաւ յաթոռն ի սուրբ Էջմիածին և հիմն արկեալ զտնկատունն վաղճանեցաւ։ | ՌՌԾԳ | | ՌՃ | |
| | ՌՌԾԳ | | ՌՃԱ | |
| | ՌՌԾԵ | | ՌՃԲ | |
| | ՌՌԾԶ | | ՌՃԳ | — Արեգակն խաւարեցաւ։ |
| | ՌՌԾԷ | Տէր Յակոբ Իէ | ՌՃԳ | —Յակոբ վարդապետն Ջուղայեցի նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին և կատարեաց զանկակատունն և եբեր զքահրէզն բաղում ծախիւք։ |
| | ՌՌԾԸ | | ՌՃԵ | |
| | ՌՌԾԹ | | ՌՃԶ | |
| | ՌՌԿ | | ՌՃԷ | |
| | ՌՌԿԱ | | ՌՃԸ | — Տաթևու մեծ անապատն շարժեցաւ ի տեղոջէն Բ (2) վտաւանաւ.[37] յետոյ Յակոբ հոգևոր տէրն բերեալ զմիաբանսն ի ներքոյ Տաթևու. և անդ հիմնարկեաց զանապատն և զեկեղեցին և աւարտեաց զայն Աբիստակէս վարդապետն։[38] |
| | ՌՌԿԲ | | ՌՃԹ | |
| | ՌՌԿԳ | | ՌՃԺ | |
| | ՌՌԿԳ | | ՌՃԺԱ | |
| —Հայկական գաւելի թիւն ի բաց ձգեցաք և զՆատինացւոց համեմատ գրեցաք զփրկչին մերոյ ընդ մերոյս։[30] | | | ՌՃԺԲ | |
| | | | ՌՃԺԳ | |
| | ՌՌԿԵ | | ՌՃԺԳ | |
| —Աստանօր եղև տպագրութիւն աստուածաշունչ գրոց ի լատինացւոց անատեալ և համաբարբառով, գլխարկեալ, գեղեցիկ յօրինուածով ի ձեռն Ոսկան վարդապետին Երևանցւոյ։[41] | ՌՌԿԶ | | ՌՃԺԵ | —Շահ Աբասն յԱշրաֆ մեռաւ և եղին թագաւոր զշահ Սէֆին և յետոյ փոխեալ զանունն, շահ Սուլէյման կոչեցին։[40] |
| | ՌՌԿԷ | | ՌՃԺԶ | |

| | ի Փրկչ. տեառն | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՈԿԸ | | ՌԾԺԷ | |
| | ՌՈԿԹ | | ՌԾԺԸ | |
| | ՌՈՀ | | ՌԾԺԹ | |
| | ՌՈՀԱ | | ՌԾԻ | |
| | ՌՈՀԲ | | ՌԾԻԱ | |
| | ՌՈՀԳ | | ՌԾԻԲ | |
| | ՌՈՀԴ | | ՌԾԻԳ | |
| | ՌՈՀԵ | | ՌԾԻԴ | |
| | ՌՈՀԶ | | ՌԾԻԵ | |
| | ՌՈՀԷ | | ՌԾԻԶ | |
| | ՌՈՀԸ | | ՌԾԻԷ | —Սաստիկ շարժ եղև Երևան և ԸՌ (8000) մարդ մեռան և հաւուց թառու եկեղեցիքն և Գեղարդին և Գետարգելին փլան և Տրդատայ թախտն ի Գառնի ի հիմնէ կործանեցաւ և այլ բազում եկեղ[ե]ցիք և ապարանք յատակեցան։[43] |
| —Յակոբ կաթողիկոսն գիմեաց ի մեծն Հռոմ, գնաց ի Ստամպօլ և անդ վաղճանեցաւ, և մնաց յաթոռն անտէրունջ ամս Բ (2)։ Յետ որոյ նստաւ Եղիազար կաթողիկոս Կլայեցի, յաթոռ սուրբ Էջմիածնի։[42] | ՌՈՀԹ | | ՌԾԻԸ | |
| | ՌՈՁ | | ՌԾԻԹ | |
| | ՌՈՁԱ | Տէր Եղիազար Ժ | ՌԾԼ | |
| | ՌՈՁԲ | | ՌԾԼԱ | —Նահատակեցաւ ի Կոստանդնուպօլիս Գրիգոր ոմն քրիստոնեայ ի քաղաքէն Թէոդուպօլսէ ի գեղջէ Կանայ ի մայիսի ԺԹ (10) յաւուր ուրբաթի։[44] |
| | ՌՈՁԳ | | ՌԾԼԲ | |
| | ՌՈՁԴ | | ՌԾԼԳ | |
| | ՌՈՁԵ | | ՌԾԼԴ | |
| | ՌՈՁԶ | | ՌԾԼԵ | |
| —Դարձեալ յետ առին զմեծ քաղաքն Բուտւմ ազգն Ընկրուզաց։[45] | ՌՈՁԷ | | ՌԾԼԶ | —Սուլթան Մէհէմէտն յաղթահարեալ ի Ֆռանկաց թագաւորէն ընկեցաւ։ Եւ եդին զեղբայր նորա, զՍուլէյմանն թագաւոր։[46] |
| | ՌՈՁԸ | | ՌԾԼԷ | |
| | ՌՈՁԹ | | ՌԾԼԸ | —Վաղճանեցաւ Լեհացի Ստեփաննոս վարդապետն, որ բազում գրեանս թարգմնեաց Ֆռանկաց ի հայս։[48] |
| | ՌՈՂ | | ՌԾԼԹ | |
| —Վաղճանեցաւ Եղիազար հոգևոր տէրն ի սուրբ Էջմիածին և եդաւ մարմին նորա ի սուրբ Գայիանէն։[47] | ՌՈՂԱ | Տէր Նահապետ ԺԱ | ՌԾԽ | —Նահապետ վարդապետն Ուրհայեցի նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին։ |
| | ՌՈՂԲ | | ՌԾԽԱ | |
| —Մեռաւ շահ Սուլէյմանն և թագաւորեաց որդի նորա շահ Հիւսէինն։[49] | ՌՈՂԳ | | ՌԾԽԲ | |
| | ՌՈՂԴ | | ՌԾԽԳ | |
| | ՌՈՂԵ | | ՌԾԽԴ | |

| | ի Քրիստոսէ | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՈՂԶ | | ՌՃԽԵ | —Սահփաննոս վարդապետն Ջուղայեցի նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին։[50] |
| | ՌՈՂԷ | | ՌՃԽԶ | |
| | ՌՈՂԸ | | ՌՃԽԷ | |
| | ՌՈՂԹ | | ՌՃԽԸ | —Այս ամ ես տրեղակն խաւարեցաւ։ |
| —Արզրումայ շէյթտն Իբրահիմ փաշայն ԾՌ (50000) արամբ եկն ի վերայ Գայաղիաու. բերդին և [յ]ոլով վնաս հասոյց երկրին։ | ՌՉ | | ՌՃԽԹ | |
| | ՌՉԱ | | ՌՃԾ | |
| | ՌՉԲ | | ՌՃԾԱ | —Վաղճաննեցաւ մեծ վարդապետն Իսահակ, որ մականուամբ Արդար Սահակ յորջորջիւր ի վանս Բաղուանայ սուրբ Գրիգորի, որ բոա հասարակաց Ուչքիլիսէ կոչի, և եդաւ անդ ի սապանի։[53] |
| —Վաղճաննեցաւ Կոփեցի Սարգիս վարդապետն։ | ՌՉԳ | | ՌՃԾԲ | |
| | ՌՉԴ | | ՌՃԾԳ | |
| —Սկիզբն արար շինութեան Մակուայ բերդին Մահմատխան սուլթանն, հրամանաւ շահ Հիւսէին Թագաւորին և յօգնականութեամբ Երևանայ Ապրլմահմաա խանին։[54] | ՌՉԵ | | ՌՃԾԴ | |
| | ՌՉԶ | Տէր Աղէքսանդր Ը | ՌՃԾԵ | —Աղէքսանդր վարդապետն Ջուղայեցի նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին։ |
| | ՌՉԷ | | ՌՃԾԶ | |
| | ՌՉԸ | | ՌՃԾԷ | —Վաղճաննեցաւ Նահապետ հոգևոր տէրն ի Շատիկու անապատն և բերաւ մարմին նորա ի սուրբ Էջմիածին և եդաւ ի սուրբ Շողակաթն։[55] |
| | ՌՉԹ | | ՌՃԾԸ | |
| | ՌՉԺ | | ՌՃԾԹ | |
| | ՌՉԺԱ | | ՌՃԿ | |
| —Այս ամ ես եկն Արզրումայ փաշայն եկն ի վերայ Գայաղիաու և բազում վնաս հասոյց բովանդակ նահանգացն, և յոլով աւուրս նստեալ ի վերայ բերդին ոչ կարաց առնուլ այլ յաղթահարեալ յետս դարձաւ յամօթալի։[56] | ՌՉԺԲ | | ՌՃԿԱ | —Աղէքսանդր հոգևոր տէրն գնաց Իսպահան և դարձեալ եկն ի սուրբ Էջմիածին և վաղճանեցաւ։ |
| | ՌՉԺԳ | | ՌՃԿԲ | |
| | ՌՉԺԴ | | ՌՃԿԳ | |
| | ՌՉԺԵ | Տէր Աստուածատուր | ՌՃԿԴ | —Աստուածատուր վարդապետն Համատանցի նստաւ կաթողիկոս ի սուրբ Էջմիածին։ |
| | ՌՉԺԶ | | ՌՃԿԵ | |
| | ՌՉԺԷ | | ՌՃԿԶ | —Վաղճաննեցաւ Սարգիս վարդապետն Կաֆայեցի և եդաւ մարմին նորին ի սուրբ աթոռն առաքելոյն Թադէոսի։ |
| | ՌՉԺԸ | | ՌՃԿԷ | |
| | ՌՉԺԹ | | ՌՃԿԸ | |
| | ՌՉԻ | | ՌՃԿԹ | |
| | ՌՉԻԱ | | ՌՃՀ | —Սաստիկ շարժ եղև ի քաղաքն Թարվէզ և բովանդակն ամենևին կործանեցաւ հազիւ նրշմարանք շինութեան մնաց։ |
| | ՌՉԻԲ | | ՌՃՀԱ | |
| —Առաւ ի պարսից Մակուայ բերդն Մաքք։[57] | ՌՉԻԳ | | ՌՃՀԲ | |

| | Ի Քրիստոսէ | | Հայոց | |
|---|---|---|---|---|
| | ՌՋԻԳ | | ՌՃՀԳ | |
| — Վաղճանեցաւ Աստուածատուր հոգևոր տէրն և եղաւ մարմին նորին ի սուրբ հռիփսիմէն։ | ՌՋԻԵ | | ՌՃՀԳ | — Առաւ ի Պարսից ազգն Օսմանոց զմեծ քաղաքն Թարվէզ։ — Օծաւ կաթողիկոս ամենայն հայոց Կարապետ վարդապետն Գաղատացի։[58] |
| | ՌՋԻԶ | | ՌՃՀԵ | |
| | ՌՋԻԷ | | ՌՃՀԶ | |
| | ՌՋԻԸ | | ՌՃՀԷ | |
| — Վաղճանեցաւ Կարապետ հոգևոր տէրն և եղաւ մարմին նորին ևս ի սուրբ հռիփսիմէն։ | ՌՋԻԹ | | ՌՃՀԸ | |
| | ՌՋԼ | | ՌՃՀԹ | — Տէր Աբրահամ աստուածաբան վարդապետն օծաւ կաթողիկոս ամենայն հայոց։[59] Կրկին յետ առին Պարսիկք զքաղաքն Թարվէզ։[60] |
| | ՌՋԼԱ | | ՌՃՁ | |
| | ՌՋԼԲ | | ՌՃՁԱ | |
| | ՌՋԼԳ | | ՌՃՁԲ | |
| — Վաղճանեցաւ Աբրահամ կաթողիկոսն և եղաւ մարմին նորայ ի սուրբն Գայիանէ։ | ՌՋԼԳ | | ՌՃՁԳ | — Օծաւ կաթողիկոս երկրորդ Աբրահամ վարդապետն Թաքրտաղցի։[61] |
| | ՌՋԼԵ | | ՌՃՁԳ | |
| | ՌՋԼԶ | | ՌՃՁԵ | |
| | ՌՋԼԷ | | ՌՃՁԶ | |
| | ՌՋԼԸ | | ՌՃՁԷ | |
| | ՌՋԼԹ | | ՌՃՁԸ | |
| | ՌՋԽ | | ՌՃՁԹ | |
| | ՌՋԽԱ | | ՌՃՂ | |
| | ՌՋԽԲ | | ՌՃՂԱ | |
| | ՌՋԽԳ | | ՌՃՂԲ | |
| | ՌՋԽԴ | | ՌՃՂԳ | |
| | ՌՋԽԵ | | ՌՃՂԴ | |
| | ՌՋԽԶ | | ՌՃՂԵ | |
| | ՌՋԽԷ | | ՌՃՂԶ | |
| | ՌՋԽԸ | | ՌՃՂԷ | |
| | ՌՋԽԹ | | ՌՃՂԸ | |
| | ՌՋԾ | | ՌՃՂԹ | |
| | ՌՋԾԱ | | ՌՄ | |

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ընդգծված բառերը բնագրում գրված են կարմիր թանաքով։

2. Ինչպես խորագրում, այնպես էլ այստեղ, ժամանակագրության հեղինակը հայկական թվականի և մեր թվականության հարաբերությունն ընդունել է ոչ թե 551 : 1, ինչպես ընդունված է, այլ 553 : 1, այդ պատճառով էլ Կոստանդինոպոլսի գրավումը հաշված է 1455 թ.։

3. Հեղինակն ըստ երևույթին նկատի ունի օսմանական սուլթան Մուհամմեդ II-ի կողմից Տրապիզոնի կայսրության գրավումը։

4. Պարոնլույս կամ Լուսպարոն, Կաֆայեցի, 18 տարեկան պատանի, հավատը չուրանալու համար նահատակվեց 1567 թ. մայիսի 15-ին, հինգշաբթի, Կաֆայում։ Նահատակության պատմությունն արձակ և չափածո գրել է Վրթանես վարդապետ Կաֆայեցին։ Մի փոքրիկ բանաստեղծություն էլ ունի վերջինիս աշակերտ Թումա Կաֆայեցին։ (Տես «Հայոց նոր վկաները», աշխատությամբ Հ. Մանդինյանի և Հ. Աճառյանի, Վաղարշապատ, 1903 թ., էջ 386—394, 396—401, 401—408, 409—411)։

5. Օսմանյան թուրքերը Մուհամմեդ II-ի ժամանակ՝ 1475 թ. ճենովացիներից գրավեցին Կաֆան, այնուհետև ողջ Ղրիմը։ Կաֆայի գրավման մասին հաղորդում է նաև Ամբրոսիո Կոնտարինի ճանապարհորդը, որն այդ լուրը ստացել է 1475 թ. հուլիսի 27-ին։ («Ուղեգրություններ», հ. Ա, էջ 247)։

Այդ մասին, 1475—1476 թ. թ. ընդօրինակած մի ավետարանի հիշատակարանում կարդում ենք. «Ի թվին Հայոց ՋԻԴ (=1475) յորում գրեցաւ սուրբ աւետարանս, առին զԿաֆան տաճիկն և արարին բաղում գերութիւնս և աւերումն, և եղև յոյժ տրտմութիւն և սուգ քրիստոնեյից...» (Մկրտիչ եպիսկոպոս Աղաւնունի «Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի», 1929, Երուսաղէմ, էջ 475)։

6. Հմմտ. «Ժամանակագրական պատմութիւն ս. Երուսաղէմի», հ. Ա, աշխատասիրութեամբ Աստվածատուր Տեր-Հովհաննիսյանց, Երուսաղէմ, 1890, գլուխ ԼԲ։ Խոսքը վերաբերում է 1476 թ. Երուսաղեմի սրբավայրերից մեկին, որը հայկական եկեղեցու ազդեցությունից անցնում է վրացականին։

Այդ մասին 1476 թ. ընդօրինակած ավետարանի հիշատակարանում կարդում ենք.

«...և ի միւսում ամի ՋԻԵ (1476) թվին առին վրացիքն զԳողգոթայ ի Հայոց և ի նոյն ամի հայերն գնացին ի սուլթանն ու առեալ հրաման եկին և շինեցին զնոր Գողգոթայի սանդուխն և ուրախացանք։ (Մկրտիչ եպիս. Աղաւնունի «Միաբանք և այցելուք հայ Երուսաղէմի», էջ 475)։

7. Պարսկաստանի Սեֆյան դինաստիայի սկիզբը բնավ 1491 թ. չի համարվում։ Գուցե հեղինակը նկատի ունի Ակ-կոյունլու Յաղուբի թունավորումից (1490 թ.) հետո տեղի ունեցած գահակալական կռիվները, որոնց ժամանակ էլ հանգես եկան Սեֆյանները։

8. Շահ Իսմայիլ՝ Սեֆյան դինաստիայի հիմնադիրը, ծնվել է 1480-ական թ. թ.։ Նա իր նվաճումներն սկսեց 1499 թ.։ Թագավորեց 1501—1524 թ. թ.։

9. Ամերիկայի գյուտը Ք. Կոլումբոսի կողմից տեղի է ունեցել 1492 թ. հոկտեմբերի 12-ին։

10. Երևի հեղինակը նկատի ունի շահ Իսմայիլի և Ակ-Կոյունլու Ալվանդի զորքերի ճակատամարտը Շարուրում, ապա այն տեղի է ունեցել 1501 թ.։

11. Տես էջ 163, ծանոթ. 4։

12. Բնագրի «ամս ԻԵ» թերևս գրչագրական սխալ է և պետք է լինի «ամս ԽԵ»։

13. Շահ Թահմազը թագավորել է 1524—1576 թ. թ.։

14. Հեղինակը նկատի ունի օսմանյան թուրքերի և հունգարների պատերազմը, որի ժամանակ թուրքերը 1526 թ. գրավեցին Բելգրադը։ Իսկ նույն թվին Մոհաչի ճակատամարտում չարգելով

հունգարներին հասան Վիեննայի դարպասներին (1529 թ.)։ Բնադրի «զՊուտումն» Հունգարիայի մայրաքաղաք Օֆենն է (Բուդա)։

15. Հեղինակը նկատի ունի թուրք-պարսկական երկրորդ պատերազմը։ Հմմտ. Հով. Արճիշեցու հիշատակարանը («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 19—30)։

16. Հմմտ. X ժամանակագրություն, էջ 157։

17. Հմմտ. «Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 10—11։

18. Հեղինակը նկատի ունի թուրք-պարսկական հերթական պատերազմը, որի ժամանակ նախահարձակը Պարսկաստանն էր։ Պարսկական 1551 թ. հարձակմանը (տես Թադեոս վարդապետ Սեբաստացու հիշատակարանը, Ջամչյան, հատոր Գ, էջ 514—515) Սուլեյմանը պատասխանեց 1554 թ. Պարսկաստան արշավելով։

19. Սելիմ II-ը (1566—1574 թ. թ.) Կիպրոսը գրավել է 1571 թ.։

20. Հմմտ. էջ 302, «Զաքարեայ Սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 11։

21. Հմմտ. «Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 13։

22. Շահ Աբաս I-ը թագավորել է 1587—1628 թ. թ., հետևապես ոչ թե 50 տարի, այլ 40։

24. Լատինական տոմարի հորինման հանդամանքները տես Օրմանյանի մոտ («Ազգապատում», էջ 2274—2276)։

25. Թուրք-պարսկական հերթական կռիվները տևեցին 11 տարի՝ 1578—1590 թ. թ.։ Հմմտ. «Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 13։

26. Շիրվանի օսմանական բանակի հրամանատար Օսման Յուզդեմիրը Թավրիզը գրավել է 1585 թ.։

27. Հմմտ. «Զաքարեայ սարկաւագի պատմագրութիւն», հ. Ա, էջ 13։ «Ա. վ. Դավրիժեցւոյ պատմութիւն», էջ 614։

28. Օրմանյանը Սրապիոն Ուռհայեցուն հաշվում է աթոռակից Դավիթ Դ. Վաղարշապատեցուն։ Սրապիոնի օծումը տեղի է ունեցել 1603 թ. օգոստոսի 14-ին («Ազգապատում», էջ 2291—2293), իսկ մահը՝ 1606 թ. ապրիլի 23-ին (Նույն տեղ, էջ 2295)։

29. Հմմտ. «Ա. Դավրիժեցւոյ պատմութիւն», էջ 210—213։ Ըստ Դավրիժեցու 15 քար։

30. Համաձայն Դավրիժեցու՝ Անգրեասին կախաղան բարձրացրին 1617 թ. նոյեմբերի 18-ին։ Մանրամասնությունները տես անդ, էջ 354—363։

31. Սույն հատվածը բնագրում դրված է հայոց ՌՁԶ (=1637) թվականի դիմաց, սակայն հատուկ նշանով ցույց է տրված, որ այն պետք է դնել հայոց ՌՁԴ (1635) թվականի դիմաց։ Տես վերևում, էջ 199, ծանոթ. 36, էջ 250, ծանոթ. 17։

32. Սույն հատվածը բնագրում դրված է 48բ էջի աջ կողմի ամենավերևի մասում և միաժամանակ հատուկ նշանով ցույց է տրված, որ այն պետք է գնել հայոց ՌՁԸ (1639) թվականի գիմաց։

33. Խոսքը վերաբերում է Մուրադ IV-ի և շահ Սեֆու միջև կնքված դաշինքին։

34. Քաշան քաղաք, Սպահանից հյուսիս-արևմուտք։ Շահ Սեֆի I-ը մահացավ այստեղ 1642 թ., որին հաջորդեց շահ Աբաս II-ը, 1642—1667 թ. թ.։

35. Խոսքը վերաբերում է վենետիկցիների և օսմանյան թուրքերի միջև 1645—1669 թ. թ. տեղի ունեցած կռիվներին։ Հմմտ. XV ժամանակագրություն, էջ 235, ծանոթ. 128։

36. Մուհամմեդ IV-ը թագավորել է 1648—1687 թ. թ.։

37. «Վտաւան» տարածության չափ։ Օգտագործել է նաև Խորենացին (II, ԽԵ) «Նոր բառագիրք հայկազեան լեզուի» հեղինակները նույնացնում են ստադիոնի Στάδιον հետ=մեկ ասպարեզ (հ. Բ. էջ 833)։

38. Սույն վկայությունը հաստատում է Զաքարիա Ագուլեցին, որը 1668 թ. հունիսին այցելել է Տաթևի անապատը և օրագրում հիշատակել, որ «այս անապատս դեռևս կիսակատար էր» («Օրագրությունը», էջ 75—76)։

39. Սույն հատվածի վերջին բառը չկարողացանք ընթեռնել, միայն պարզ երևում է առաջին «հ» և վերջին՝ «րս» տառերը. գուցե «հորս»։ Սակայն հատվածից հետո, տեղեկությունները հիշատակվում են հայոց և այժմ մեր կողմից գործածվող տարեթվերի ոչ թե 553 : 1 հարաբերությամբ, ինչպես մինչև այդ էր, այլ 551 : 1 հարաբերությամբ։

40. Բնագրում սույն հատվածը գրված է հայոց ՌՃԺԴ (=1665) թվականի ներքո, սակայն հատուկ նշանով ցույց է տրված, որ այն պետք է գնել հայոց ՌՃԺԵ (1666) թվականի դիմաց։ Աշրաֆ քաղաք, Աստրաբատ ծոցից 7 կլ. հարավ, Աստրաբատ-Սարի ճանապարհի վրա,. 4,5

*կմ. Տիզի դետի գետաբերանից հեռու, որ կառուցել է շահ Աբաս I-ը* (Бартольд "Историко-географический обзор Ирана", стр. 161):

*41. Հեղինակն այստեղ նկատի ունի Ոսկան վարդապետի կողմից Աստվածաշնչի հրատարակման աշխատանքները, որոնք իրոք սկսվեցին 1666 թ. և ավարտվեցին 1668 թ.։*

*42. Հակոբ Ջուղայեցին մահացել է 1680 թ. օգոստոսի 2-ին Կ. Պոլսում (տես վերևում, էջ 314, ծանոթ. 32)։ Իսկ Եղիազար Այնթափեցին Էջմիածնի կաթողիկոս դառնում է 1682 թ.։*

*43. Երկրաշարժի տարեթիվը մի տարով շուտ է նշված, այն տեղի է ունեցել 1679 թ. հունիսի 4-ին (տես վերևում, էջ 311, XXVII ժամանակագրական մանր հատվածներ, ծանոթ. 59)։*

*44. Սրա մասին հիշում է միայն Չամչյանը («Պատմութիւն Հայոց», հ. Գ, էջ 656)։*

*45. Խոսքը վերաբերում է ավստրո-թուրքական պատերազմին, որը սկսվեց 1683 թ.։ Թուրքերը 1682 թ. միջամտելով հունգարների ներքին գործերին, ձգտում էին հունգարական գահին նստեցնել իրենց թեկնածուին։ Թուրքերի դեմ մղվող այս պատերազմում Ավստրիան դաշինք կնքեց Բավարիայի կյուրֆյուրստի և Շվեդիայի թագավորի հետ։ Լեհաստանը նույնպես միացավ Ավստրիային։ Թուրքերը Կարա-Մուստաֆայի հրամանատարությամբ 1683 թ. հասան Վիեննա և պաշարեցին այն։ Պատերազմի ելքը որոշելու էր Յան Սոբեսկու (Լեհաստան) մասնակցությունը։ Շուտով Յան Սոբեսկին անսպասելի երևաց Վիեննան պաշարող թուրքերի թիկունքում և ջախջախեց նրանց 1683 թ. սեպտեմբերի 13-ին։ Հունգարիայի և նրա մայրաքաղաքի Օֆենի (Բուդա) ազատագրումը տեղի ունեցավ 1686 թ.։ Հեղինակը նկատի ունի այս վերջին դեպքերը։*

*45. Սուլեյման II-ը թագավորել է 1687—1691 թ. թ.։*

*47. Համա. «Ազգապատում», էջ 2660։*

*48. Չամչյանը սրա մասին գրում է. «Եւ ինքն (Ստեփաննոսը— Վ. Հ.) լեալ իբր ութսուն ամաց՝ վախճանեցաւ ի թուականութեանս Հայոց ՌՃԽԸ. փոքր մի յառաջ կամ յետոյ» («Պատմութիւն Հայոց», հ. Գ. էջ 620)։*

*49. Պարսկաստանի շահ Հյուսեյինը թագավորել է 1694—1722 թ .թ.։*

*50. Համա. էջ 285, 287, ծանոթ. 10։*

*52. Համա. էջ 304, 311։*

*53. Համա. էջ 311։*

*54. Համա. էջ 304։*

*55. Նահապետ Եդեսացին մահացել է 1705 թ. հունիսի 13-ին։ Համա. XXII ժամանակագրություն, էջ 304։ Ըստ երևույթին սույն վկայության մեջ տեղ է գտել «Ե» և «Է» տառերի սովորական շփոթումը։ Շատիկը գտնվում է Ճակատք գավառում (տես և համա. Ասողիկ, էջ 188)։ Այժմյան Կողբի և Սուրմառիի շրջանում։ Ալիշանն այդ առթիվ գրում է. «...Շատիկ սահմանակից էր Շիրակայ կամ ի սահմանս Երասխաձորոյ. ուրանօր կչիռ ի Հս. Սուրմառոյ և հազիւ իբր փարսախաւ հեռի, և մերձագոյն ի խաչ-տաղ՝ նշանակի բարձրաւանդակ մի Դեատիկ-թէփէ անուն, որ մերձաւորութեամբ կոչմանն և դիրցն թուեցուցանէ ե զնոյնութիւն Շատկայ», («Այրարատ», էջ 124)։ Սակայն խոսքը այս Շատիկի մասին չէ։ Վայոց ձորում, Ոստին գյուղի դիմաց և Հասանքենտ գյուղից արևելք մի բարձրադիր սարահարթի վրա գտնվում է Շատի վանքը կամ Շա.տիկ անապատը (տես Ալիշան «Սիսական», էջ 159)։ Խոսքը հավանաբար այս Շատիկի մասին է, որովհետև անապատն այստեղ է գտնվել։*

*56. Համա. XXII ժամանակագրություն, էջ 304։*

*57. Համա. XXII ժամանակագրություն, էջ 305։ Սույն հատվածի գրության ձևը մի փոքր այլ է։*

*58. Բնագրում սույն հատվածը դրված է Հայոց ՌՃՀՁ թվականի դիմաց և հատուկ նշանով ցույց տրված, որ այն պետք է լինի Հայոց ՌՃՀԵ թվականի դիմաց։ Խոսքը վերաբերում է Կարապետ Բ. Ուլնեցուն, 1726—1729 թ. թ.։*

*59. Խոսքը վերաբերում է Աբրահամ Բ Խոշաբեցուն 1730—1734 թ. թ.։*

*60. Թավրիզի եռ գրավման վկայությունը բնագրում դրված է Հայոց ՌՃՁԲ թվականի դիմաց, սակայն հատուկ նշանով ցույց է տրված, որ այն պետք է լինի Հայոց ՌՃՀԹ թվականի դիմաց։*

*61. Սույն վկայությունը բնագրում դրված է Հայոց ՌՃՁԴ թվականի դիմաց, սակայն հատուկ նշանով ցույց է տրված, որ այն պետք է լինի Հայոց ՌՃՁԳ թվականի դիմաց։ Խոսքը վերաբերում է Աբրահամ Բ Կրետացուն (1734—1737 թ. թ.)։*

XXIV

# ԲԱՂԴԱՍԱՐ ԴՊՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVIII Դ.)

*Մատենադարանի № 6691 ժողովածուն, որը ընդամենը 8 փոքրադիր թերթերից է բաղկացած, իրենից ներկայացնում է մի ժամանակագրություն։ Բուն ժամանակագրությունը խորագիր չունի և գտնվում է ժողովածուի 3ա—8ա էջերում։ Ժողովածուի սկզբի և վերջին մնացած էջերում, ժամանակակիցները՝ գրիչը՝ Ստեփանոս Գյումուշխանեցին և Մանվել Սևակիրը (էջ 2ր), 1793 թվից մինչև 1799 թիվը տեղի ունեցած մի շարք դեպքերի նշումներ են կատարել, որը նույնպես տեղավորում ենք ներկա հրատարակության մեջ։*

*Բուն ժամանակագրությունը կարելի է ասել եզակի երևույթ է իր տեսակի մեջ, այն իմաստով, որ հանդիպում ենք ոչ թե դեպքերի հաջորդական, այլ նրանց այբբենական կարգի՝ Ա—Ք շարադրության հետ։ Այդ պատճառով ժամանակագրությունն ընդգրկում է նույնիսկ նախաքրիստոնեական շրջանին վերաբերող տեղեկություններ, որոնք հայտնի պատճառով չեն կարող պատմական լուրջ վկայությունների դեր կատարել։ Ժամանակագրությունը վերջանում է 1762 թվի մայիսի 11-ին Կ. Պոլսում տեղի ունեցած հրդեհի վկայությամբ։ Ժամանակագրության հեղինակի հարցը հնարավոր է պարզել ժողովածուի 8-րդ էջում պահված առաջին գրչի հիշատակարանի վկայությամբ։ Վերջինս ժամանակագրությունը կազմելուց 3 տարի հետո՝ 1766 թ. փետրվարին, ընդօրինակել է այն և վերջում թողել իր հիշատակարանը, որտեղ կարդում ենք.*

> *«Ժամանակացոյ պատմութիւնքս այսոքիկ ի գրուածոցն Տիրացու Պաղտասարին ընդրեալ գրեցան ձեռամբ յԱկնայ Պետրոսեան Ստեփաննոս ամիրային. ոչ զքանքուն օրինակին այլայլելով, այլ զոմանց իրաց զպատմութիւն գիտել կամելով, որոյ և բուն այբբենակարգ պատմութիւնն եղեալ է իբր երկիցս այսքան զհարկաւորսն, օրինակեալ 1215 Հայոց թուին ի փետրվարի ամսոյն»։*

*Այսպես, մեզ համար պարզ է դառնում ժամանակագրության հեղինակի անունը։ Վերոհիշյալ Տիրացու Բաղդասարը և ժամանակագրության մեջ հիշատակված Մալղարացի Աստուածատուրի նահատակության (1710 թ. հունվարի 10, երեքշաբթի) չափածո պատմության հեղինակը կարծում ենք միևնույն անձնավորություններն են։*

*Եթե նկատի ունենանք Տիրացու Բաղդասարի քանաստեղծական այս ձիրքը մի կողմից և վերջինիս ու XVIII դարի հայտնի տաղերգու Բաղդասար Դպրի կյանքի ժամանակագրական նույն սահմանները մյուս կողմից, կարծում ենք,*

*որ այդ երկու հեղինակները նույն անձնավորություններն են։[1] Ինչպես ասացինք, ժամանակագրությունն իր կառուցվածքի շնորհիվ ընդգրկել է նաև նախաքրիստոնեական շրջանին վերաբերող վկայություններ։ Մի շարք տվյալներ անկասկած ճիշտ չեն, օրինակ. Արիստոտելին, Ներսես Պարթևին, Մեսրոպ Մաշտոցին, Հոհան Մանդակունուն, Գրիգոր Նարեկացուն, Ներսես Շնորհալուն, Հով. Սարկավագին և ուրիշներին վերաբերող տվյալները։ Ժամանակագրության մեջ հանդիպում ենք տրադիցիոն պատմագրությունից փոխ առնված վկայությունների՝ Արգար թագավորի, էջմիածնի հիմնարկման, Գրիգոր Լուսավորչի կաթողիկոս օծվելու մասին և այլն։ Սակայն հին շրջանին վերաբերող որոշ վկայություններ էլ կան, որոնք մասնագետներին խորհելու առիթ պետք է տան. օրինակ. «Ղազար Փարպեցի արար ժամանակագրութիւն 507 Քրիստոսի թուին»։ Այսպիսի մի վկայության նույնպես հանդիպում ենք Սամվել Անեցու ժամանակագրության մեջ։[2] Հավանաբար Տիրացու Բաղդասարը օգտվել է Սամվել Անեցուց, միաժամանակ հնարավոր է սակայն, որ իրար համապատասխանող վերոհիշյալ վկայությունները ծագել են մի երրորդ՝ մեզ անհայտ աղբյուրից։ Մի այլ օրինակ. համաձայն ժամանակագրության, Գրիգոր Լուսավորիչը ծնվել է 257 թվին. մի հավանական վկայություն, որը քավական տարբերվում է տրադիցիոն պատմագրության տվյալներից։[3]*

*Եթե մի կողմ թողնենք հեղինակի ժամանակաշրջանին վերաբերող վկայությունները, որոնք քավական հետաքրքիր են և վստահելի, ժամանակագրության մեջ հանդիպում ենք նաև այնպիսի տվյալների, որոնք տեղի են ունեցել հեղինակից դարեր առաջ, բայց վերջինիս վկայությունների իսկությունը հաստատվում են պատմագրական այլ աղբյուրներով, այսպես՝ ժամանակագրությունը հիշում է «Մեծ սիւրկին (իմա աքսոր) Սաամբօլու, հայոց 1084, (1635) մայիսի 15»։*

*Այս տեղեկությունները հաստատվում են ինչպես Գրիգոր Դարանաղեցու,[4] այնպես էլ վերջինիս աշակերտ՝ Մինասի և ուրիշների կողմից։[5]*

*Նման վկայությունների մեջբերումը կերելի է շարունակել։[6]*

*Այստեղ գտնում ենք նաև Կ. Պոլսի պատրիարքների աթոռակալության մանրամասն ցանկը, ինչպես և Կ. Պոլսում և այլուր տեղի ունեցած զանազան*

---

[1] *Մատենադարանի գիտ. աշխատող Ա. Մնացականյանը իր «Բաղդասար Դպիր» անտիպ աշխատության մեջ նույն կարծիքն է հայտնել։ Մեր առաջին խնդրանոք ընկ. Մնացականյանը իր անտիպ աշխատությունը տրամադրեց մեզ, որի համար հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը։*

[2] *«Սամուէլի քահանայի Անեցւոյ հաւաքմունք ի գրոց պատմագրաց» Վաղարշապատ, 1893 թ. էջ 72։ Հմմ. Տաշյան «Ցուցակ հայերէն ձեռագրաց» Վիեննա, 1895 թ. № 65, էջ 292։*

[3] *Գրիգոր Լուսավորչի ծնունդը ըստ Ագաթանգեղոսի ու Մ. Խորենացու վկայությունների և Մ. Օրմանյանի հաշվումների տեղի է ունեցել 239 թվին։ «Ազգապատում», էջ 74։*

[4] *«Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղեցւոյ» Երուսաղէմ, 1915, էջ 520—531։-Ամսաթիվը այստեղ հիշված է մայիսի 25։*

[5] *Գետ. Ձեռագրատան № 7273 ժողովածու, էջ 71ր։ Հմմտ. № 3276 ժողովածու, էջ 15ր։*

[6] *Հմմտ. ժամանակագրության արաբների Հայաստան արշավելու վկայությունը, «Պատմութիւն սրբոյն Ներսեսի և գիւտ նշխարաց» (Սոփերք հայկականք, Է, Վենետիկ, 1853 թ., էջ 43—44) վկայության հետ։ Տես նաև Հ. Մանանդյան «Մանր հետազոտություններ», Երևան, 1932 թ., էջ 23—28։*

*պատահարների, նշանավոր դեպքերի, քրիստոնեական հավատի համար նահատակվածների և այլ վկայություններ։*

*«Ազգապատում»-ի հեղինակը որպես սկզբնաղբյուր օգտագործել է նաև Սարգիս դպիր Սարաֆ Հովհաննիսյանի «Հուաքածոյ գրութինք» ձեռագիր աշխատությունը, որը Վահրամ Թորգոմյանի սեփականությունն է եղել։ Վերոհիշյալ աշխատությունից «Ազգապատում»-ում մեջբերված մի շարք վկայություններ գտնում ենք առաջարկվող ժամանակագրության մեջ նույնությամբ։ Եվ որովհետև Սարգիս դպիրը ուշ շրջանի (XVIII դարի վերջի XIX դարի սկզբի) անձնավորություն է, քան ժամանակագրության մեր հեղինակը, ուստի ենթադրում ենք, որ Բաղդասար Դպիրի կողմից կազմված սույն ժամանակագրությունը, որպես սկզբնաղբյուր ծառայել է Սարգիս Դպրի «Հաւաքածոյ գրութինք» անտիպ աշխատության։*

XXIV

Արդար հաւատաց ի Քրիստոս ի թուին Քրիստոսի 40։ 3ա

Աբրահամ կաթուղիկոս նստաւ, այն էր Բաղիշեցի, 1730։[1]

Աբրահամ Կրետացի, առաջնորդ Թէքիրտաղու, նստաւ կաթուղիկոս 1734։[2]

Աթանաս հայրապետն Աղէքսանդրու էր, սարկաւագ Կիւր[ե]ղի Երուսաղէմայ հայրապետին, որ ընդ նմա գնաց ի սուրբ ժողովն Նիկիոյ։

Աթոռն Հայոց փոխեցաւ ի Սիս թուին Քրիստոսի 1171։ Ի Սիսոյ դարձեալ յէջմիածին 1441։

Աղէքսանդր Ջուղայեցի նստի կաթուղիկոս Հայոց ի մերս թուին 1156 (1707) և վախճանի 1163 (1714) նոյեմբերի 22։[3]

Աղէքսանդր Ստամպօլցի ընտրի կաթուղիկոս յէջմիածնի ի Կոստանդինուպօլիսի ի թուին։[4]

Ամբրոսիոս հայրապետն յանդիմանէր զմեծն Թէոդոս, որ նստաւ յամի տեառն 398։

Ամիրախօլվէթ բժիշկ Ամասացի արար Գ (3) մեծ գիրք բժշկականութեան, որք են՝ միֆրէտաթ, ստածումն և ադիապաթին ի Կոստանդնուպօլիս աւարտեալ, որ ի թուին Հայոց՝ ԼՄՆԱՑ։[5]

Անի առաւ ի Տաճկաց ի թուին Քրիստոսի 1030։[6]

Աջն սուրբ Լուսաւորչի գողացեալ եղև ի Սըսայ և տարեալ յէջմիածին ի թուի[ն] Հայոց 896 (1447)։

Առաքել վարդապետն սկսեալ է գիւր պատմագիրքն Հայոց ՌՃ (1651)։[7]

Աստուածածնայ ժամուն ներքին թօխաթցուն զիմացէն մինչ ի Քիւլհանն հիսարին պատն փլաւ դէպ ի ծովն 1165 (1716) դեկտեմբերի 26, շաբաթ, միւհարմի 27։

Աստուածածնի դրսի գիհն նորոգեցաւ, որ սուրբ Նիկողայոսի խորան շինեցաւ 1161 (1712) յունիսի 24 ի Հայ[ո]ց թուին։

Աստուածածնի եկեղեցւոյն շինման ֆրմանն եղաւ, որ սկսան գհիմն բանալ 1168 (1719) սեպտեմբերի 28, իսկ դեկտեմբերի Է (7) շինման քէվշն եղաւ, որ Հ (70) օրն շինեցաւ։ Եւ դեկտեմբերի ԺԳ (13) գիշերն Գրիգոր վարդապետն օծեց զեկեղեցին։ Դարձեալ ի թուին ՌՄԺԱ (1762)-ին այրեցաւ շուրջն ժամուն 3բ և ինքն մնաց։ Մէբամէթին հրաման եղաւ մայիսի Լ (30), օրն հինգշաբթի։

Աստուածաշունչ գիրքն թարգմանեցաւ ի մեր լեզու թուին Քրիստոսի 460։

Աստուածատուր վարդապետ Համատանցի նստաւ կաթողիկոս ի մեր թուին 1164 (1715).[8]

Արամ պազարի գոլիցիլի թաշն սկսան քակել Հայոց 1160 (1711)-ին դեկտեմբերի Ա (1)։

Արիստակէս սուրբ հայրապետն, որդի սուրբ Լուսաւորչին կատարի յԱրղէղայոսէ ի թուին Քրիստոսի 331։[9]

Արիստոտէլ եղև աշակերտ Պղատոնի և վարժապետ Աղէքսանդրոսի. մեռաւ 63 ամաւ նախքան զՔրիստոս։[10]

Արկադէոս և Ոնորիոս թագաւորեցին ի թուին Քրիստոսի 411։[11]

Աւետիք վարդապետն մանդուլ եղև,[12] Մինաս վարդապետն տեղն նստաւ Ստամպօլու պատրիարք 1152 (1703) սեպտեմբերի 8, չորեքշ[ա]բաթի։[13]

Բարսեղ[14] և եղբայր իւր՝ Գրիգոր[15] և Աստուածաբանն[16] հանդիսանային ՅՀԱ (371) յորում և մեծն Ներսէս էր ի կղզին յաքսորս։

Գագիկ օծաւ թագաւոր 411 (962) ի թուին Հայոց։[17]

Գէորգ Սկևռացին այր գիտնական յոյժ և առաքին փոխի առ Քրիստոս ՉԾԱ (1302) ի թուին Հայոց։[18]

Գէորգ վարդապետն Ղափանցի կապայ հագաւ Ստամպօլու պատրիարգութեան ի թուին Հայոց ՌՃ (1651) յունիսի 15։

Գիրն մեր Հայոց սահմանեցաւ Քրիստոսի 423։

Գիւտ գրոյն մերոյ Քրիստոսի 420։

Գիւտ կաթուղիկոսն, որ եղիտ զԴաւիթ Անյաղթն և զՄովսէս Խորենացին, աշակերտ սրբոյն Սահակայ, նստաւ թուոջն Քրիստոսի 434։[19]

Գրիգոր Լուսաւորիչն նստի յաթոռ հայրապետութեան Քրիստոսի 310։

Գրիգոր Սքանչելագործն էր ի ժամանակս Օրէղիանոսի[20] կայսերն Հռոմայ, որ նստաւ յամին Քրիստոսի 272։

Գրիգոր Նարեկացին փոխի 422 (973) ի մեր թուին։[21]

Գրիգոր Վկայասէրն, որ և Վահրամ քեռի սրբոյն Ներսէսի Շնորհալոյ, նստի ի մեր թուին 565 (1116)։[22]

Գրիգոր Արշարունեաց եպիսկոպոսն արար զմեկնութիւն 4ա
ընթերցուածոցն պահոց[23] յաւուրս Յօհան Օձնեցւոյն։

Գրիգորիս, թոռն Լուսաւորչին, սպանանի յԱղուանս ի Սանատրկոյ, Քրիստոսի 346։

Գրիգորիս, եղբայր սրբոյն Ներսէսի Շնորհալոյն, նստաւ Քրիստոսի 1113։[24]

Գոշ Մխիթար վարդապետն վախճանեցաւ Հայոց 662 (1213)։

Եղիազար վարդապետն եղև պատրիարգ Ստամպօլու 1098 (1649), եղև պատրիարգ Երուսաղէմի 1115 (1666),[25] և եղև կաթուղիկոս Էջմիածնի 1131 (1682), իսկ վախճանի 1140 (1691)։

Եւագրիոս սուրբ հայրն սարկաւագ էր Բարսեղի Կեսարացւոյն։

Եօթանասնից թարգմանութիւնն եղև նախքան զՔրիստոս 291 ամի ի յուն լեզու։[26]

Էջմիածնի հիմնարկութիւնն եղև Քրիստոսի 297։

Ըստամպօլու պարսպին մէրամէթն սկսան 1171 (1722) ապրիլի 22։

Թագաւորութիւնն Հայոց բարձաւ ի Ցանի Հայոց 513 (1064)։[27]

Թագաւորութիւնն Հայոց վերջին, որ ի Կիւլիկեայ, բարձաւ Հայոց թուին 811 (1362), որ էր Լեօնն վերջին։[28]

Թադէոս առաքեալն մկրտեաց զԱրգար Հայոց Քրիստոսի թուոյն 40։

Թադէոս վարդապետ Մշեցի եղև պատրիարգ Երուսաղէմի 1198 (1749) Հայոց։

Ժողովք Ատանոյ ի թուոյն Քրիստոսի 1319։

Ժողովք Դունայ 500 Քրիստոսի։[29]

Ժողովք Եփեսոսի 431 Քրիստոսի։

Ժողովք Կարնոյ 626 Քրիստոսի։[30]

Ժողովք Կոստանդնուպօլսի (1) 381 Քրիստոսի։

Ժողովք Կոստանդնուպօլսի (2) 553 Քրիստոսի։

Ժողովք Կոստանդնուպօլսի (3) 680 Քրիստոսի։

Ժողովք Կոստանդնուպօլսի (4) 869 Քրիստոսի։

Ժողովք Նիկոյ ընդ պատկերանարգաց 787 Քրիստոսի։

Ժողովք Շիրակվանայ 862 Քրիստոսի։

Ժողովք Սըսայ 1307 Քրիստոսի։ 4ր

Ժողովք Տարսոնի 1177 Քրիստոսի։

Ժողովք Քաղկեդոնի 451 Քրիստոսի։

Իզմիրցի Յօհաննէս վարդապետն պատրիարգ Ստամպօլու 1156 (1707), սեպտեմբերի 23։

Լանկ Թէմիւրն ել ի Հայս 835 (1386)։

Լուսաւորիչն մերոյ սրբոյն Գրիգորի ծնունդն 257 Քրիստոսի։

Լուսաւորչի եկեղեցին, որ ի Ղալաթիայ սկսան շինել 1170 (1741) փետրուարի 1։

Խարբերդցի տէր Միքայելն Աւետիք վարդապետին համար վէքիլ նստաւ,[31] որ զԱւետիք վարդապետն բերել տան ի Հռօմայու և չեղև 1155 (1706) յունիսի Թ (9)։

Խօճա-փաշայի կրակն, որ Նոր չաշըյի մէջն ալ մտաւ 1152 (1703), սեպտեմբերի ԺԸ (18), շաբաթ։

Խօճա-փաշայի միւս կրակն, որ Ի (20) սէհէթ վառեցաւ 1157 (1708), հոկտեմբերի 28, հինգշաբթի։ Դարձեալ միւս կրակն Խօճայ-փաշային, որ չորս ճիւղ եղաւ և ԼԶ (36) ժամ վառեցաւ էր 1204 (1755) Հայոց թուին, սեպտեմբերի 18, օրն սուրբ Խաչ, յոր լուսացաւ։

Ծովն Ստամպօլու պաղեցաւ Հայոց 1070 (1621), յունուվարի 10։

Կաթուղիկոսունք Սըսայ միապատկանք եղեն 28. առաջինն Գրիգորիս, վերջինն Գրիգոր Միւսապէկէնց ամս 330։[32]

Կայծակն զԹաւուխ պազարի տիքիլի թաշն զարկաւ ճաթռեց 1147 (1698) յունիսի 22 մէջօրէի, չորեքշաբթի։

Կայծակ վարդապետն Զէյթունցի նստաւ առաջնորդ Ստամպօլու 1151 (1702).[33] Ծաղկազարդի երեկոյին ժամուն բակն նստաւ

քիւթիւրտիւով ծանուցում ըրաւ, երկուշաբթին չուեց, այլ ոչ
երեւցաւ 1153 (1704), ապրիլի 9։
Կարապետ կաթուղիկոսն Զէթունցի[34] առաջնորդն Դաղա-
տիոյ օծաւ. կաթուղիկոս էջմիածնի ի Կոստնդնուպոլիս, յ|եկ|ե-
ղեցին սուրբ Աստուածածնայ || 1175 (1726), փետրուարի 27։ Յերկ- ճա
բորդում կիւրակէի աւաղ պահոցն գնաց յէջմիածին և փոխե-
ցաւ 1178 (1729), հոկտեմբերի 2։
Կարկուտ եկաւ. Ստամպօլ, որ բաղնեաց ճամ չմնաց, ճամ-
ճներն տիւտիւկն չալիցին 1163 (1714), ապրիլի 23։[35]
Կէաիկ փաշան Միւֆէթթիշին անէն կրակ ելլաւ 12 սահաթ
յամեց 1162 (1713)։
Կոմիտաս կաթուղիկոսն, որ շինեց զՀռիփսիմեանց վկա-
յարանն և ասաց զԱնձինքն, նաաւ յամի տեառն. 627։[36]
Կոստանդիանոս Մեծն վախճանի 341 Քրիստոսի, մայիսի 22։[37]
Կոստանդնուպօլիս առաւ ի Մահմէտ խանէն, ի Մանուէլ
թագաւորէն 902 (1453) Հայոց։
Կովղինն եղերեալ է գգրուածն իւր փիլիսոփայական 1685
Քրիստոսի։
Կրակ ելաւ Թիւֆէկխանային Խայխանայէն մինչ Ունղա-
փանէն ներս ցաթկեց, եկաւ Յաթ պազարն և Շահզատ ճամին
էմինէտէյի, աշխարհի բանն կայր ի հոն, ամէնն այրեցաւ. եկաւ
Զուխուռ-Չէշմէսվ, Ղաղէսկէրին բաղնիքն ն՝զարկաւ Ախ-Սարայոխ
մինչի Զինարտիպին պատեաց. եկաւ Այազմա դռնոխ Աղային
դուռն, Մաֆայ մէյտանոխ զայսքան տեղս ԼԴ (34) սէհէթն սըր-
րեց. 96 աէկրմէն, 12 գլխաւոր փուռ, 26 բաղնիք։ Այս եղև Տաճ-
կաց թուին 113 շապան 21, որ Հայոց ՌՃԿէ (1718), յուլիսի Ե (5)
գիշերն. Զ (6) սահաթին։
Կրպօ երէց Ղայսէրցի նաաւ. առաջնորդ Ստամպօլու 1125
(1676) Հայոց։[38]
Հոօմուլոս մինչ շինէ զՀռօմ, Աքայար թագաւոր էր ի Հրե-
աստանի։
Ղազար Փարպեցի .ալար ժամանակագրութիւն 507 Քրիս-
տոսի թուին։
Ղազար կաթուղիկոս Ջահկեցի յոյժ գիտնական, որ էր ճբ
առաջնորդ Իզմիրու յետ նուիրակութեանն Ստամպօլու, նստաւ
կաթուղիկոս 1186 (1737) Հայոց թուին։[39]
Ղասիտէճի կաթուղիկոս Սըսայ, որ պիտի կախէին, թուր-
քացաւ 1145 (1696), յունիսի 5, օրն շաբաթ։
Ղևոնդեայ կատարումն 485։[40]
Ղուլէլիզատէ մահտիս Պետրոս Չէլէպին հանգեաւ առ տէր
1205 (1756), յունիսի 25, Հայոց։
Ճամպաղ խաղաց Ստամպօլ ի Սուլթան Պայազիտն 1154
(1705), նոյեմբերի 15։ Յետոյ վարի իսկէլէյէն կապեց զչուանն
մինչ ի դիմացն և խաղաց և էր տօնանմայ։ Եւ ի 16 նոյեմբերի
էճմայ էլչին եկաւ և այն գիշերնէ մոմ տօնանմասին, որ ի սո-
խախներն, չարսըին սըխ մոմ շարեցին, որ հիանայիր։

Ճիղալիյին ուհազին կրակն, որ զմեծ մասն Ստամպօլու այրեց, եղև 1205 (1756) Հայոց, Լուսաւորչի պահոց չարթի գիշերն։

Մալղարացի Աստուածատուրն նահատակեցաւ 1159 (1710) յունվ[ա]րի 10, երեքշաբթի։ Տիրացու. Պաղտասարն զպատմութիւնն գրեաց ճառապէս և երկար զովք ասաց վերան չափեալ ոտիւք։

Մակար մեծն էր յաւուրս Անտօն և սորա աշակերտեցաւ իսկ։

Մահմէտն երևեցաւ Հ[այոց] 60 (611)։[41]

Մահաքսի Եաղուպին խղճալի մահն 1201 (1752), յուլիսի 9, Հայոց։

Մահաքսի Ծերունն հանդեաւ 1201 (1752), յունիսի 18։

Մահաքսի Սեղբոսն հանգեաւ 1203 (1754), փետրվարի ։

Մանկունք Երեսոսի ննջեցին յաւուրս Դեկոսի 374 ամ և զարթեան յաւուրս Մեծին Թէոդոսի։

Մաշտոց վարդապետն հայրապետ Հայոց խոաճարտկ հանգեաւ 897 և' Հայոց 346։[42]

Մավրամօլօղին վանքն Ալի փաշան քակեց 1164 (1715), յունվարի 27։

Մարկոս Աւրէլիանոս թագաւորէ 163 Քրիստոսի թուին։[43] 6ա

Մարտիրոս վարդապետն Քէֆէցի նստաւ առաջնորդ Ստամպօլու 1108 (1659) և Երուսաղէմի 1116 (1667) և Յեղիպտոս վախճանեցաւ։[44]

Մարտիրոս վարդապետ Մեղրեցի, որ Բ (2) անգամ Ստամպօլու նուիրակ եկեր էր, վախճանեցաւ 1166 (1717), օգոստոսի 10 և ի Պէկօզլին թաղեցաւ։

Մարտիրոս վարդապետն Եղնկացի Քիւհանճի[45] կոչեցեալ, նստաւ առաջնորդ Ստամպօլու 1155 (1706) փետրվարի 11, որ եղև եպիսկոպոս ի վերայ Ստմպօլու Սարը կաթուղիկոսէն ի Ստամպօլ, ի սուրբ Աստուածածնայ եկեղեցին։

Մելքիսէթ կաթուղիկոսն նստաւ 1042 (1593) և եղև առաջնորդ Ստամպօլու 1048 (1599) Հայոց թուին։[46]

Մելքիսեդ վարդապետն, արծարծօղ զարտաքին գիտութիւնն, Յէջմիածին վախճանի ի թուին Հայոց 1080 (1631), վարդապետ Սիմէօնի Ջուղայեցւոյ և աշակերտ Նախկին զտողի զայս գիտութիւն ի Հայս։

Մեծ եանղուն կոչեցեալն Ստամպօլու եղեալ է 1109 (1660) Հայոց։

Մեծ սիւրկիւնն Ստամպօլու Հայոց 1084 (1635) մայիսի 15։[48]

Մեծն Ներսէս դեղակուր եղև ի Պապայ 401 Քրիստոսի։[49]

Մեսրոպ, աշակերտն սրբոյն ի Սահակայ, եկաց հայրապետ Հայոց ամ մի պակաս և հանգեաւ 482 Քրիստոսի թուոյ։[50]

Մինաս վարդապետն Համթեցի նստաւ առաջնորդ Երուսաղէմի 1138 (1689)։[51]

Մխիթար վարդապետն Քիւրտխատանցի առաջնորդ եղև Ստամպօլու 1148 (1699), յուլիսի 25։[52]

Մովսէս Քերթողահայրն պայծառանայր Քրիստոսի թուին 491։

Մօ[ս]կօֆու էլչին եկաւ Սստուածածնի ժամուն մօտն նստաւ, Շապան աղայի տունն, 1164 (1715), փետրուարի 2։

Մինաս վարդապետն Ակնցի, առաջնորդ Մշու սուրբ Կարապետու, առաջնորդ եղև Ստամպօլու 1108 (1749)։ Եւ յետոյ ընտրեցաւ կաթուղիկոս ի սուրբ Աստուածածնի եկեղեցին, ի Ստամպօլ 1200 (1751), յունսի 13 և գնաց յէջմիածին և անդ վախճանեցաւ։[53]

Յակոբ Արճեցին էր յաւուրս Զենոնի կայսերն առաջնոյ, որ Ծբ
նստաւ 484 Քրիստոսի թուին։

Յակոբ վարդապետն Զմուռնիացի նստի առաջնորդ Ստամպօլու 1190 (1741), փետրվարի 15, առաջին լինելն է։[54]

Յոհան Ոսկեբերանն նստի ի Կոստանդնուպօլիս 412։

Յոհան Մանդակունին նստի 449։[55]

Յոհան Օձնեցին արար ժողով Մանածկերտոյ 177 (728) Հայոց։[56]

Յոհան Որոտնեցին փոխի 837 (1388) Հայոց։

Յոհաննէս Կառնեցին մկրտեաց զմղրին 671 (1222)։[57]

Յոհաննէս վարդապետն, Սարկաւագ կոչեցեալ, յոյժ իմաստուն ի տոմարական գիտութիւնս և այլ, վախճանի 272 (833) Հայոց։[58]

Յօհաննէս վարդապետն Ջուղայեցի ծնեալ է ի թվին 1092 (1643) և մտեալ է ի վանքն Ամենափրկչին ի Սպահան 1107 (1658) և առեալ կարգ յառաջնորդէ նոյն ուխտին Դաւիթ [վ]արդապետէ։

Յոհանէս վարդապետն Իզմիրցի նստաւ Ստամպօլ 1156 (1707) յԱղէքսանդր կաթուղիկոսէն եկեալ։

Յօհանէս վարդապետ Գէնճէցի նստաւ ի Ստամպօլ 1163 (1714), մարտ 21։[60]

Յօհաննէս վարդապետ Բաղիշեցի նստաւ ի Ստամպօլ 1164 (1715), վախճանի 1190 (1741), փետրուարի 13, Հայոց։[61]

Նահապետ կաթուղիկոսն նստաւ 1691 օգոստոսի 10, վախճանի 1706 յունիսի 13։

Նաղաշ վարդապետն ողբն ասաց Հայոց 918 (1469)։[62]

Նանա Ասորի, որ դրեաց զմեկնութիւն Յօհաննու գլխոյն,[63] որ յետոյ ածանցեցաւ ի մեզ, էր սարկաւագ, յաւուրս յետին իշխանութեանն իշխանացն տիրելոյ յետ Արշակունեաց։

Նասքաաբինն մեռեր էր մեր թուին 495 (1046)։

Նարին Աստուածատուր Սասընցի կաթուղիկոսն նստաւ ի Սիս։[64]

Ներսէս Մեծն, թոռն թոռին սրբոյ Լուսաւորչին, նստի հայ- Դա
րապետ Հայոց 371։[65]

Ներսէս Շնորհալին նստաւ 1165 Քրիստոսի թուին։[66]

Ներսէս Լամբրոնացին հանդիսանայր ի ժողովս Տարսոնի 1177 Քրիստոսի։

Ներսէս վարդապետն, պատրիարք եղաւ, Գալատցին, Սարբին չրաղն, 1153 (1704), ապրիլի 22, երկուշաբթի։[67]

Ներսէս վարդապետն կրկի՛ս պատրիարգ եղև 1153 (1704), հոկտեմբերի 6, ուրբաթ։[68]

Նոխուտճի կոչեցեալ Յօհաննէս վարդապետն, պւտ Ստամպօլցի, նստաւ առաջնորդ Երուսաղէմի և անդ թաղեցաւ 1146 (1697)։[69]

Շնորհալին փոխի ի Քրիստոս 619 (1170) Հայոց։[70]

Ոսկան վարդապետն ծնաւ ի Սպահան Հայոց 1063 (1614)։

Որոգինէս արար զվեցիջեանն զիրք հին կտակարանին յամի ծննդեան Քրիստոսի 233։

Պատկերն պղնձի Ռստոռու կղզոյն քակի յամին Քրիստոսի 647, որ էր մին յեօթն հր[ա]շիցն շինուածոց։

Պետրոս Գետարդեյն վախճանի Հայոց 507 (1058)։[71]

Պոչաւոր աստղն մայիսի ամսոյն, որ երեեցաւ 1175 (1726) Հայոց։

Պրօխօրօն Ուռուսճուխցի էառ զառաջնորդութիւնն Ստամպօլու 1198 (1749) Հայոց թուին։[72]

Պօղոս Անապատականն էր յաւուրս Դեկոսի, որ նստաւ 250 Քրիստոսի։

Սահաթճի վարդապետն և Երեմիայ վարդապետն ուրացան ի կռուին երկարնակաց 1193 (1744), նոյեմբերի 3, Հայոց, չորեքշաբթի։

Սահակ կաթուղիկոսն Արղրումցի, Ահաղին կոչեցեալ, այր քտՋաքարող, ահաղնագոչ, որ էր առաջնորդ Իզմիրու, ընտրեցաւ հայրապետ Հայոց, յեկեղեցւոջ սուրբ Աստուածածնի ի Ստամպօլ 1205 (1756) Հայոց, յունիսի 20։[73]

Սարը կաթուղիկոս Սրսայ[74] ի սուրբ Աստուածածնի եկեղեցին Գ (3) եպիսկոպոս ձեռնադրեց՝ մինն Քիւլհանճի Մարտիրոս վարդապետն՛ էր, Ստամպօլու պատրիարգ։[75] || Դրսի բակն՛ աս- 7r
տիճաննեը շինեցին, զարմանալի բաներ, մի էր, որ տեսնօղքն զարմացան ապուշ մնացին, որ չէր տէսնուած ի քաղաքս, 1155 (1706) Հայոց, ապրիլի 5։

Սախա օղլու դերձակ աշխարհական եղև առաջնորդ Ստամպօլու 1138 (1689) վէքիլ իրեցօք։

Սահակ հայրապետ Մեծն՝ որդի սրբոյն Ներսէսի Մեծի, նստի հայրապետ Հայոց 431։[76]

Սահակ վարդապետն Ակնցի նստաւ ի Ստամպօլ 1156 (1707), յունվարի 22, և յետ Իզմիրցոյն նստաւ դարձեալ 1157 (1708), դեկտեմբերի 30։[77]

Սեննեքերիմ եկն ի վերայ Երուսաղէմի 3291 աշխարհի թուին։

Սիմէօն Սիւնակեցին պայծառանայր 502։

Սիմէօն վարդապետն Ջիւղայեցի վախճանի Հայոց 1106 (1657)։

Սուլթան Պայազիտու կրակն, որ մինչև Աստուածածնի ժամն հասաւ 1211 (1762), մայիս 11 լուսանալու գիշերն, Գ (3) ժամու։

Սուպհի Մելքիսէթ վարդապետն նստաւ պատրիարգ Ստամպօլու 1147 (1698), մայիսի 6, յետոյ Լտիրնէու։[78]

Վահրամ Անձրև վախճանի 550։

Վանականն, աշակերտ Դօշին Մխիթարայ. վախճանի Հայոց 700 (1251)։

Վանքն սուրբ Կարապետու սկսաւ շինիլ, որ կոչի Գլակայ վանք 310 Քրիստոսի։

Վարագայ սուրբ խաչն յայտնեցաւ Հայոց 114 (665)։

Վարդան Բարձրաբերթցին արար գիրգ ճարտասանական, աննման, խրթին ոճիւ շարադրեալ։

Վիրք բաժանեցան ի Հայոց, Հայոց 62 (613)։

Վրդանէս՝ որդի որբոյն Գրիգորի, նստի 345։

Տաճիկն եկ ի Հայս, Հայոց 88 (639)։[79]

Տէր Եսային Աւետիք վարդապետին վէքիլ եղև 1154 (1705), օգոստոսի 15։ Եւ վախճանեցաւ 1169 (1720), յունվարի Գ (3), գուլյու[մ]ճի Փափազ օղլու հաճի Պօղոսի հայրն։

Տղայ Գրիգորն նստի հայրապետ Հայոց 619 (1170) Հայոց 8ա

Թուին։[80]

Տպագրութիւնն գտեալ եղև յամին Քրիստոսի 1344։[81]

Քեօմիւրճու օղլու Երեմիայ Չէլէպին, եղբայր տէր Կոմիտասին, հանդեաւ 1144 (1695)։

Քիւլհանճը Մարտիրոս վարդապետն պատրիարգ եղև 1153 (1704), օգոստոսի 6։[82]

Օշին յետին նստի արքայ Հայոց 1320 Քրիստոսի Թուին։[83]

* * *

Սահակ վարդապետն, Նուիրակ սուրբ Էջմիածնի, աւարտեաց 1ր
զաստի կենաս իւր, ի Իզմիր քաղաքին, ՌՄԽԲ (1793) թուոյն Հայոց և ի սեպտեմբերի Ա (1)-ին։

Դեսպանն Ռուսաց եմուտ ի Յոտամպօլ մեծաւ համարձակութեամբ և բաղում զօրօք ի ՌՄԽԲ (1793) թուոյն Հայոց և ի սեպտեմբերի։[84]

Յարութիւն վարդապետն Թէքիրտաղցի, Նուիրակ սուրբ Երուսաղէմի, հանդեաւ յաստի տառապանաց ի Իզմիր քաղաքին ՌՄԽԲ (1793) թուին Հայոց և ի սեպտեմբերի ԺԸ (18)-ին։

Ի սոյնում ամի, այսինքն՝ 1242 (1793) թուոյն հանգեաւ վերատեսուչն սուրբ Երուսաղէմի Յովակիմ պատրիարգն։[85]

Ի թուին Հայոց ՌՄԽԳ (1794)-ին ապրիլի ԺԷ (17)-ին եղև անտանելի վիշտ ի Պուրսայ քաղաքն ազգիս Հայոց, զի մինչ սկսեալ էին շինել անդ եղեալ զեկեղեցին և մերձ ի վախճանին, չարացեալ տաճկաց եկեալ այրեցին զնորաշէն եկ[ե]ղ[ե]ցին և զտնօթսն աւար առին։ Եւ կկնի ի նոյն ամին տէրութիւնն Կոստանդնուպօլսոյ սուլթան Սէլիմն հրամայեաց շինել, զոր արարին իսկ։

Ի ՌՄԽԴ (1795) թուին սոյն թագաւորս հանդերձ ծերակուտիւքն հրամայեաց ի Ղումղափու եկեղեցւոյ որմոցն կից շինել մի կողմն ջրի խազնայ և միւս կողմն հավուզ, հանդերձ վեց արշն պատերօք, բայց զկնի ի ՌՄԽԵ (1796) թուին և ի փետրվարի ԺԱ (11), յորում աւուր և իւր փաշայն բազմութեամբ դիմեաց ի վերայ Տաղը կոչեցեալ աւաղակաց, հրապուրեալք[86] ի չարեաց, հրամայեցին քակել զշինեալ որմունսն խազնային և հավուզին։

Ի ՌՄԽԵ (1796) թուին և ի յօգոստոսի ԺԸ (18) ի Մարզը- 2ա
վան քաղաքի, ի մէջ նորաշէն՝ սուրբ Աստուածածնի վանիցն, հանգեաւ Գաղատացի կոչեցեալ Յոհաննէս վարդապետն, առաջնորդ նոյն ուխտին, որ երբեմն եղեալ էր պատրիարգ Կոստանդնուպօլսոյ։

Եւ ի ՌՄԽԵ (1796) Հայոց թուին, ի նոյեմբերի ԺԱ (11) նախնի պսակեալ եպիսկոպոս և վերատեսուչն Ամասիոյ և Մարզվանո[յ] Սեբաստացի Զէրքէզեան դիտնական և աստուածաբան վարդապետն, որ նստէր ի Յօրթա գիւղն Կոստանդինուպօլսոյ, յաջորդեաց զպսակեալ վիճակն իւր զԱմասիայ և զՄարզվան հրամանաւ Զաքարիայ պատրիարգի և յարգի իշխանաց հաճութեամբ։

Որոյ եկեալ ի անրան մարսվանցւոց բաղում նեղութիւնս կրելոյն զկնի ի ՌՄԽԶ (1797) թուին և ի հոկտեմբերի ԻԲ (22)-ին պատկառակօք զիմեաց ի յօրհնեալ քաղաքն Ամասիայ, յաւուր ուրբաթու, առ ի գտանել ապաքինութիւն ի հոգածութենէն մահայ ախտիցն, բայց տիրեալ անհանդուրժելի հոգողութեանն ցաւոց նմա, յետ երից աւուրց, ի լուսանալ երկուշաբաթի յութն և կէս ժամու, ի ԻԶ (26)-ըն հոկտեմբերի, զմաքրասուն և զսրբբանէր հոգին յանդորրու աւանդեաց ի ձեռն հրեշտակի բարւոյ, որպէս հաճոյ պատրիարգ առ պսակիչն ամենայն բարեաց անձանց և եղաւ պատուական մարմին նորա զկնի 34 ժամու, յերեքշաբթի ի Ցամասիայ ի սուրբ Աստուածածնի գաւթի շիրիմսն մերձ այլում Յոհաննու եպիսկոպոսի և Կարապետ վկայի. մինչ զի ամենայն ժողովուրդք ի թաղումն || եղեալք ապշութեամբ 2բ
փառս ետուն աստուծոյ, սակս երկուց պատճառաց մի, որ պատւական մարմին իւր զկնի 34 ժամու փոխանակ նեխութեանն, անուշահոտ բուրմամբ զմայլեցոյց զբազմախումբ ամբոխն և երեսք նորա պայծառացեալ փայլէր և իբր կենդանի գնէր ծիծաղախիտ ի դագաղի: Եւ երկրորդ՝ այնմ աւուր բացան երկնից սահանք և լուծան քաղցրատեղաց անձրևս, որ երկ ամիս յառաջ երաշտութեամբ ծարաւէր երկիր և էր ժամանակ սերմանելոյ, որոց ամենեցու ինքնին ականատես և իմով ձեռամբ քահանայական օծմամբ զրօշմօղ եղէ, յետնեալ ծառայս նորին սրբազնութեանն Մանուէլ որբացեալ Սեակիրս և յետոյ եթե հաճեսցի տէր սակաւուք և զվարուցն յայլուր ասացից սոյն երանելոյս:

Ի ՌՄԽԶ (1797) թուին և ի հոկտեմբերի ԻԶ (26)-ին քա- 8բ
ջաքարոզ և բանիբուն Սեբաստացի Յոհաննէս արքեպիսկոպոսն, ի Ցամասիա քաղաքին, բարի մահուամբ հանգեաւ ի Քրիստոս, յոյսն բնաւ ընտրելոց:

Ի ՌՄԽԸ (1799) թուին և ի մարտի ԺԱ (11)-ին Կոստանդինուպօլսոյ պատրիարգ Զաքարիա վարդապետն հանգեաւ առ տէր.[87]

Եւ ի սոյն ամի և մարտ ամսոյ ԺԵ (15)-ին յաստուծոյ ընտրեալ քաղցրաբարոյ Դանիէլ գիտնական արքեպիսկոպոսն համայնից հաճութեամբ կարգեցաւ պատրիարգ ի Կոստանդնուպօլիս ամենայն Հայոց.[88]

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Աբրահամ Բ. Մշեցի (կոչվել է նաև Խոշաբեցի), Մշու Ս. Կարապետի վանքի առաջնորդն էր։ Կաթողիկոս օծվել է 1730 թ. «զատկին մոտերը» («Ազգապատում», էջ 2873), մահացել է 1734 թ. նոյեմբերի 11-ին։ Հետաքրքիր է, որ կոչվել է Բաղիշեցի, որովհետև նման վկայություն չունենք։

2. Աբրահամ Գ. Կրետացի կաթողիկոս էջմիածնի՝ 1734 թ. նոյեմբերի 14-ից մինչև մահը՝ 1734 թ. ապրիլի 18-ին («Ազգապատում», էջ 2883, 2912)։

3. Աղեքսանդր Ա. Ջուղայեցի կաթողիկոս Էջմիածնի 1706—1714 թ. թ.։

4. Բնագրում տարեթիվը բաց է թողնված։ Խոսքը վերաբերում է Աղեքսանդր Բ. Բյուզանդացուն (կոչվել է նաև Պոլսեցի, մականվամբ Քարաքաշ) Էջմիածնում կաթողիկոս օծվել է 1754 թ .մարտի 6-ին և մահացել է 1755 թ. նոյեմբերի 11-ին («Ազգապատում», էջ 2985)։

5. «Լմնայ» բառի տակ, հեղինակը ծածկագիր ձևով տվել է Ամիրդովլաթ Ամասիացու բժշկական գրքերի ավարտման տարեթիվը. այսպես՝ Լ (30) + Մ (200) + Ն (400) + Ա (1) + + Յ (30)=941 + 551=1482։ Ծածկագիրը ժամանակագրության հեղինակը վերցրել է Ամիրտովլաթի չափածոյից։ Նմուշի համար բերում ենք սկզբի և վերջինիս քառյակները.

«Փառք քեզ տէր և արարիչ, մեզ ողորմեա,
Որ տուող ես մարդկային միտք և ըզգայ...
Գրեցի, կատարեցի բան զինչ որ կայ՝
Ի բառից բժշկութեան զինչ որ գըտա.
. . . . . . . . ,
Գծողին և շինողին՝ ով որ կարդա՝
Ողորմի Քրիստոս որ ասէ հայր մեղա,
Որ ի բանս այլ պակաս իրք չի մնա.
Փառք քեզ, տէր, հայոց թվական ԼՄՆԱՅ»։ (Տես՝ „A. Catalogue of the Armenian Manuscripts in the British Museum“ թ. 317):

6. Եթե խոսքը վերաբերում է սելջուկների զորավար Արփ-Արսլանի կողմից Անի գրավմանը, ապա այն տեղի է ունեցել ըստ Մ. Ուռհայեցու հայոց ՇԺԳ (1064) թվին («Ժամանակագրութիւն», էջ 144—150), իսկ Ս. Անեցու ՇԺԴ (1065) «Ի տօնի Տիրամօրն յաւուր երկուշաբթոյ», (էջ 112) այսինքն՝ 1065 թ. օգոստոսի 15-ին («Ազգապատում», էջ 1264)։

7. Հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 670։

8. Աստվածատուր Ա Համատանցի կաթողիկոս էջմիածնի 1715—1725 թ. թ.։

9. Հմմտ. Մ. Խորենացւոյ «Պատմութիւն հայոց», գիրք Բ, գլ. ՂԱ։

10. Արիստոտելը մահացել է 323 թ. (Ն. մ. թ.)։

11. Հռոմեական կայսր Թեոդորոս Մեծի (383—395 թ. թ.) որդիները։ Արկադիոսը թագավորել է Հռոմեական կայսրության արևելյան բաժնում 395—408 թ. թ., իսկ Հոնորիոսը արևմտյան բաժնում 395—423 թ. թ.։

12. Խոսքը վերաբերում է Կ. Պոլսի պատրիարք Ավետիք Եվդոկիացուն։ Կարինի առաջնորդն էր և կաթոլիկության կատաղի հակառակորդ։ Կ. Պոլսի պատրիարք դարձավ 1702 թ., այստեղ էլ եռանդուն պայքար մղեց կաթոլիկների դեմ, որի հետևանքով Կ. Պոլսի ֆրանսիական դեսպան Ֆերիոլը թշնամացավ նրա հետ։ Ֆերիոլին հաջողվում է 1703 թ. Ավետիքին աքսորել տալ Ասորիք։ Մանրամասնությունները տես «Ազգապատում», էջ 2679—2681, 2704—2708, 2711—2713, 2721—2744, 2778—2788։ Չամչեան «Պատմութիւն Հայոց», հ. Գ, էջ 732—748)։

13. Խոսքը վերաբերում է արքեպիսկոպոս Համթեցուն, որը Կ. Պոլսում Ավետիք Եվդոկիացու 1703 թ. գահընկեցությունից հետո դարձավ պատրիարք, բայց մեկ տարի հետո՝ 1704 թ. մահացավ։

*14. Բարսեղ Կեսարացի (331—379 թ. թ.) քրիստոնեության նշանավոր սյուներից, նրա բազմաթիվ գրվածքներից թարգմանել են հայերեն։*

*15. Գրիգոր Նյուսացի, Բարսեղ Կեսարացու կրտսեր եղբայրը. ապրել է շուրջ 330—394 թ. թ.։*

*16. Գրիգոր Աստվածաբան Նազիանզանցի, ծն. 328 թ., վախճանվել է 390 թ.։*

*17. Գագիկ Ա Բագրատունի, Աշոտ Ողորմածի որդին և Սմբատ Բ-ի եղբայրը. թագավորել է 989 թ., ըստ Ասողիկի «Եւ իսկ և իսկ զկնի Սմբատայ, ի նոյն օր՝ թագաւորեաց Գագիկ եղբայր նորա ի ՆԼԸ (989) թուականին, յաւուրս ձմերայնոյ, ի քաղաքին Անւոյ», (Հանդես Գ, գլ. Լ)։*

*18. Գևորգ վարդապետ Լամբրոնացի կամ Սկևռացի, աչքի ընկնող մատենագիրներից։ Մահվան ժամանակն իմանում ենք իր աշակերտ Մովսեսից. «Ճշմարտութեամբ քաղաքավարեալ ի կենցաղումս՝ հանդեաւ խաղաղութեամբ ի Քրիստոս յամսեանն յունվարի, որ օր մետասան էր ամսոյն յաւուր չորեքշաբթի» (1300 թ.) («Սիսուան», էջ 104)։ Հմմտ. Ս. Անեցի, էջ 155։ Սակայն մեր հաշվումներով 1300 թ. հունվարի 11-ը կլինի երեքշաբթի։*

*19. Օրմանյանը Գյուտի կաթողիկոսության տարիները նշում է 461 թ. մինչև 478 թ. («Ազգապատում», էջ 418, 434)։*

*20. Իմա՝ Մարկ Ավրելիանոս, իշխել է 270—275 թ. թ.։*

*21. Գրիգոր Նարեկացին ծնվել է 951 թ. (?) և մահացել 1003 թ. հոկտեմբերի 7-ին («Ազգապատում», էջ 1180, 1181)։*

*22. Գրիգոր Վկայասերը Գրիգոր Մագիստրոսի որդին էր, Հայոց կաթողիկոս եղել է 1066—1105 թ. թ.։*

*23. Գրիգորիս քորեպիսկոպոս Արշարունեաց Մանազկերտի ժողովի (726 թ.) մասնակից։ Ընթերցուածոց մեկնութիւնը գրել է Ներսեհ Կամսարականի խնդրանոք։*

*24. Ներսես Շնորհալու ավագ եղբայրը, կոչել են նաև Փոքր Վկայասեր, զանազան սրբերի վկայությունները թարգմանելու համար։ Կաթողիկոս է եղել 1113—1166 թ. թ.։*

*25. Ինչպես հայտնի է, Եղիազար Այնթափցին Երուսաղեմի պատրիարք եղել է 1649—1650 թ. թ., իսկ Կ. Պոլսի պատրիարք՝ 1651—1652 թ. թ. («Ազգապատում», էջ 2456, 2474)։*

*26. Բնագրում սույն տողի դիմաց աջ լուսանցքում, մեկ ուրիշը հետագայում ավելացրել է, «Ըստ Չամչյանի կամ 273 կամ 277»։*

*27. Եթե խոսքը վերաբերում է Գագիկ Բ-ի ժամանակ Անիի հանձնմանը Մոնոմախին, ապա այն տեղի է ունեցել 1045 թ. գարնանը, որի առթիվ Սմբատը գրում է. «Աստանօր բարձաւ թագաւորութիւն Հայոց, և անկաւ տէրութիւն ազգին Բագրատունեաց» (էջ 63)։ Իսկ Մ. Ուռհայեցին Գագիկ Բ-ի 1079 թ. սպանության առթիվ գրում է. «Եւ աստանօր գագարեալ եղև թագաւարութիւնն ի տանէն Հայոց և յազգէն Բագրատունեաց» (էջ 220)։ Մինչդեռ Ս. Անեցին Ալփ-Արսլանի կողմից 1065 թ. Անիի գրավումը նշում է, որպես Բագրատունյաց թագավորության կործանում, ըստ երևույթին այսպես է մոտեցել նաև ժամանակագրության հեղինակը։*

*28. Կիլիկիայի հայկական թագավորության վախճանը համարվում է 1375 թ., երբ Լևոն վերջինը (Ե) չկարողանալով դիմադրել Եգիպտոսի և Հալեպի կուսակալի միացյալ ուժերի ճնշմանը, հաղթվեց և գերվեց։*

*29. Դվինի առաջին ժողովը տեղի է ունեցել 506 թ. («Ազգապատում», էջ 502), հմմտ. «Արարատ», 1908 թ., էջ 696։*

*30. Կարնո ժողովը, որի որոշումներին համաձայնվել էր Եզր կաթողիկոսը, տեղի է ունեցել 633 թ.։*

*31. Խոսքը վերաբերում է Ավետիք Եվդոկիացուն (տես ծանոթ. 12)։ Միքայել Խարբերդցին կարճ ժամանակով դարձավ Ավետիք Եվդոկիացու փոխանորդ, երբ վերջինս գտնվում էր աքսորում։*

*32. Հեղինակը նկատի ունի Գրիգոր Բ Վկայասեր կաթողիկոսից (1066—1105 թ. թ.) մինչև Գրիգոր Թ. Մուսաբեգյանցը (1439—1441 թ. թ.) եղած կաթողիկոսները, որոնց թիվն հավասար է 28-ի, սակայն տարիների հաշիվը կլինի ոչ թե 330, այլ 375 (1441—1065)։*

*33. Խոսքը վերաբերում է Կ. Պոլսի պատրիարք Գալուստ Ամասիացուն (Զեյթունցի), որի մականունը Կայծակ էր (հմմտ. «Ազգապատում», էջ 2695—2697, 2724—2726)։*

*34. Նույն ինքը Կարապետ Դ Ուլնեցի կաթողիկոս ամենայն Հայոց։*

*35. Հմմտ. XXV ժամանակագրություն։*

*36. Կոմիտաս Ա. Աղցեցի կաթողիկոս Հայոց 615—628 («Ազգապատում», էջ 660—677)։ Բա-*

*ցի «Կնիք հավատոյ»-ից գրել է «Անձինք նվիրեալք»-ը (Հովհոմյանց շարականը)։ (Այս մասին տես «Ազգապատում», էջ 670—672)։*

*37. Կոստանդին մեծի մահն ընդունված է նշել 337 թ.։ (Տես էջ 278, ծանոթ. 17)։ Հեղինակը դուցե նկատի ունի Կոստանդին IV-ին։*

*38. Կարապետ Բ Կեսարացի, ժողովուրդը կոչում է տէր Կրպո, հինգ անգամ խարդախությամբ դարձել է Կ. Պոլսի պատրիարք։ Հեղինակը նկատի ունի նրա առաջին անգամ պատրիարք դառնալը։*

*39. Ղազար Ջահկեցին կաթողիկոս եղել է 1737 թ. հուլիսից մինչև 1751 թ.։*

*40. Խոսքը վերաբերում է 451 թ. Վարդանանց պատերազմի մասնակից հոգևորականների աքսորավայրում նահատակությանը, սակայն այդ տեղի է ունեցել 454 թ. հուլիսի 25-ին («Ազգապատում», էջ 401)։*

*41. Հեղինակը նկատի ունի իսլամի հիմնադիր Մուհամմեդի գործունեության սկիզբը։*

*42. Համտ. «Արարատ», 1909 թ., էջ 179։*

*43. Տես ծանոթ. 20։*

*44. Մարտիրոս վարդապետ Ղրիմեցի կամ Կաֆայեցի, 17-րդ դարի նշանավոր տաղասաց, մահացել է 1683 թ. Եգիպտոսում։*

*45. Պետք է լինի Քյուլհանճի, սրա օծման մասին տես «Ազգապատում», էջ 2735—2737։*

*46. Խոսքը վերաբերում է Մելքիսեդեկ Գառնեցուն, էջմիածնի կաթողիկոս եղել է 1593 թ. մինչև 1626 թ., աթոռակից Դավիթ Դ. Վաղարշապատցուն։ էջմիածնի պարտքերը վճարելու նպատակով գնաց Կ. Պոլիս նյութական օժանդակություն խնդրելու, որտեղ 1599 թ. ընտրվեց պատրիարք։*

*47. Խոսքը վերաբերում է Մելիքսեթ վարդապետին, Երևանի Վժան գյուղից, Ամրդոլու վանքում աշակերտել է Ներսես վարդապետ Մոկացուն (Նաև Բեղլու), սովորել է Սյունյաց Հարանց մեծ անապատում, Լիմի անապատում։ Սրա մասին մանրամասն պատմում է Ա. Դավրիժեցին (էջ 395—401)։ Մելքիսեթի մահվան վկայությունը Ա. Դավրիժեցու մոտ նշված է ՌԶ (=1557), (էջ 401), որը բացահայտ (գուցե տպագրական) սխալ է։*

*48. Այս աքսորի մասին հիշում է Գր. Կամախեցու աշակերտ Մինասը, բավական մանրամասն (Ձեռ. № 7273, էջ 71բ)։ Այս դեպքը չափածո նկարագրել է նաև Հակոբ Ակնեցին, որի բանաստեղծությունը գտնվում է Ձեռ. № 1113, էջ 209բ։*

*49. Առավել ստույգ տեղեկություններով Ներսեսը մահացել է 373 թ.։*

*50. Խոսքը վերաբերում է Մեսրոպ Մաշտոցին, որը սակայն պաշտոնապես կաթողիկոս չի եղել, այլ «Սահակի ժամանակէն Վաղարշապատի մէջ անոր փոխանորդութիւնը կը վարէր...» («Ազգապատում», էջ 323), և որը մահացել է Սահակ Պարթևի մահից 6 ամիս հետո՝ 440 թ. փետրվարի 17-ին, Մ. Աբեղյան, «Հայոց հին գրականության պատմություն», հ. I, էջ 79։ Իսկ Լեոն նշում է 439 թ. փետրվարի 17-ին. «Հայոց պատմություն», հ. II., 1947, էջ 33։*

*51. Տես և համտ. «Ազգապատում», էջ 2639։*

*52. Մխիթար Քյուրդիստանցի (Սղերդցի) Կ. Պոլսում պատրիարք եղավ 1699 թ. հուլիսի 25-ից մինչև 1700 թ. դեկտեմբերի 4-ը։ («Ազգապատում», էջ 2694)։*

*53 Համտ. «Ազգապատում», էջ 2977—2982։*

*54. Խոսքը վերաբերում է Կ. Պոլսի պատրիարք Հակոբ Նալյանին 1741—1749 թ. թ.։*

*55. Յոհան Մանդակունին կաթողիկոս եղել է 478—490 թ. թ.։*

*56. Մանազկերտի ժողովը տեղի է ունեցել 726 թ.։*

*57. Հովհաննես վարդապետ Գառնեցի։ Մկրտել է բազմաթիվ մահմեդականների։ Վկայությունը հավանաբար վերաբերում է հենց սրան։*

*58. Հով. Սարկավագը մահացել է 1129 թ.։ Տես I ժամանակագրություն, էջ 25, 28, ծանոթ. 13։*

*59. Հովհաննես Զմյուռնացի, Կ. Պոլսի պատրիարք ընտրվել է 1707 թ. սեպտեմբերի 26-ին։*

*60. Համտ. «Ազգապատում», էջ 2795—2796։*

*61. Խոսքը վերաբերում է Հովհաննես Կոլոտին, Կ. Պոլսի պատրիարք։*

*62. Համտ. «Մ. Նաղաշ և իր տաղերը», Կ. Կոստանեանց, Վաղարշապատ, 1898, էջ 11—12։*

*63. Խոսքը վերաբերում է Հովհաննու Ավետարանի մեկնությանը։*

*64. Աստվածատուր Սասնեցի։ Մականունը Նարին (պրսկ. «նուրբ» բառից)։ Սա կաթողիկոս 1691—1693 թ. թ.։ («Ազգապատում», էջ 2646—2648, 2665)։*

*65. Ներսես Պարթևի կաթողիկոս օծվելն ընդունված է նշել 353 թ.։ Մակվարան առաջարկում է 351 թ.* („Untersuchungen zur Geschicht von Eran" Heft I. Gottingen, 1876. s. 223) *մի այլ տեղ՝ 356 թ., ավելի շուտ 355 թ.* („Die Entstchung der Armenischen Bistümer" Roma, 1932. s. 220):

*66. Ներսես Շնորհալին կաթողիկոս եղել է 1166 թ.։*

*67. Ներսես Պալատցին Սսի կաթողիկոս Մաթևոսի (Սարի մականունով) աշակերտն էր, հաջորդեց Գալուստ Կայծակին 1704 թ. ապրիլի 22-ից։*

*68. Խոսքը վերաբերում է Ներսես Պալատցու (ծանոթ. 67) երկրորդ անգամ պատրիարք լինելուն։*

*69. Հովհաննես Նոխութճի («Սիսեռակեր») Երուսաղեմի պատրիարք եղավ 1685—1687 թթ., երկրորդ անգամ պատրիարք լինում է 1691 թ., մահացել է 1697 թ. («Ազգապատում», էջ 2639)։*

*70. Ն. Շնորհալին մահացել է 1173 թ. օգոստոսի 16-ին հինգշաբթի։ Տես III ժամանակագրություն, էջ 92, ծանոթ. 24։*

*71. Տես և հմմտ. XIV ժամանակագրություն, էջ 202։*

*72. Պրոխորոն Ռուսչուքցի (Բուլղարիա), Երուսաղեմի միաբան, բռնությամբ տիրացավ պատրիարքության դահին 1749 թ. մարտի 26-ին։ Հաջորդեց Հակոբ Նալյանին, բայց շուտով՝ 1749 թ. ապրիլի 2-ին, սուլթանի միջամտությամբ աքսորեցին։ Հաջորդեց Մինաս Ակնեցին։ (Տես «Ազգապատում», էջ 2968—2969)։*

*73. Աղեքսանդր Բյուզանդացու մահից հետո էջմիածնի միաբանության որոշմամբ կաթողիկոս հռչակվեց Սահակ Ահագինը (կամ Կեղեցի), Հով. Կոլոտի աշակերտներից։ («Ազգապատում», էջ 2986—2988)։*

*74. Մատթեոս Կեսարացի, մականունը Սարը (Շեկ) Կ. Պոլսի պատրիարք եղել է 1692—1694 թ. թ.։ Սսի կաթողիկոս ընտրվել է 1694 թ.։*

*75. Տես ծանոթ. 45։*

*76. Օրմանյանի հաշվումներով Սահակ Պարթևը կաթողիկոս եղել է 389—438 թ. թ. («Ազգապատում», էջ 256)։*

*77. Խոսքը վերաբերում է Սահակ վարդապետ Ապուչեխցու Կ. Պոլսի պատրիարք լինելուն, որը առաջին անգամ հաջորդեց Միքայել քահանայ Խարբերդցուն 1707 թ. հունվարի 22-ին, իսկ երկրորդ անգամ՝ Հովհ. Զմյուռնացուն (Իզմիրցուն) 1708 թ. դեկտեմբերի 30-ին։ Հմմտ. «Ազգապատում», էջ 2753, 2760։*

*78. Հմմտ. «Ազգապատում», էջ 2683։*

*79. Նկատի ունի արաբների արշավանքը. տես և հմմտ. Հ. Մանանդյան «Մանր հետազոտություններ», Երևան, 1932 թ., էջ 23—28։*

*80. Գրիգոր Դ. Տղա, հաջորդել է Ն. Շնորհալուն։ Կաթողիկոս եղել է 1173—1193 թ. թ.։*

*81. Տես էջ 279, ծանոթ. 33։*

*82. Մեզ անհասկանալի պատճառով Մարտիրոս Երզնկացի (Ջյուլհանճի), պատրիարք լինելը կրկնված է մի դեպքում 1706 թ. ներքո, մյուս դեպքում 1704 թ.։*

*83. Ինչպես հայտնի է, Օշին թագավորը մահացել է 1320 թ., իսկ թագավոր եղել է 1308 թ.։*

*84. Բնագրում ամսաթիվը բաց է թողնված։*

*85. Խոսքը վերաբերում է Հովակիմ Քանաքեռցուն, Երուսաղեմի պատրիարք 1657—1793 թ. թ.։*

*66. Բնագրում «հրապարեալք» ձևով։*

*87. Զաքարիա Կաղզվանցի, Կ. Պոլսի պատրիարք 1773—1781 թ. թ.։*

*88. Դանիել Սուրմառեցի, հաջորդեց Զաքարիա Կաղզվանցուն, որպես պատրիարք Կ. Պոլսում մնաց մինչև 1800 թ. և ցարական կառավարության հրահանգով 1800 թ. աքսորվեց։ 1802 թ. Բագրևանդում օծվեց էջմիածնի կաթողիկոս, իսկ մինչ այդ կաթողիկոսական գահը ձեռք էր բերել Դավիթ Ե-ը։ Այստեղից բացվեց Դավիթ-Դանիելյան վեճը, որը տևեց մի քանի տարի։*

## XXV

## ԱՆԱՆՈՒՆ ՎԱՆԵՑՈՒ ՏԱՐԵԳՐՈՒԹՅՈՒՆԸ (XVIII Դ.)

*Այս տարեգրությունը հրատարակել է Գ. Սրվանձտյանը,[1] որի գրած ներածականից երևում է, որ բնագիրն արտագրվել է Վանում գտնվող ձեռագրից։ Տարեգրության երկու ընդօրինակությունները գտնվելիս են եղել Սրվանձտյանի ժամանակակիցներ՝ Երեմիա եպիսկոպոսի և Յով. Քոլոզ վարժապետի մոտ և որ վերջինս սույն տարեգրության իր ունեցած տարբերակը շարունակել է, հարստացնելով այն ժամանակակից անցքերի գրանցումով։[2]*

*Ներկա տարեգրությունը իր կառուցվածքի տեսակետից կարելի է բաժանել երեք հատվածի. առաջին հատվածում ընդգրկված նյութերը վերաբերում են հայ ժողովրդի պատմության միջին դարերին։ Սույն հատվածը սկսվում է 1016 թ. Վասպուրականի թագավոր Սենեքերիմի և յուրայինների դեպի Սեբաստիա գաղթելու վկայությամբ և վերջանում 1651 թվականին Վարագի աթոռի թալանման և գերի տարած սուրբ Նշանի 1655 թ. ազատման վկայությամբ։*

*Երկրորդ հատվածն ունի «Այս են փաշայք, որ ի Վան եկին» խորագիրը։ Փաշաների կարգը հիշված է տաճկերեն թվանշաններով։ Երրորդ հատվածը խորագիր չունի և կազմում է երկրորդ հատվածի անմիջական շարունակությունը։ Այն սկսվում է նրանով, թե ինչպես Վանի փաշա Օմարը (տարեգրության երկրորդ հատվածում հիշվող վերջին փաշան) 1684 թ. սպանում է Վանի հարուստ թուրքերից Նալբանդ օղլի Նադիրին և Ղասր օղլի Իբրահիմին, իսկ վերջանում է 1781 թ. դեկտեմբերի 27-ին Թավրիզում, Սալմաստում, Վանում և այլուր տեղի ունեցած երկրաշարժի վկայությամբ։*

*Ժամանակագրության առաջին հատվածն աղբյուրագիտական տեսակետից առանձին նորություն չի պարունակում, որովհետև այդ տվյալները զանազան սկզբնաղբյուրներից հավաքած վկայություններ են, որոնք մեզ արդեն հայտնի են ավելի մանրամասն, ժամանակակից կամ հիշատակված դեպքերին ժամանակով ավելի մոտ ապրող հեղինակների սկզբնաղբյուր աշխատություններից (Մ. Ուռհայեցի «Ժամանակագրութիւնք», Թ. Մեծոփեցի «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց», Ա. Դավրիժեցի «Պատմութիւն» և այլն)։*

*Երկրորդ հատվածը, որը բովանդակում է գերազանցապես Վանում իշխող փաշաների հաջորդական կարգը, սկսվում է XVI դարի կեսից և հասնում մին-*

[1] «Մանանայ» ժողովեաց և ի լոյս էած Գ. վ. Սրուանձտեանց, Կ. Պոլիս, 1876, էջ 340—398։

[2] Նույն տեղ, էջ 339—340։

չն XVII դարի 80-ական թվականները։ Վանում իշխող փաշաների վերոհիշյալ կարգը ոչ թե առաջարկվող ժամանակագրության հեղինակն է կազմել, այլ ամենայն հավանականությամբ նա այն վերցրել է նախօրոք ուրիշի կողմից կազմած մի վավերագրից և կցել իր ժամանակագրությանը։ Այդպիսի ենթադրության հիմք կարող է տալ նման, մի ուրիշ վավերագրի գոյությունը, որին հանդիպում ենք «Դիւան Հայոց պատմութեան» մեջ,[1] «Յաջորդութիւնք Վանայ բդեշխից» խորագրով։ Սակայն երկու բնագրերի համեմատությունը ցույց է տալիս, որ նրանք որոշ չափով տարբերվում են իրարից։

Երրորդ հատվածը գրանցված դեպքերին ականատես և ժամանակակից մարդու վկայություններ են։ Սակայն հատվածը ընդգրկում է 97 տարվա (1684—1781 թ. թ.) անցուդարձ։ Հեղինակը խոսելով 1687 թ. տեղի ունեցած մի դեպքի մասին, գրում է, որ ինքն այդ դեպքին ականատես է եղել. «Այլ և ոչխար ևս ծնաւ (թվում է 1687 թ. տեղի ունեցած դեպքերը— Վ. Հ.), որոյ գառն էր արու և էգ ի միասին, որ և մեք աչօք տեսաք զգառն»: (Ընդգծումը մերն է— Վ. Հ.): Եվ որովհետև ժամանակագրության երրորդ հատվածն էլ սկսվում է 1684 թվին, ուստի դժվար չէ եզրակացնել, որ հեղինակը ժամանակակից է նաև իր հիշատակած առաջին դեպքերին։

Տարեգրության վերջին վկայությունը վերաբերում է 1781 թ. դեկտեմբերի 27-ին Թավրիզում, Սալմաստում, Վանում և այլուր տեղի ունեցած երկրաշարժին, որի սարսափը ապրել է ինքը հեղինակը։

Եթե նկատի ունենանք այն հանգամանքը, որ հեղինակը ժամանակակից է և ականատես տարեգրության երրորդ հատվածի սկզբի և վերջի վկայություններին, ապա կարող ենք ենթադրել, որ տարեգրության երրորդ հատվածը կազմել է մեկ մարդ, արձանագրելով այնտեղ իր ժամանակակից դեպքերը։ Եթե ճիշտ է այս, նշանակում է ժամանակագրության վերջին վկայության ժամանակ հեղինակն առնվազն 110 տարին անցած անձնավորություն պետք է եղած լիներ, իսկ թե դրանից հետո էլ նա ինչքան է ապրել, մեզ ոչինչ հայտնի չէ։ Սակայն ավելի հնարավոր կարող է լինել այն ենթադրությունը, որ ժամանակագրության երրորդ մասը կազմել են տարբեր անձնավորություններ, որոնք իրար շարունակել են։ Թերևս սրանով բացատրվի այն, որ հեղինակները ժամանակակից կամ ականատես են եղել երրորդ հատվածում ընդգրկված 97 տարիներում կատարված դեպքերին։

Սույն տարեգրության երրորդ հատվածի մի քանի տեղեկությունները գտնում ենք նաև «Անցք Վասպուրական աշխարհի» ժամանակագրության[2] համապատասխան վկայությունների մեջ։ Վերջինիս հեղինակը ժամանակակից է եղել իր նկարագրած դեպքերին, սկսած 1669 թվականից։ Այդ երևում է նրանից, որ եթե մինչև այդ եղած վկայությունները տրվում են բավական համառոտ, ապա դրանից հետո բերվածները՝ բավական մանրամասն են։ Բացի դրանից 1693 թվականի տակ հեղինակը գրում է. «Հոկտեմբերի 9. մայրս մեռաւ»։[3]

«Անցք Վասպուրական աշխարհի» և առաջարկվող տարեգրության համապատասխան վկայությունների համադրությունը և քննությունը մեզ բերեց այն եզրակացության, որ վերոհիշյալ երկու բնագրերի հեղինակները իրարից

[1] Գիրք Ժ. էջ 203—206։
[2] «Դիւան Հայոց պատմութեան» Ժ, էջ 103—122։
[3] Նույն տեղ, էջ 115։

անկախ են կրանցել իրենց ժամանակակից դեպքերը, թեև հնարավոր է, որ մեկը ծանոթ է եղել մյուսի գործին։ Այս եզրակացությանն ենք բերում հետևյալ համեմատությունները.

*«Անցք Վասպուրական աշխարհի»*

1. էջ 113 «Ի սոյն թուին (ՌՃԼԶ 1687թ. Վ. Հ.) ի գեօղն Արտամետ աւու. ձագն՝ որ. ղեռես ելաւ ի հաւկթէն՝ իսկոյն կանգնեալ խօսեցաւ երեք անգամ և այլքն ի մէջ ձուին էին և ձայն տային։ Եւ ի սոյն աւուրսն աղայ մի ի յարգանդի մօրն ելաց ի նոյն գեօղն որոյ ձայն բազումք լուան։ Եւ դարձեալ կին մի ծնաւ չորս տղայս արու, որոյ երկուցունցն ոչ դայր նառոյ անգի, այլ միարերթ էր, որք ընդ ծննանելն մեռան, և դարձեալ ի նոյն գեօղն ոչխար մի ծնաւ և գառն էր արու և էգ ի միասին»։

2. էջ 109. «Ի սոյն թուին (ՌՃԼԳ 1684 թ. Վ. Հ.) ի քաղաքն Վան, այր մի շինէր զտուն իւր, և ի փորել զերկիր եսես զի ելանէր սնդիկ յերկրէ, որ և ժողովեալ յամանս ինչ, և այս համբաւ լուր եղև ի քաղաքն ամենայն, մինչ զի փաշան և զատաւորն ես գնացին ամենայն զօրօքն իւրեանց ի տեղին տեսանել զիրն. և զի էր երեկոյ՝ հարին զվրան ի վերայ տեղոյն, և ձգեցին ի վերայ նորա կապերս և զչորս կողմն մատնեհարեցին, և թողին պահապանս անդ մինչև յառաւօտն. և ի վաղիւն կրկին ես գնացին անդ բոլոր քաղաքն ամենայն և փաշայն և զատաւորն փողօք և թմբկօք և բացեալ տեսին զի ոչ ինչ էր»։

*Առաջարկվող բնագիր.*

1. «Նաև ի սոյն աւուրս (ՌՃԼԶ 1687 թ. Վ. Հ.) Ի գիւղն Արտամետ՝ հաւու ձագս որն որ ել ի ձուէն, Գ անգամ խօսեցաւ. և այլք ի մէջ ձուին ձայնս հանէին, և որք շուրջ կային լսէին։ Այլ ի նոյն գիւղ՝ աղայ մի յարգանդ մօր ելաց, որոյ ձայնն բազումք լուան։ Եւ կին մի ծնաւ Դ. տղայս։ Այլ և ոչխար ես ծնաւ, որոյ զառն էր արու և էգ ի միասին, որ և մեք աչօք տեսաք զզառն»։

2. «Եւ ի սոյն ամի (ՌՃԼԳ 1684 թ. Վ. Հ.) քրիստոնեայ ոմն ի յայգին շինէր զտուն իւր, և ի փորելն ել սնդիկ ինչ ժիպակ (սնդիկ), և յոյժ ուրախացան, և նոյն ժամայն հասաւ լուրն ի քաղաք. և ելին ամենեքեան մեծամեծք և փոքունք և իշխան և զատաւոր փողօվք և թմբկօք, և գնացին ի տեսանել, զի համարեցան Մազան լինել, և ահա ցամաքեալ էր»։

Վերևում բերված համապատասխան օրինակների մեջ նկատվող տարբերություններից բացի, երկու բնագրերի միևնույն տարեթվի տակ արձանագրված են բոլորովին տարբեր եղելություններ, այսպես՝ «Անցք Վասպուրական աշխարհի» ժամանակագրության մեջ 1684 թվականի տակ արձանագրված են նաև հոկտեմբերի 17-ի երեկոյան Արտամետում տեղի ունեցած հորդ անձրևը և սրան հաջորդող հրաշքը, ինչպես նաև Ոստան քաղաքի մոլլայի մահմեդական հավատից հրաժարման, վերջինիս չարչարման և այրման վկայությունները,[1] մինչդեռ այդպիսիք չենք գտնում առաջարկվող տարեգրության վկայությունների շարքում, կամ վերջինիս մեջ 1687 թվականի տակ, ուր այլ և այլ վկայությունների թվում արձանագրված է նաև հետևյալ փաստը, որը չենք գտնում «Անցք Վասպուրական աշխարհի» մեջ. «Ի սոյն թուոջս եկն ի քաղաքս Վան պատանի մի Ի ամեայ, որոյ ոչ գոյր երկու ձեռն ընաւ, որ այնպէս ծնեալ էր ի մօրէն, և զհաց ոտով ուտէր. սա էր ի Խազնայ, ազգաւ հայ»։

Բերված փաստերը, որոնք կազմում են եղածի մի մասը, կարծում ենք

1 Նույն տեղը, էջ 109—110։

բավական է ցույց տալու, որ «Անցք Վասպուրական աշխարհի» ժամանակագրությունը, որպես սկզբնաղբյուր չի ծառայել առաջարկվող ժամանակագրության համար։

«Դիւան Հայոց պատմութեան» Ժ հատորում գտնվում է նաև Հարություն Խալֆայանի ժամանակագրությունը (էջ 123—152)։ Վերջինիս բազմաթիվ վկայությունները բառացիորեն գտնում ենք առաջարկվող տարեգրության առաջին և երրորդ հատվածներում, այդ նույնությունը (և ոչ միայն նմանությունը) կարող է նկատել երկու բնագրերի ամեն մի համադրող։

Եվ որովհետև Հ. Խալֆայանի ժամանակագրությունը ամբողջությամբ իրեն չի պատկանում, այլ մի անհայտ հեղինակի (գուցե Հ. Խալֆայանի հորը), որի պատրաստի գործը շարունակել է Հ. Խալֆայանը,[1] թերևս կարելի է ենթադրել, որ այդ երկու բնագրերի համապատասխան հատվածները ծագել են միևնույն բնագրից։ Իսկ Փիրղալեմյանի «Նշխարք պատմութեան Հայոց» անտիպ աշխատության 557—713 էջերում գտնվող ժամանակագրությունը,[2] կարծում ենք առաջարկվող տարեգրության որևէ տարբերակից է առաջ եկել։

Առաջարկվող տարեգրությունը XVII դարի վերջերում և XVIII դարում տեղի ունեցած դեպքերին ժամանակակից և շատ դեպքերի ականատես (ժամանակագրության մեջ հիշվում է այդպիսի 13 դեպք) անձնավորության վկայություններ են, որոնց հավաստիությունը հաստատվում է նաև վանեցի ուրիշ ժամանակագիրների տվյալներով։[3] Վերոհիշյալ ժամանակագրության վկայությունները գերազանցապես վերաբերում են Վանի և շրջակայքի փաշաների կամայականություններին, ապստամբություններին, կազմակերպված սպանություններին և այլ մասնավոր ու մանր դեպքերի։ Սակայն հետաքրքիր է 1702 թ. ապրիլի 17-ին Վանի բնակչության կողմից քաղաքագլուխ (ռես) Թոխմախ Միրաքի սպանության փաստը։ Դժբախտաբար ժամանակագիրը սպանության պատճառը մանրամասնությամբ չի հաղորդում։ Այդ մասին նա գրում է. «... և յայնմ յաւուր (ապրիլի 17-ին— Վ. Հ.) քաղաքացի ռիաթն՝ որք կարի նեղացեալ էին ի Թօխմախ Միրաքէն, որ էր ռէս քաղաքին, խորհրդով[ն

---

[1] Դրանում համոզվելու համար բավական է նկատի ունենանք Հ. Խալֆայանի ժամանակագրության մեջ հիշված հետևյալ փաստերը. «Ի սոյն թուին (1765 Վ. Հ.) մայիս 26, ես գնացի Օրտուվար» («Դիւան Հայոց պատմութեան» գիրք Ժ, էջ 139)։

«ՌՄԺ 1761 նոյեմբեր 12. Ֆէզուլահ փաշայն եկաւ։ Ու հ եղկելոյս դի լուսահոգի եղբայրն իմ մեռաւ» (Նույն տեղ, էջ 138)։

Սույն վկայությունները Հ. Խալֆայանը չէր կարող գրել, որովհետև նա ծնվել է 1775 թ. (Նույն տեղ, էջ ԽԵ)։ Հետևապես Հ. Խալֆայանի գրչին պատկանում է 1775 թ. հետո տեղի ունեցած անցքերի արձանագրումը։

[2] Ձեռ. № 4515։ Սույն ժամանակագրությունը ոչ թե ամբողջական բնագիր է, այլ վերջինիս յուրաքանչյուր վկայությունը գրված է համապատասխան տարեթվերի հիշատակարաններին զուգընթաց։ Սույն ժամանակագրության մասին Փիրղալեմյանը գրում է. «Ա.. ես եղեալ վանեցի տարեգրաց կողմանէ մնացեալ պատմական հատուածս նշանակեմ ի ներքոյ ճիշտ տարեգրութեամբ, քաղելով զայնս ի մի այլ անծանօթ աարեգրէ, զորոյ գաղափարն ետ ինձ մեր մտերիմ բարեկամն պարոն Սեպրակ Տէր Սարգիսեանց» (Ձեռ. № 4515, էջ 577)։

Ինչպես տեսնում ենք «անծանոթ տարեգրությունը» Փիրղալեմյանին հայտնի «Անցք Վասպուրական աշխարհի», ժամանակագրությունը չէ։

[3] Հմմտ. «Անցք Վասպուրական աշխարհի», «Յաջորդութիւնք Վանայ բդեշխից», Գրիգոր Դպիր Վարագեցի և այլն։

*ղօլվաթաւորացն] ժողովեցան միաբան և գնացեալ ի յայդի Թօխմախին, և զի դուռն փակեալ էր, ոմանք ի պատէն իջին զդուռն բացին, և ամբոխն ամենայն մտեալ ի տունն որոնէր բռնութեամբ. և գտին զնա, զի թագուցեալ էր ի բոյն հաւուց, և բերեալ արտաքս անարգանօք հարկանէին...»։ Ի վերջո սպանում են։*

*Ինչպես դժվար չէ նկատել, քաղաքի բնակչությունը նեղվել էր Թոխմախ Միրաքից, այդ փաստը ցույց է տալիս, որ գործ ունենք սոցիալական մի երևույթի հետ։ Ցավոք սրտի «նեղացեալ էին» խոսքերը հեղինակը չի կոնկրետացնում։ Այդ պատճառով որոշ հարցեր մեզ մութն են մնում և հնարավոր չէ պարզել քաղաքի բնակչության տարբեր շերտերի փոխհարաբերությունն այդ օրերին։*

*Բնագրի ներկա հրատարակության մեջ ուղղանկյուն փակագծերում տրըված լրացումները, որոնք բացակայում են «Մանանայի» մեջ, կատարել ենք Փիրղալեմյանի ունեցած վերոհիշյալ բնագրի հիման վրա։*

XXV

Թիւ Հայոց

ԴՃԿԵ (1016) Սենեքարիմ արքայն Վասպուրականի ետ 340
զՎան ի Վասիլ թագաւորն, և էառ զՍուվազ փոխանակ նորա. և ինքն գնացեալ անդ հինգ որդւովք։[1]

ԵՃԱ (1052) տէր Պետրոս կաթողիկոսն ի ժամանակս Վասիլ կայսեր արար զՋրօրհնէք, և արգել զգետն ի Տրապիզոն քաղաքի։[2]

ԵՃԺԴ (1065) բարձաւ թագաւորութիւնն Անւոյ, որ էր վերջին թագաւորն Յօհաննէս։[3]

ԶՃԿԲ (1213) վախճանեցաւ Մխիթար վարդապետն, մականուն Գօշ կոչեցեալ։

ԸՃԼԷ (1388) Լանգթամուրն եկն ի Վան և ի Թավրիզ, աւերեաց զամենայն երկիրսն, և շատ գերի առեալ ընդ ինքեան յերկիրն Սմրղանդայ, սատակեցաւ։

ԸՃՀԸ (1429) Ջըհանշահն էառ զՇամշու[լ]տայ բերդն։[4]

ԸՃՂ (1441) Լուսաւորչի աջն ի Սըսոյ դողացան, և բերին յԷջմիածին։

ԹՃԲ (1453) սուլթան Մահմատն էառ զՍտամբօլն։ 341

ՌԻԹ (1580) մեծն և առաջին շահ Աբասն թաղթ նստաւ ի Մաշատ։[5]

ՌԽ (1591) Քօռ օղլին, Գզիր օղլին, և այլք բազումք եղեն ջալալիք։[6]

ՌԾԳ (1604) Ջղալ օղլի սարդար Սինան փաշայն եկն ի Վան և գնաց ի վերայ Շահին։[7]

ՌԾԷ (1608) երկրորդ եկն Ջղալ օղլին և կոտորեցաւ ի Շահէն, և գնացեալ ի Համիթ մեռաւ։[8]

Ի սոյն թուին մեծ սով անկաւ, որ շունն և կատու կերին. նաև մարդագայլն երևեցաւ։[9]

ՌԿԳ (1614) առաջին շահ Աբասն զԷջմիածնի քարերն և զԼուսաւորչի սուրբ աջն տանել ետ ի Ցասպահան։[10]

ՌՀ (1621) յունվար ԺԴ (14) Ստամբօլայ ծովն պաղեցաւ, որ մարդ շրջէր ի վերայ։

ՌՁԴ (1635) սուլթան Մուրատն եկն ի Յերևան, և ինն օր էառ զնա, եկն ի Թավրիզ, և անտի ի Վան, և ապա գնաց յըՍտամբօլ, և ի միւս ամի դարձեալ եկն սուլթան Մուրատն ի վերայ Բաղդադայ, և յաւուրս Լ (30) էառ զնա։[11]

ՌՂԵ (1646) ապրիլի Բ (2) աւագ ուրբաթու գիշեր, սաստիկ շարժ եղև ի քաղաքս Վան[12] և բազում մարդիկ մեռան, և շատ աւերութիւն եղև։ Աստուած ազատէ և ողորմի։

ՌՃ (1651) Թալանեցին Վարագայ աթոռն՝ անիծեալ Զօմարն և Խօշարայ պարոնն. և սուրբ Նշանն ևս դերի տարան, զոր Մարխաս Չէլէբին ազատեաց. և ՌՃԴ (1655)-ին բերեալ եդին ի սուրբ Տիրամայր եկեղեցին։[13]

## ԱՅՍ ԵՆ ՓԱՇԱՅՔ, ՈՐ Ի ՎԱՆ ԵԿԻՆ.

### Թիւ Տաճկաց

Իսկանդար փաշէն։ Խուսրով փաշէն։ Մահմադ փաշէն։ Ջղալ օղլի Սինան փաշէն։ Ջահվար փաշէն։ Մահմադ փաշէն։ Ջափղուն Մահմատ փաշէն 1015[14] (1606 թ. 9/V—1607 թ. 27/IV)։ Թափալի Մահմատ փաշէն 1034 (1624 թ. 14/X—1625 թ. 2/X)։ Մարթուղայ փաշէն Վան էր, որ Ղզլըլբաշն եկն ի վերայ Վանայ, ԽԶ (46) օր նստաւ. մինչ Բաքիր փաշէն եկն. վերացան և գնացին 1043 (1633 թ. 8/VII—1634 թ. 26/VI)։ Մուսայ փաշէն 1043 (1633 թ., 8/VII—1634 թ. 26/VI)։ Դիլվար փաշէն 1044 (1634 թ. 27/VI—1635 թ. 16/VI)։ Դօջայ Սուլէհման փաշէն 1046 (1636 թ. 5/VI—1637 թ. 25/V)։ Քուչուդ Հասան փաշէն էր՝ որ սուլթան Մուրատն եկն ի Վան 1047 (1637 թ. 26/V—1638 թ. 14/V)։ Բօյին Ագրի Մահմատ փաշէն 1050 (1640 թ. 23/IV—1641 թ. 11/IV)։ Վառվառ Ալի փաշէն 1051 (1641 թ. 12/IV—1642 թ. 31/III)։ Սադաֆլի Հասան փաշէն 1053 (1643 թ. 22/III—1644 թ. 9/III)։ Բօյուք Ահմադ փաշէն 1054 (1644 թ. 10/III—1645 թ. 26/II)։ Դարձեալ Բօյին Ագրի Մահմատ փաշէն 1055 (1645 թ. 27/II—1646 թ. 16/II)։ Քաթանչի Մահմատ փաշէն Վանն էր՝ որ || մեծ ժաժկ եղև 1056 (1646 թ. 343
17/II——1647 թ. 5/II)։ Թաքահ օղլի ||| փաշէն 1057 (1647 թ. 6/II)։ Շայեն փաշէն 1058 (1648 թ. 27/I)։ Շահբազ փաշէն 1059 (1649 թ. 15/I)։ Էմին Մահմուտ փաշէն Վան էր, որ Հուսէն աղէն Բերկրու տէրն փախաւ առ Բաղիշու խանն 1060 (1650 թ. 4/I)։ Սարխօշ Իբրահիմ փաշէն 1061 (1650 թ. 25/XII—1651 թ. 13/XII)։ Ջայիվ Մուսայ փաշէն 1063 (1652 թ. 2/II—1653 թ. 21/XI)։ Դարձեալ Սարխօշ Իբրահիմ փաշէն 1063 (1652 թ. 2/XII—1653 թ. 21/XI)։ Սօֆի Իբրահիմ փաշէն 1064 (1653 թ. 22/XI—1654 թ. 10/XI)։ Մալա Մահմատ փաշէն 1065 (1654 թ. 11/XI—1655 թ. 30/X)։ Դարձեալ Սարխօշ Իբրահիմ փաշէն 1066 (1655 թ. 31/X—1656 թ. 19/X)։ Ջաղրկան Մահմատ փաշէն 1067 (1656 թ. 20/X—1657 թ. 8/X)։ Ասլան փաշէն 1069 (1658 թ. 29/IX—1659 թ. 17/IX)։ Դալի Դիլվար փաշէն 1070 (1659 թ. 18/IX—1660 թ. 5/IX)։ Ղատրաֆիլ օղլի Ահմատ փաշէն 1071 (1660 թ. 6/IX—1661 թ. 26/VIII)։ Հաջի Հուսէն փաշէն 1072 (1661 թ. 27/VIII—1662 թ. 15/VIII)։ Դարձեալ Ասլան փաշէն՝ որ Մամոյի լաճն սպան 1073 (1662 թ. 16/VIII—1663 թ. 4/VIII)։ Ղարա Մուստաֆա փաշէն՝ զոր Կայի լաճն սպան, 1074 (1663 թ., 5/VIII—1664 թ. 24/VII)։ Ամիր Ոսուֆ փաշէն՝ Նմրութայ սաֆար գնաց 1075 (1664 թ. 25/VII—1665 թ. 13/VII)։ Քօռ Օսման փաշէն 1077 (1666 թ. 4/VII—1667 թ. 22/VI)։ Լէհ Հասան փաշէն 1079 (1668 թ. 11/VI—1669 թ. 31/V)։

Ղարայ Մահմատ փաշէն 1081 (1670 թ. 21/V—1671 թ. 9/V)։ Ալի փաշէն 1084 (1673 թ. 18/IV—1674 թ. 6/IV)։ Շեխի Մահմատ փաշէն 1086 (1675 թ. 28/III—1676 թ. 15/III)։ Աւտուլլայ փաշէն 1087 (1676 թ. 16/III—1677 թ. 5/III)։ Բաքիր փաշէն, սա խօջայ Այխաւն կախեց, որ Լէզկիր ասէին. հետ կլուն (ղուլին) շատ կըռվեցան 1088 (1677 թ. 6/III—1678 թ. 22/II)։ Մուսլի փաշէն, որ հրամայեց Հայոց մօրուք թողուլ 1089 (1678 թ. 23/II—1679 թ. 11/II)։ Ջանպօլատ օղլին՝ սա զհայի լաճն և զՂաթրան օղլին խեղդեց։ Հրամայեց Հայոց ղոտիկ վար ‖ առնուլ և զտակ դնել. 344 սորա ջորին ծնաւ և ինքն սատ մեռաւ 1091 (1680 թ. 2/II)։ Նիշլի Ալի փաշէն 1092 (1681 թ. 21/I)։ Ցայսմ ամի քարախառն կարկուտ եկն յՍտամբօլ, որ մինն հարիւր տիրամ կշռեցին։ Զօլանկի Ալի փաշէն 1094 (1682 թ. 31/XII—1683 թ. 19/XII)։ Ի սորա ժամանակս շինեցաւ սուրբ Ցակոբ եկեղեցին։ Գօջայ Օմար փաշէն 1095 (1683 թ. 20/XII—1684 թ. 7/XII)։ Սա զՄօշաբայ պարոն Զշմզգին (գուցէ Շեխ Մզգէն) երեր առ ինքն ի քաղաք և սպան զնա Աստուածածնի (տօնին). սա սահմանեաց դրամին դամղայ զարկել. և եա պղնձէ պլիկ կտրել։

### Թիւ Հայոց

ՌՃԼԳ (1684) Թիւն՝ այս Օմար փաշայս զՆալբանդ օղլի Նադիր աղայն և զՂատըր օղլի Իբրահիմ աղէն էարկ ի բերդ զնդան, պահեց անդ Գ (3) ամիս և սպան զնոսա։[15] Ի սոյն ամի և սուտ ինչ համբաւ հանին թէ՝ ընտանի հաւու փոր օձ կայ. և այնքան ջարդեցին յամենայն աշխարհ, մինչև ի Ստամբօլայ մինչ ի Վան, և Վանայ մինչև ի Սպահան՝ մի հաւ ոչ գտանիւր. և այսպէս եկաց ժամանակս ինչ։[16] Եւ ի սոյն ամի քրիստոնեայ սՖ ի յայգին շինէր զտուն իւր, և ի փորելն ել սակաւ ինչ ժիպակ (սնդիկ), և յոյժ ուրախացան, և նոյն ժամայն հասաւ լուրն ի քաղաք. և ելին ամենեքեան մեծամեծք և փոքունք և իշխան և դա ‖ տաւոր փողօվք և թմբկօք, և գնացին ի տեսանել, զի 345 համարեցան մազան լինել. և ահա ցամաքեալ էր։[17] Նաև ի սոյն թուոջ մարդակերպ գայլ մի երևեցաւ. որ ի ցերեկի շրջէր յայգիսն և բազում վնաս գործէր, և ընդ մարդոյ պատերազմէր և խօսէր ևս. և ոչ ոք իշխէր միայն ի յայգիս գնալ. և ապա անյայտ եղև։

ՌՃԼԴ (1685) Ջավհար փաշայն զկոր (կոյր) էթարն և զՄանսուրն կախեց։[18]

ՌՃԼԷ (1688) հրամայեց Հայոցս քաղաքացւոց և գիւղացւոց, որ զքաղաքի շրջապատ խանդակն պեղեցին. և այնչափ փորեցին, մինչև յինքենէ ջուր ել։ Եւ ի բերդն ևս բազում տեղիս նորոգեաց։ Սա գնաց ի վերայ Բաղիշոյ. և անտի գնաց։[19]

ՌՃԼԶ (1687) յաւուրս Ալի փաշային՝ Բաղիշոյ Նօհ խան եկն ի Վան առ Ալի փաշայն զանգատ յեղբօրէն. և փաշայն բազում զօրօք ելեալ գնաց ի Բաղէշ. և անտի մանզուլ եղև և գնաց։

Ապա եկն Ղայալի Ահմատ փաշայն ել ի բերդն Բաղիշոյ և զՇարաֆ խանն հաստատեաց, և ինքն դարձաւ ի Վան. և քաղա-

քացիք ելին ընդդէմ և պատերազմեցան և ոչ թողին դալ ի քաղաքն. և մնաց ի գեօղն Աւանց աւուրս Գ (3) և ապա փոշիմանեալ գնացեալ հաշտեցան. և ա || ղաչտնօք բերին ի քաղաքս, և 346 եկաց ի քաղաքս Գ (3) ամիս, և ապա մանզուլ եղև, զի սուլթան Մահմատն անկաւ և սուլթան Սուլէյման եղև թագաւոր։[20]

Ի սոյն թւոջս եկն ի քաղաքս Վան պատանի մի Ի (20)-ամեայ, որոյ ոչ գոյր երկու ձեռն բնաւ, որ այնպէս ծնեալ էր ի մօրէն, և ղհաց ոտով ուտէր. սա էր ի Խիզնայ, ազգաւ հայ։

Նաև ի սոյն աւուրս ի գիւղն Արտամետ՝ հաւու ձագ՝ որն որ ել ի ձուէն, Գ (3) անգամ խօսեցաւ, և այլք ի մէջ ձուին ձայնս հանէին, և որք շուրջ կային՝ լսէին։ Այլ ի նոյն գիւղ՝ տղայ մի յարգանդ մօր ելաց, որոյ ձայնն բաղումք լուան։ Եւ կին մի ծնաւ Դ (4) տղայս։ Այլ և ոչխար եւս ծնաւ, որոյ գտոն էր արու և էգ ի միասին. որ և մեք աչօք տեսաք զգառն։[21]

ՌՃԼԸ (1689) Ղարըլ Հասան փաշայն՝ սա զՋամուշչի օղլի Մահմատ աղէն, զՇալան աղէն և զՋավհար աղէն տարաւ յԱրտամետ պատի, և անդ սպան զնոսա։ Ի ժամանակս գարնան խիստ տղայոց մահ եղև. և յուսինն խաւարեցաւ։[22]

ՌՃԼԹ (1690) Թօփալ Օմար փաշայն՝ ի սորա ժամանակս ի Բաղէշ քաղաքի եղև մեծ աղմուկ ի մէջ վարդապետաց. զի չորս վանք և չորս եկեղեցիք կան. և ամեն ի վանք մէկ մեծաւոր 347 իւր աբեղայիւք կու նստէր. և մեծ վանք և առաջնորդարանն էր Ռոմոց վանք, և առաջնորդ ծերունի մեծ Աւետիք վարդապետն էր. և այլ երեք վանք և չորս եկեղեցիք հնազանդ կային նմա. և յայսմ ամի Գրիգոր վարդապետ և Մեսրոպ վարդապետ, զմեծ Վարդան վարդապետն եւս դարձուցին յինքեանս և բազում զանձն ետուն Շարաֆ խանին իւրեանց, և առին ի նմանէ ձեռագիր և մարդ, նաև ինքեանք և ղոլվաթաւորքն եւս գրեցին և կնքեցին և մեծ պարգևօք առաքեցին ի սուրբ Էջմիածին առ Եղիազար կաթողիկոսն, և ի նմանէ հրաման և գիր բերին, և զքաղաքն չորս բաժին արարին. և ամեն մէկ եկեղեցին իւր ժողովրդով մէկ վանից թէմ սահմանեցին, զի յամէն վանք մէկ վարդապետ նստիցի առաջնորդ, և զիւր եկեղեցւոյ [թէմն տիրեսցէ] և զհատ և զիրաւունս ինքն առեալ զվանս իւր հոգասցէ. և այսպէս մէկ քաղաքի չորս առաջնորդ եղև, որ կայ մինչև ցայսօր սահման այն, որ ոչ է բարի։[23]

ՌՃԽ (1691) Դուրսուն Ահմատ փաշայն՝ ի սորա ժամանակս սուլթան Սիւլէյման վայվօտայ յղեաց ի քաղաքս Վան, որ ղՀայոց խալաջն ժողովեց և թուղթ ետ թագաւորական մօհրով, որ մինչև այսօր չէինք տեսեալ։

Եւ դարձեալ ի սոյն ՌՃԽ (1691) թիւ, Սօֆի Օմար փաշայն 348 ի Վանայ ղուլն զՄարդանենց Ատոմն և զ[Շէկ] Միրզայն կախեցին յունվարի Զ (6), զի սոքա ի Ստամբօլայ եկին, և ղուլաղաուիք այնպէս իմացան, թէ նոքա ի թագաւորէն վայվօդայ բերին. վասն որոյ, եաուն կախել զնոսա։ Այս Օմար փաշայն ատտ մեռաւ։[24]

ՌՃԽԱ (1692) Իսմայիլ փաշայն եւ զխարաջն յինքն ժողվեց. Ի սոյն ամի, ապրիլի ԺԳ (13) յառաւօտէ արեգակն նուաղեցաւ և մէղ պատեաց զերկիր այնքան, զի մարդիկք մերձ զոլով զմիմեանս ոչ տեսանէին ի ցերեկի, և մինչև յերեկոյ կարմիր փոշի անղեալ ի յերկիր, և եղև մա՜ անդրանկայ և սաստիկ շարժ։[25]

ՌՃԽԲ (1693) Մուրթուզայ փաշայն՝ սա զՋաւուշ փէսէն սպան։

ՌՃԽԳ (1694) Ֆիրարի Ալի փաշայն։

ՌՃԽԴ (1695) Գուրջի Մահմատ փաշայն եկն յօգոստոս Ժ (10). սա երկու անգամ մախթու էառ ի վանորէից. սա եւ պլիկ կտրել և դարաղաջ շինել. և ի նոյեմբեր Ի (20) մանզուլ եղև, դիւր շինեալ դարաղաջն կատարեց և ապա գնաց։[26]

ՌՃԽԵ (1696) Ղաթրաֆիլ օղլի Ուսուֆ փաշայն եկն ի Վան փետր. Ը (8).

ՌՃԽԶ (1697) մեծ պահոց առաջին երկու ‖ շաբթին դարձեալ 349 Դուրսուն Ահմատ փաշայն եկն ի Վան. սա ի մարտի ամսոյ Ի (20) Ժ (10) մարդ ի գիշերի խեղդեաց. բայց ի Հայոց Բ (2) կարիճ տղայ և գնոսա ետ խեղդել. և յայն տարի մեռաւ (փաշայն), և Լ (30) օբ ձայն գայր ի գերեզմանէն։[27]

ՌՃԽԷ (1698) մարտի ԺԲ (12) Սարը Օսման փաշայն եկն ի քաղաքս Վան. սա սպան զՃաճիկ Սինան. և ի յուլիսի Դ (4) մանզուլ եղև։ Եւ ի սոյն ՌՃԽԷ (1698) օգոստ. ԻԱ (21) դարձեալ ծերունի Իսմայիլ փաշայն եկն ի Վան. սա գնաց ի վերայ Մանզկերտու և այրեաց զբաղում գիւղորայս, սա սպան զՇաբանն և զՇարօն կախեաց. սա ի գագա դրան մօտի աղբերին վերայ կամար կապեց.[28] Ի սորա աւուրս և ի սոյն ամին Վանայ ղուլն մարդագլուխ ռամ խարտջի կոտոր առին ի Հայոց գաւթարով. Ի սոյն ամի, փետր. Ի (20) մեք՝ Հայքս և Տաճիկք մէկ օր զպահս բռնեցաք. յորում աւուրս էր ի քաղաքս Իսահակ Մեծն վարդապետ Արդարև կոչեցեալ, նաև Եազուբի Սողոմօն վարդապետ, հրամանաւ մեծ վարդապետին Դ (4) անգամ՝ պատարագս մատոյց ի մերս սուրբ Վարդան եկեղցին։

Ալի փաշայն հրամանաւ թագաւորին կամէր գնալ ի վերայ Բասրայու պատե ‖ բազմ հետ Արաբուն. և ի յունիսի Ի (20) ելեալ 350 գնաց մինչ ի Բակգատ և անդ մեռաւ։[29]

ՌՃԽԸ (1699) մեծ փափն Հռովմայ ընծայ առաքեաց Նահապետ կաթողիկոսին զարմանալի աթոռ մի և պատուական խալիչայ մի և ազնիւ գաւազան, որք էին յոյժ մեծագին և անտես մարդկան։[30] Ի սոյն թւին սեպ. ԺԳ (13) օր ի հասարակ աւուր արեգակն խաւարեցաւ և աստեղք երևեցան յերկինս, և եկաց այնպէս ժամս Բ (2), յորոյ աւուրս ոչ գոյր փաշայ (ի Վան), այլ Ջամուշ օղլի Խալիլ աղայն, որ նստեալ էր փոխանորդ փաշայն, հրամայաց որ ի միւս օրն ի թափօր ելին Հայք և Տաճիկք։[31]

ՌՃԽԹ (1700) յապրիլ ԻԵ (25) դարձեալ Սարը Օսման փաշայն եկն ի Վան. և ի յուլիսի ԺԵ (15) գնաց ի վերայ Խիզնայ և Ջըռըկանտյ, և յօգոստոս Ժ (10) մանզուլ եղև, և անտի գնաց։[32]

Եւ յետ գնալոյ նորա՝ Վանայ ղուլն վստահացեալ կրկին առին ի
Հայոցս ամէն մարդագլուխ ղուրուշ մի խարաջի կոտոր դաւ-
թարով։[32]
ՌՃԾ (1701) սեպ. ԻԵ (25) Իսմայիլ ծերունի փաշայն եկն. սա
եկաց մինչ ի յունվարի մուտն. և լուաւ թէ ի թագաւորէն ֆէրման
կայ գլխոյն. վասն որոյ թողեալ զինչս ‖ և զորդին, և սակաւ զօրօք 351
ի գիշերի ելեալ գաղտ փախեաւ. և իմացեալ զօրքն Մահմուտանայ
եկին ընդդէմ և պատերազմեցան. և զոմանս սպանին, զոմանս վի-
րաւորեցին, և զոմանս թալանեցին, յետոյ թէ հազիւ մազապուրծ
անկան ի զօրս (Պարսից), և խանն զօրաց սիրով ընկալաւ զնա,
բայց խորհրդով Մնօշարայ պարոնին կողոպտեաց զնա յամենայն
փառաց ասելով թէ՝ դու լրտես եկեալ ես յՕսմանցւոց յերկիրս
մեր. և ապա արար յԱսպահան շահին և Թարվիզու խանին։
Հրամայեաց շահն պատւով պահել զնա առ ինքն, և ազդ արասցէ
Օսմանցւոց թագաւորին և ներումն խնդրեսցէ նմա։ Եւ թագա-
ւորն ըստ խնդրոյ շահին զօրս առաքեաց փառօք և պատւով.
(այլ) նա ի յաքսորս ողորմելի մահուամբ սատակեալ էր։ Սա
մինչ էր ի Վան փաշայ՝ զրերդի էնդիչար աղասին ընկէց յիշ-
խանութենէ, և բերեալ ի քաղաք պահէր ի կալանս. և փոխանակ
նորա զայլս կացոյց ի տեղին. և յետ փախստական լինելոյն
ոմանք ի զուլազասոցն ասացին, թէ դատաւորն ազատեաց փա-
շային՝ (ծածկեաց) զֆարմանն և փախոյց զնա. վասն որոյ միա-
բանեալ կալան զդատաւորն և տարեալ ի բերդն եդին ի բանտ,
որ եկաց անդ աւուրս ‖ ինչ. և զղջեցան և առաքեցին հանել 352
զդատաւորն ի բանտէն և էնդիչարիքն ոչ թողին, ասելով՝ դուք
թողէք զմեր էնդիչար աղասին, և մեք թողումք զձեր դատաւորն.
և զուլազասիքն իբր թէ ծաղր առեալ ասէին. դուք թողէք մեր
դաղին և մեք թողումք զձեր թաղին. և ապա միաբանեալ սի-
րով թողին զերկոսեանսն։[34]
Եւ ի սոյն թւոջս՝ ապրիլի ԺԴ (14) ծերունի Իբրահիմ փա-
շայն եկն ի Վան. սա ազգական էր Իսմայիլ փաշային, որ փախ-
եաւ, որ և սա աստ մեռաւ։ Նաև ի սոյն ամի, ՌՃԾ (1701)-ին,
մարտի Է (7) ի մեծ պահոց և առաջին ուրբաթն, սաստիկ շարժ
եղև ի քաղաքս Վան. և ի գիշեր ևս շարժ եղև։ Եւ ի կիրակէն
Բ (2) և Գ (3) անգամ շարժ եղև. և չորեքշաբաթ առաւօտուն
ևս սաստիկ շարժ եղև, որ ամենայն քաղաք ահաբեկ եղեալ սա-
սանեցան, և Հայ և Տաճիկ ամենեքեան թողեալ զտունս իւր-
եանց ի քաղաքէն դուրս կազմեցին վրանս և մնացին տամբք
և տղայիւք, ոմանք յայգիս, ոմանք ի դաշտս և ի գերեզմանա-
տունս աւուրս բազումս. և սակաւ ոմանք, որ և ի քաղաքս
մնացեալք էին, գնացեալ ի ժամատունն ննջէին տամբք իւր-
եանց. և ի միւս շաբաթ օրն ‖ դարձեալ ահագին շարժ եղև, յոր- 353
մէ բազում տունք խախտեցան ի մէջ քաղաքին և ոչ փլան. և
ոչ մարդոյ ինչ վնաս եղև. սակայն ի գեղն Բերդ սակաւ ինչ
տուն փլան և այսպէս եկաց քաղաքս յերերմանի իբրև զնաւ ի
ջուրս մինչև ի յօրն զարնանամտին, և ապա հանդարտեցաւ նա-

խոխնամութեամբն աստուծոյ. և հասեալ ի նոյ. Լ (30) կրկին ևս
սաստիկ շարժեցաւ և վնաս ոչ եղև ողորմութեամբն աստուծոյ։
ՌՃԾԱ (1702) յունվար ԺԲ (12) Չարկուլահ Մուստաֆայ
փաշայն եկն ի Վան քաղաքս. սա զԱրճիշու Ցաղի գիւղի ռէսն
անդ սպան ի գալն. և ի ճանապարհէն երեք քիւրդ եբեր ի Ցա-
յիւր (գիւղն), և անդ ետ ի ղազուխ, և մինն եբեր ի քաղաքս և
ի նոյն օր ետ ի ղազուխ. և հասեալ իւրեանց յըստմազանն ի չա-
յիրն մաչիթ շինեաց և անդ յաղօթս կայր. և ի մարտ ԺԸ (18)
բազում հեծելօք գնաց ի Վարագ և ի ապրիլ ԺԷ (17), որ էր օր
Նոր կիրակէին [չորեքշաբթի], գնաց ի տեսանել զծկան բանդ. և
այնմ աւուր քաղաքացի ոխաթն, որք կարի նեղացեալ էին ի
Թօխմախ Միրաքէն, որ էր ռէս քաղաքին, խորհրդով[ն դօլվա-
թաւորացն] ժողովեցան միաբան և գնացեալ ի յայգի Թօխմա-
խին. և զի դուռն փակեալ էր, ‖ ոմանք ի պատէն իջին զդուռն 454
բացին, և ամբոխն ամենայն մտեալ ի տունն որոնէր բռնու-
թեամբ. և գտին զնա, զի թագուցեալ էր ի բոյն հաւուց, և բեր-
եալ արտաքս անարգանօք հարկանէին, և ընկեցեալ յերկիր եդին
պարան ի յոտսն. էին իբրու ՇՃ (500) մարդ, որք քարշեցին
զնա անողորմ ի վերայ երեսաց, որ հարաւ փորն ի թուփս և
անդէն ի ճանապարհին մեռաւ դառն մահուամբ և տարեալ ըն-
կեցին ի զուռն քաղաքին։[30] Իբրև եկն փաշայն և եհարց թէ՝
ով է սա. և ծանուցին թէ՝ ռէս Թօխմախն է, և քաղաքացիք
ինքնագլուխ սպանին զնա։ Իսկ նա կարծեաց թէ՝ կամակցու-
թեամբ խօճայ Ջանդուլին է եղեալ այս. քանզի նա էր անուանի,
և մեծ, խօսաց տէր։ Կայր ընդ փաշային Արաբկերցի խօջայ մի,
զոր անուն Զիման Զալաբի ասէին. որ էր սա յոյժ սիրելի և բա-
րեկամ խօջայ Ջանդուլին և ռէս Թօխմախի Միրաքին. զայս Զի-
մանս ի գիշերի գաղտ կոչեաց փաշայն, և առաքեաց բերել զՋան-
դուլն. իսկ նա ոչ գիտելով զինչ՝ գնաց երեր զխօջայ Ջանդուլն,
որպէս և յայլ աւուրս. և նոյն ժամայն հրամայեաց փաշայն և
խեղդեցին զնա և ընկեցին արտաքս. և ի վաղիւ հրամայեաց
բառնալ և թաղել զնա ‖ ըստ օրինի. և ապա էառ ի քաղաքէն 455
ՋՃ (600) ղուրուշ գին արեան Թօխմախին։ Եւ ի Հայոցս պա-
հանջէր, զի տացեն ինքեան ձեռագիր, որպէս թէ մեր կամօք
փաշայն սպան զխօջայ Ջանդուլն. քանզի երկնչէր թէ մի գուցէ
եղբարք նորա գնացեալ բողոքեսցեն ի դուռս թագաւորին. և քա-
ղաքացիքն ոչ հաւանեցան այնմ, և ոչ ետուն ձեռագիր. և ի կարի
նեղել՝ փակեցին զդուքաններն և զեկեղեցիսն ևս, և ելին ի քա-
ղաքէն քահանայք և դօլվաթաւորք և ռամիկք, անձինք իբր
ՌՇՃ (1500) և խորհուրդ արարին, զի ի միասին ի դուռն Արզ-
րումայ փաշային գնասցեն, և ի յայն փաշայէն գիր և մարդ
առեալ ի դուռն թագաւորին գնացեալ բողոքեսցեն։ Եւ ի վերայ
այսր խորհրդին՝ ի Համբարձման ուրբաթ օրին ելին ի քաղա-
քէն և գնացին մինչև ի Բանդիմահի. փաշայն և ղու-
լաղասիք առաքեցին արս ընդդիմարս և մեծամեծս բազում զօրօք,
որք եկեալ պաղատանօք հազիւ թէ յետս դարձուցին զժողովուրդ

ի Պեծահրաշի կիրակէին. և եկեալ ի քաղաք, որպէս թէ հաշտե-
ցան. և ի յուլիսի Ժ (10) մանդուլ եղեալ կ[որ]եաւ.[36]
Եւ ի սոյն ՌՃԾԱ (1702) սեպ. Բ (2) Արղի փաշայն եկն
և բազում զօրս հաւաքեաց առ ինքն ի Յարճէշոյ, ի Յարծկոյ, ի
Բերկ‖րոյ, և ի Բաղէշոյ. Սհաթ խանն եկն ԲՌ (2000) զօրօք. և 356
[ի հոկտեմբեր 2] եկեալ ՋՌ (6000) զօրօք և թօփով գնացին ի
վերայ Խօշաբայ, և կամէին զի խան Մահմատ հանիցեն ի բեր-
դէն և զԻբրահիմ բէգի աղայն դնիցեն պարոն և ոչ կարացին.
այլ բազում գիւղս այրեցին. իսկ զօրքն Մահմուտանայ (ղաւառի)
եկեալ ի մէջ բանակին հարին ըզօրսն Բաղիշոյ, և կողոպտեալ
վիրաւորեցին և տարան ի նոցանէ ՃԻ (120) ձի. վասն որոյ
ամօթալի դիմօք դարձան ի քաղաք. և փաշայն թալանեաց պճա-
ջի աղի տունն, որ էր ի քաղաքս. և ի նոյ. ԻԷ (27) առանց ման-
դուլի գնաց. և յետ երկու ամսոյ յունվար ԻԱ (21) դարձեալ եկն
ի քաղաքս. բայց դուլն Վանայ ոչ եկին ի դէմ ի յայս աւուրս.
Եւ ի ՌՃԾԲ (1703) թիւ Սարքուտայ փաշայի գլխոյն ֆար-
ման էր [եկեալ] ի Թագաւորէն [իսկ նա գլխափուչին] սպանեալ
էր. և ինքն փախստական սակաւ մարդով ի Վան քաղաքս անկ-
եալ. և Արղի փաշայն սիրով ընկալաւ զնա և մեծարեաց և խի-
լայեաց զիւրսն և զինքն. և եկաց աստ ամիս մի և գնաց։ Եւ
ի սոյն աւուրս յՍտամբօլ զՖէզուլլահ աֆանտի, որ էր դատաւո-
րաց դատաւոր և մեծ հրամանատար ի դուռն Թագաւորին՝ ըն-
կեցին ի փառաց և ի պատւոյն, և զերկու որդիս առաջի մօր ‖ 357
մանրամասնաբար կտրատեցին, վասն զի ի Թագաւորի խազնա-
յէն ԲՃՌ (200000) քիսայ փող վատնեալ էր, վասն որոյ զինքն
եւ չարաչար և դառն մահուամբ սպանին։
Նաև զսուլթան Մուստաֆայն ընկեցին, և զսուլթան Ահ-
մատն եդին Թագաւոր։
Եւ ի սոյն ամի Ախիջեանց խոջայ Սաֆարն, որ Լ (30) տա-
րի էր, որ գնացեալ էր ի մէջ Ֆռանկաց և յայսմ ամի եկն, և
ունէր ընդ ինքեան բազում գանձս, և յոլով մեծագին ոսկեղէն
և արծաթեղէն անօթներ և զարդարանս. և ի գալն եկաց Գ (3)
ամիս և մեռաւ. և ունէր եղբօրորդիս. և Վանայ դուլն ամէն թա-
լան արին աւելի [քան զՃ (100) քէսայի] ապրանք, և եղբօր որդւոց
ինչ ոչ ետուն։[37]
ՌՃԾԳ (1704) յունիսի ամսոյ ԻԸ (28) Տօրեջան Ահմատ
փաշայն եկն. սա յօգոս. Ա (1)-ին զբերդի ենգիչար աղասին ըն-
կէց յիշխանութենէ և փոխանակ նորա զայլ կացոյց ի տեղին. և
բերեալ ի քաղաքն էարկ ի բանդ։ Սա զԱւանուց գիւղի զսուրբ
Յօհաննէս զեկեղեցին շինեաց և զՕսման բէգ բերեալ յՈստան
պարոն կարգեաց, և քաղաքիս պարսպի թօփեր ամէն զինջուֆով
ներկեաց։ Սա ի դեկտ. Ժ (10) ֆարման եհան Խալիլ աղին և
Քիւրդ Հուսէն աղային գլխոյն, և զքաղաքի դռներ փակեաց, որ
եկաց մինչ ի յունվար ԺԳ (13), բայց ի նոյն աւուր ղափուջի 358
եկն ի Թագաւորէն, և ֆարման եբեր իւր գլխոյն, զոր յայնժամ
սպանին և գլուխն քերթեցին և տարան Թագաւորին, և զինչսն

ղուլաղասիք թալանեցին, մինչ զի և զկինն կողոպտեցին։ Եւ յունվար Իէ (27) Խալիլ աղէն և Հիւսէն աղէն ի գիշերի գաղտ փախեան։

Ոմանք ասէին, թէ սա քրիստոնէի տղայ էր և լոյս էջ ի վերայ նորա. ուստի զհող գերեզմանին տանէին Հայք և Տաճիկք և ցաւագարք և ըստ հաւատոց իւրեանց առողջանային։[38]

Եւ այս յունվար ԺԳ (13) մեծ շարժ եղև ի քաղաքս Վան. և ի սոյն Իէ (27) յունվարի մեծ շարժ եղև ի քաղաքն Բաղէշ և բազում տունք փլան և շատ մարդիկ ի ներքոյ տանց մնացին։

Եւ ի սոյն ամի Բաղիշեցի մեծ և անուանի Վարդան վարդապետն մեռաւ։[39]

ՌՃԾԴ (1705) փետր. Ա (1) Քօսայ Խալիլ փաշայն եկն Արզրումայ ի քաղաքս. սա հրամայեաց զպլիկ դամղայ զարնել, և յունիսի Դ (4) մանղուլ եղև, բայց քաղաքացիք ոչ թողին. ապա յուլիսի ԺԲ (12) օրին գնաց ի Բասրա։

Ի սոյն թիւն ի քաղաքն Բաղէշ ոմն [չարագլուխ] մոլայ, որ էր դատաւոր, ի գրոց իւրեանց հրաման (եհան), թէ ի Հա ‖- 359
յոց ով ոք, որ տաճկանայ, նորա մօտակայ ազգականաց մէջ ով, որ անկատար արու տղայ (լինի), տղայն նմա հասանի։ Սահմանեաց զայս ի Բաղէշ, և ինքն եկն ի քաղաքս Վան, զի և անդ զնոյն հաստատեսցէ։ Իսկ Բաղիշոյ մեծ վարդապետք և դօլվաթաւորք միաբանեալ աղերսանաց գիր խրկեցին առ մեր առաջնորդ Ստեփաննոս վարդապետ և իշխանաց իշխան պարոն Խօջայ Ախիջան Ղարասաֆարն. և ծանուցին զաղէտս դառնութեան իւրեանց, զսուգ և զկորուստ ազգիս Հայոց։ Իսկ Խօջայ Սաֆարն հրամայեաց վարդապետին, որ յեկեղեցիս ծանուսցէ, և ինքն յոլով զանձս և փեշքաշ ցրուեաց ի դրունս օճախ տղայից և մեծամեծաց, և զամենեսեան դարձոյց յինքն։

Եւ գնացեալ առ դատաւորն նստաւ և դատաւորն կոչեաց զմեծամեծս քաղաքին և ի միասին խորհեցան և կոչեցին զմոլայն զայն և հարցին զպատճառ գալոյն։

Եւ նա որպէս հաւատարիմ գոլ օրինաց իւրեանց, ասաց թէ ես կամիմ զի յազգէն Հայոց ով ոք, որ տաճկանայ և գայ յօրէնս մեր, նորա արիւնամերձ ազգականաց որչափ անկատար արու տղայ լիցի պարտ է որ զամենեսեան բերցէ ընդ իւր ‖ ի պայ- 360
ծառ հաւատն մեր։ Ես զայս ի Բաղէշ արարի և եկի զի և աստ հաստատեցից։ Զայս ասելով կարծէր հաճոյ լինել նոցա։ Եւ ասէ դատաւորն. ես Ստամբօլայ թագաւորանիստ քաղաքի դատաւորաց դատաւորի աշակերտն եմ և նորին հրամանաւ մայրաքաղաքիս Վանայ դատաւորն եմ և չորս կողմն աշխարհի դատաւորքն ամենեքեան նորա հրամանաւ կուգան։ Այս ի՞նչ զարմանք, որ մեք ամէնքս չեմք կարդացեր, և ոչ լսեր. դու որ քիւրդ մօլայ մի ես, և գիւղաքաղաքի մի դատաւոր, ո՞ւր ես կարդացեր կամ լսել, որ զմեզ զամենեսեան և զմեր առաջին և զմեծ փեղամբարի գիրս սուտ համարես, միթէ դու նոր փեղամբէ՞ր ես։ Եւ նոյն ժամայն ամենայն ամբոխն ի մի բերան

ասացին թէ՝ սա մահու արժանի է, զի զմեր նախնեաց օրէնս խափանէ և իւրն հաստատէ։ Ասէ դատաւորն՝ յիրաւի մահապարտ է. այլ վասն Սհաթ խանի խաթերն մի ինչ չար առնէք դմա։ Եւ զկնի բազում անարգանաց հանին դուրս ի դիւանէն և նա ամօթալի դիմօք ելեալ գնաց։

Բայց խօջայ Սաֆարին աւելի քան էՃ (700) դուրուշ խարջ եղե թէ դատաւորին կաշառ և թէ աղայից և ուլամայից փաշքաշ, || որ ամենեքեան եղեն ի կողմն խօջայ Սաֆարին. և ապա 361
թէ չարն այն բարձաւ ի մէնջ և ի Բաղիշոյ։

ՌՃԾԵ (1706) Մաղթուլ օղլի Ալի փաշայն, ի սորա աւուրս քաղաքի ոխաթն վասն կարի և սաստիկ հարկապահանջութեան ելին ի քաղաքէն մեծք և փոքրիկք աւելի քան եՃ (500) անձինս, ի Վարդավառին պահոց երեքշաբթին, և գնացին մինչ ի Բանդիմահին և կամէին ի դուռն թագաւորին գնալ. և ծերունի աղայք գնացեալ դարձուցին յետս ի Վարդավառի կիրակէն եկին ի քաղաքս։[39]

Սա ի մարտի ԻԴ (24) հրամայեաց Հայոցս, որ զքաղաքի խանդակն երեք օր փորեցին։ Սա մայիսի Ժ (10) բազում զօրօք գնաց ի վերայ Խօշարայ և շատ վնաս արար, և յուն. Ա (1) ապա էառ զբերդն, և հանեալ զխան Մահմատն՝ զԻբրահիմ բէգ եդ պարոն և դարձաւ բազում աւարաւ։

Եւ ի սոյն ՌՃԾԶ (1707) մայիսի ԻԷ (27), էր օրն պարզ, բամպակ տեղաց յերկնից։ Եւ ի սոյն ամի շինեցաւ Նարեկայ վանք ձեռամբ Մինաս վարդապետին։* Եւ ի յուլիսի Ե (5) շարժ եղև սաստիկ։ Եւ յաւուրս նոյն Ալի փաշային ի Ներկատան մօտ մաչիթ շինեցին։

Ի յայսմ ամի Ճ (100) լիտր շիբայն Գ (3) դուրուշ եղև ի Վան։

Այս Ալի փաշայս ՌՃԾԶ (1707) հոկտեմբերի Զ (6) գնաց։ 362

Նաև ի սոյն ամի շինեցաւ Գետրոս առաքելոյ եկեղեցին ձեռամբ տէր Իգնատիոսին։[40]

ՌՃԾԷ (1708) մարտի Բ (2) Զարքազ Ահմատ փաշայն եկն· սա հրաման (բերեր) վասն գլխոյ Խալիլ աղային, Ուսուֆ աղային, և մեծ մուֆթուն. և նոքա ոչ հնազանդեցան. զի Ուսուֆ ելեալ ի ներքին բերդն ամրացաւ, և Խալիլ աղայն իւրեանց տունն և մարտի ԺԲ (12) օրէն մինչև ապրիլ Ը (8) և ապա մխաբանեալ Բ (2) աղայք և մուֆթին Արաս Ալիի լաճ և Դուղան աղի Բ (2) լաճ, աւելի քան երեք հարիւր արամբք, որպէս թէ յՍտամբօլ ի դուռըս թագաւորին կամին գնալ, փախեան։

Սա ել ի բերդ և նետ ձգեաց դէպ ի հարաւ, որ նետն անցեալ զքաղաքն անկաւ ի չայիրն. և եկեալ ի վայր ի տեղի նետին քարեայ արձան կանգնեաց. և նոյն արձանէն դարձեալ նետս ձգեաց դէպ ի ծով, և անդ ևս քարեայ արձան կանգնեաց և գրեաց ի վերայ նորա, որք կան ի նետէ արձանին մինչև ցմիւս արձան իբրև քայլս Ռ (100) մեծ մարդոյ, աւելի և ոչ պակաս։ Եւ ՌՃԾԹ (1710) մանզուլ եղև և գնաց։

* Խոսքը վերաշինության մասին է։

ՌՃԿ (1711) օգոս. ԻԵ (25) Ռաջար փաշայն եկն ի Վան.
ու յունվար Ա (1) սպան Զալիվար ¦ (գուցէ Տիլավար) օղլի 363
Հուսէն աղէն. և յուլիս Ի (20) գնաց բազում հեծելօք և թօփով
մեծաւ ի վերայ Խօշաբայ. և ի ճանապարհին թալանեաց Զեռ-
նակայ բերդ, որ լի էր բազում գանձիւք, զի բոլոր նահանգ յահէ
փաշային և հեծելին անդ էին թաղուցեալ զամենայն ինչս իւր-
եանց վասն ամրութեան, և ապա անցեալ գնացին ի Խօշաբ, և
Իբրահիմ բէգն, որ էր ի բերդ, ոչ եկաց հակառակ ընդդէմ. այլ
ինքնին իւր կամօք էջ ի բերդէն, և տարեալ զխան Մահմատի
աղայն եղ պարոն և ի մայիս Ա (1) դարձան բազում աւարաւ։[41]

Ի սոյն թւին Սպահանայ շահի եղբայրն փախստական յեղ-
բօրէն եկն ի քաղաքս Վան. Ռաջար փաշայն յղեաց և կոչեաց
առ ինքն, և նա ոչ եկն, վասն որոյ հրամայեաց տանել զնա ի
բերդն և առնել ի թաքստի։ Եւ ինքն իւրայնօք և բազում զօրօք
ելեալ գնաց ի Զուխուր,* և թալանեաց դերկիրն. և ի յուլիսի
ամսոյ Թ (9), որ էր Վարդավառի երկուշաբթին, դարձաւ ի քա-
ղաքս. դշահի եղբայրն իջոյց ի բերդէն և եդ ի նաւ և յղեաց ի
Աղթամար և խաբջն ինքն հոգայր. և առ շահն և առ թագա-
ւորն մարդ յղեաց, և մնայր հրամանաց նոցին։

Եւ ի սոյն աւուրս Վարագայ մարագն ‖ փլաւ, և երկու 364
մարդ ի ներքև մնացին, և երկուք մեռան, և երկուք սաղկատ
մնացին, բայց մեռեալք Թ (9) օր առանց թաղել մնացին։ Այս
Ռաջար փաշայն ոչ եթող թաղել մինչև ԷՃ (700) ղուրուշ արեան
գին էառ և ապա ետ թաղել. յորում աւուր էր առաջնորդ Ստե-
փաննոս վարդապետ և վէքիլ Նազր Ամիրխան, որ ԷՃ (700) ղու-
րուշ պարտք առին շահով և ետուն։

Նաև ի սոյն ամի Բարդուղիմէոս վարդապետ գնաց մօտ 365
փաշայն և ասաց, ես ԳՃ (300) քիլայ գարի կուտամ, զիս արա
առաջնորդ քաղաքիս. և փաշայն ազդեաց քաղաքի դօլվըթա-
ւորացն, և քաղաքացիք ոչ կամեցան։ Իսկ փաշայն ըստ հայց-
ման Հայոց զԲարդուղիմէոս վարդապետ ի բերդ ի դնդան ձգեաց
և կալեալ ի քաղաքէս Դ (4) մարդ, ամէն մարդոյ ԴՃ (400) փողա
եհար և ԳՃ (300) քիլայ գարին, զոր խոստացեալ էր նա, զայն
ի Վարագայ էառ և զՍտեփաննոս վարդապետ կրկին հաստատ-
եաց. և ԳՃ (300) ղուրուշ ի Բարդուղիմէոս վարդապետէն էառ,
յորոյ պատճառս բազում պարտք եղև Վարագայ։

Ի սոյն ամի Խալիլ տղայն զԿարմիր մաչիթի մօտի աղ-
բիւրն եբեր ի քաղաքս. բայց բազում տանց վնաս եղև ի քա-
ղաքին։

Նաև ի սոյն տարիս ի գիւղն Բերդակ ումեմն թուրքի կովն
ծնաւ, և էր անձն մի որթին, գլուխն Բ (2), բերան, աչք, և
ականջ Դ (4) և ոտք Զ (6), ի ծնունդ մայրն մեռաւ և թուրքն
այն եհար թլվղորթն և կարեաց և արար Բ (2) կտոր. և գլխոյ
կովն եբեր ի քաղաքն, զոր ամենեքեան տեսին և զարմացեալ
փառս տային աստուծոյ։

* Երևան։

ՌՃԿԱ (1712) փետր. ԺԲ (12) Հասան փաշայն եկն. սա զուխթայ (սօֆաայ) մի եռ ի ղազուխ, ե տատա մի սպան. և ի մարտի ԺԲ (12) զՍամէլի Նաղարն ի յէշ դրին և ի մէջ քաղաքին շրջեցուցին։ Եւ ի սոյն ամի Արճիշոյ դատաւորին երկու զոմէշ ջամուկ ծնան և ի միւս օրն դատաւորն մեռաւ։ Նաև յերկիրն Դաւաշու ամենն քրդի խոր մի տարեկան, խոր մի ցորեն, և խոր մի գարի, ամենեքեան ի քար դարձան, զոր բերեալ ի քաղաք ցուցին փաշային և օճախներոյ, որ և մեք ևս աչօք տեսաք։[42] Եւ ի սոյն աւուրս Նադր Չիրօն գինով եղեալ գնաց ի բաղանիս և քուֆր ետ Թուրքացըրն, որք առժամայն կալեալ զնա տարան փաշայի սարայն, և անդ դատն մահուամբ սպանին և ապա կախեցին ի փայտէ վասն Նախաստանաց ի տեսութիւն ռամկին։ Եւ ի սոյն օր հրամայաց, որ || դալալ ձայնեց ի մէջ շուկային, թէ. 366
քրիստոնեայ ոք մի իշխեսցէ սեւտակ կապայ, դեղին սօլ, և մըզս հագնել, և ոչ Թուր, Թուանք, խանչալ, դանակ պահել, և ոչ Թամքով, այարով ձի հեծնել և կամ գինով ի շուկայն շրջել և ոչ տաճկին գինի տալ։ Այս Հասան փաշայն յուլիսի ԺԴ (14) գնաց ի վերայ Խօշաբայ և նստաւ ԺԵ (15) օր, զի կամէր որ զխան Մահմատի լաճ հանէր ի բերդէն և զԻբրահիմ բէգ պարոն դնէր և ոչ կարաց. և յօգոս. Ը (8) դարձաւ։

Ի սոյն սեպ. Ը (8) քուրդ մի դող եմուտ Խալիլ աղայի այգին և շուն ըմբռնեաց զնա, վասն որոյ իմացեալ կախեցին զնա։

Այլ և Բ (2) Թուրքի կին ի յէշս դրին և շրջեցուցին ի քաղաքս։ Այլ երկու Թուրքի կին ածիլեցին (զհերս գլխոյն) և ի յէշ եղեալ դալալով շրջեցուցին և ապա քշեցին ի քաղաքէս։

ՌՃԿԲ (1713) հոկ. ԺԲ (12) Աբրահման փաշայն եկն ի Վան և ի սոյն դեկ. Դ (4)-ին գնաց։

Ի սոյն թիւ նորոգեցաւ Կտուց Ծովապատ անապատ սուրբ Կարապետու եկեղեցին սրբատաշ քարամբք, ձեռամբ Նորին առաջնորդ Սիմէօն վարդապետի և Երեմիային, բայց արդեամբք ամենայն քրիստոնէից։[43]

ՌՃԿԳ (1714) մարտի ԻԶ (26) Մուրթաղայ փաշայն եկն, 367
և յապրիլի ԺԳ (13) զխօջայ Մարութի Թոռն զՄարութայն և զՄինօյի լաճ զՍահակ կախեց։ Ի սոյն ամի խիստ ձիւնամեծ և կարի ցուրտ ձմեռն եղև, այնքան մինչ զի պղնձէ գուզումք և իբրեղք ի մէջ տանցն պատռեցան, և ի յունվար Զ (6) ի Ցայտնութեան գիշեր ԺԴ (14) արար ի ցրտոյ մեռան, Թող զայլսն. յաւուրս՝ Գ—Դ (3—4) աւելի կամ պակաս մեռանէին. և ի սաստիկ ձմեռն ցրտոյս լուաք, որ ի Ցարճէշ քաղաք Ա (1) լիտր փթիր ղուռուշ մի եղև և մէկ փաթ խոտ Գ (3) ղուրուշ և մէկ ղարար յարդ՝ ||| ղուռուշ և կէս. և Բ (2) խուրձ խոտ՝ լաւ ոչխար մի տային. և այն ևս հազիւ ի ձեռս անկանէր։[44]

Ի սոյն ամի Փիրկանց Ախիջան մեռաւ, որ ունէր եղբօր որդի և քոյր և քրոջ որդի. և Վանա ղուլն զտունս, զայգիս և դարպասն տիրեցին։

Եւ ի յուլիսի ԺԵ (15) Ուսուֆ աղայից Ժ (10) մարդ ի գի-

շերի զաղտ գնացին, զի զնո՝ աղի լաճ սպանցեն և ոչ կարացին, զի նոքա արթունք էին և սոքա փախեան. իսկ նոքա զհետ մտեալ կալան զմինն և տարեալ կախեցին։

Եւ ՌՃԿԴ (1715)-ին այս Մուրթաղայ փաշային ընաց ի վերայ Խօշաբայ Զէ[յ]նալ բէգ ‖ պարոն հանել և զԻբրահիմ բէգ ընել 368 պարոն. և ի գնալն՝ իմացեալ Զէ[յ]նալ բէգն բաղում զօրօք ելն ի դէմ փաշային. և ի Զանկայ դաշտն հանդիպեցան միմեանց և յոյժ պատերազմեցան. և յերկու կողմանց աւելի քան զԾ (50) այր անկան, մինչ զի և դատաւորն, որ էր միականի Աւղուլլահ աֆանդին մեռաւ, և փաշայի զլուխն ես վիրաւորեցին. բայց յետոյ Զէյնալ բէգ խիլայեաց զփաշայն և հաշտեցան։ Սա ի նոյ. Ի (20) մանզուլ եղև և ԻԱ (21) զափուջի եկն և զգլուխն եհատ։

Ի սոյն ամի մարտի Ը (8) յառաւօտէ շարժ եղև ի քաղաքս Վան, յորմէ ի յայգիքն սուրբ Յակոբայ վեր տուն մի փլաւ. վեց հոգի տակն մնացին, չորսն մեռան և երկուքն ապրեցան։ Նաև Բարզուզիմէոս առաքելոյ դմբէթն թռաւ և Խօշաբայ բերդի բաղանն խախտեցաւ. Ղալա սարայ բերդի յիշաղին վերայ քօշկն փլաւ և զյիշաղն աւերեաց, որ և բազում մարդիկ ի ներքև մնացին։ Այլ և Սաթմանից քօշկն փլաւ և զբազումս սպան. և այլ բազում գիւղք տապալեցան և յոլովք մնացին ի ներքև և բազում վնաս եղև Մահմտանայ երկրին։ Եւ ի սոյն ամի ի Ցարճէշ քաղաքի ի մեծի հինգշաբաթի գիշերն առաւօտեան ժամուն շարժ եղև, որ եկեղեցւոյ դմբէթն ‖ անկաւ, և ԼԷ (37) մարդ ի ներքև 369 մնացին. բայց խնամօքն աստուծոյ մինն մեռաւ և այլ ամենեքեան ապրեցան այլ շատքն սաղկատ եղեն։

ՌՃԿԵ (1716) յունվար ԺԸ (18) Ջանլի Մահմատ փաշայն եկն, որ Բաղլի (գուցէ Ֆաղլի) ասէին. սա հասեալ ի Ցարճէշ, զմուսալին իւր յղեաց ի քաղաքս, և հրամայեաց, զի ամենայն մեծամեծք և փոքունք ընասցեն ընդդէմ նորա մինչև ի Բերկրի, որ և ելին ամենայն զօրք քաղաքին աւելի քան զԵՌ (5000) անձինս. և հասեալ ի Բերկրի հանդիպեցան միմեանց և եղեն անձինք ՋՌ (6000) և գնացին ի վերայ Աբաղու երկրին և Մահմուտանայ բաղում և անասելի ոճիրս գործեցին, քանզի Եզիդու ազգն և զանմեղ քրիստոնեայսն առհասարակ սպանին, զտունս լի մարդով և զախոռս լի անասնօք այրէին և նոքա ի մէջ տոչորէին մինչև յելս շնչոյ. նաև Դ—Ե և Զ (4—5—6) անգամ սրով հարեալ սպանանէին. և զայլսն, որպէս զանասուն դանակաւ զենուին և զոմանս կախեալ յերկու ոտիցն յերկուս հերձէին և ձգէին յերկիր և զկաթնասունս ցրուեալ ի յերկրի ձիոց կոխան առնէին, զծերս և զպառաւունս սրով սպանանէին. զհայոց և զեզիդաց զարս և զկանայս զգեղեցիկս, զերիտասարդս և զմանկունս ՋԾ (60?) ‖ հոգի գերի բերեցին. Նաև ԼՌ (30000) ոչխարս և անթիւ ձիս և ջորիս, եղինս և զոմէշս, պղնձեղէնս և արծաթեղէնս 370 թալան բերին, որ թիւ ոչ մտանէր.[45] և զի էր առաջաւորացն ձմեռն ձիւնամեծ, և կարի ցուրտ էր. և շատք ի յահէն փախըստական եղեն ի լերինս և ի ձորակս, ի դարակս և ի սահմանս,

և անդէն ըքածեծք և ցրտասատոյց մեռան։ Իսկ այն ողորմելի գերիքն հետիոտս ի ճանապարհին առաջի ձիոցն թէ զինչ տանջանս կրէին, մանաւանդ խղճալի կանայքն ի ձեռս զազրագործ և անաստուած անօրինաց։ Եւ ի յունվար ԻԴ (24) եմուտ ի քաղաքս բազում գերեաւ և աւարաւ. և ի միւս գիշերին Գ (3) Եգիդի եղ ի պաղուխն. և ի յուն. ԻԶ (26) զԽալիլ աղայն սպան. և հասեալ ի մարտի ԼԱ (31), որ էր Յարութեան Զատկի մեծ շաբաթ օրն, ինքն մեռաւ, և զրերեալ գերիսն ոմանք ցրուեցան և զերծեալք փախեան և զոմանս քրիստոնեայսն գնեալ ազատեցին և զոմանս հանեալ ի հաւատոյն ուրացուցին։[40]

ՌՃԿԶ (1717) օգոս. ԻԶ (26) Դալի Հուսէն փաշայն եկն Խ (40) բայրաղօք. և քաղաքացիք ելին ընդդէմ և պատերազմեցան ընդ միմեանս ի Լէգքայ դաշտն, և զօրք փաշային յաղթեցին զվանեցիս և զբազումս վիրաւոր ‖ եցին, և զձիս, և զզէնս, և 371
զհանդերձս կողոպտեցին, որք մերկ և ամօթալի դարձան ի յետս և փաշայն գնաց ի յետս ի Ցաւանց, և զգիշերն անդ մնաց. և ի վաղիւն եմուտ ի քաղաքն, իսկ քաղաքացիքն այլ ոչ ելին ի դէմն։ Սա եկաց մինչ ի նոյ. ԺԳ (13), որ էր իւրեանց Ղուրբան բայրամ և ի նոյն գիշերի ելեալ գաղտ գնաց սակաւ զօրօք։[46]

Ապա եկն Չոլաքի Ուսուֆ փաշայն և շուտ մանզուլ եղև և գնաց. և դարձեալ եկն, և քաղաքացիքն ես կրկին ելին ընդդէմ մեծաւ փառօք. սա եկաց մինչ ի ՌՃԿԷ (1718) և մարտի ԺԳ (13) գնաց։

Եւ ի սոյն ամի յուլիսի տասն ղաղսւ մի լաճ պՏաճիկ Գուլամիրն և քուրդ մի ի ղազուխ հարին. և օգոստոսի ԺԵ (15), լուսինն, որ էր ԺԵ (15) աւուր, խիստ խաւարեցաւ և սևացաւ իբրև ժամ Բ (2) և ապա դարձաւ ի գոյն արեգական և յետոյ սակաւ սակաւ պայծառացաւ։

ՌՃԿԷ (1718) օգոս. Է (7) Բալաջի Մահմատ փաշայն եկն և ի փետր. մէկ մեծ խռովութիւն եղև ի մէջ Խալիլ աղայի լաճ Մահմատ բէգին և Խալիլ աղային. իսկ Մահմատ միաբանեցաւ ընդ Նոհ աղի լաճ Մահմատ բէգին, ելեալ առին զբերդն և ամ- 372
րացան. և չատ հարին, ի վերայ Ալի աղի ‖ տան. և Ալի աղայն փախստական լինէր տանէ ի տուն և նոքա ուր և լսէին թէ անդ է՝ հարկանէին զԹօփ, որ և բազում տանց վնաս եղև, յոլով մարդիկք մեռան իսկ Ալի տղայն ոչ կարաց համբերել, այլ ի փետր. ԻԸ (28) ելեալ գաղտ փախեաւ ի քաղաքէն և եղբայր իւր Աւդուլլահ աղայն և Թամուր աղի լաճ Մահմուտ քէհէն։ Իսկ զուլաղասիք հրամանաւ Թաղաւորին համարձակեալ Թալանեցին և այրեցին զտուն Ալի տղային, և զեղբօրն Աւդուլլահ աղային, և ապա յետ աւուրց առաքեցին խաբանօք բերին զՄահմուտ քէհէն ի քաղաքս, և յապրիլի Գ (3) սպանին զնա Թուանքով։ Եւ այս համբաւս տարածեցաւ ընդ ամենայն աշխարհս, թէ Վան քաղաքի զուլն ապստամբեալ է. և նոքա իջեալ ի բերդէն, զոմանս Թողին անդ պահողս, որպէս սեպհական ժառանգութիւն և ոմանք զքաղաքս տիրեցին, և բերդի նստողն ևս ի հրամանս սոցա կայր և մնացին այսպէս աւուրս ինչ։[41]

Եւ ՌՃԿԸ (1719) յունիսի ԺԸ (18) հրամանաւ Թագաւորին
Գօփրուլիի որդին Աւդուլլահ փաշայն եկն առնել դաւԹից և դա-
տաստան, քննել և իմանալ և հատուցնել ըստ գործոց. յորում
աւուրս էր ի քաղաքս Վան սոյն Գալաջի Մահմատ փաշայն, որ
և ինքն ‖ իւր ամենայն զօրօք ելեալ գնաց ընդդէմ և քաղաքի 373
դուլլադասիք զօրօք իւրեանց. և միաբան գնացին ընդ յառաջ
մինչև ի գիւղն Աղնականց, յայնկոյս գետոյն հանդիպեցան իրե-
րաց։ Լին ընդ նմա բազում անԹիւ հեծելազօրք, նաև յԱմԹայ
բէգն իւր զօրօք, Բաւայ և Ջզերու պարոններն իւրեանց զօրօք,
և այլ բազում հեծեալք և անհամար հետևակք։
Եւ ի վաղիւն ելեալ անաի եկին յԱղնականից դաշտն իջին.
և անդ մեր փաշայն մեծ պատիւ. արար նմա և զօրաց նորա։ Եւ
ապա նստեալ խօսեցան վասն ամենայն անցիցն եղելոց և զպատ-
ճառսն չարեաց։ Եւ նոյն ժամայն ի մէջ դաշտին եհատ զգլուխ
Ալի աղային և Նօհ աղայի լաճ Մահմաա աղային, և անդէն եԹող
ի մէջ դաշտին. և ինքն ելեալ զօրօք և բանակեցաւ ի մէջ դաշ-
տին Աւտնցու, և դրերդն դարձեալ յանձնեաց ի դիզաարս և յեն-
գիչար աղասին, և ինքն եկաց անդէն աւուրս ԺԵ (15) և ապա
գնաց զօրօքն իւրովք։[48]
Եւ յաւուրս սոյն Գալաջի փաշային Մօլայ Խրաըրի Թոռն
գինով եղեալ գնաց ի ՅարուԹիւնի տան վերայ վասն քուերն. և
զի արևն ի մուտ էր, ՅարուԹիւն և իւր դըրացի Ախիջան, զոր
Գառու ատամ ասէին, ‖ սոքա երկոքեանս նստեալ էին ի սեղան 374
ի տան դրան. և յանկարծակի տեսին զտաճիկ իջեալ ի պատէն
և եկն առ նոցա դինուք, և նոքա երկուցեալ մեծարեցին զնա, և
կանգնեալ ինքեանք նստուցին զնա ի վեր. և նա ասէ ցՅարու-
Թիւն՝ կոչեա աստ և զքոյրն քո. և նա ասէ՝ մեծ ամօԹ է քեզ
այդ ասելն, զի ահա մեք Բ (2) կարիճ, կեր և խմիր որչափ պի-
տի։ Եւ նա ասէ՝ ոչ, Թող նա և՛ գայցէ, վասն զի ես վասն նորա
եկեալ եմ. և Ախիջան ասաց՝ չամաչե՞ս որ ասես եկեալ եմ նա
ապով, ել և գնա։ Եւ նոյն ժամայն եհար զսուր ի սիրա Ախի-
ջանին և սպան զնա. և ՅարուԹիւն եհան զսուրն ի ձեռաց և
եհար զսիրտ և սպան զտաճիկն, և մաեալ ի տունն զքոյրն և ս
ոպան և ի յառաւօտն ել ինքնին և գնաց առ փաշայն և պատ-
մեաց զեղեալսն Թէ՝ տաճիկ եկն ի վերայ իմ տան, վասն իմ
քրոջս և սպան զդըրացին մեր, և ես սպանի զտաճիկ և զքոյրն
իմ։ Եւ նոյն ժամայն կալան զնա և եդին ի շղԹայս. այս եղև ի
սեպ. Ա (1) և պահեցին զնա մինչև ի նոյեմբեր Է (7) և ապա
կախեցին զնա և այլ տաճիկ մի ընդ նմա. և ՇԾ (800) ղուրուշ
արեան գին առին ի Յարաբուց հողի այգեստանեայց։
ՌՃԿԸ (1719) օգոս. Լ (30) ծերունի յաջի Ալի ‖ փաշայն եկն. 375
սա ի փետր. Ը (8) սպան զՆաման աղի լաճ Հուսէն աղէն և զՆա-
մաԹի լաճ Ալի աղէն, և այլ երեքեան, ի յահէն. վասն որոյ Ու-
սուփ աղէն իւրով զօրօք ել ի ներքին բերդ եհար զվրան և կանգ-
նեաց զրայրաղն, մինչև ի լոյս զմանկալն վառէր և Թօփ ձգէր
ընդդէմ փաշային. և Խալիլ աղի լաճ Մահմատ բէգ՝ այն որ զհետ

Նօհաղի լաճուն զբերդն գողացան և ի գալն Աւդուլլահ փաշային
փախեաւ, և այժմ ի կողմ այս փաշայիս է. և գիշերի աւելի քան
զՇԾ (500) Թօփ զարկին յերկուց կողմանց բերդէն ի քաղաք, և
ի քաղաքէն ի բերդ, և ապա Ծալիլ աղայի լաճն էառ ի փաշայէն
Ծ (50) ընտիր մարդ, և գնացեալ ելին ի բերդն վերին, և ի գի-
շերի իջին անտի հնարիւք ի ներքին բերդ. և մինչ Ուսուֆ իւ-
րով զօրօք նստեալ կային անհոգ ի մէջ վրանին, և. սոքա յա-
ռավօտէ յանկարծակի հասին ի վերայ նոցա զինուք և սուսերօք՝
հարին զվրան և աւարին զղէնս նոցա, և կալեալ զգլխաւորս նո-
ցին զվօթոնց Ուսուֆ աղայն, զԻբրահիմ քէհէն, զՄուստաւայ
բէգն, զՕսման աղէն, զՏուղանտի երեք լաճ, և զայլս մեծագոյնս,
կապեցին զձեռս, և. այլք փախեան և ցրուեցան. և զկապեալսն
տարան դէմ փաշային ի սարայն, և ի նոյն պահին զԺԴ (14)—
ի նոցանէ գլխատեաց. և Ժ (10) ի զազուխ եհար. և ի սոյն պատ- 376
ճառէ՝ ի Ծաղկազարդի կիրակէն, որ էր ապրիլի Ժ (10) զՀաւգո-
ղենց խօջայ Մաղաքեայն և զՊոր Ուսուֆն կախեաց. և յունիսի
Ե (5) զՆոհ աղի Պորն սպան. ի յունվարի ԺԵ (15) զԻբրահիմ
քէհէն և զկանտչագլուխ մօլայ մի ի յէշ հեծոյց և ի մէջ քաղա-
քին այնպէս խայտառակ շրջեցոյց դալալով։[49]

Սա զփաշայի սարային և զբերդի պարիսպն բազում տեղիս
նորոգեաց. զսարայի մէջի բակն մեծացոյց, և միւս ևս նոր դար-
գահ եբաց ի դուրս, և աւելի խարաջ մի էառ ի Հայոց։ Սա հրա-
մայեաց թէ տաճիկ ոք մի իշխեսցէ թրով և խանչարով շրջել ի
մէջ քաղաքին, որ և յոհէն ամենեքեան զէնընկէց շրջէին. և տղղս
Հայոց էին և խաղաղութեան։

Սա ի խնդրոյ տէր Իգնատիոսին՝ զՊետրոս առաջնոյ եկե-
ղեցւոյ դուռն զրսին երկսւ փեղկով ետ բանալ, որ Դ (4) ամսի-
ճանաւ ելանէին։ Սա ի յունվարի Ի (20) մանզուլ եղև և. ել ի
քաղաքէն և դնաց ի գիւղն Աւանց մինչ փետր. Բ (2) անդ եկաց
և ապա գնաց. և ի միւս ամին մօլտյք քաղաքին ժողովեցան և
եկեալ զՊետրոս առաջնոյ դուռն քակեցին. և. ինքն տէր Իգնա-
տիոս փախեաւ. և կալան Ե (5) մեծ ‖ իշխան և եդին ի բանդ. 377
և յեօթն եկեղեցեաց եօթն քէսայ տուգանս առին, որ բազում
ոսկեղէն և արծաթեղէն սպասք հալին և. եսուն և ապա թողին
իշխանաց զառաջին փոքր դուռն շինել։ Զայս ամենայն չարիքս
Ծալիլ աղայի լաճն գործեաց, և. ինքն փախեաւ Ստամբօլ, և անդ
սպանին զնա, և ընկեցին ի հրապարակ. որ շունք կերին զնա։[50]

ՌՃՀ (1721) փետր. ԺԸ (18) դարձեալ Ավտուլլահ փաշայն
եկն և մայիսի մէկն գնաց ի վերայ Ծօշարայ. իսկ Զէյնալ բէգ
պարոնն զեղբայրն իւր եթող ի բերդն, և ինքն էջ և եկն առ
փաշայն և մեծարեաց. և եղեն սիրելիք և բարեկամք. և փաշայն
մեծ պարգևօք դարձաւ ի քաղաք. և ի նոյն աւուր Օսմանցին
էառ զԹիֆլիզ։

Եւ հրամանաւ թագաւորին ի ՌՃՀԲ (1723) եկին ի Վան
Ամասիոյ փաշայն, Ուրհայու փաշայն, Զանգրու փաշայն, և այլ
փաշայք զօրօք իւրեանց և հեծելովք առ Ավտուլլահ փաշայն,

որ եղև նոցա զօրագլուխ և ռարասքար, և գնացին ի վերայ Դար-
սիյ և առին զԽօյ, զՈրմի. զԵրևան, զԹավրիզ, զՀամատան,
զՄուղան, և այլ բազում փոքր քաղաքս։
Բայց թէ որչափ անողորմ արիւնս հեղին ու գերի բերին,
որ ի թիւ և ի գիր ‖ ոչ մտանէ. զի ոչ մնաց աշխարհ, որ Դճ. 378
Եճ (400—500) գերի ոչ տարան. մինչ զի յՍտամբօլ Անկիւրեցի
նորընծայ կաթողիկոս Ըճ (800) գերի գնեալ ազատեաց. թող
զայն որ ուրացուցին. և այլազգի գերիս կրկին էին քան զքրիս-
տոնէից գերիս, որք ամենեքեան ցիր և ցան եղեն, և ցրուեալ
խառնեցան յայլ ցեղս և յազգս և ի լեզուս օտարս, և նեղեալք
ըստ ամենայն յամենայնի։ Եւ Ավդուլլահ փաշայն յամենայն
տեղիս զօրավոր և զօրագլուխս կարգեաց, և ինքն եկաց ի Թավ-
րիզ մինչև [ՌՃ] ՀԵ (1726) թիւն. և ապա Ալի փաշայն ի Թա-
գաւորէն եկն ի Թավրիզ և Ավդուլլահ փաշայն յօգնս. ԺԶ (16)
եկն ի Վան, և զորդին իւր զԱրղրահման ի տեղին եղ փաշայ
քաղաքիս. և ի սեպ. Գ (3) գնաց ի Յուրհայ։
Եւ ՌՃՀԶ (1727) այս Արղրահման փաշայս իւր սարայի մէջ
նոր բաղանիս շինեաց և ի Յուանուց ճանապարհն ի աղմոտ
տեղիս իբրև քայլս Ռ (1000) սալայատակս արար։ Սա քանզի
մանուկ էր և գինեսէր. ևս զի յՍտամբօլ տեսեալ փոքրիկ նաւեր
տուաւ շինել և փոքր թօփեր եա դնել ի մէջ, և ամէն երեկոյի
ոսկաւ մարդով մտանէր ի նաւն գինով և սազով զգիշերն ողջ
շրջէր ի վերայ ծովուն, թօփ ձգէր այսր և անդր, ուտելով և ըմ-
պելով ուրախանայր, և յա ‖ ռաւօտ ելեալ գայր յիւր սարայն. ի 379
մարտի ԺԸ (18) մանղուլ եղև և գնացեալ ի Տրապիզոն մեռաւ։
Թիւ ՌՃՀԷ (1728) Քանլի Մուստաւայ փաշայն եկն ի Վան։
Թիւ ՌՃՀԸ (1729) Արաբկերցի Մահմատ փաշայն եկն, որ
Փաշաջի ասէին. եկն վոյվոտայ ի Վան և խարտջ էառ։
Թիւ ՌՃՀԹ (1730) Գարայ Մուստաւայ փաշայն եկն, որ
Թավրիզ սարասղար էր. և փախեաւ էկաւ մօտ չավուշբաշին.
յափս արին, յետոյ գնաց։
Թիւ ՌՃՁ (1731) Արիֆ Մահմատ փաշայն եկն ի Վան։
Թիւ ՌՃՁԱ (1732) մեծ Թամուր փաշայն եկն ի Վան ապ-
րիլի Գ (3), աւաղ երկուշաբթին, և միւս օր ել և գնաց յԱրզրում,
մայիսի Զ (6) օրին դարձեալ եկն, և հասեալ ի Քարափոս՝ չաւ-
ուշբաշի Աւտուլլահ տղայն սպան. Նոհ աղի լաճ Ահմատ քէհէն և
այլք փախեան և զօրք փաշային զհետ մտեալ բազումս թալա-
նեցին, և շատս վիրաւորեցին, և այնպէս ջարդելով եկն եմուտ
ի քաղաքս. և Գ (3) դարգահն և պաղտան դուռն չանգալ և դա-
րաղաջ շինեց, ով ի դէմ տանէին՝ չանգալ ձգել տայր. և ամե-
նայն երկիր դողային ի յահէ նորա. և յայսմ ամի գնաց ի վե-
րայ Բաղիշոյ. ‖ զխանն փոխեաց, Գ (3) մեծ աղայ սպան, և բա- 380
զում գանձս էառ, և եկն դարձեալ ի Վան։
Եւ ՌՃՁԲ (1733) գնաց ի վերայ Աալմաստու մայիս ամ-
սոյն, և կողոպտեաց զնա. էառ զԱխրակ, Գ ԴՌ (3—4000) մարդ-
սուր քաշեց և դարձեալ եկն ի Վան. իմտատի սաֆարիա ժո-

ղովեաց քան զԿ (60) քիսայ աւելի. ի մայիսի Ի (20) էլ և գնաց ի վերայ Թավրիզոյ և էառ. և գրագումս ի Պարսից ազգէն կոտորեաց և գերի արար, որ թիւ ոչ գոյր։

Ի սոյն թիւ, յունիսի Ժ (10) օրին եզև գօնամայ Գ (3) օր և Գ (3) գիշեր. որ Թահմազն յետ դարձուցին ի Բաղդատ զօրքն Թօփալ Օսման փաշային։

Ի սոյն թիւ եկն ազգ մի Թաթար, որ մարդակեր էին, գնացին ի Թավրիզ առ Թամուր փաշայն. և փաշայն ի ղնջիլ եղած ղուզսաղներաց օր ԺԵ (15) մարդ թային տայր նոցա, որք մորթէին և ուտէին։

Ի սոյն ամի դարձաւ Թամուր փաշայն ի Թավրիզոյ և եկն ի Սալմաստ. իսկ Վանայ ղուլն՝ որք էին Թամուր աղի լաճ Ահմատ բէգ, Սէիտի Խրդըրի լաճ, Ալի աղի լաճ Օսման բէգ և այլ մեծամեծ աղայք, խորհուրդ արարին թէ փաշայն ոչ թողումք որ ի քաղաքս մտանէ. և Վանայ Մուսալիմ Ալի աղայն իմացաւ, մարդ յղեաց առ փաշայն ի Սալամաստ. և նա մէկ օր Սալ‖- 381
մաստու եկն ի Խօշաբ. իսկ Վանայ Հայք և Տաճիկք ի յահէն ղողային. և դիմեալ ի քաղաքն նորա շինած դարպազջներ ու չանգալներ ջարդեցին. փաշայն Գ (3) օր նստաւ ի Խօշար, թէ գան ի գէՖ, սակայն ոչ գնացին այլ դարգահներ գործեցին և թուանքչիք ի բաղան լցին. փաշայն իմացաւ որ կռուիլ կամին, ի Խօշարայ եկն ի Ղուրաշ գիւղն, և դուրս եղած ամէն քրիստոնեայ ռայէն գնացին ի մօտն. երկնչէին թէ թալանէ զինքեանս. և նա յուսադրեաց զնոսա ասելով թէ՝ մի երկնչիք, երթայք, նստարուք միամիտ ի ձիր տեղին։ Յետ գնալոյ նոցին, ինքն ևս հեծեալ ի ձին, ի Ղուրաշայ եկն ի Կենդանանից գեղջն առաջոՖանց, գնաց ի ծովն. եղերն ի բերդի նաւն. զի յետ ենգիչար տղասուն բանս եղեալ էին. ի գիշերի եւ ի բերդն և լցեալ զԹօփերն ձգեալ ի վերայ աղայոց տանց ուր և կամէր, և անճար Յնացեալ բացին ամենեքեան դրունս և փախեան. և ապա եկն փաշայն ի սարայն և նստաւ ի տեղի իւր և կալեալ զենգիչար աղասին սպան փոխանակ տալոյ ըերդին ինքեան։ Յետոյ սարասքարն խնդրեաց զնա ի Ղարս, և գնաց, անդ Առնաւուտ փաշայն եհատ զգլուխ նորա ի ՌՃՁԴ (1735) թիւ։

Ի թիւ ՌՃՁԵ (1736) քուրդ Իբրահիմ փաշայն եկն աստ, մեռաւ։ 382

Թիւ ՌՃՁՁ (1637) [Սէլիմ փաշայն] եկն. յետ զլուն (ղուլին) կռուաւ. շատ ռազիլութեամբ դուրս արին ի քաղաքէն գնաց։

Թիւ ՌՃՁԷ (1738) Մուսուլցի յաջի Հուսէն փաշայն եկն ի Վան. յետ ղլուն կռուան. ալչախ ինկաւ, որքան թախըմ ունէր ետ Օսման աղին, ինքն ահուղարով գնաց ի Մուսուլ։

Թիւ ՌՃՁԸ (1739) Վանեցի Օսման աղայն եղև Վանայ փաշայ. ի սոյն թիւ շինեցաւ Հայկավանից սուրբ Աստուածածին եկեղեցին։ Եկաց սա ի Վան մինչ ի ՌՃԴ (1741) և ապա մանզուլ եղև ի Մուսուլ. և անդ Հուսէն փաշայն եհատ զգլուխ նորա, զի ասին թէ Ֆէրմոնլի էր, վասն շինման Ներքին [բերդին]։

Թւ. ՌՃՂ (1741) Սուզանցի օղլի Օմար փաշայն, յետոյ Մուրթազայ փաշայն եկն, Մուսալիմ Սարխօշ Ալի փաշայն Գ (3) ամիս նստաւ և գնաց. Մուրթազայ փաշայն և Օմար փաշայն մնացին ի Վան. ռայէն շատ նեղացան ի յՕմար փաշայէն, ուստի հողեւոյս մեծ Ախիջան աղէն Ղարաստֆարեան առեալ զռայէն գնաց յԱրզրում առ Հոմալ օղլի սարասքար վազիրն. և կամէր ի դուռն թագաւորին գնալ, վասն որոյ ‖ առաքեաց ի դուռն Թագաւորին 383 եծանոյց զարարս նորին և զզալն սոցին ի Կարին. և բերեալ հրաման յղեաց ի Վան ի վերայ Մուրթազայ փաշային. և Մուրթազայ փաշայն եղբայրպաղիր գոլով նմա, սակայն զԹագաւորի հրամանն կատարեաց. յաւուր միում եկին երկոքին փաշայք ի բերդն, վասն ճաշ առնելոյ, և անդ կամեցան սպանանել զնա, և ոչ եղև հնար. և իջեալ ի բերդէն եկին Թավրիզու դռնով, քանզի Մուրթազա փաշայն ի Զաւուշբաշոնց տունն էր իջեալ, և Օմար փաշայն ի սարայն. հասեալ ի Թավրիզոյ դրան փոքրիկ ջամիին յառաջ, Օմար փաշայն կամենայ աղալաղասոնց փողան զնալ, սակայն ձին ոչ գնաց և շատ կանգնեցաւ ‖ ։[50]

Թւ. ՌՃՂԲ (1743) Արծկեցի Սուլէյման փաշայն եկն ի Վան մեծ սղութիւն եղև, որ քիլայ մի ցորեան հարիւր ղուրուշ ծախւաւ, լիտր մի ալիւր Գ (3) ղուրուշ, ամէն բան սոցա նման։

Թւ. ՌՃՂԳ (1744) Ղաբիբ Իյիթ Օմար փաշայն տեղիս եկն. մտնսուպ չունէր։

Թւ. ՌՃՂԳ (1745) [Թաղթայ Սաղկալ] Հուսէն փաշայն՝ սա սպան զՇկակ մեծ Օմար աղէն։

Ի սոյն թւ. Աստուածածնի պահոց Թահմազ եկն ի վերայ Վանայ. մէծ կրթլրղ եղև. աստուած ետ յետս դարձաւ։

Թւ. ՌՃՂԵ (1746) Զալիք Օմար փաշայն եկն. Բ—Գ (2—3) 384 ամիս եկաց, գնաց։

Թւ. ՌՃՂԶ (1747) Ղայաջի Աբդուլլահ փաշայն եկն. խօջէք շատ տուգնեց. Հայկավանից եկեղեցւոյ թառմէն (վերնատուն) փլաւ. տէրտէր օրհնէին, անտի ևս տուգանս էառ։

Թւ. ՌՃՂԷ (1748) Սինան Մուսատաւայ փաշայն եկն։ Եւ ի [ՌՃ] ՂԸ (1749) Ղարայմիրաքենց Լալէն մեռաւ։ Գ (3) օրէն ետք մարմին ի գերեզմանէն հանին, գլուխ կտրեցին, Ծաշունենց դռնէն կախեցին։ Ցայսմ ամի Գազանչոնց Սաֆար կախեցին, որ Խօչինկայ Շարամիրի տունն կոխեաց։

Թւ. ՌՃՂԹ (1750) Զաբբինի Օմար փաշայն եկն ի Վան. դրամ կտրեց. հինգ փարանոց արաց ԼԲ (32) փարայի, ամազանի ԻԵ (25)։ Դաւուդ աղէն սօլաղասի էր, ի մէջ չայիրին սպան։

Թւ. ՌՄ (1751) Աւտի Ջալալ օղլի Ցաջի Հուսէն փաշայն եկն, սա սպան զՆաբի Հասան, զՂաւուջի Ծուռն, Ըռէզի Լօլօն, ոտպոչներ[51] շատ սպանեց. խօջէք բռնեց, շատ դրամ էառ. հացն շատ թանգ էր՝ գարին ԻԵ (25) դ[ուրու]շ էր, ալիւրի լիտրն մինչ Բ (2) ղուրուշ. յղեաց Մուսուլայ շատ հաց բերաւ. լիտր աբասի մի իջաւ։ Անիծեալն (մոհթասըլ էր) թէ ինչ ‖ կերաւ, գրել ոչ անկանի։

ՌՄԲ (1753) Թօփչենց Մուստաւայ տղայն ‖ սարտազար Լաւանդ հետ ղուլին գնացին ի վերայ Թաղուրցւոցն, (քուրդի ցեղ է), Թաթար խանն այնպէս պարտեաց, որ ոչխարի պէս ամէնն եբաց (մերկացոյց), և խոյատառակ եկին տեղս։ 385

Թիւ ՌՄԳ (1754) Ղարսեցի Կոր (կոյր) Ուսուֆ փաշէն հետ ղլուն կռուան, մաուցին սարայն, էլան մաչիթ, բռնեցին թուանքի յառաջ. յղեաց Խօշաբայ մարդ ռեր, էլան դէմ չթողին, գիշերով զաղտ դոնէն ելեալ փախեաւ։

Ի սոյն ամի Խաչլի օղլին Արզրմայ Իբրահիմ փաշէն եկն, ԾԷ (57) օր նստաւ չայիր, գնաց։

Ի սոյն թիւ Շահսավար օղլի Մուստաւայ փաշէն եկն և գնաց։

Թիւ ՌՄԴ (1755) մարտի Ա (1) եկն [Գուրջի Հաճի փաշէն] Նորտվանց (դիւղ) նստաւ, քաղաք գալ չթողին, Իսա աղէն ասքար էառ գնաց դէմ, շատ մարդիկ մեռան, գիւղացիք ամեն փախեան, ցանքեր կերցուցին. յետոյ նէնգիչար աղասին նէնգիչարեօք, գաղեօք առին Իսա աղէն տարին մօտ փաշայն. Մարմետ (գիւղ) ետ տղային, ինքն մանկուլ եղև, գնաց. ԳՌ (3000) մարդ աւելի ունէր։

Ի սոյն ամի Իսա աղի լաճ Մահմուտ աղէն եղև ‖։ Ապա Սիջաք Մուստաֆայ փաշէն եկն ի Վան. Խօջայ Աբաք սպան Շխու Օմար աղէն։ Ի սոյն ամի, Համբարձման ‖ տօնին, մահն անկաւ. օր Ե—Ժ (5—10) մեռանէին ի Հայոց և ի Տաճկաց, եհաս մինչև աշունն, ապա վերացաւ ողորմութեամբն աստուծոյ։ 386

Ի սոյն թիւ սուրբ Խաչի պահոց՝ սուրբ Նշան հանին Գ (3) օր ի Տիրամայր եկեղեցին։

ՌՄԵ (1756) Ռաջաբ փաշայն եկն։

Թիւ ՌՄԷ (1758) դարձեալ Շահսաւար օղլի Մուստաւայ փաշայն եկն. հաց շատ սուղ էր՝ ցորեն Ի (20) ղուրուշ, հացի հոխեն Է (7) փարայ, և կորեկ ալիւր Լ (30) փարայ լիտր։

Թիւ ՌՄԹ (1760) Աղայ փաշէն եկն ի Վան. Թորադ օղլին քէհայ էր. շատ ջանաց թէ Իսա աղէն սպանի, ոչ կարաց. աղէն մօտ չգնաց բնաւ։

Ցայսմ ամի Դօրոյի Աղախանն խազինէ մի եհան։

Թիւ ՌՄԺ (1761) նոյ. ԺԲ (12) օրին Ջաբար օղլի Ֆէզուլլայ փաշէն եկն. սա սպան զԱւտի Քարիմի լաճն ենգիչարի գոլով Ալթմիշեդի օրթէն քշել ետ ձմռան ձեան վրայ։

ՌՄԺԱ (1762) զօնամտյ եղև Է (7) օր, քանզի սուլթան Մուստաֆային տղայ եղև։

Եւ ի սոյն թիւ Զօրան աղէն Խօշաբայ պարոնի լաճ բռնեց. Վանեցիք գնացին սաֆար ի վերայ Աբաղու. աղդիքէսիկ թօփտարան հետ. թօփ զարկողն Աւթանդիլն էր. Զօրան աղէն փախեաւ. բերդն առին։

Ի սոյն թիւ Բաղդադայ Սուլէյման փաշայն մեռաւ։

Ի սոյն թիւ ապրիլ ԺԴ (14) Ապարանից սուրբ Խաչ (վանք է) լոյս էջ կմրէթին բազում աւուրս. և բազում ուխտաւորք գնացին անդ և տեսին։ 387

Թիւ. ՌՄԺԲ (1763) եկն Քարիմ խան ի վերայ Սարդար Վաթալի խանին և հասրեաց զնա բոլոր տարին. և ի հասանել կէս ձմեռան՝ ռայ եկն, և էառ զՍրմի։

Ի սոյն թիւ. հանգեաւ Շամախեցի Ցակոբ կաթողիկոսն։

Ի սոյն ամի ապրիլ ԺԴ (14) նստաւ յաթոռն Սիմէօն արժանաժառանգ կաթողիկոսն։

Ի սոյն թիւ սեպ. եկին փահլիվանք և խաղացին ի վերայ պղնձէ թելի։

Ի սոյն փաշայի ժամանակ շինեցան Ցարարուց և Ցանկուսներաց եկեղեցիք, Էջմիածին, սուրբ Պօղոսայ և Ղուռուպաշայ եկեղեցիք և բաղում վանքեր։

Ի սոյն թիւ սպանին Երուսաղէմի ճանապարհին Զարուխչու Բարսեղ և Երիզու Նազարն։

Ի սոյն թիւ Այվազ օղլին կախեաց փաշայն երկու մարդ հետ։

Ի սոյն ամի Սարի փաշայն եղե սարասղար. գնաց ի վերայ Բաշխաւուխին, շատ ջարդուաւ. հինգ, վեց մարդով հազիւ փախեաւ և եկն ի Կարին։

Ի սոյն թիւ դեկտ. ԻԹ (29) այս Ֆէյզուլլահ փաշայս մանգուլ եղե գնաց ի Սուազ։

Թիւ ՌՄԺԳ (1764) ապրիլ Ա (1) Խասաքի Քօռ ‖ Ահմատ փաշայն եկն. շատ ջտնաց թէ Իսա աղէն սպանանէ, և ոչ կարաց. աղէն ի սարայն ոչ երթայր, այլ փաշայն ամէն օր աղենց այգին էր։ 388

Ի յայս թիւ, և ի սոյն փաշայի ժամանակ, աղէն իւր տղայ Մահմուտ աղէն սուննաթ դուլյունի արաց. բայց յոյժ զարմանալի թամաշայ կայր ի ֆշանքէն։ Այս թամաշի յետին գիշերն հարին բաբբար Օխանին Աստուածատուրի տղայ Օհաննէսին, և մեռաւ յունիսի ԺԵ (15)։

Ի սոյն թիւ Համադանցի Ասլան ի մէջ խանին ի Թավրիզ ի գողոյն սպանաւ։

Ի սոյն թիւ սեպ. Ժ (10) Ահմատ փաշայն գնաց ի Փիլս։

Թիւ ՌՄԺԴ (1765) Քօրփուլի օղլի Նաման փաշէն, որ Խուշ աւէին, եկն ի Վան, շատ հարամ ունէր. իւր երկու լաճուն սուննաթ թօյի արաց, Բճ (200) տղայ աւելի սուննաթեցին։

Ի սոյն ամի եկին ի Մշոյ Ե—Զճ (5—600) ձիաւորք և բէգզատայք, խանք, և խօջայք, յաղագս Իսա աղի աղջիկ Ունգաւսուն խանըմին շարբաթ խմելոյ. ՃԻ (120) թաբաղ, լաւ սարասար ղումաշ փակած ձգած ի վերայ թաբաղիցն, այնպէս ջէրգայ սօլաղասոնց Մահմուտ աղենց անէն բոլորան Թօփչոնց դռնով գնացին աղենց տուն. շատ լաւ թամաշայ եղև։

Ի սոյն ամի րինա էմինին սկսաւ բերդ և բաղանններ[53] նորոգել։

Ի սոյն ամի նայ. Ի (20) Ամիր Մուստաֆայ փաշայն եկն։ 389

Ի սոյն՝ Ցաջի Ահմատ աֆանդու լաճ Ահմատ բէգին հարսանիք արին, Թօյ բէգին քանի շուն այարած եէտակ կու քաշէր, շատ կերաւ ‖ ։

*Թիւ ՌՄԺԵ (1766) մայիս ամսի ԺԴ (14) ահաղին շարժ եղև ի մայրաքաղաք Ստամբօլ. անթիւ տեղեր փլան, և շատ մարդ մեռաւ։*

*Ի սոյն թիւ. Քօլոզ փաշայն եկն ի վերայ Մաղսուա բէգին, թուանքով հարին գաղտ ի Մշոյ (երկիր) և սպանեցին։*

*Ի սոյն՝ Ակրփու. քարի ջուրն (գետն) այնչափ շատցաւ, որ մտաւ Թավրիզու գուռն, զի մայիսին այնքան անձրև եկն։*

*Ի յայսմ ամի, յունիսի ԺԴ (14) Ամիր Մուստաֆայ փաշէն մանզուլ եղե, գնաց իւր երկիրն։*

*Թիւ ՌՄԺԶ (1767) մայիսի ամսոյն, Եազիջի օղլի Իբրահիմ փաշէն եկն. և ի սոյն ամի հոկ. ԺԴ (14) ասա մեռաւ։*

*Ի սոյն օրս Ղարաոաֆարեան լուսահոգի Սահակ մեռաւ։*

*Ի սոյն ամի դեկա. ԻԵ (25) օրին, առաջնորդ Գրիգոր վարդապետ՝ սուրբ Նշան ի Տիրամայր եկեղեցւոյն հանեալ տարան եղին յէջմիածին՝ ի ժամանակս Իսա աղին, քանզի տեղս փաշայ ոչ գոյր, ձեռնտուութեամբ Մ. Թովմա աղային և Պարիկ աղային. և քանզի Տիրամայր եկեղեցւոյ ժո ‖ ղովուրդք ոչ կամէին,* 390 *Զ (6) խօջայս ըմբռնեաց և ՋԾ (600) ղուրուշ տուղանս էառ. յառաջագոյն Վարագ կամէին տանել, յետոյ եղին յէջմիածին։*

*Ի թիւս այս ՌՄԺԷ (1768) [Աղկսկայու] Հասան փաշէն. եկն ի Վան. ապա քուրդ Իբրահիմ փաշէն եկն խանգակները հորդեցին։*

*Թիւ ՌՄԺԸ (1769) Մոսկովու սաֆար բացուաւ. Ի սոյն թիւ նոյ. Զ (6)-ին Գրիգոր առաջնորդ վախճանեցաւ։*

*Թիւ ՌՄԺԸ (1769) դեկա. ամսոյն, յետ մեռանելոյ Խալիլ աղային՝ Թամուր աղտյն կամէր լինել սօլաղասի, ոչ ետուն. վասն որոյ մեծ խռովութիւն եղև ի մէջ նոցա. և սկսաւ ղուլն դառնալ ի վերայ Թամուր աղային. միաբանեցան ընդ Օսման փաշայի ողին ղաշինա եղին, յետոյ յաւելան ի կողմն նորա Շաթր օղլի Իսմայիլ բէգ, Էսար աղասին, Աշտրի լաճն, Իսախանի Իբրահիմ րէգն, Իբզի լաճերն, Սօղբաթ օղլին, և այլ անթիւ մարդիկք ամէն եղեն ի կողմն Թամուր աղային։ Եւ զի տեղս փաշայ ոչ գոյր, ոխլահով և ղուլուլայով շուրջ գային. յաւուր միոջ վստահացեալ հարին փշտօյով զկոր (կոյր) մուֆթին, որ Գառըմ աֆանտի ասէին և սպանին. մեծ ոխ էր. և ապա սկսան կռուել՝ ռամազանն մինչ ի գլուխ. շուկայք դատարկեցին և բոլոր փակեցին ի յահէ թալանելոյ. և ‖ մարդ ոչ կարէր ելանել ի տանէ* 391 *յահէ ղուլուլայիցն, որ այնչափ հարկանէին միմեանց, ևս առաւել գիշերն. յետ մազըըրին, քանիցս անգամ եէրիշ աբարին ի վերայ միմեանց, և ողջ ռամա զանին մինչ ի. բայրամն այնպէս կռիւ արարին, մինչև խաբարաոին թէ Դամաթ Հուսէն փաշայն զալոց է տեղս. յաւուր Եհսար աղասին Թամուր աղայի խօսքով գնացեալ ընդ Նէնգիչարի՝ աղասուն խօսեցան, գիշերով դամիր դափուն բացին, էլաւ. բերդն վերին. ցածրի բերդն Ղասար օղլի Ուսուֆ աղայն էր բռներ. սկսան երկու կողմանց և մաչիթաց և թամարխներուց միմեանց հարկանել. Բ—ԳԾ (2—300) մաթարխս աւելի կայր. կամէին թօփ ձգել ի վերայ Իսա աղենց տան, բայց*

ոչ կարոյին, նըկեան ի թագաւորէն, քանզի Իսա աղի թաթարն
միշա դնայր, զայր այսր անդր, և փաշայն ևս մօտեցաւ գալու։
Թիւ ՌՄԺԹ (1770) յունիսի Ա (1) Դամաթ Հուսէն փաշայն
եկն յԱրճէշ. ելան Թամուր աղէն, և Օսման փաշի լաճ, Շաթր
օղլին, բոլոր զուլ հետն, Գ—Դ (3—4) էլ մեծագլուխ մօլայ գնա-
ցին, հասան Բանդիմահին (գետն), մօլէքն յղեցին մօտ փաշէն
զանգատ ի վերայ Իսա աղին. փաշէն վերուց (ասաց) թէ՝ ես
գալոց էի քաղաք, դուք վասն Է՞ր եկիք։ Ապա Բ (2) մօլի վիզ 392
եհար կտրեց. ‖ Նաֆասի մօլէն Ռասուլ աֆանդին յղեաց Աղթա-
մար. աղէք պրծան փախեան ի Բայազիտ։ Միւս օր Իսա աղէն
իւր բօլուգով դնաց դէմ փաշային, խալաթ հագաւ. փաշէն առին
եկին քաղաք։ Դիր յղեցին Բայազիդ թէ՝ ռայ եկէք. ոչ եկին։ էն
վախտ՝ որ մտաւ քաղաք՝ Կարայ քէհէն Ջավհար աղի լաճու վիզն
եղարկ։ Ի (20) օրից յետ Թամուր աղէն հետ միւս աղայից,
զուլն ամէն, Է—ՌԺ (7—800) ձիաւոր կաֆիր, եկին լեցուտն Այ-
գեստան Դօրգայենց թաղ. Մաշուրենց թաղ, Հասան բէգենց թաղ,
ռիրղան մաթարիս բռնեցին, Կարայ քէհէն, Իսա աղէն, երեք
թօփ տարան գնացին Գլոր դար (թաղ). Խ—Ծ (40—50) թօփ
աւելի հարին աներաց, վերջ որ զուլն եռեւ չլինիր, մէկ մէկ
մեծեր տօնմիշ եղան, զուլն՝ որ ի վերայ Թամուր աղին
էր, փախեան. Յացին երեք ֆարմանլի աղայք, անոնք ալ
անճար Յացեալ փախեան ի Բաղդադ. Թամուր աղէն, Շաթր
օղլին, Ամէտի Օսման փաշի լաճն, 1184 (1770) սաֆարի ԺԸ (18)։
Թիւ ՌՄԻ (1771) յունվարի Զ (6) մեք պստիկ Ջատիկ (ծնունդ)
արինք այլազգիքն ալ մեզ հետ ռամազանի բայրամն արին։
Ի սոյն թիւ յունվարի ԺԵ (15) ս. Սարգսի պահոց երկու-
շարթին Իսա աղէն մեռաւ։ 399.
Թիւ ՌՄԻ (1771) Թամուր փաշէն եկն՝ Օս ‖ ման փաշի լաճն
ընդ նմա. Օսման փաշի լաճն եղև սաղաղասի, Շաթր օղլին՝
ազաբաղասի։ Ի սոյն թիւ օգոս. ԺԵ (15) Կայմաղ փաշէն եկն,
[թուղթ ոչ ունէր], ի սորա աւուրս մուֆթու թոռն ‖‖ ձգեցին
երկրով դնացին Մաղաղաջի օղլոնց այգին, ծառերն կտրեցին,
լամուկն փախաւ։
Թիւ ՌՄԻԱ (1772) յունվարին, ծովն պաղեցաւ Ե (5) օր,
որ յԱրճիշայ գային ի Ցանապաան և յԱնապատէն գային ի դուրս
և գնային։
Ի սոյն թիւ, մայիս ԺԵ (15) Վանայ զուլն Բ (2) խարաջ
առին ի Հայոցս, և կէս զուրուշ էլ հարամ խարաջ։
Ի սոյն թիւ սեպ. Ա (1) Սիլահդար Խալիլ փաշէն եկն. Թա-
մուր աղէն եղև սաղաղասի. քէհէն, զուլն գնացին ի վերայ Նա-
րեկայ Սէյիդ աղին, ռայ եկն, բերդն քակեցին։
ՌՄԻԲ (1773) մայիսի ԺԷ (17) օրին այս Խալիլ փաշայս՝
Գարայ չաւուշի լաճ Մուստաւայ աղէն արար ազաբ աղասի. քա-
նի օրից ետք՝ ի մէջ սարային սպանեց, [պիղծ] լէշն մաչիթի
առջև թաղեցին.
Ի սոյն թիւ գնացին Արծկու Մուրատ բէգի վրան։

Թիւ ՌՄԻԴ (1774) Մալաք ԱՏմատ փաշայն եկն։ Ի սոյն Թիւ. Թամուր փաշայն Թուղթ առեց էկաւ Վան, որ գնայր Խարբուդ մանսուպ։

Ի սոյն Թիւ ՄաՏմաա բէգ եղև սաղ աղասի. Օսման փաշի տղայն բայրաղ ոչ ‖ տայր ||| փլաւ կերցնելով, խալաթ տալով, ղո- 394
րով բերել ետ։ Ի սոյն Թիւ, Մ. Թովմայ աղէն ստ աստուած փոխեցաւ։ Ի սոյն Թիւ Թօփչոնց Օմար աղայն և Ջամուշչու լաճեր կռուան. Օմար աղէն ղնաց վէր Ջամուշչոնց տան, քարով Տարին սպանեցին Մինդան օղլի՝ Օսման էլ Տետն։

Թիւ ՌՄԻԴ (1775) օղոս. ԻԱ (21) Վանեցի Թամուր փաշայն եկն Վան մաոուր, և սկսաւ տնփոխարէն ողորմուԹիւն Տաւաքել ի Տաճկաց։ Սա սպան զԴուռուտ աղի լաճն Օսման աղէն և զՍօլրաԹ օղլին. Օսման աղէն ի մէջ խաղնային խեղդեցին, Սուլէյման աղէն բերդն սպտկեցուցին [օան Նման]։

Թիւ ՌՄԻԵ (1776) մայիսի ԻԴ (24) ԱՏմատ բէգ և գափուջի բաշին գնացին յՍաամբօլ։ Ի սոյն Թիւ եկաւ միրի խաղնայ ՃԻ (120) քէսայ Թամուր փաշային։ Ի սոյն սեպ. Զ (6) օրին Ախիջան մեծափառ իշխանաց իշխան ղնաց Ստամբօլ։

ՌՄԻԶ (1777) սեպ. Ա (1) Ախիջան բարետոՏմ և քրիստոսասէր աղայն եկն յՍտամբօլայ. Թօփչոնց Ռասուլ կախեց փաշէն։

ՌՄԻԸ (1779) մայիս ԻԸ (25) այս Թամուր փաշայս մեծ սաֆար արար ի վերայ Բաղիշոյ, և Տետն ունէր Մշոյ Մաղսուդ փաշայն. և գնաց անդ Նստաւ ԺԷ (17) օր. երկիրն ամէն սայ եկին. Նարուղ բէգ, որ ի մէջ բերդին էր, ԻԳ (23) քէսայ ստակ տ.ւաւ ‖ և ապա փախեաւ. և կալեալ Ը (8) ոգի մեծամեծաց ի Մուշ 395
առաքեաց ղընջըլով, և Բ (2) սպան. և առեալ բազում Տարկս մեծաւ յաղԹուԹեամբ եմուտ Վան։

Այս Թամուր փաշայն ղչափն՝ բազաղի ղաղ, ախԹարների քարեր ամէն դամղալամիշ արաց։

Ի սոյն Թիւ, Նոյեմբերի ամսին գնաց Աղբակու Նստած էլն (քըրդաց) եՏաբ. Դ—ԴՌ (3—4000)ոչխար երեր տեղս. Ջբուխսաբայ Օսման աֆանդին կախեց, ապա երեք էլ ուրիշ տաճկի կին եդ ի Նաւ քշեց. Ղարասաֆար օղլու մօրուքն կտրել ետ, որ սարի մէլիք էր։

Ի սոյն Թիւ, դեկտեմբեր. այս Թամուր փաշայս՝ ՄխիԹարենց Բաբանիկն Սըռով, որ գիշեր կոր Գազկէ աղջկայ տուն բըռնեցին Է (7) անուանի կնիկ ետ ղնել ի Նաւ քշել. որ են այսոքիկ. կոր Գազկէ աղջիկ, Քուլխանչու Եղիոէն, ԽանԹուման, Քաչալադջիկ, Օղաբաշու կնիկ, Ղաղանչու կնիկ, Նորշինցու կնիկ, պըղծեալք։

Թիւ ՌՄԻԹ (1780) յունվար ԺԱ (11) վասն ծովացեալ մեղաց մերոց յայանեցաւ. աստուածային խրատապատժուԹիւն, զի Սամարջնոց ԱբրաՏամու որդին Շայենն, որ Նոր Տարսնիս էր արած ԺԵ (15) կամ Ի (20) օր, քանի բեռ բարուտ էր առած որ Արզըրում տանէր, յանկարծակի կէս օրէն ետք մին բեռ ‖ ալավ- 396
լամիշ եղև մէկ լիք կաբաս բարուտ Տետն. աստուած Նշանց չիտայ, մարդկանց շատ վնաս ետ իւրեանց և երկրին, զի յական

թօթափել բոլոր տունն քանի դրկրցի անով դաշտ եղև, և Ե (5) հոգի մնացին ի ներքոյ հողին, և բազումք ինչք և ապրանք դիր ու ցան եղեն ի ներքոյ հողին և յայլ տեղիս. լուաք թէ գերան մի ձղեալ էր ի տաճկայ պօռերն, և խախտեալ ղրանց, տանց և փէնջարայից ոչ ոք կարէ ընդ գրով արկանել, մինչ զի Իսքալայ գտգուն և Թովրիգու դուռն և բոլոր շրջակայ մահլէքն թաղթըրամայք ||| և երդոց չարչուայք ամէն ի վայր թափեցան. և նոյն պահ երկրի մեծաւորք սաղ աղասին, սօլ աղասին, Անմէա բէգ, բոլոր Հայք և Տաճիկք եկին և սկսան առժամայն հող փորել. լինի թէ ներքոյ մնացեալք ողջ գտանիցեն. ջանք տալով դտին դնորահարս և տղայ մի փոքր ի գրկին, իբր թէ կամեցեալ է փախչիլ և անդէն տուն եկեալ էր ի վերայ, և մեռեալ էին երկոքին. և միւս օր հանին Գ (3) մեռեալ, որ էին Բ (2) մեծ տղայ ԺԷ—Ի (17—20) տարւոյ, և աղջիկ մի. և յետ Բ և Գ (2—3) աւուրց որք փորէին գհողն այրեցեալ դերանք և ինչք դուրս հանէին ամէն ոչընչացեալ և այրեցեալ, և այն էր զարմանք, որ հիմն ի վեր էլ ելեալ և վերն ի || յանդունդ իջեալ. և այնպէս 397
խառն ի խուռն էր, որ ոք չկարէ զկերպ բանին գրել։

Ի սոյն թիւ Ստամբօլայ ծոֆն պաղեցաւ, որ ասի Բօղազիչի, զի կարի ցուրտ եղե. Զըզիրայ և ի Բաղդատ մեծամեծ ձեանք եկին, որ ի վաղուց հետէ չէր եղեալ։

Ի սոյն ապրիլին Քարիմ խանն մեռաւ։ Սարդարի լաճն սպանին։

Ի սոյն թիւ, յուլիս ԺԲ (12) օրին Նասիպ աֆանդիի մէհիտն գէլեր փարալամիշ արին։ Յուլիս ԺԳ (13) օրին այս Թամուր փաշայս գնաց ի վերայ Զուլամէրկու Աւդուլլահ բէգին, ԻԳ (23) քէսա ստակ ետ, լաճն յղեաց մօտն, և Լ (30) աւուր վերայ դարձաւ և եկն ի քաղաքս։

Ի սոյն թիւ նոյ. ԺԳ (13)-ին այս Թամուր փաշայս՝ Քաչալ աղջիկ և իւր էրիկ դէմ միմեանց կախեաց, և Գալի Իբրահի մի լաճ ի մէջ սարային փարալամիշ արաց և իւր տուն և Սալիմ աֆանտու տուն այրեաց։ Ի սոյն ամիսս, Զըբաշենց Յակոբ Գահվաջի Սարդսի եղբայրն սպան, և Ցառմայ առին ի նմանէ։

Թիւ ՌՄԼ (1781) յուլիսի Զ (6) արքայն Վրաց Հերակլ եկն ի վերայ Երևանայ քաղաքի ԽՌ (40000) զօրօք, և շատ աւերութիւն արաւ. և երկիրն բոլոր քանդեաց և այրեաց. վերջ ՃԾ (150) գիւղ քշեալ տարաւ ԼՌ (30000) հոգիս, և ՃՌ (100000) տաւարս համարով, որ տասանորդն իւր էր ԺՌ (10000) և ինքն ի մարդ || - 398
կանէ վերացեալ գնաց ի Թիֆլիզ։

Ի սոյն թիւ, ի քաղաքս Վան Ե (5) հոգի թուրք ի գիշերի միում սպանին տաճիկ մի ի մէջ իւր տանն. և իմացեալ փաշայն ||| ։

Ի սոյն թիւ, յուլիսի ԺԶ (16) Սահաբ Ախիջան մեծահամբաւ աղայի հետն գնացաք յԱղթամարայ սուրբ Խաչն յուխտ և երկրպագութիւն աստուածաընակ տաճարին և սրբոյ Խաչին, Վարդավառի կիրակէն։

Ի սոյն օրս փոխեցաւ առ աստուած պայծառ ջահն սուրբ եկեղեցւոյ Սիմէօն որաբաղան գերիմաստ և աստուածընտիր կաթողիկոսն, և նստաւ յաթոռ տէր Ղուկաս սրբազան կաթողիկոսն. տէր աստուած կեանս երկանս պարգևեսցէ նմա։

Ի սոյն թիւ., դեկտ. ԻԷ (27) մեծ և ահագին շարժ եղև ի քաղաքն Թավրիզ, որ բոլոր քաղաք տապալեցաւ. և անթիւ մարդիկ մեռան և ի ներքոյ հողին մնացին, որ ականատեսքն ասացին թէ՝ ահագին քաղաք իբրև բնական բլուր մի եղև, որ ամենևին քաղաքի նշմարանք ոչ երևէին. նաև շրջակայ դաստարայք, այսինքն Խոյ, Ուրմի, Դունայի, Սալմաստ, և ի քաղաքս մեր Վան ևս շարժեցաւ և ողորմութեամբն աստուծոյ ոչինչ վնաս եղև։

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հմմտ. «Մ. Ուռհայեցի ժամանակագրութիւն», էջ 46—49։
2. Հմմտ. նույն տեղ, էջ 50։
3. Հմմտ. XXVI ժամանակագրություն, էջ 544։ Տես էջ 558, ծանոթ. 27։
4. Հմմտ. VI ժամանակագրություն, էջ 119, տես էջ 124, ծանոթ. 43։
5. Շահ-Աբաս I-ը իշխել է 1587—1628 թ. թ.։
6. Հմմտ. «Պատմութիւն Ա. Դաւրիժեցւոյ», էջ 86—87։
7. Հմմտ. նույն տեղ, էջ 56։
8. Հմմտ. նույն տեղ, էջ 71—79։
9. Հմմտ. նույն տեղ, էջ 79—92։
10. Մանրամասնությունները տես նույն տեղ, էջ 198—214։
11. Տես էջ 199, ծանոթ. 36։
12. Սույն վկայության մեջ երկրաշարժի տարեթիվը սխալ է նշված։ Մեր հաշվումներով 1646 թ. զատիկը կընկնի մարտի 29-ին, իսկ ավագ ուրբաթը՝ մարտի 27-ին։ Սույն երկրաշարժը իրականում տեղի է ունեցել 1648 թ.։ (Հմմտ. Ա. Դավրիժեցի, էջ 489, Գրիգոր դպիր Վարագեցու ժամանակագրության հետ, «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 62—63)։ Սակայն, այստեղ էլ կարծում ենք, սխալ է նշված տարեթիվը, որովհետև 1648 թ. ավագ ուրբաթը կընկնի մարտի 31-ին։
13. Հմմտ. «Պատմութիւն Ա. վ. Դաւրիժեցւոյ», էջ 494—503։ «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 63։
14. Փաշաների այս կարգը բնագրում նշված է տաճկերեն (արաբերեն) թվանշաններով, Հիջրեի թվարկությամբ, այն վերածեցինք սովորական (արաբական) թվանշանների։ Փակագծերում գտնվող տարեթվերը ցույց են տալիս, թե Հիջրեի տվյալ թվականը մեր թվականության հաշվումներով երբ է սկսվում և վերջանում։ Այդ հաշվումները վերցրել ենք ակադ. Հ. Օրբելու կազմած „Синхронистические таблицы" (Ленинград, 1940) աշխատությունից։
15. Հմմտ. «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 109։
16. Զաքարիա Ագուլեցին այս դեպքերը նշում է 1677 թ. ներքո։ Տես և հմմտ. նրա «Օրագրությունը», Երևան, 1938 թ., էջ 133։
17. Հմմտ. «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 109—110։
18. Հմմտ. նույն տեղ, էջ 125։
19. Հմմտ. նույն տեղ, էջ 111։
20. Հմմտ. նույն տեղ, էջ 112—113։
21. Հմմտ. նույն տեղ, էջ 113։
22. Հմմտ. նույն տեղ, էջ 113, 125։
23. Հմմտ. նույն տեղ, էջ 113—114, 126։
24. Հմմտ. նույն տեղ, էջ 114, 126։
25. Հմմտ. նույն տեղ, էջ 115։
26. Հմմտ. նույն տեղ, էջ 115։
27. Հմմտ. նույն տեղ, էջ 116։
28. Հմմտ. նույն տեղ, էջ 117։
29. Հմմտ. նույն տեղ, էջ 118։
30. Հմմտ. նույն տեղ, էջ 119։
31. Հմմտ. նույն տեղ, էջ 118։

32. Հմմտ. նույն տեղ, էջ 119։

33. Հմմտ. նույն տեղ, էջ 126։

34. Հմմտ. նույն տեղ, էջ 119—120։ Բնագրում «ՌՃԺ» ձեռվ։

35. Հմմտ. նույն տեղ, էջ 120—121։

36. Հմմտ. նույն տեղ, էջ 127, վերջինիս մեջ սույն վկայությունը խիստ համառոտ է։

37. Հմմտ. նույն տեղ, էջ 127։

38. Հմմտ. նույն տեղ, էջ 127։ Վերջինիս մեջ սույն վկայությունը բավական համառոտ է։

39. Հմմտ. նույն տեղ, էջ 127։

40. Հմմտ. նույն տեղ, էջ 128։

41. Հմմտ. նույն տեղ, էջ 128։

42. Հմմտ. նույն տեղ, էջ 128։ Առաջարկվող, ինչպես և բազմաթիվ այլ վկայություններ ցույց են տալիս, որ սույն ժամանակագրությունը որպես սկզբնաղբյուր, հանդիսացել է Հ. Խալֆայանի անունով մեզ հասած ժամանակագրությանը։

43. Հմմտ. նույն տեղ, էջ 128։

44. Հմմտ. նույն տեղ, էջ 128։

45. Հմմտ. նույն տեղ, էջ 128—129։

46. Հմմտ. նույն տեղ, էջ 129։

47. Հմմտ. նույն տեղ, էջ 129։ Վերջինիս մեջ սույն վկայությունը խիստ համառոտ է։

48. Հմմտ. նույն տեղ, էջ 129։ Վերջինիս մեջ սույն վկայությունը համառոտ է։

49. Հմմտ. նույն տեղ, էջ 129—130։ Սույն հատվածից հետո հաջորդ վկայությունները համարյա նույնությամբ գտնում ենք Հ. Խալֆայանի ժամանակագրության մեջ։

50. Հ. Խալֆայանի ժամանակագրության համապատասխան հատվածում սույն կտորն ամբողջական է, այդ պատճառով վերջինիցս այստեղ կբերենք առաջարկվող ժամանակագրության թերի մնացած մասը. «Վասն որոյ Մուրթուզայ փաշայն Օմար փաշային հրաւիրեաց ի ճաշ ի տունն իւր. և նա յակամայ գնաց առ ի գնալոյ երկվարին ըի երիցս չահ կանգնեցաւ, և ետ ուտելոյ ճաշին Աղուան ումն հարեալ ահ ու վայ խանչարաւ պատճառ սէյր անելոյ խանչարին, և Մուրթուզայ փաշայն չոքեալ ի վերայ սրտի նորա կարեաց զգլուխ նորին և առաքեաց յԱրզրում, և ապա եկն, Ախիչան աղայն իւրայնովքն»։ (Նույն տեղ, էջ 135)։

51. Հ. Խալֆայանի մոտ «ագաբուզներն» ձևով (էջ 136)։

52. Տես և հմմտ. նույն տեղ, էջ 137։

53. Հ. Խալֆայանի մոտ «բանտեր» (էջ 140)։

XXVI

## ԱՆԱՆՈՒՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ (ԴԱՐԸ ?)

*Մատենադարանի № 3964 ձեռագիրն աղոթքների, փիլիսոփայական, պատմական և այլ նյութերի ժողովածու է, ընդօրինակած զանազան մարդկանց կողմից XVII—XIX դարերում։ Ժողովածուի 78-րդ թերթում գտնվում է ստորև բերվող համառոտ ժամանակագրությունը, որն ընդգրկում է 885—1309 թվականներին վերաբերող մի քանի տեղեկություններ։ Ժամանակագրության հեղինակի մասին ոչինչ չենք կարող ասել։ Եթե ընդունենք, որ ժամանակագրությունը մեկ անձնավորություն է կազմել, ապա կարելի է ենթադրել, որ այն XIV դարի առաջին տասնամյակից շուտ առաջ գալ չէր կարող, սակայն դրա համար հավաստի և անվիճելի փաստեր չունենք։ Սույն ժամանակագրության վերջին մասը՝ սկսած 1292 թվի «... առաւ Հռոմկլայն ի Մսրայ սուլթանէն կաթողիկոսն Ստեփանոս...» վկայությունից մինչև վերջ, գտնում ենք Մատենադարանի № 482 ժողովածուի 54ա էջում։ Այս տեղեկությունները խիստ համառոտ են, մինչդեռ ժամանակագրության առաջին մասը, որը վերաբերում է Բագրատունիներին և սրանց ժամանակաշրջանին, մի փոքր ընդարձակ է։ Ամենից հավանականն այն է, որ գործ ունենք ժամանակագրական երկու տարբեր հատվածների հետ, մեկը երևի դրված Սյունիքում, մյուսը Կիլիկիայում, որոնք հետագայում միացվել են իրար։ Տողատակ տրված են 482 ժողովածուի ժամանակագրական հատվածի տարընթերցվածները։*

## XXVI

Ի թվին ՅԼԴ (885) զԱշոտ Բագրատունի թագաւոր օծին, 78ա
Գէորգ կաթողիկոսին, հրամանաւ ամիրպետին ամիր Ահմատին
խորհրդով Գրիգոր Սուփանայ Սիւնեցի իշխանի և միւս Գրիգորի
Դերենկայ Արծրունեաց իշխանի, որ թագաւորեաց ամս Ե (5) և
վախճանեցաւ.[1] Եւ նստաւ որդի նորա Սմբատ ի տեղի հօր իւրոյ,
որ յետոյ նահատակեցաւ ի Յուսփայ.

Իսկ ի թվին ՅԾԸ (909) ի գալն Յուսփայ զօրավարին
տաճկին, որդի Դերենկայ Արծրունոյն Գագիկ ապստամբեալ ի
Սմբատ թագաւորէ, խորհրդով Յուսփայ, թագաւորէ ի Վասպու-
րականի.[2]

Իսկ ի թվին ՅԿԲ (913) կացուցանի սպարապետ եղբօր որդի
Սմբատայ Աշոտ. Եւ որդին Սմբատայ թագաւորի՝ Աշոտ կայսրն
Ռոմանոս թագաւորեցուցանէ ի տեղի հօր իւրոյ յաշխարհս Հա-
յոց.[3] Եւ իշխէին Բագրատունիք Շիրակայ և Այրարատու մինչ ի
Գեղամ և մինչ ի Յուխտիսն և մինչ ի Կարին և մինչ ի սահ-
մանս Վասպուրականի և մինչ ի Ձորոցգետն և մինչ ի Գարդման
և Սիւնիս կատարեալ էր ի նոցանէ: Ապա ի նուազել Բագրա-
տունեաց թագաւորութեանն և ի զօրանալ ձեռին իսմայելակա-
նի հատեալ և բաժանեալ տեղին ամենայն գա՞ գլխաւոր նախա-
րարացն և թագ կապեալ ինքեանց թագաւորեցին նախ Արծրուն-
եաց Գագիկ և ապա Վրաց բդեշխն Ատրներսեհ և Աղվանից Հա-
մամ և Ձորոյգետեցիքն, որ Կիւրիկեանք կոչին նաև Կարուցն և
Վանանդացն, որ Բասենեանք կոչին:

Եւ ապա Սիսականք Սմբատ որդի Սահակայ որդւոյ Աշոտի, 78բ
որ ունէր կին զՇահնդուխտ դուստր Սեւադա իշխանի Աղվանից և
տուեալ էր զթոռն իւր ըզդուստր Վասակայ որդւոյ իւրոյ զԿատր-
միտէ կին Գագկայ թագաւորի որդւոյ Աշոտի, որ շինեաց զըլխ-
րատեսիլն զմեծ կաթուղիկէն յԱնի, հրամանաւ սուլթանին Խո-
րասանու, թագաւորէ Սմբատ ի վերայ Սիւնեաց աշխարհի.

Ի թվին ՆՂԸ (1049) Վրաց թագաւորն Դաւիթ և Հայոց Գա-
գիկ ի Վանանդ, Յունաց Մոնամախ զօրացան Վիրք և տիրեցին
մերոյ աշխարհի, և Օրբելեանքն յառաջ եկին.[4]

Ի ՈՀԳ (1224) թվին սկիզբն ելանելոյ թատարին և տիրե-
լոյ բոլոր աշխարհի.[5] Որոց յառաջ եկին և տիրեցին Ջ (1251)
թվին Ելիկում և Սմբատ և Տարսայիճ որդիք Լիպարտին:

*ՉԽԱ (1292) առաւ Հռոմկլայն ի Մսրայ սուլթանէն և կաթողիկոսն Սահփանոս և ամենայն սրբութիւնք վերեցան։*

*Ի թվին ՉԽՁ (1297) էր աշխարհակալ Ղազանն և եպիսկոպոս Սիւնեաց Ստեփանոս Տարսայիճի որդի և եպիսկոպոս Թագեոսի Առաքելոյ[ն] Տիրացու, որ բազում նեղութիւն կրեաց յան օրինաց յաւերել տանց և շինուածոց վանից ի չարագլխէն Նավռուզայ։*

*Եւ թագաւոր Կիւլիկեայ տանն Հեթում բարեպաշտօն և հայրապետ Գրիգոր Անաւարզացին։*

*Ի ՋՃԽԶ (1197) թվին թագաւորեաց Լևոն Բագրատունեաց ի Կիլիկիա։*[8]

*Ի ՋՃԾԺ (653) թվին յետ ծննդեանն Քրիստոսի ելն Մահմատն։*

*Ի ՋՃՀԸ (1229) թվին Հայոց, ել Թաթարն և գլխա[ւոր] զօրուն էր Չարմաղանն։*

*ԷՃԾԴ (1304) խարաճն եղաւ։*

*ԷՃԽԱ (1292) Հռոմկլայն աւերեցաւ։*

*ԷՃԾ (1301) Ղազան մեռաւ։*[9]

*ԷՃԾԸ (1309) Ապուսայիտն*[10] *մեռաւ։*

---

*1 Թվին ԷՃԽԱ փխ. ՉԽԱ, Հռոմկլայն աւերեցաւ, և չիք։ 2 Սահփաննոս, գերեցին 3 ի չիք, ԷՃԽՁ փխ. ՉԽՁ։ 4 Ստեփաննոս, Թադէոսի։ 5 նեղութիւնս 6 յաւերել։ 7 Նաւրուզայ։ 10 ի չիք, Լէոն։ 12 ի չիք, Մահմատայ։ 14 գլուխ փխ. գլխա[ւոր]։ 17-րդ տողը չիք։ 18 Ղազան։ 19 Ապուհայիտ խանն։*



504—25

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տես էջ 260, ծանոթ. 16, 18։

2. Տես և համա. Թ. Արծրունի «Պատմություն տանն Արծրունյաց», Ս. Պետերբուրգ, 1887, դպր. Դ, գլ. Գ, էջ 284—288։

3. Աշոտ Երկաթի թագավորության ժամանակի մասին տես էջ 260, ծանոթ. 20։

4. Սույն հատվածը վերցված է Ստ. Օրբելյանի պատմությունից։ Տես և համա. նույն տեղ, էջ 373։

5. Խոսքը վերաբերում է Խորեզմի շահ Ջալալ-էդ-դինի 1225 թ. դեպի Հայաստան կատարած արշավանքին։

6. Տես և համա. էջ 86, 99, ծանոթ. 120։

7. Սույն հատվածը վերցված է Ստ. Օրբելյանի պատմությունից։ Տես և համա. նույն տեղ, էջ. 473։

8. Տես և համա. էջ 77, էջ 51, ծանոթ. 9։

9. Ղազան ղանը մահացել է 1304 թ. մայիսի 17-ին։

10. Արդյո՞ք Աբու-Սայիդն է— մեռած 1335 թ. նոյեմբերի 30-ին։

## XXVVII

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐԱԿԱՆ ՄԱՆՐ ՀԱՏՎԱԾՆԵՐ

*Այս անվան տակ տալիս ենք ժամանակագրական մի շարք հատվածներ, որոնք գերազանցապես դեպքերին ժամանակակից անձնավորությունների կողմից արձանագրված եղելություններ են։*

*Ա. Բրիտանական թանգարանի հայերեն ձեռագրերի ցուցակում[1] № 116-ի տակ նշված ձեռագրի տարբեր էջերում հանդիպում ենք ժամանակագրական մի քանի տեղեկությունների, որոնք մեծ մասամբ վերաբերում են Կիլիկիայում տեղի ունեցած դեպքերին։ Այդ տեղեկությունները սկսվում են 1102 թվականից և հասնում մինչև 1382 թվականը։*

*Բ. Մատենադարանի № 3189 ժողովածուի 91 թերթում գտնվում է Հուլաուի հաջորդների ցանկը։ Ժամանակագրությունը սկսվում է դեպի Անդրկովկաս կատարած մոնղոլների առաջին արշավանքով և վերջանում 1359 թվականին Ջելաիրների շեյխ Ուվեյսի գահակալության հիշատակությամբ։ Ենթադրում ենք, որ այս ժամանակագրությունը XIV դարի երկրորդ կեսից առաջ կազմվել չէր կարող։*

*Գ. Ժամանակագրական հատվածը գտնվում է № 84 ժողովածուի 282բ էջում։ Այն վերաբերում է XIV դարի մի քանի նշանավոր վարդապետների մահվան ժամանակին։ Ժողովածուի և ժամանակագրական տեղեկությունների գրության ձեռ տարբերվում է միմյանցից, այդ պատճառով ենթադրում ենք, որ № 84 ժողովածուի ընդօրինակությունից (1614 թ.) հետո, ուրիշները վերոհիշյալ տեղեկությունները մի որևէ վավերագրից մուծել են այնտեղ։ Ժամանակագրական հատվածի հեղինակի հարցը չկարողացանք պարզել, սակայն կարելի է ենթադրել, որ նա XIV դարի վերջին քառորդից առաջ ապրել չէր կարող։*

*Դ. Ժամանակագրական տեղեկությունները գտնվում են №№ 3854 ժողովածուի 206բ և 4231-ի 71ա էջում։ Ժամանակագրական այս հատվածը սկըսվում է 846 թ. Գանձակի կառուցման և վերջանում 1338 թվին վերաբերող վկայություններով։ Տեղեկությունները խիստ համառոտ են, որի պատճառով հնարավոր չէ թեկուզ մոտավոր բան ասել ոչ նրա հեղինակի և ոչ էլ կազմելու ժամանակի մասին։ Սակայն հնարավոր է, որ վերջին վկայությունները դեպքերին ժամանակակից անձնավորություն արձանագրած լինի։*

---

[1] „A cataloque of the Armenian manusckript in the British museum" London, 1913, p. 290—292.

[2] *Գ. Հովսեփյանը Մխ. Այրիվանեցու մահվան տարեթիվը պարզելու առնչությամբ օգտվել է ժամանակագրական այս հատվածից։ Հավանորեն տպագրական սխալի պատճառով հրատարակության մեջ «ՉՁԷ»-ի փոխարեն տպագրված է «ՉՃԷ» (տես Գ. Յովսէփեան, «Մխիթար Այրիվանեցի», Երուսաղէմ, 1931 թ., էջ 15)։*

Ժամանակագրական սույն հատվածի խորագրի՝ «Վասն անցեալ աւուրցն» ձեր, մեզ ենթադրել է տալիս, որ նրա սկզբնական բնագիրը թերևս խորագիր չի ունեցել և որ վերոհիշյալ խորագիրն ամենայն հավանականությամբ դրվել է հետագայում, դրանով իսկ հասկացնել տալով, թե առաջարկվող տեղեկությունները վերաբերում են անցած օրերին։ Այս վկայությունները թեև խիստ համառոտ են, բայց և որոշ չափով վստահելի ու կարևոր տեղեկություններ են պարունակում։ № 4231 տարբերակի տարընթերցվածքները տրված են տողատակ։

Ե. Ժամանակագրական վկայությունները գտնվում են 1355 թ. ընդօրինակած ժողովածուի 147ա էջում (Ձեռագիր № 6938)։ Տեղեկությունները վերաբերում են 1457—1534 թվերին։ Վերոհիշյալ տեղեկությունները տվյալ ժողովածուի մեջ ընդօրինակվել են հետագայում, հավանաբար դեպքերին ժամանակակից մի անձնավորության կողմից։ Առաջարկվող վկայությունները խիստ համառոտ են, այդ պատճառով ոչ միայն հնարավորություն չունենք հեղինակի հարցը պարզելու, այլև նրանք ոչինչ չեն ավելացնում այլ աղբյուրներից մեզ արդեն հայտնի միևնույն փաստերին։ Կան վկայություններ էլ, որոնք ստույգ չեն, օրինակ Ջահանշահի սպանության տարեթիվը և այլն։

Զ. № 482 ժողովածուի 52բ, 54ա էջերում գտնվում են ժամանակագրական երկու փոքրիկ հատվածներ, որոնք ժողովածուի մեջ մուծվել են նրա երկրորդ գրչի կողմից և միանգամայն առանձին հատվածներ են։ Առաջին հատվածն (էջ 52բ) ընդգրկում է 1467 թվականից մինչև շահ Սեֆու (1629—1642 թ. թ.) ժամանակաշրջանը։ Երկրորդ հատվածն ընդգրկում է 1525 թվականից մինչև 1576 թվականի դեպքերը։ Երկու հատվածի նյութն էլ վերաբերում է Ակ-Կոյունլուների վերջին ներկայացուցիչներին և Պարսկաստանի Սեֆյան դինաստիայի մի շարք թագավորներին։

Է. Հալեպի հայերեն ձեռագրերի ցուցակում[1] գտնվում է 1311 թվից առաջ ընդօրինակված Սսի մայր Մաշտոցի նկարագրությունը։ Այդ նկարագրությունից իմանում ենք, որ Մաշտոցի դատարկ էջերում գտնվում է Կիլիկիայի մի շարք կաթողիկոսների ցանկը, որի մի մասն արձանագրել են իրենք կաթողիկոսները։ Տեղեկությունները վերաբերում են 1380 թվականից մինչև 1797 թվականին։ Բնագրում փակագծերում կատարված լրացումները պատկանում են ցուցակի հեղինակ Ա. Սյուրմեյանին։

Ը. № 1486 ժողովածուն ընդօրինակվել է 1597 թ. (էջ 196ա) հետագայում մեկ ուրիշը ժողովածուի 1ա էջում արձանագրել է օսմանական սուլթան Մուստաֆա I-ի երկրորդ անգամ գահ բարձրանալու հանգամանքները։ Տեղեկությունները վերաբերում են 1618—1622 թվականներին։

Թ. Համարի տակ գտնվում են երեք փոքրիկ տեղեկություններ, որոնք վերաբերում են պարսկական երեք թագավորների գահակալության տարեթվերին՝ 1629—1666։

Սույն տեղեկությունները գտնվում են № 3194 ժողովածուի վերջին պահպանակի վրա, որոնց գրության ձևը տարբերվում է ժողովածուի գրիչ՝ Ազարիայի գրության ձևից։ № 3194 ժողովածուն ընդօրինակվել է 1676 թ. այսինքն ժամանակագրական հատվածի վերջին վկայությունից 10 տարի հետո, նշա-

[1] «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց Հալէպի և Անթիլիասի ու մասնաւորաց» Բ հատոր, կազմեց Արտաւազդ արքեպիսկոպոս Սիւրմէեան, Հալէպ, 1936, էջ 31—32։

*նակում է այդ տեղեկությունները № 3194 ժողովածուի մեջ մտել են նրա ընդօրինակությունից (1676 թ.) հետո, թերևս ժամանակակցի կողմից։*

*Ժ. № 745 ժողովածուի ընդօրինակությունից՝ 1607 թ. հետո, ուրիշները վերջինիս 193-րդ թերթի և սկզբի պահպանակի վրա ավելացրել են մի քանի տեղեկություններ, որոնք վերաբերում են 1654—1678 թ. թ. և արձանագրված են ժամանակակից տարբեր անձնավորությունների կողմից, հետևապես նրանք ստույգ են և վստահելի։ Առավել հետաքրքիր են Ճահուկի Շողակաթ և Երնջակի ս. Կարապետ վանքերի ու սրան հարակից շենքերի վերաշինման աշխատանքներին վերաբերող տեղեկությունները, որոնք զգալի չափով շեղվում են մեզ հայտնի վկայություններից։[1]*

*ԺԱ. Ժամանակագրության այս մի քանի տեղեկությունները, որոնք վերաբերում են 1679—1703 թ. թ., գտնվում են 1418 թ. ընդօրինակած № 5175 ժողովածուի VI թերթի վրա։ Կարծում ենք ժամանակագրական տեղեկությունները հեղինակի ժամանակակից դեպքերին են վերաբերում, նշանակում է նա XVII դարի երկրորդ կեսի և XVIII դարի սկզբի անձնավորություն է։*

*ԺԲ. № 615 ժողովածուի վերջին էջի՝ 59բ, վրա հավանաբար գրչի կողմից արձանագրված են պատմական մի քանի տեղեկություններ, որոնք չնայած ընդգրկում են բավական մեծ ժամանակաշրջան՝ 611—1654 թ. թ., սակայն շատ համառոտ են և քազմաթիվ այլ աղբյուրներից մեզ արդեն հայտնի։*

*ԺԳ. Սույն տեղեկություններն արձանագրված են № 7816 ժողովածուի վերջին էջի (43բ) ներքևի ձախ անկյունում, ժողովածուն ընդօրինակելուց հետո դեպքերին ժամանակակից ղարաբաղցի կամ գանձակեցի մի անձնավորության կողմից։ Վկայությունները վերաբերում են 1734—1758 թվականներին։*

---

[1] *Տե՛ս Մ. Սմբատեանց «Նկարագիր Ս. Կարապետի վանից Երնջակայ և շրջակայից նորա», Տփխիս, 1904, էջ 1—4։ Ա. վ. Սեդրակեան «Հնութիւնք հայրենեաց ի գաւառին Երնջակու», Վաղարշապատ, 1872, էջ 4—18։ Ալիշան, «Սիսական», էջ 378—380։*

XXVII

Ա

Համառաւ պատմութիւն ժամանակաց։

Եղև թափումն Երուսաղէմի և տիրեաց Գունդուֆրէ տրպոյլուննւ։[1] 290

Ի թվին ՇԾԱ (1102) վաղճանեցաւ պարոն Հայոց Կոստանդին, և էառ զիշխանութիւնն անդրանիկ որդին Թորոսն |||.[2]

Ի թվին ՉՀԲ (1323), գնաց տէր Կոստընդին կաթողիկոսն, առ սուլտանն Մսրա |||։ 291

Ի թվին ՊԼԷ (1388), ի մայիս ԺԸ (18) յանկաւ ի Քրիստոս Թորոսն, որդի պարոն Օշին տուայ արուն ու պարոն աստուած Ցակսբանց։

Ի թվին Հայոց՝ ՉԾԴ (1305) Ղևոն թագաւոր, որդի պարոն Թորոսի, ի Քրիստոսի սուրբ ծնընդեանն աւրն ձիաւոր զիս գՀեթումս և տուցն տէր Ջամբոլա Հայոց։[3]

Ի թվին ՉԿԶ (1317) Աւշին թագաւոր յղրկեց զիս զՀեթումս, յառ ըռէ Ըռուպէրտն տւաոիրաներն ըրինձնի և յԱնափլն։[4]

Ի թվին ՉՂԳ (1344) Կի թագաւորն Հայոց յղրկեց զիս զՀեթում ախտուցն տէր Ջամբոլայս Հայոց, ի Կոստնդնուպօլիս վասն իր թադուհէ (sic), որ բերի ի յերկիրս, գնացի ի դեսպանութիւն, նայ ոչ կամեցաւ դալ ի յերկիրս, կեցայ ի դուրս, ի յերկրէս, ամիս Զ (6) դարձայ ու եկի յերկիրս։

Ի թվին ՇԺԳ (1064) բարձաւ թագաւորութիւնն Հայոց։[5]

Ի թվին ՊԼԱ (1382), ի հոկտեմբերի Ա (1) ազատեցաւ Լեվոն թագաւորն Հայոց ի Մսրայ ծառայութենէն, ու գնաց ի Գազալանք։[6]

Ի թվին Հայոց ՊԾԳ (1404), դեկտեմբերի Է (7) օրն, ի այշպակտուս աաարն, ու սուտուն համազայի |||

Ի թվին ՊԺԸ (1369)-ն, ի մայի[ս] ամսուս Ի-ն (20) երեկ Տարսոյ Նայիպն շուհ, որ է որդին, ի վրայ Սըսու, ի շաբաթ օր, կովեցան յուսինդին ու իրք մի վզեն չկարցին անել՝ ||| 292

Ի նոյն թիւս ՊԼԱ (1382), ի նոյեմբերի Ա-ն (1), յամատան ԺԳ (13), նստաւ Պտրևուին, սուլտան Մսրա։[7]

## Բ

## ՎԱՍՆ ԱՌԱՋԻՆ ԽԱՆՈՐԱՑ ՈՐ ՆՍՏԵԼ ԷՆ Ի ԹԱՎՐԷԶ 91ա

Երբ առաջին Թաթարն դուրս էրեկ թիւն էր ՈՀ (1221)։[8]
Երբ Մանգու ղանն եբեկ թիւն Ջ (1251) էր։[9]
Երբ Արղուն ղանն նստաւ թիւն ՋԳ (1254) էր։[10]
Երբ Հուլաւունն ‖ նստաւ թիւն ՋԵ (1256) էր։[11] 91բ
Երբ Ղուլին փախեաւ թիւն ՋԺԱ (1262) էր։[12]
Երբ Ապաղէն նստաւ. թիւն ՋԺԳ (1264) էր։
Երբ Բէրէնի դուրս էրէր թիւն ՋԺԴ (1265) էր։[13]
Երբ Արղունն ծնաւ թիւն ՋԺԶ (1267) էր։[14]
Երբ Ահմատն նստաւ ՋԼԱ (1282) էր։
Երբ Արղունն նստաւ թիւն ՋԼԳ (1284) էր։
Երբ Քեղաթուն նստաւ թիւն ՋԼԵ (1286) էր։
Երբ Բահատինն նստաւ թիւն ՋԽԵ (1296) էր։
Երբ Ղազանն նստաւ թիւն ՋԽԷ (1298) էր։
Երբ Խարբանդէն նստաւ թիւն ՋԾ (1301) էր։
Երբ Բուսաիտն նստաւ թիւն ՋԿԶ (1317) էր։
Երբ Ղուռումչէն թալան արար ՋԿԸ (1319) էր։
Երբ Սուլթիրէն[15] նստաւ թիւն ՋՂ (1341) էր։
Շխ Հասանն նստաւ թիւն ՋՂԳ (1344) էր։[16]
Երբ Աշրաֆն նստաւ թիւն ՋՂԶ (1347) էր։[17]
Երբ Վայիսն նստաւ ՊԸ (1359) թիւն էր։[18] 93ա

## Գ

## ՎԱՐԴԱՊԵՏԱՑ [ՎԱԽՃԱՆ]ԻԼՆ[19] 282բ

Հանգեաւ ի Քրիստոս Ներսէս վարդապետն ի վանս Գլաձորոյ թվին Հայոց՝ ՋԼԳ (1284) ի փետրվարի Զ (6)[20] ի փառս։

Վաղճանեցաւ սուրբ վարդապետն Մխիթար Այրիվանեցին թվականիս մերոյ ՋՁԶ (1337) փետրվարի Ժ (10)։[21]

Յոհաննէս Որոտնեցին փոխեցաւ ի Քրիստոս թվին ՊՀԵ (1426).[22] Ի նոյն աւր ծնեալ յորում վախճանեալ և այս է հակիկ վարդապետն։ Եւ էր սայ գաւառաւ Որոտնեցի, յաշխարհէն Սիւնեաց, ի գեղջէն Վազատնոյ։

Վախճանեցաւ Զաքարիա կաթողիկոս Աղթամարցին թվին ՊԽԲ (1393) յունիսի ԻԶ (26)։[23]

## Դ

## ՎԱՍՆ ԱՆՑԵԱԼ ԱԻՈԻՐՑՆ[24] 206բ

Թիւն ՄՂԵ (846) շինեցաւ Գանձակ։[25]
ՆՂԵ (1046) շինեցաւ Հաղբաա և շարժն եկն։
ՈԺԱ (1162) առաւ Գվին։[26]
ՈԻԵ (1176) խաւարեցաւ արեգակն։

---

34 թվին։ 35 եկն շարժն։ 37 ՈԻԱ փխ. ՈԻԵ։

ՌԼԳ (1184) զԵրուսաղէմ առին Տաճի[կ]քն։[27]
ՌԾ (1201) առաւ Բջնի։[28]
ՌԾԲ (1203) || առաւ Տաւուշ։[29] 207ա
ՌԵ (1156) առաւ Ականայ։[30]
ՌՀԴ (1225) սուլտանն եհար զԻւանի ի Դառնի։[31]
ՌՀԵ (1226) թաթարն երեկ և կալաւ զՏակունք։[32]
ՌՁԱ (1232) թաթարն եառ ըզԳանձակ։[33]
ՌՁԵ (1236) թաթարն երեկ ու ծածկեաց զաշխարհս և կալաւ զԱւագն ի Կայնի։[34]
ՉԿԸ (1319) երեկ Ղուռումչին։[35]
ՉՀ (1321) շարժն երեկ։
ՉՀԵ (1326) Չալպանն գնաց ու չերեկ։[36]
ՉՁԴ (1335) Մուսայիթն մեռաւ աշունն։[37]
ՉՁԷ (1338) Թամուրթաշն երեկ։

## Ե

ՋԶ (1457) եկեալ է շարժն յԵզրնկան։[38] 147ա
ՋԺԲ (1463) սպանել է Հասան պակն զՃիանշան։[39]
ՋԻԳ (1474) կոտորեց խուանդքարն Ըզհասան պակն։[40]
ՋԼԱ (1482) եկաւ կրկին շարժն յԵզրնկայն։[41]
ՋԽԷ (1498) եկաւ մահ սաստիկ։
ՋԽ (1491) գեղով մեռաւ Աղուպ փոթշահ։[42]
ՋԾ (1501) եկաւ շահ Իսմայիլն։[43]
ՋԿԳ (1514) Սելիմն կոխեց զշահն։[44]
ՋՁԳ (1534) եկաւ Սուլեմանն։[45]

## Զ

Ի թվին ՋԺԶ (1467) Ուզուն Հասան Ալի անուն, որ էր ի 52բ
Վան քաղաք զիւր հայրն եսպան՝ զՃհանշահն և ինքն՝ Ուզուն Հասան նստաւ ի թախտն։[46]

Ի թվականին ՋԺԵ (1466) Ճիանշահն տիրեաց բազում աշխարհաց և գաւառաց բռնութեամբ իւրովի կամօք մինչև ի Խորասան։

Ի Քրիստոսի թվականէն ՌՇՀԵ (1575) շահ Թահմազն յայտնեցաւ և յառաջեաց, և էր շահ Իսմայէլն ի Ղահղահ բերթն ի բանտի, ի դուրս եկն, և ել ի թախտն և թագաւորեաց։ Եւ զուհուր եղև Խուտապանտին և նստաւ թագաւոր։[47]

Ի նոյն թվականին ՌՇՁԵ (1585) Ամիր Համզան ի թախտն ել և Գ (3) ամ թագաւորեաց։[48]

Յարարչութենէն ՑՋԿԹ (6969) ամին և ի մարդեղութենէ աստուծոյ բանին ՌՇԽԶ (1546) ամին, և ի թագաւորութեան կողման հիւսոռ և արևելից շահ Թահմազին,[49] որդւոյ Իսմայէլի,

---

1 տաճկունք։ 3 Տաւշ։ 5 զևանի սուլտանն եհար ի Գառնի։ 6 թաթար, զտաճկունք՝ փխ զՏակունք։ 7 էառ։ 8 և ծածկեաց փխ. ծածկեաց։ 9 զԱւաքն, Կայէն։ 10 ՉԿԸ էր. Ղուռումչին երեկ։ 11 ՉՀ էր որ փխ. ՉՀ։ 12 ՉՀԵ էր որ Չալպանհանն գնաց և այլ չէրեկ։ 13 ՉՁԴ էր Գուսայիթն։ 14 ՉՂԷ էր որ Գամուրտաշն։

որդւոյ Հայատրի, վասն ոլոյ ամենեքեան հաւանեալ կացուցին զնա թագաւոր ի տեղի Եագուպ թագաւորին։ Այս Իսմայէլն ծնանի զշահ Թահմազն և նա զշահ Իսմայել և զԽուտապէնտին և Խուտապանտին զշահ Ապասն և շահ Ապասն եղեւ թագաւոր զթոռն իւր զՍէֆի միրզէն։

* * *

Թվականին ՋՀԴ (1525) շահ Թահմազն ելաւ։ օ4ա

Թվականին ՌԻԴ (1575) մեռաւ Թահմազն թագաւորեալ ամս ԾԱ (51)։

Թվականին ՌԻԵ (1576) նստաւ շահ Իսմայէլն և սպան զիւր Է (7) եղբարսն։ Թօխմախ սուլթան և Ամիրխան անուն իշխան մի սպանին զշահ Իսմայէլն. և ասացին սուտ՝ թէ յրտես է գնացեալ։ Եւ յետոյ իմացեալ ամենացուն և գնացին ի Խորասան և բերին զոմն Խուտաբանտայ անուն շեխ գոլով՝ եղբայր շահ Իսմայէլին և որդի նոյն շահ Թահմ[ա]զին, որ է յառաջմէ կարգեալ։

Թվականին ՋԽ (1491) Եագուպ խանն սպանաւ յազգէ Բայնտուրին և այլք զմիմեանս կոտորեցին։ Եւ թագաւորեաց վրաց Ղօրղօր,[50] ԼՌ (30000) մարդով եկեալ ի վերայ Ցարգրումու յաւարի, էառ զերկիրն և հարկատու արար զքաղաքն։ Եւ էր ի թագաւորութեան վրաց Կոստանդնոյ[51] և ի կաթողիկոսութեան Հայոց տեառն Սարգիս[52]ը

# Է

31 (ԺԳ էջ 136՝ դատարկ էջի մը վրայ.)

Ի Նւաստ ի Թորոս կաթողիկոս (կարմիրով) Սըսցի նըստաւ յաթոռ հայրապետութեան ի թըւականութեանս Հայոց ՋՂԷ (1548) փետրվարի ԺԲ (12), աւրն երեքշաբթի։

Ի Նուաստ և անպիտան Ազարիայ վարդապետ Ջուղայեցի, շնորհաւքն աստուծոյ կաթուղիկոս նստաւ յաթոռ հայրապետութեան Սըսայ ի թվականիս Հայոց ՌԼԳ (1584) փետրվարի ԻԵ (25), աւրն երեքշաբթի, Ղևոնդեանց տաւնի մեծ բարեկենդանին։

Ես նուաստ Յովհաննէս վարդապետ Անթըպցի շնորհաւք և ողորմութեամբն աստուծոյ նըստա աթոռ հայրապետութեան Սըռայ, ի մեծ թվին Հայոց ՌԾԱ (1602), դեկտեմբեր Հոռոմոց Ի (20), աւուր կիրակէի։

Ես նուաստ Սիմէոն կաթողիկոսըս Սեփաստացի շնորհեաւքն և ողորմութեամբն աստուծոյ, նստա յաթոռ հայրապետութեան Սըսայ, ի մեծ թվին Հայոց ՌՁԲ (1633) ձեռամբ նուաստ (շարունակութիւնը մեկ տող ծածկագիր և անհասկանալի)։

Դ էջ 210՝ դատարկ էջի մը վրայ։

Նուաստ Խաչատուր կաթողիկոս նստաւ յաթոռ հայրապետութեան ի Սըս թվին Ռ (1551)։

Նուաստ Խաչատուր կաթողիկոս նստաւ յաթոռ հայրապետութեան Սըսայ թվին ՌԹ (1560), փետրվարի ԺԶ (16)։

Փետրվարի Դ (4) թվ. ՌԼԳ (1584) առ Քրիստոս փոխեցաւ, որոյ յիշատակն աւրհնութեամբ եղիցի, ամէն։

Նուաստ Տիրատուր կաթողիկոս (սրբուած) Նստաւ յաթոռ հայրապետութեան Սսա. թվն. ՌԼԵ (1586) մարտ ամսոյ Ի (20)։

Նուաստ Բերիացի Գեւորգ կաթողիկոս Նստաւ յաթոռ հայրապետութեան ի Սիս թվն. ՌԾԷ (1608) ապրիէլ ԻԹ (20), օր հինկշաբթի։

Նուաստ Թորոս կաթողիկոս Սըսեցի՝ Նստաւ յաթոռ հայրապետութեան ՌՄԼԴ (1784), և փոխեցաւ առ Քրիստոս ՌՄԽԵ (1796) սեպտ. ԻԴ (24) յօրն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։

Նուաստ Կիրակոս կաթողիկոս Նստայ յաթոռ հայրապետութեան, որ եմ եղբօր որդի վերոգրեալ Թորոս սրբազան կաթողիկոսին ՌՄԽԶ (1797) փետր. ԺԴ (14) յաւուր Տեառնընդառաջին։

Զ էջ 434, Նըւաստ Կոստանդին կաթողիկոս գտայ դշաւաղրութիւնս հայրապետացն Հայոց գըրեալ ձեռամբ սուրբ հաւրն մերոյ Ներսիսի արքեպիսկոպոսի Տարսոնի, և ետու գրել աստ, որ է այս ՌԾԹ (1610)։

32 ի մեծ թուիս Հայոց ԳԻԹ (1380) ամի յաւգոստոս ամսոյ ԺԵ (15) ի չորեքշաբթի աւր, հանգաւ ի Քրիստոս պատուական հայրապետն Հայոց տէր Կոստանդին երկրորդ Լամբրոնայցին, որոյ յիշատակ Նորին աւրհնութեամբ եղիցի։

Նըւաստ Յոհանէս կաթողիկոս Նըստայ ի յաթոռ հայրապետութեան ի թվականիս Հայոց՝ ՋԼԵ (1486)։

Նըւաստ Յոհանէս կաթողիկոս Թուլկուրացանընյի (sic) Նըստայ ի յաթոռ հայրապետութեան ի թվականիս Հայոց ՋԼԸ (1489), յունվար ամսոյն ԻԶ (26), աւր չորեքշաբթի։

Ը էջ 436. Նուաստ Յովհաննէս կաթողիկոս ամենայն Հայոց Նստայ յաթոռ հայրապետութեան ի Սիս քաղաք թվին Հայոց ՋՀԴ (1525), մայիս ամսոյ Ա (1), աւրն երկուշաբթի։

Նուաստ Սիմեւոն կաթողիկոս Զէթունցի Նստայ յաթոռ հայրապետութեան ի Սիս քաղաք։ Թվին Հայոց ՋՁԸ (1539), ապրիլ Է (7), աւրն երկուշաբթի։

Նուաստս Ղազար կաթողիկոս երկրորդ Զէթունցիս Նստայ յաթոռ հայրապետութեան ի Սիս քաղաքին, որ եմ հաւրեղբաւր որդի Սիմէոն կաթողիկոսին, թվին Հայոց ՋՂԴ (1545) յիշեցէք ի յաղաւթս ձեր։

Ը

Թվին ՌՀԱ (1622) մայիս ամսոյ Թ (9), աւրն հինդշաբթի, 1ա
սուլթան Մուսթաֆան ելաւ ի հոր ղուլայէն և ուրբաթ աւուր ի թախտ Նստաւ, մայիս Ժ (10) աւրն և երեկոյ ժամուն, եղբաւր որդին զՈսման թագաւորն խեղթեաց ձեռամբ Տաւութ փաշա ղաւրավարին իւրոյ, որ անիրաւութեամբ և բռնութեամբ տիրեալ էր զտեղ հաւրեղբաւր իւրոյ։ Թվին ՌԿԷ (1618) փէտըրվար ամսոյ ԺԶ (16) Նստեալ մինչ ՌՀԱ (1622), Դ (4) ամ անցաւ Դ

(3) ամիս,[52] ւարն բարձաւ ի միջոյ և ապագայն տեառն կամք աւրհնեալ լիցի։

## Թ

Շահ Սաֆի թագաւոր նստաւ ԺԸ (18) տարակա[ն էր]։ Թվինն ՌՀԸ (1629) ԺԴ (14) տարի թագաւորեաց։[53]

Շահ Ապասն՝ Փոքրն, թագաւոր նըստաւ ԺԴ (14) տարեկան էր. թվինն ՌՂԱ (1642)-ումն, ԻԵ (25) տարի թագաւորեաց։[54]

Շահ Սլեմն թագաւոր նստաւ Ի (20) տարեկան էր. թվին ՌՃԺԵ (1666)։[55]

## Ժ

Առաջին պատճառ:

Ի թվին ՌՃԳ (1654) օգոստոսի Բ (2), մարերի ԻԸ (28) Ճահկայ սուրբ Հողակաթն կու շինէինք, աւուր չորեքշաբթի ի մէջօրէի արեգակն խաւարեցաւ յօգուտ (?) ժամս մինչ՚զի աստեղք երևեցան վասն իմ մեղացն։[56]

Ի թվականութեանս մերոյ ՌՂ և Գ (1644) արկաւ հիմն 192ա
սուրբ Կարապետիս Երընջակայ, և ի ՌՃԺ և Բ-ն (1663) աւրհ-
նեցաւ ի Խաչ գիւտի աշնան եղանակին։[57] Իսկ սրահն և գաւիթն
ի ՌՃԺ և Գ (1664) ամին հիմնարկեցաւ, և ՌՃԺ և հնգին (1666)
կատարեցաւ ի հոկտեմբեր ամսոյ Ժ (10) նաւասարդի Հայոց Ե (5)։
Աւարտեցաւ հարաւային կողման մեծ քոչքն ի թվին ՌՃԺԴ (1665)։
Ի ներքուստ հիմնարկաւ և ի թվին հազար ՃԺ և Զ (1667) կատա-
րեցաւ[57ա] հոկտեմբերի ԺԵ (15), նաւասարդի ԺԱ (11), ձեռամբ
ուստայ Յովանիսին։

Ի թուին ՌՃԻԸ (1679) յունիսի ամսոյ Դ (4) աւուր չորեք-
շաբթի ի հինգերորդ ժամուն մեծասաստ շարժ եղև, մինչ զի 193բ
կանթեղաց ձէթն և ջուրն ի միասին հեղաւ ի Սէվան կղզոյ յե-
կեղեցիսն, տէր Յիսուս ազատեսցէ զմեզ յամենայն վտանկից,[58]
ամէն։

## ԺԱ

Թվին ՌՃԻԸ (1679) մայիս ամսոյ աւո[ւր]ն Դ (4), չո- 6ա
րէ[քշաբթի] շարժ եղև Երևան։[59]

Սուրբ Գեղարդայ եկեղեցոյ շինումն թվին ՌՃԽէ (1698)։[60]

Ստեփան[ոս] կաթող[ի]կոսի մեռանելն թվին ՌՃԽէ (1698)։[61]

Թվին ՌՃԽԸ (1699) ճտղտցն սելաւ եկաւ տարաւ գեղ։

Թվին ՌՃԽԸ (1699) դարպասին ձեռն տըւինք, սայկայն կատարած աստուծոյ է դիտելի։

Թվին ՌՃԾԲ (1703) եկաւ ||| [62] օրն շ[ա]բ[աթ] տնօրենյս 6բ
Քաբլ Հասան խանն։

## ԺԲ

## ԲԱՆՔ ՆՇԱՆԱԿՕՂՔ ԹՈՒԱԿԱՆԱՒՆ ՀԱՅՈՑ 59r

Ի Հայոց Կ (611) թուին երևեցաւ Մահմետ։

ԱՃՀԱ (722) թուին Յոհան Օձնեցին պայծառացու. ի Հայս։

ՅԽԱ (892) թուին տէր Մաշտոցն պայծառանայր։

ՆՀԸ (1029) թուին եղև արձակումն սատանային։

ՇԱ (1052) թուին տէր Պետրոս կաթուղիկոս ·Գետադարձն պայծառացաւ։

ՇԺԳ (1064) թուին բարձան թագաւորք ի քաղաքէն Յանւոյ։

ՊԼԶ (1387) թուին Լանկ Թամուրն եկաւ. ի Սմրղանդայ։

ՋԲ (1453) թուին Օսմանլուն էառ զՍտամպօլ ի Յունաց։

ՌԻԴ (1575)-ին նստաւ ի թախտ սուլթան Մուրադն։

ՌԻԹ (1580) թուին ի թախտ նստաւ մեծ շահ Աբասն Պարսից։

ՌՀԵ (1626)-ին ի սոյն առաջնոյ շահ Աբասէն Մովսէս վարդապետն էառ զհրաման լուսարարութեան սրբոյ Էջմիածնի։

ՌճԳ (1654) թուին ի սուրբ Էջմիածնայ զանգակատուն հիմն արկին։

## ԺԳ

ՌճՁԳ (1734) թվին եկաւ Նադիր շահն Գանջու վերան, աշնան ժամանակին էր, որ եկն։ 43r

ՌճՁԷ (1738) թվին Իպրահիմ խանն սատկացրին, Ծառւմն՝ (?) էլ աշնանն։

ՌճՂԴ (1745) թվին գարնան ժամանակն եկաւ Սաքսանկոփն, գնաց Նատիր շահն ԳճՌ (300000) զօշունով։

ՌճՂԸ (1749) թվին Փանահն էսպան, մէլիք Ալլահուլին՝ սեպտեմբեր ամս[ե]ան։

ՌճՂԹ (1750) թվին մէլիք Թամրազն սպանեցին մայիս ամսումն։

ՌՄԷ (1758) թվին Փանահ խանն [Գան]ջայ առաւ սուրբ Խաչին ժամանակն։[63]

# ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հեղինակը նկատի ունի խաչակրաց առաջին արշավանքի ժամանակ Գոտֆրիդ Բուլոնացու կողմից Երուսաղեմի գրավումը 1099 թ. հուլիսի 15-ին։ (Տես և հմմտ. III ժամանակագրություն, էջ 74, էջ 90, ծանոթ. 7։

2. Տես և հմմտ. III ժամանակագրություն, էջ 75, էջ 90, ծանոթ. 9։

3. Սույն և հաջորդ վկայությունների հեղինակը Նղրի տեր Հեթումն է, Կոստանդին պայլի թոռը, որը Հեթում Բ-ի եղբոր որդի, Լևոն Գ թագավորի սենեկապետն էր և խնամակալը։ Այս վկայությունից իմանում ենք, որ Հեթումն ասպետ է կարգվել 1305 թ. հունվարի 6-ին։ Ալիշանի կարծիքով Հեթումը սենեկապետ է եղել 1308—1325 թ. թ. («Սիսուան», էջ 485)։

4. Բրիտանական թանգարանի հայերեն ձեռագրերի ցուցակի հեղինակը բնագրի «յառ ըռէ ըՌուպերտն տւառտրաներ բրինձի յԱնփալն» հատվածը թարգմանել են. „to Rē (Roi) Rupert tvartraner Brinds (Prince) in Anaphi (? Naples)" (էջ 219) ձևով։ Ընդգծված բառը աղճատված և կասկածելի է թվում։

Ձեռագիր բնագիրը չունենալով ձեռքի տակ, մի շարք անհասկանալի բառեր բերում ենք այնպես, ինչպես հրատարակության մեջ է։

5. Բնագրում դրված է «Թգուհին հայոց» (էջ 291) ձևով։ Կարծում ենք պետք է լինի «Թագաւորութիւնն Հայոց»։

6. Խոսքը վերաբերում է Կիլիկիայի վերջին թագավոր Լևոն Ե-ի եգիպտական գերությունից ազատվելուն և Իսպանիա մեկնելուն (հմմտ. Բասմաջեան Կ. Յ. «Լևոն Ե Լուսինեան վերջին թագաւոր Հայոց», 1908 թ., Պարիզ, էջ 72։ Լևոնի գերության և գերությունից ազատվելու մանրամասնությունները տես անդ. էջ 56—73)։

Բնագրի «Գաղալանքը» Արագոնիան է, Իսպանիայի հյուսիս արևելյան մասում, տարածված Կաստիլիայի և Կատալոնիայի միջև։ Մարտինոս Լեհացու Հռոմի պապերի և կայսրների ժամանակագրության հայերեն թարգմանության բնագրում կարդում ենք. «Ի սորին քահանապետութեանն յամն առաջին (Հոնորիոս IV պապ, 1289 թ.— Վ. Հ.), Ֆիլիպ թագաւորն Ֆրանցիոյ, որդի Լօգւվիկոսին, որ և սուրբ յեառ, բազմութեամբ զօրօք գնացեալ եմուտ ի յերկիրն Արտկունիո, որ և Գաղալանք ասի»։ (Ձեռ. № 2037, էջ 64ա)։

7. Խոսքը վերաբերում է մամլյուկների Բուրջի դինաստիայից Զահիր Սեյֆ-ադ-դին Բարկուկ սուլթանին, որն իշխել է 1382—1389 թ. թ.։

8. Հեղինակը նկատի ունի մոնղոլների առաջին արշավանքը դեպի Անդրկովկաս։ Սակայն այն տեղի է ունեցել 1220 թ. (տես I ժամանակագրություն, էջ 26, 29, ծանոթ. 28)։

9. Մանգու ղանը ըստ Լեն-Պուլի իշխել է 1251—1257 թ. թ.։ Սակայն Բարտոլդը հավաստի համարում է 1251—1259 թ. թ. (էջ 177)։

10. Խոսքը հավանաբար վերաբերում է Հայաստանում աշխարհագիր անցկացնող Արղունին (հմմտ. Կ. Գանձակեցի, էջ 348)։

11. Հուլավյանների, կամ ինչպես Լեն-Պուլն է անվանում պարսկական մոնղոլների թագավորության հաջորդական կարգը տես VI ժամանակագրություն, էջ 118, 121։

12. Հեղինակը նկատի ունի 1262 թ. աշնանը Հուլաուի և Բերկեյի միջև տեղի ունեցած պատերազմը և վերջինիս զորավարներ Նոխայի, Ղուլի և այլոց պարտությունը։ Մանրամասնությունները տես Ռաշիդ-ադ-դինի էջ 58—60, Կ. Գանձակեցի, էջ 378—380։

13. Խոսքն արդյո՞ք չի վերաբերում Ոսկե Հորդայի իշխող Բերոեյին, տես և հմմտ. Ռաշիդ-ադ-դինի էջ 6։ (Կ. Գանձակեցի, էջ 380—382)։

14. Արղունի ծնունդը սխալ է ցույց տրված, համաձայն Ռաշիդ-ադ-դինի նա ծնվել է 1234 թ. մարտին, (էջ 64)։

15. Աբու Սայիդի քույրը՝ Սաթի բեկ, տես էջ 121, ծանոթ. 14։

16. Տես և հմմտ. վերևում, էջ 142, էջ 150, ծանոթ. 17։

17. Տես և համտ. վերևում, էջ 142, էջ 121, ծանոթ. 16։

18. Տես վերևում, էջ 118, էջ 121, ծանոթ. 18։

19. Վերնագիրը բնագրում գրված է կարմիր թանաքով։

20. Խոսքը վերաբերում է Մխիթար Սասնեցու ուսուցիչ Ներսես Մշեցուն, որը հայտնի է նաև Տարոնեցի անունով։ Օրմանյանը Ներսես Մշեցուն և Ներսես Գլաձորեցուն համարում է տարբեր անձնավորություններ («Ազգապատում», էջ 1696), կարծում ենք, որ ընդհակառակը, նրանք միևնույն անձնավորություններն են։ Համտ. «Ազգապատում», էջ 1862։ Սույն տեղեկությամբ հաստատվում է Ալիշանի կարծիքը («Սիսական», էջ 131, համտ. Գ. Հովսէփեան, «Մխիթար Սասնեցի», Վաղարշապատ, 1899, էջ 6)։

21. Ժամանակագրության վկայությունը վերաբերում է ոչ թե պատմիչ Մխ. Այրիվանեցուն, որը մահացել էր դրանից երեք տասնյակից ավել տարիներ առաջ՝ 1289—1291 թ. թ. շրջանում (Գ. Հովսէփեանց, «Մխիթար Այրիվանեցի», էջ 15), այլ Մխիթար Սասնեցուն (նույն տեղ, էջ 15)։ Համտ. Օրմանյան, «Ազգապատում», էջ 1862)։ Մխիթար Սասնեցու աշակերտ Մկրտչի տեղեկությամբ, որը գրել է իր ուսուցչի կենսագրությունը, նա մահացել է 1337 թ. փետրվարի 13-ին շաբաթ օրը («Մխիթար Սասնեցի», էջ 26—32)։

22. Եթե ժամանակագրության տարեթվի մեջ չկա աղճատում, նշանակում է այն սխալ է։ Հ. Որոտնեցու մահը ընդունված է դնել 1388 թ. ներքո («Ազգապատում», էջ 1979։ Ա. Վ. Սեղրակեան, «Հնութիւնք Հայրենեաց ի գաւառին Երնջակու», Վաղպատ, 1882, էջ 11։ Ալիշան, «Սիսական», էջ 378)։ Այդպես էլ նրա գերեզմանաքարի վրա գրված է. «Այս դամբարան պետին է և Մեծին Յովհաննու Որոտնէի, ՊԼԷ (1388), Սմբատեանց, «Նկարագիր Ս. Կարապետի վանից Երնջակայ...», Թիֆլիս, 1904, էջ 362։

Հակառակ այս ցուցումին, մատենագրական մի շարք վկայություններ բոլորովին այլ տեղեկություններ են տալիս։ Այսպես ժամանակակիցներից՝ Գր. Խլաթեցին «Յիշատակարան աղէտից» (Վաղարշապատ, 1897), չափածո աշխատության մեջ Որոտնեցու մահը դնում է 1386 թ. ներքո. «Ի յութ հարիւր Հայոց թուական

Ընդորս և հինգ եօթն յաւելան (1386 թ.),
Յունուարի մին պահք Յայտնութեան
Լոյս արևուն խաւարեցան։
Մեծ վարդապետն անուն Յոհան,
Որ և Կախիկ անուն ծնընդեան,
Յեա վեց աւուրն խաւարման
Փոխի առ Տէրն իւր անժամական» (էջ 1—2)։

Թ. Մեծոփեցին ես հաստատում է Գր. Խլաթեցու վկայությունը («Պատմութիւն Լանկ-Թամուրայ...», Փարիզ, 1860, էջ 13—16, 55—56։ Համտ. Կիրակոս Ռշտունցու վկայության հետ, էջ 118)։

Եթե վերջին վկայությունների մեջ չկա որևէ աղճատում, արդյո՞ք հավանական չի լինի, եթե ենթադրենք, որ Հ. Որոտնեցու գերեզմանաքարի վրա գտնված տարեթիվը վերաբերում է ոչ թե Հ. Որոտնեցու մահվան տարեթվին, այլ գերեզմանաքարի կանգնեցման տարեթվին։ Կարծում ենք ժամանակագրության սկզբնական բնագրում Հ. Որոտնեցու մահը դրված է եղել ՊԼԵ թվականի ներքո, որը աղճատման հետևանքով դարձել է «ՊՀԵ»։

23. Համտ. «Նօտարք Հայոց», էջ 1։ Այս վկայությամբ վերջանում է ժամանակագրական սույն հատվածը և ժողովածուն։

24. Բնագրում վերնագիրը գրված է կարմիր թանաքով։

25. Հեղինակը նկատի ունի Գանձակի հիմնադրումը։ Այս կապակցությամբ Մ. Կաղանկատվացին գրում է. «Երկերիւր և ութսուն էր թուականն Հայոց (ամ տեառն 831), յորժամ կամեցաւ Մումին Տաճիկ չահատակել ի Հոռոմս ... Իսկ յետ երից ամաց Բաղդադի ոմն Ամիրայ եկեալ հրամանաւ իշխանին Տաճկած, Ամիր Մումին կոչի, և հասեալ ի Նախիջևան քաղաք՝ ... յետ այսորիկ անցունելոյ երկուց ևս ամաց, եկն Խազը Փաագոս այր շամշոտ և անողորմ, և ի նմին ամի սատակեցաւ, իսկ նորուն որդին եկեալ էառ զաշխարհս սրով և գերութեամբ և զեկեղեցիս բազումս հրով այրեալ կիզեաց՝ և գնաց ի Բաղդատ։ Եւ անտի դարձեալ եկեալ արքունի հրամանաւ և գանձուք շինեաց զԳանձակ քաղաք յԱրշակաշէն գաւառի»։ («Պատմութիւն Աղուանից աշխարհի», Մոսկվա, 1860, էջ 265)։ Այսպիսով, եթե ընդունենք, որ արաբ Խազ Փատգոսի որդին միևնույն տարին գնացել է Բաղդատ և ապա եկել ու կառուցել Գանձակը, այն դեպքում վերջինիս կառուցումը կընկնի 836—837 թվականին։

*26. Խոսքը վերաբերում է Վրաց թագավոր Գեորգիի կողմից Դվինի գրավմանը, որն ինչպես վկայում է Ս. Անեցին, տեղի է ունեցել Հայոց ՈԺԱ (1162) թվի օգոստոսի 21-ին (էջ 137)։ Մ. Ուռհայեցին ամիսը և տարեթիվը չի նշում (էջ 429)։*

*27. Խոսքը եթե վերաբերում է Սալահեդդինի կողմից Երուսաղեմի գրավմանը, ապա այն տեղի է ունեցել 1187 թ. (Հայոց ՈԼԶ)։ Այս մասին տես էջ 92, ծանոթ. 28։*

*28. Հեղինակը նկատի ունի Զաքարեի և Իվանեի կողմից Բջնիի գրավումը։ Այս մասին տես էջ 52, ծանոթ. 13։*

*29. Տավուշն այժմյան Թոուզ գյուղն է իր շրջակայքով, պատմական Արցախում։ Խոսքը վերաբերում է Տավուշի և այլ վայրերի Զաքարյանների գրավմանը։ Կ. Գանձակեցին առանց ժամանակը հիշելու գրում է. «Այսպէս և միւս իշխանն, Զաքարէ անուն, և եղբայր իւր Սարգիս, հայրն Շալուէի և Իւանէի ազգականք մեծ իշխանացն, ձեռնտուութեամբ նոցին, առին և նորա բազում գաւառս ի Պարսից, և ղբերդս ամուրս զԳարդման, զՔարհերձ, և զԵրգեվանք, զՏաւուշ, ղԿածարեթ և զՏէրունականն, ղԳաղ, և ղՇամքոր քաղաք...» (էջ 154—155)։*

*30. Այս տեղանունը Ստ. Օրբելյանը հիշում է Հաբանդ գավառում (էջ 517)։ Կ. Գանձակեցին այն ևս հիշում է, սակայն այլ առիթով «... և ետ (Բաթու ղանը— Վ. Հ.) ի նա (Հասան Ջալալին— Վ. Հ.) ղհայրենիքն իւր զՉարաբերդ և զԱկանայ և զԿառկառն, զոր ճանճեալ էին յառաջագոյն ի նմանէ ազգն բուրճաց և վրաց» (էջ 345. ընդգծումը մերն է— Վ. Հ.)։ Եթե նկատի ունենանք վերոհիշյալ վկայության ընդգծված հատվածը և այն լրացնենք Ստ. Օրբելյանի «Որք (Զաքարեն և Իվանեն— Վ. Հ.) բաղում ջանիւ թափեցին զաշխարհս Հայոց ի Պարսից և առին յԱռանայ մինչև ցներքին Բասեն և ի Բարկուշատայ մինչ ի Մժնկերտ։ Առին ղԿարս, զՎաղարշապատ, ղԿաղզվան, զՍուրբ Մարի, ղԱնի, ղԱնբերդ, զԲջնի և զԳառնի, ղԴվին մայրաքաղաք, ղԳարդման, ղԳանձակ, ղՉարէք, զՀերթ, զՇամքոր, զՇարի, զՊարտաւ, ղՉարաբերդս վկայութեամբ (էջ 391—392), ապա կարող ենք եզրակացնել, որ Զաքարյանները Չարաբերդի հետ գրավել են նաև Ականան։ Եվ որովհետև այս գրավումները համաձայն Ստ. Օրբելյան, տեղի են ունեցել մինչև 1211 թ. (էջ 392), ուրեմն բնագրում Ականայի գրավման տարեթիվը հավանաբար աղճատված է՝ «ՈԾԵ (1206) թ. փոխարեն այն մեզ հասել է «ՈԵ» (1156) ձևով, մանավորապես եթե նկատի ունենանք, որ ժամանակագրական այս հատվածում միայն նույն վկայության տեղն է խախտված։*

*31. Ջալալեդդինի արշավանքը Հայաստան։ Տես էջ 39, 56, ծանոթ. 36։*

*32. Մեզ անծանոթ վայր։ Թերևս ճիշտ է № 4231 տարբերակի պահած «զՏաճկունք» ձևը։*

*33. Տես և հմմտ. էջ 26, էջ 30, ծանոթ. 30։*

*34. Խոսքը վերաբերում է 1236 թ. մոնղոլների Հայաստան արշավելուն։ Տես էջ 26, 30, ծանոթ. 31։*

*35. Մոնղոլ զորավար. Ստ. Օրբելյանը նրան համարում է «հազարապետն» (էջ 469), կամ «ղօրաղլուխք Չաւփանն և Խուտումչին» (էջ 476)։ Տես և հմմտ. էջ 118։*

*36. Տես էջ 100, ծանոթ. 135։*

*37. Բուսայիթ (Աբու Սայիթ) վախճանվել է 1335 թ. նոյեմբերի 30-ին։ Տես էջ 110։*

*38. Համաձայն Վարդան Բաղիշեցու վկայության, վերոհիշյալ երկրաշարժը տեղի է ունեցել ոչ թե 1457 թ., այլ 1458 թվին։ (Տես «Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 71)։*

*39. Ինչպես արդեն ցույց ենք տվել Ջհանշահը սպանվում է 1467 թ. (տես վերևում, էջ 175, ծանոթ. 14։*

*40. Խոսքը վերաբերում է Ակ-Կոյունլու Ուզուն Հասանի և Մուհամմադ Բ-ի միջև տեղի ունեցած պատերազմին, որի ժամանակ Ուզուն Հասանն իրոք պարտվեց։ Ժամանակագրության նույն վկայությունը հաստատում է XI ժամանակագրությունը (էջ 168—169)։*

*41. Հմմտ. Վարդան Բաղիշեցի («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 71)։*

*42. Հայկական աղբյուրները Յաղուբի մահը սովորաբար դնում են 1491 թ. ները (հմմտ. Ալիշան «Այրարատ», էջ 330), համաձայն Լեն-Պուլի հաշվումների, այն տեղի է ունեցել 1490 թ.։*

*43. Խոսքը վերաբերում է Իսմայիլ I-ի և Ակ-Կոյունլու Ալվանդի (Էլվենդ) Հայաստանում մղած կռիվներին։ Տես Բարսեղ Աճեմիշեցու (էջ 126—127) և Հակոբ Կարնեցու (էջ 239) ժամանակագրությունը։*

*44. Տես X ժամանակագրություն, էջ 156, 163, ծանոթ. 4։*

*45. Խոսքը վերաբերում է սուլթան Սուլեյմանի (1520—1566 թ. թ.) և շահ Թահմազի (1524—1576 թ. թ.) միջև տեղի ունեցած 1530-ական թ. թ. կռիվներին։ Ժամանակագրության վկայությունը վերաբերում է Սուլեյմանի դեպի Հայաստան կատարած 1534 թ. արշավանքին։*

Հմմտ. Հովհաննես քահանա Արճիշեցու հիշատակարանի («Դիւան Հայոց պատմութեան», գիրք Ժ, էջ 19—30) և ժամանակակից այլ հիշատակարանների հետ (Տաշեան «Ցուցակ հայերէն ձեռագրաց», Վիեննա, 1895, էջ 433 Բ. Սարգսեան «Մայր ցուցակ հայերէն ձեռագրաց», հատոր երկրորդ, Վենետիկ, 1924, էջ 1172—1174 և այլն։

46. № 482 ժողովածուի մեջ սույն վկայությանը նախորդում է մի փոքրիկ պատմություն (էջ 52բ) «Սկիզբն թագաւորութեան Կարմրագլխին, որք են Ղզլպաշք» խորագրով։ Այստեղ թված է թագավորների անունները միայն, առանց տարեթվերի։ Վերոհիշյալ պատմությունը տեղ է գտել Ա. Դավրիժեցու Պատմության 584—585 էջերում «Ազգաբանութիւն Պարսից թագաւորացն» խորագրով, նկատի ունենալով, որ այդ պատմությունն աղբյուրագիտական տեսակետից առանձին արժեք չունի և բացի այդ, այն հրատարակված է, ուստի չդրեցինք ներկա հրատարակության մեջ։ Ջահանշահի սպանության վկայության մեջ, ըստ երևույթին, հեղինակը շփոթում է վերջինիս որդու Հասան Ալուն և Ակ-Կոյունլու Ուզուն Հասանին։ Ճիշտ է, որ 1467 թ. Ուզուն Հասանը սպանում է Ջահանշահին, բայց սխալ է, որ առաջինը վերջինիս որդին է։

47. Հմմտ. XIII ժամանակագրություն, էջ 195։

48. Հմմտ. նույն տեղ, էջ 196։

49. Շահ Թահմազ I-ը թագավորել է 1524—1576 թ. թ.։

50. Խոսքը վերաբերում է Սամցխեյի աթաբակ Կվարկվարեին։

51. Վարթլիի թագավոր Կոստանդին II-ը իշխել է 1479—1505 թ. թ.։

51ա. Սարգիս Բ, կաթողիկոս Հայոց 1484—1515 թ. թ.։

52. Խոսքը վերաբերում է Օսման II (1618—1622 թ. թ.) սուլթանին և նրա հաջորդ Մուստաֆա I-ին, որն առաջին անգամ գահ է բարձրացել 1617—1618 թ. թ., իսկ երկրորդ անգամ՝ 1622—1624 թ. թ.։

53. Շահ-Սեֆի I-ին, թագավորել է 1628—1642 թ. թ.։

54. Շահ-Աբաս II, թագավորել է 1642—1667 թ. թ.։ Զաքարիա Ագուլեցին խոսելով սրա մահվան մասին գրում է. «Շահաբաս էր խ. ամացս («Օրագրությունն», էջ 68)։ Այս վկայությունը հմմտ. առաջարկվող վկայության հետ։

55. Շահ-Սուլեյման I-, թագավորել է 1667—1694 թ. թ.։ Համաձայն Զաքարիա Ագուլեցու շահ Սուլեյմանը 18 տարեկան էր երբ գահ բարձրացավ։

56. Արևի խավարման վկայությունը հմմտ. Զաքարիա Ագուլեցու օրագրության (էջ 43) տեղեկության հետ։

Իսկ Ճահուկի Շողակաթ եկեղեցու վերաշինման մասին ոչինչ հայտնի չէ։ Ալիշանը մեջ բերելով Աւեքսան Ալեքսանդրեցի «Ժամք» գրքի 1730 թ. հրատարակության տիտղոսաթերթը, որտեղ ասված է. «Լոյս ածող սորա ֆր. Ալեքսանս Ալէքսանոսեցի, ի գիւղաքաղաքն Ճահուկոյ, և որդի Շահրոյնեաց վանից, ամի Տեառն ՌՉԼ» ավելացնում է. «Եկեղեցի Էջմիածնական Հայոց որ յանուանէ ոչ յիշի, եթէ Շողակաթ էր և եթէ այլ նորոգեցաւ ընդ այլսն որ յաւուրս Մովսիսի և Փիլիպոսի կաթողիկոսացն։ («Սիսական», էջ 490)։ Ներկա վկայությամբ, որը շինարարությանը մասնակցողի տեղեկությունն է, հայտնի է դառնում Ճահուկի Շողակաթ վանքի շինարարական աշխատանքների ստույգ տարեթիվը։

57. Երնջակի Ս. Կարապետի վանքի և հարակից շենքերի վերաշինման մասին բավական ընդարձակ վկայություն տալիս է Առ. Դավրիժեցին. «Եւ սա (Եսայի վարդապետը— Լ. Վ.) եւս յաւուրս Փիլիպպոսի կաթողիկոսի սկսաւ նորոգել զնոյն ինքն սուրբ Կարապետի վանքն, զի միանգամայն զամենայն յառաջագոյն եղեալ շինուածսն քակեալ եբարձ ի միջոյ, զեկեղեցին, և զաներն, և զխցերն, և զպարիսպն, և ապա շուրջանակի լայն և ընդարձակ, զհաստ և զբարձրագոյն պարիսպ էարկ, և ապա ի մէջն տունս և ապարանս ի բնակութիւն ինքեանց և հիւրոցն։ («Պատմութիւն Առաքել վարդապետի Դավրիժեցւոյ», էջ 347)։ Այնուհետև Ա. Դավրիժեցին հիշում է, որ Ս. Կարապետի վանքի շինարարությունն ավարտելուց հետո, նրա օծումը տեղի է ունենում 1653 թ. հոկտեմբերի 17-ին (նույն տեղ, էջ 348, հրատարակության մեջ «Ժէ» փոխարեն սխալմամբ տված է «Սէ»)։ Սկզբում կարծում էինք, թե Երնջակի ս. Կարապետի վանքի օծման տարեթվի Ա. Դավրիժեցու վկայությունն աղճատված է և պիտի լինի ոչ թե ՌՃԲ (1653), այլ ՌՃԺԲ (1663) ինչպես առաջարկվող կայությունն է։ Այդ բանում համոզվելու համար ստուգեցինք Մատենադարանի Ա. Դավրիժեցու պատմության ձեռագրի վեց տարբերակները և նկատեցինք, որ ամենուր նշված է ՌՃԲ (1653) (տես՝ № 5081, էջ 341, № 1772, էջ 211բ, № 7296, էջ 215ա, № 5025, էջ 193ա, № 1773, էջ 227բ, № 4998, էջ 281բ)։

Ս. Կարապետի վանքի արևմտյան պատի, լուսամուտից վերև, խաչքարի վրա փորագրված է. «Նսայի և Ղազար վարդապետ շինողք ՌՃԵ». իսկ հյուսիսային և արևելյան որմերի ճակատին՝ «Եսայի վարդապետ շինող թվ. ՃՌԴ» (Ս. Սմբատեանց, «Նկարագիր Ս. Կարապետի վանից Երնջակայ...», էջ 4։ Համմտ. Ա. վ. Սեգրակեան «Հնութիւնք հայրենեաց ի գավառին Երնջակու», էջ 16։ Ալիշան, «Սիսական», էջ 379)։ Եթե սույն արձանագրությունները վերագրենք վանքի շինարարական աշխատանքների ավարտմանը, ինչպես այդ անում են Սմբատյանը և ուրիշները, ապա այն Ա. Դավրիժեցու վկայությունից շեղվում է մի դեպքում 2, մյուս դեպքում 3 տարով։ Այսինքն վանքի շինարարությունն առաջին արձանագրության համաձայն ավարտվել է 1656 թ., իսկ երկրորդի՝ 1655 թ.։ Նկատի առնելով այս հանգամանքը, կարծում ենք արձանագրության տարեթվերը հավանորեն վերաբերում են ոչ թե վանքի շինարարության ավարտմանը, այլ արձանագրության փորագրմանը։ Թերևս դրանով բացատրվի երկու արձանագրություններում տեղ գտած տարբեր թվերի գոյության փաստը։ Այսպիսով եթե կասկածելի չէ արձանագրության վերընթերցումը և ճիշտ է վերոհիշյալ ենթադրությունը, ապա դրանով հաստատվում է Ա. Դավրիժեցու վկայությունը։ Հետևապես Ս. Կարապետ վանքի շինարարության մասին առաջարկվող վկայության տեղեկությունը թերևս ավելի ճիշտն ու հավանականն է։

Ա. Դավրիժեցին շինարարական ամբողջ աշխատանքները վերագրում է վանքի առաջնորդ Եսայուն, մինչդեռ վերջինս Ս. Կարապետի վանքի առաջնորդ է դառնում 1654 թ. («Սիսական», էջ 380), այսինքն վանքի օծումից հետո։ Հետևապես շինարարական աշխատանքներն սկսվել է նրա նախորդ՝ Առաքել Բոպիկի օրոք։ Իսկ Ս. Կարապետ վանքի հարակից շենքերի կառուցումները, որոնց մասին վկայում է ժամանակագրության սույն հատվածը, կարող ենք վերագրել նույն վանքի առաջնորդ Եսայիին։

57ա. Բնագրում մեկ բառ՝ շինարարության օբեկտը պակասում է։

58. Տես և համմտ. վերևում, էջ 395։

59. 1679 թ. երկրաշարժի մասին միևնույն ձեռագրի 393բ էջում պահվել է մեկ ուրիշ վկայություն ևս, որտեղ կարդում ենք. «Թվին ՌՃԻԸ (1679) շարժ եղև մայիսի Դ (4) օրն չորեքշաբթի Երևան»։

Այս երկու վկայության միջ ամիսը սխալ է նշված, պետք է լինի հունիսի 4-ին։ Այս հաստատում են Զաքարիա Ագուլեցին (տես նրա օրագրությունը, էջ 143), Զաքարիա Սարկավագը («Պատմագրութիւն», հատոր երկրորդ, էջ 104) և մեր ձեռքի տակ գտնված ուրիշ ժամանակագրությունները։ Բացի դրանից, վերոհիշյալ վկայության համապատասխան 1679 թ. մայիսի 4-ը չորեքշաբթի է, մինչդեռ իրականում այդ օրը կլինի կիրակի, իսկ 1679 թ. մայիսի առաջին չորեքշաբթին կլինի մայիսի 7-ին։ Մինչդեռ 1679 թ. հունիսի 4-ը իրոք չորեքշաբթի է։ Տես և համմտ. «Խաղբակյանք...», հատոր Գ, հավելված Բ, էջ 132—133։

60. Խոսքը վերաբերում է 1679 թ. հունիսի 4-ին տեղի ունեցած մեծ երկրաշարժից հետո կատարված շինարարական աշխատանքներին։ Ալիշանը «Այրարատում» մեջ է բերում ժամանակակցի մի վկայություն, ըստ որի «Ի Զորակն Այրեվանից առաւել եղեւ աւերումն և քակտումն, վասն զի է ամենայն շինուածքն ի մէջ խոր ձորի, և շուրջ բոլորան՝ վէմք ահագին. և յորժամ շարժեաց՝ շուրջանակի թաւալեցան յամենայն վիմաց և լցան վանքն ամենայն, մինչ զի ոչ երեւիւր նշմարանք շինութեան, բայց միայն կոտակս քարի երևէր, որք տեսողացն ողբհուրեալ դողային...» (էջ 348)։ Այնուհետև հիշատակագիրը շարունակում է, որ վանքի նոր առաջնորդ Դավիթը, (վերջինիս նախորդը 1679 թ. մեծ երկրաշարժի ժամանակ գտնվելիս է եղել Երևանի Անապատ եկեղեցում, որտեղ և մահացել է եկեղեցու փլատակների տակ (համմտ. «Զ. Ագուլեցու օրագրությունը», էջ 143) ձեռնամուխ է լինում Այրիվանքի վերաշինման աշխատանքներին, որոնք, հիշատակագրի համաձայն, տեղի են ունեցել 1684—1687 թ. թ. միջոցում։ Եթե ժամանակագրության և սույն վկայություններից որևէ մեկում թյուրիմացություն չկա, ապա մնում է ենթադրել, որ Դավթի 1684—1687 թ. թ. շինարարական աշխատանքների ժամանակ Գեղարդի եկեղեցին չի վերաշինվել, այլ վերաշինվել են նրա հարակից շենքերը. «...արար և սկսեալ շրջապատ բարձրաբերձ պարիսպ տաշեալ քարով, հաստատուն և ամրապինդ, նաև շինուածք բոլորակի, թանապայք, բոշք, ապարանք, սենեակք, խոհանոցք և այլ ամենայն շտեմարանք, տաշեալ քարով, կրով և թաղով, մինչեւ տեսողացն հիացեալք» (էջ 348)։ Իսկ եկեղեցին վերաշինվել է 1698 թ., ինչպես ճիշտ մատնացույց է անում մեր ժամանակագրությունը։

61. Խոսքը վերաբերում է Ստ. Ջուղայեցուն։ Տես և համմտ. վերևում, էջ 285, 287, ծանոթ. 10։

62. Բնագրի մի բառը վնասված է։

63. 1758 թ. սուրբ Խաչը կընկնի սեպտեմբերի 13-ին։



504—26

## ՕԳՏԱԳՈՐԾԱԾ ՁԵՌԱԳՐԵՐԻ ՀԱՄԱՌՈՏ ԲԻԲԼԻՈԳՐԱՖԻԱ

*№ 82. Զանազան նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 276։ Մեծությունը՝ 22 × 17։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Եսայի վարդապետ Թոխաթեցի, Հարություն սարկավագ Հադբատեցի։ Ժամանակը՝ 1556—1762 թ. թ., 1670 թ.։ Վայրը՝ Թոխաթ, Էջմիածին։*

*№ 84. Աղոթքների, խրատների, տաղերի և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 282։ Մեծությունը՝ 21 × 15,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Զաքարիա Երզնկացի։ Ժամանակը՝ 1614 թ.։ Վայրը՝ անհայտ։*

*№ 482. Զանազան նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 94։ Մեծությունը՝ 22,5 × 17։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Ժողովածուի մի մասն ընդօրինակվել է 1600 թ., գրիչը և վայրն անհայտ, իսկ մյուս մասը 1711 թ., Անտոն սարկավագի կողմից, Թադեոս Առաքյալի վանքում։*

*№ 519. Վարդան Այգեկցու առակները և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը 126։ Մեծությունը՝ 21 × 14,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը և վայրը՝ անհայտ։ Ժողովածուի առաջին մասն ընդօրինակվել է մինչև 1604 թ.։*

*№ 582. Պատմական և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 189։ Մեծությունը 17,5 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Դավիթ, Կիրակոս Բանասեր և ուրիշներ։ Ժամանակը՝ 1443 թ. հետո։ Վայրը՝ անհայտ։*

*№ 615. Համառոտ հավաքմունք ի գրոց սրբոց։ Թերթերի քանակը՝ 59։ Մեծությունը՝ 19,5 × 15,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Բարսեղ արքեպիսկոպոս Փառակեցի։ Ժամանակը՝ XVII դար (?)։ Վայրը՝ անհայտ։*

*№ 663. Քարոզների, պատմական և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 279։ Մեծությունը՝ 21,7 × 16։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն և երկսյուն։ Նոտր գիր։ Ժողովածուի 236ա—239բ էջերում գտնվում է «Ըստամեծի և քաջ վարդապետի Մխիթարայ Գոշի խստակրօն ճգնաւորի և բանիբուն հռետորի ասացեալ զաղօթս ի ժամ սուրբ պատարագին» աշխատության տպագիր բնագիրը։ Ժողովածուն ընդօրինակել են տարբեր մարդիկ մինչև 1724 թ.։ Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրությունը և Վահրամ Րաբունու չափածո պատմությունն ընդօրինակել է Պետրոս Աստապատեցին, 1724 թ.,* Հալեպում։*

*№ 713. Պարզատոմար և այլ նյութեր։ Թերթերի քանակը՝ 139։ Մեծությունը՝ 14,5 × 9,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Հովհաննես, Բարսեղ։ Ժամանակը՝ 1687 թ.։ Վայրը՝ Շատախ գյուղ (Գանձակի շրջանում)։*

*№ 745. Ժողովածու Թերթերի քանակը՝ 194։ Մեծությունը՝ 15,3 × 10,2։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր, բոլոր գիր։ Գրիչը՝ անհայտ։ Ժամանակը՝ 1607 թ.։ Վայրը՝ Ուրհայ։*

*№ 1127. Զանազան նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 234։ Մեծությունը՝ 15 × 11։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն, Նոտր գիր։ Գրիչը և վայրը անհայտ։ Ժամանակը՝ XVII դար (?)։*

*№ 1486. Պատմական նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 211։ Մեծությունը՝ 26 × 18։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Ղազար։ Ժամանակը՝ 1597 թ.։ Վայրը՝ Բաբերդ։*

*№ 1495. Պատմական, տոմարագիտական և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 183։ Մեծությունը՝ 25,5 × 20,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Եփրեմ վարդապետ։ Ժամանակը՝ 1684։ Վայրը՝ Կ. Պոլիս։*

*№ 1737. Զանազան նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 203։ Մեծությունը՝ 20 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Ասար Սեբաստացի։ Ժամանակը՝ XVII դար։ Վայրը՝ անհայտ։*

*№ 1786. Պատմական և այլ նյութերի ժողովածու Թերթերի քանակը՝ 96։ Մեծությունը՝*

---

** Ժողովածուի 269ա էջում գտնվում է գրչի չափածո հիշատակարանը, որից իմանում ենք, որ նա Հեթում Պատմիչին վերագրված ժամանակագրությունն ընդօրինակել է «և ԱՀԱ ՃԱՌ թուականին»։ Այսինքն Ա (1)+Հ (70)+Ա (1)+Ճ (100)+Ա (1)+Ռ (1000)=1173, որան ավելացրած հայկ. 551 թ. =1724 թ.։*

19,9 × 9,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյունս Նոտր գիր։ Գրիչը՝ Մարտիրոս գի Առաքել։ Ժամանակը՝ XVIII դարի առաջին քառորդ։ Վայրը՝ զանազան վայրեր։

№ 1869. Պատմական և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 400։ Մեծությունը՝ 21,6 × 15,3։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն, իսկ ժամանակագրությունը միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Անդրեաս սարկավագ Եվդոկիացի։ Ժամանակը՝ 1585—1589 թ. թ.։ Վայրը՝ Եվդոկիա (Թոխաթ)։

№ 1973. Տոմարական և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 327։ Մեծությունը՝ 17,5 × 12։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Աբրահամ և Գրիգորիս։ Ժամանակը՝ 1342 թ.։ Վայրը՝ Երզնկա։

№ 2037. Պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 187։ Մեծությունը՝ 28,5 × 21,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Յովասափ Ապարանեցի։ Ժամանակը՝ 1421 թ.։ Վայրը՝ Կաֆա։

№ 2151. Գր. Տաթևացու Քարոզգիրքը։ Թերթերի քանակը՝ 184։ Մեծությունը՝ 18 × 14։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Մարտիրոս երեց։ Ժամանակը՝ 1587 թ.։ Վայրը՝ Սեբաստիա։

№ 3079. Պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 379։ Մեծությունը 20,5 × 16,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Նոտր գիր։ Ընդօրինակությանը մասնակցել են մի քանի գրիչ մինչև 1693 թ.։ Ժողովածուի երկրորդ մասն ընդօրինակել է Մարգար երեց Զմյուռնացին, 1693 թ., Կ. Պոլսում։

№ 3189. Տաղարան։ Թերթերի քանակը՝ 156։ Մեծությունը 15 × 10։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր և բոլոր գիր։ Գրիչը՝ Ղուկաս աբեղա, Մարտիրոս։ Ժամանակը՝ 1627—1631 թ.։ Վայրը՝ անհայտ։

№ 4231. Աստվածաբանական և պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 120։ Մեծությունը՝ 18 < 12,2։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարարից ցածր՝ սկզբից և վերջից թերի, կան մաշված թերթեր։ Միասյուն։ Բոլորագիր։ Ժամանակը՝ XV դար։ Գրիչը՝ և վայրը՝ անհայտ։

№ 3194. Մաշտոց և այլ նյութեր։ Թերթերի քանակը՝ 302։ Մեծությունը՝ 14,5 × 9,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Ազարիա։ Ժամանակը՝ 1676 թ.։ Վայրը՝ Նոր Ջուղա։

№ 3425. Պատմական և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 202։ Մեծությունը՝ 15 × 10։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ սկզբից թերի, կան կորած թերթեր։ Միասյուն։ Բոլոր գիր և նոտր գիր։ Գրիչը՝ Գրիգոր, Հակոբ։ Ժամանակը՝ XVII դար։ Վայրը՝ անհայտ։

№ 3527. Քարոզգիրք։ Թերթերի քանակը՝ 162։ Մեծությունը՝ 17 × 13։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Նոտր գիր և բոլոր գիր։ Երկսյուն և միասյուն։ Գրիչը՝ ժամանակը, վայրն անհայտ։

№ 3695. Պատմական և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 10։ Մեծությունը՝ 16 × 10, Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը և վայրն անհայտ։ Ժամանակը՝ 1665 թվականից հետո մինչև 1694 թ.։

№ 3854. Աստվածաբանական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 310։ Մեծությունը՝ 15,5 × 11։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Հակոբ և ուրիշներ։ Ժամանակը՝ 1471։ Վայրը՝ Սոկութլու (Շիրվանի երկիր)։

№ 3964. Աղոթքների, մեկնությունների և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 119։ Մեծությունը՝ 20 × 13։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ մի քանի հոգի։ Ժամանակը՝ XVII—XVIII դար (?)։ Վայրը՝ անհայտ։

№ 4442. Պատմական նյութերի ծաղկաքաղ։ Թերթերի քանակը՝ 778։ Մեծությունը՝ 29 × 21։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոր գրչություն։ Գրիչը՝ Ղևոնդ Փիրղալեմյան։ Ժամանակը՝ XIX դարի երկրորդ կեսում։ Վայրը՝ զանազան վայրեր։

№ 4515. «Նշխարք պատմութեան Հայոց»։ Էջերի քանակը՝ 928։ Մեծությունը՝ 32,5 × 21։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոր գրչություն։ Գրիչը՝ Ղևոնդ Փիրղալեմյան։ Ժամանակը՝ 1873—1883 թ. թ.։ Վայրը՝ զանազան վայրեր։

№ 4618. Քարոզների, մեկնությունների և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 201։ Մեծությունը՝ 20,5 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ վնասված, կան կորած թերթեր։ Միասյուն։ Բոլոր գիր և նոտր գիր։ Գրիչը՝ Գրիգոր, Մելքոն, Իգնատիոս երեց։ Ժամանակը՝ 1693—1700 թ. թ.։ Վայրը՝ Վան։

№ 5175. Քարոզգիրք։ Թերթերի քանակը՝ 414։ Մեծությունը՝ 15,5 × 13։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարարից ցածր՝ վերջից թերի։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Նիկողայոս կրոնավոր։ Ժամանակը՝ 1418 թ.։ Վայրը՝ Վարագ։

№ 5599. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 233։ Մեծությունը՝ 18 × 13։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարարից ցածր, կան պոկված, մաշված թերթեր։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը՝ Ստեփանոս քահանա։ Ժամանակը՝ 1347 թ.։ Վայրը՝ Ուրել գյուղ (Կիլիկիայում)։

№ 6354. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 372։ Մեծությունը՝ 25 × 18։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ քայքայված։ Երկսյուն։ Բոլոր գիր և նոտր գիր։ Գրիչը և վայրը անհայտ։ Ժամանակը՝ 1735 թ.։

№ 6562. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 206։ Մեծությունը՝ 21 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն և միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը և վայրն՝ անհայտ։ Ժամանակը՝ 1686 թ.։

№ 6691. Պատմական նյութեր։ Թերթերի քանակը՝ 8։ Մեծությունը՝ 20 × 14։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Ստեփանոս Գյումուշխանեցի։ Ժամանակը՝ 1783 թ.։ Վայրը՝ Օրթա գյուղ (Կ. Պոլսի շրջանում)։

№ 6938. Մեկնությունների և այլ նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 150։ Մեծությունը՝ 16,5 × 12։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Ավետիս, Նստեր։ Ժամանակը՝ 1355 թ.։ Վայրը՝ Աղջո վանք։

№ 7040. Տոմար և տոմարագիտական մեկնություններ։ Թերթերի քանակը՝ 290։ Մեծությունը՝ 14 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Առաքել։ Ժամանակը՝ 1641 թ. (?)։ Վայրը՝ Լայուռ քաղաք (Հնդկաստանում)։

№ 7584. Քարոզգիրք։ Թերթերի քանակը՝ 722։ Մեծությունը՝ 25 × 17,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Խաչատուր Ջուլախ։ Ժամանակը՝ 1698 թ.։ Վայրը՝ Կ. Պոլիս։

№ 7709. Տաղարան։ Թերթերի քանակը՝ 244։ Մեծությունը 15 × 11։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ քայքայված, սկզբից և վերջից թերի, կան մաշված և կորած թերթեր։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Խաչգուռ (նույն ինքը Խաչատուր երեց)։ Ժամանակը՝ սկսել է գրել 1620 թվականից։ Վայրը՝ Կաֆա։

№ 7715. Տաղարան։ Թերթերի քանակը՝ 126։ Մեծությունը՝ 14 × 9,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ քայքայված։ Միասյուն։ Նոտր գիր և շեղագիր։ Գրիչը և վայրն՝ անհայտ։ Ժամանակը՝ 1686 թ. (?)։

№ 7816. Քարոզգիրք և կանոնգիրք։ Թերթերի քանակը՝ 43։ Մեծությունը՝ 20 × 13։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ քայքայված։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Հովհաննես։ Ժամանակը՝ 1614 թ.։ Վայրը՝ Թբիլիսի։

№ 7841. Պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 317։ Մեծությունը՝ 29 × 15,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Երկսյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Բաղդասար դպիր։ Ժամանակը՝ 1669 թ.։ Վայրը՝ անհայտ։

№ 8100. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 371։ Մեծությունը՝ 21 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ վնասված։ Միասյուն։ Նոտր գիր։ Գրիչը՝ Մանվել քահանա, Կարապետ վարդապետ։ Ժամանակը՝ 1784 թ.։ Վայրը՝ Կարս։

№ 8184. Պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 58։ Մեծությունը՝ 19,5 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարարից ցածր, վերջից թերի։ Երկսյուն։ Նոտր գիր։ Գրիչը և վայրն անհայտ։ Ժամանակը՝ 1672 թ. հետո։

№ 8233. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 151։ Մեծությունը՝ 21 × 15։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ բավարարից ցածր։ Միասյուն։ Նոտր գիր և շեղագիր։ Գրիչը՝ հիմնականում Իսահակ վարդապետ, Հովհաննես դպիր։ Ժամանակը՝ 1693—1695 թ. թ.։ Վայրը՝ Թաթևոս Առաքյալի վանք։

№ 8481. Պատմական նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 217։ Մեծությունը՝ 15,5 × 11,5։ Նյութը՝ թուղթ։ Վիճակը՝ վնասված։ Միասյուն։ Բոլոր գիր։ Գրիչը և վայրն անհայտ։ Ժամանակը՝ XIV դար. վերանորոգված։

№ 8509. Զանազան նյութերի ժողովածու։ Թերթերի քանակը՝ 215։ Մեծությունը՝ 15 × 11։ Նյութը՝ Թուղթ։ Վիճակը՝ բավարար։ Միասյուն։ Նոտր գիր։ Ժողովածուի առաջին մասի ընդօրինակության ժամանակը, գրիչը, վայրն՝ անհայտ, երկրորդ մասի գրիչը՝ Դավիթ, ժամանակը՝ 1688 թ.։ Վայրն՝ անհայտ։

ՕՏԱՐ ԲԱՌԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

# Յ Ա Ն Կ Ե Ր

ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ, ԱՆՎԱՆԱԿԱՆ ԵՎ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ, ԱՌԱՐԿԱՅԱԿԱՆ

# ՕՏԱՐ ԲԱՌԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

*Ծանոթագրություններում բացատրված և առավել ծանոթ բառերը չեն մտնում բառարանի մեջ։ Թվով 9 բառի բացատրություն չկարողացանք գտնել, դրանք են՝ ադրնոց («ադր» բառից), աշարմաշար, դերդես, թաղթըրամա, թարճաններ («թարճ» բառից), թոլլայ, յէշադ, ռոա, քօհրոզ։*

*Արաբերեն և պարսկերեն բազմաթիվ բառեր, որոնք գործածողներն անմիջականորեն վերցրել են թուրքերենից, նշեցինք որպես թուրքերեն։*

*Գործածված են հետևյալ համառոտագրությունները՝ արբ.—արաբերեն, թրք.—թուրքերեն, լատ.—լատիներեն, հուն.—հունարեն, պրսկ.—պարսկերեն, ֆր.—ֆրանսերեն։*

**Ադաբսզ** *թրք.* edepsiz—*անամոթ, անբարոյական, անբարեկիրթ*

**Ալաճա** *թրք.* alaca—*գույնզգույն, խայտաբղետ*

**Ալավլամիշ եղել**—*թրք.* alevlenmek—*բոցավառվել, վառվել*

**Ալաֆ**—*արբ.* alaf—*կենդանիների կեր*

**Ալչախ**—*թրք.* alçak—*անարգ, ստոր, արհամարհված*

**Ախտար**—*թրք.* aktar—*մանրածախ առևտրական*

**Ահուզար**—*պրսկ.* ah u zar—*ողբ*

**Ամր** *(նաև էմր)*—*թրք.* emr=emir—*հրաման, հրամանագիր, կարգադրություն*

**Այար**—*թրք.* ayar—*թամր*

**Ամելդար**—*թրք.* ameldar—*կառավարիչ*

**Աշչի**—*թրք.* aşçı—*խոհարար*

**Աշչի բաշի**—*թրք.* aşçıbaşı—*գլխավոր խոհարար, խոհարարապետ*

**Աջալ**—*թրք.* ecel—*օրհաս, վախճան, վերջ, մահ*

**Առնաուտ**—*թրք.* arnavut—*ալբանացի*

**Ասի**—*թրք.* asi—*ապստամբ, խռովարար, ըմբոստ*

**Ասպապ**—*թրք.* espap—*հագուստ*

**Ասքեր**—*թրք.* asker—*զինվոր, զորք, բանակ*

**Ադիլ**—*թրք.* adıl—*արդար*

**Արզ**—*թրք.* arz—*առաջարկ, խնդրանք, զեկույց*

**Արխ**—*թրք.* ark—*առու*

**Բադան**—*թրք.* beden—*հրացանի փող*

**Բազազ** *(պէզզազ)*—*թրք.* bezzaz—*կտավ վաճառող*

**Բայրաղ** *(նաև պայրախ)*—*թրք.* bayrak—*դրոշ*

**Բանդ**—*թրք.* bent—*ամբարտակ, ջրպտույտ*

**Բաշխա**—*թրք.* başka—*ուրիշ, բացի*

[illegible]—*թրք.* [illegible]—*խաշ պատրաստող և վաճառող*

**Բէզզադա**—*թրք.* beyzade—*բեգի տղա*

**Բինա**—*թրք.* bina—*շինություն, շենք, կառուցվածք*

**Բիրդան**—*թրք.* birdenbire—*հանկարծ*

**Բրինձ**—*ֆր.* prince—*իշխան*

**Բոլուք**—*թրք.* bölük—*մաս, խումբ, վաշտ (դին.)*

**Գափուջի** *(նաև ղափուջի)*—*թրք.* kapıcı—*դռնապան, չվեցար (նաև պաշտոն է)*

**Գենգիշ արին**—*ենթադրում ենք թրք.* yigiş—*ժողով, հավաքույթ բառն է*

**Գուլուլա**—*թրք.* gülle—*գնդակ, ական*

**Գուգում**—*թրք.* gügüm—*պղնձյա սափոր (ջրի համար)*

**Գունդ**—*ֆր.* comte—*կոմս*

**Գոմրուկչի**—*թրք.* gümrükçü—*մաքս առնող*

**Դամաթ**—*թրք.* damat—*փեսա*

**Դարաղաջ**—*թրք.* daragacı—*կախաղան*

**Դէլյալ**—*թրք.* delail=delil—*միջնորդ, մունետիկ*

**Դաւթիշ**—*թրք.* teftiş—*քննություն*

**Դամղա**—*թրք.* damga—*դրոշմ, խարան, դաղ*

**Դարգահ**—*թրք.* dergâh—*պալատ*

**Դամղալամիշ արեց**—*թրք.* damgalamak—*դրոշմել, կնքել, խար*

**Դաւթար**—*(նաև աէֆտէր) թրք.* defter—*մատյան*

**Դիվան**—*թրք.* divan—*ատյան, դատարան, դատաստան*

**Դիզդար**—*պրսկ.* dezdar—*բերդապահ*
**Դովլաթ**—*թրք.* devlet—*հարստություն*
**Դուզաղ**—*տես տուտսախ*
**Դոնանմա** *(նաև տօնանմա) թրք.* donanma—*հրավառություն*
**Դոնմե** *(նաև տօնմէշ) թրք.* dönmek—*ետ դառնալ*

**Յաղի**—*թրք.* yagı—*թշնամի*
**Յանղու**—*թրք.* yanık—*հրդեհ*
**Յայլա=Եայլամիշ**—*թրք.* yaylâ—*յայլա, ամառային արոտավայր լեռներում, ամառանոց*
**Յասաղ**—*թրք.* yasak—*արգելք*
**Յարալը**—*թրք.* yaralı—*վիրավոր, վիրավորված*
**Յեդակ**—*թրք.* yedek—*երասան, սանձ*
**Յէրիշ**—*թրք.* yarış—*մենամարտ, մրցում, մրցավազք, դրոհ, հարձակում*
**Յենիչերի**—*թրք.* yeniçeri—*յանիչարի—զորքի տեսակ (քրիստոնյա երեխաներից կազմված)*
**Ենիչեր աղասի**—*թրք.* eniçeri ağası—*ենիչերիների պետ*

**Զախիր**—*թրք.* zahir—*ողնական, օգնություն ցույց տվող*
**Զաբուն**—*պրսկ.* zebun—*նիհար, թույլ, արկար, անզոր*
**Զարար**—*թրք.* zarar—*վնաս*
**Զնդան**—*թրք.* zından—*բանտ*
**Զինջուբ**—*պրսկ.* sincab—*գորշ կույն*

**Էլ**—*թրք.* el—*ցեղ, ժողովուրդ*
**Էլչի**—*(նաև ելչի)*—*թրք.* elçi—*դեսպան*
**Էսնաֆ**—*թրք.* esnaf—*արհեստավոր, վարպետ, համքարություն*
**Էմին**—*թրք.* emin—*պետ, վարիչ*

**Ըխթիար**—*թրք.* ihtiyar—*ծեր, պառավ*
**Ըռազին**—*թրք.* rezin—*ամուր*
**Ըռուշվաթ**—*թրք.* ruşvet—*կաշառք*
**Ըռափահի**—*տես սպահի*
**Ըրղաթ**—*(նաև երղատ)*—*հուն.* ἐργάτης—*բանվոր*

**Թաբաղ**—*թրք.* tabak—*ափսե, թաս, սկուտեղ*
**Թախըմ**—*թրք.* takım—*խումբ, ամբողջություն, կոմպլեկտ (լրակազմ)*
**Թամարխան**—*թրք.* tamirhane—*վերանորոգման արհեստանոց*
**Թային**—*թրք.* tayin—*բաժին, ռոճիկ (պարենով վճարված)*
**Թաշ**—*թրք.* taş—*քար*
**Թաբուր** *(նաև դաբուր)*—*թրք.* tabur—*զորամաս*
**Թավլե**—*պրսկ.* tavile—*ախոռ*

**Թէհրիր**—*թրք.* tahrır—*ցուցակագրում, հաշվեհամար, մարդահամար*
**Թավուխ**—*թրք.* tavuk—*հավ*
**Թուֆանգ**—*թրք.* tüfenk—*հրացան*
**Թուֆանգչի**—*թրք.* tüfenkci—*հրացանագործ, զինագործ*
**Թոյ**—*թրք.* toy—*հարսանիք, խնճույք*

**Իբրեղ**—*արբ.* ibrık—*ջրի պղնձյա աման, սափոր*
**Իմամ**—*թրք.* imam—*իմամ*
**Իմարաթ**—*թրք.* imaret—*բարեգործական հիմնարկություն՝ մզկիթներին կից*
**Իմդադի սաֆարիա**—*թրք.* imdadı seferiye—*հարկի տեսակ է*
**Իսկելե**—*թրք.* iskele—*կամրջակ, նավահանգիստ*

**Լաղըմ**—*թրք.* lâğım—*ականափոս*
**Լաշ**—*թրք.* leş—*դիակ*
**Լաշքեար**—*պրսկ.* laşhkar—*բանակ, զորամաս*
**Լիման**—*թրք.* liman—*ծովածոց, նավահանգիստ*

**Խազազ**—*թրք.* kazaz—*մետաքսի առևտրական*
**Հալաթ**—*(նաև ղալաթ)*—*թրք.* halet—*իրողություն, դեպք*
**Խալլասեց**—*թրք.* helas—*ազատություն, ազատվել*
**Խան**—*թրք.* han—*իջևան*
**Հանդակ**—*թրք.* hendek—*խրամատ, փոս,*
**Խանթար**—*թրք.* kantar—*կշեռք, նաև ծանրության չափ է*
**Հասապ**—*(նաև ղասաբ)*—*թրք.* kasab—*մսագործ*
**Խարաջ**—*թրք.* haraç—*հարկ, քրիստոնյաների զին. ծառայության փոխարեն*
**Խարիպ** *(նաև ղարիբ)*—*թրք.* garip—*պանդուխտ*
**Խարջ**—*թրք.* harc=harç—*ծախս*
**Խիլայեց**—*արբ.* khila—*զգեստավորում՝ պաշտոնին համապատասխան*
**Խաֆաս** *(նաև ղաֆաս)*—*թրք.* kafes—*վանդակ*
**Խլաթեաց**—*արբ.* khalita—*շողոքորթել*
**Խունքեար** *(նաև խոնդքար)*—*թրք.* hünkâr—*օսմանյան սուլթանների տիտղոսը*

**Կաթիլ**—*թրք.* katıle—*էշելոն, խումբ, շարան (զին.)*
**Կըթլըղ**—*թրք.* kıtlık—*սով*
**Կոմս**—*լատ.* comes—*կոմս*
**Կուրմիշ**—*թրք.* kurmak—*լարել, հետապնդել*

Կումաշ—*թրք.* kumaş—*կերպաս*

Հայիւ—*թրք.* havıı—*անաղարտություն, վրեժ*
Հավուզ—*թրք.* havuz—*ավազան*
Հափս—*թրք.* haps=hapıs—*բանտ*
Հաթթի շերիֆ—*թրք.* hatti şerif—*սրբազան (նաև սուլթանի) հրամանագիր*
Հուրթանա (*նաև փոթնա*)—*թրք.* urtına—*փոթորիկ*
Հուքմ—*թրք.* hükım—*իշխանություն*
Հսար (*նաև խսար*)—*արբ.* hissar—*պաշարել*
Հօխա—*թրք.* okka—*ծանրության և ծավալի չափ է*

Ղաբալ—*թրք.* gebele—*կապալ, պայմանագիր*
Ղազի—*թրք.* gazi—*ղազի—մոլ. հոգևորական տիտղոս է, հավատի համար պայքարող*
Ղազուխ—*թրք.* kazık—*ցից*
Ղաթլամ—*թրք.* ketliam—*ջարդ, կոտորած*
Ղալա—*թրք.* kale—*բերդ*
Ղադի—*թրք.* kadı—*դատավոր*
Ղարար—*թրք.* karar—*որոշում, չափ է*
Ղարկուտար—*թրք.* garketmıek—*սուզվել, խորասուզվել*
Ղափանմիս—*թրք.* kapanmak—*փակվել*
Ղափու—*թրք.* kapı—*դուռ*
Ղզլբաշ—*թրք.* kızılbaş—*կարմիր գլուխ (Սեֆյան զինվորները)*
Ղշլայեց—*թրք.* kışlamak—*ձմեռել*
Ղշլախ—*թրք.* kışlak—*ձմեռանոց, ձմեռային արոտավայր*
Ղուլ—*թրք.* kul—*ծառա, զինվորներ ստրուկներից*
Ղույումճի—*թրք.* kuyumcu—*ոսկերիչ*
Ղուլա—*թրք.* kule—*աշտարակ*
Ղոշուն—*թրք.* koşun—*զորք, բանակ*

Ճամ—*թրք.* cam—*ապակի*
Ճամէքան—*թրք.* camekan—*ջերմոց, հանդերձարան*
Ճամի (*նաև ջամի*) *թրք.* camı—*մզկիթ*
Ճամճի—*թրք.* camcı—*ապակեգործ, ապակեվաճառ*

Մադան—*թրք.* maden=madan—*հանք, հանածո, մետաղ*
Մաթարիս—*արբ.* matarıo—*խրամատ փորել, խրամատավորվել*
Մալքու—*արբ.* mukataa—*հարկի տեսակ է*
Մանզուլ—*արբ.* nazil—*իջեցնել (նաև իշխանությունից հրաժարեցնել)*
Մանղալ—*թրք.* mangal—*կրակարան*
Մանսուպ—*թրք.* mansıp—*պաշտոն, աստիճան է*
Մահսուպ—*արբ.* mahsub—*հաշվառու*
Մարաջախս—*ֆր.* maréchal—*մարշալ*

Մէյխանաճի—*թրք.* meyhanecı—*գինեվաճառ, օղեվաճառ*
Մէդրէսէ—*թրք.* medrese—*հոգևոր դպրոց*
Մէրէմէթ—*թրք.* meramet—*վերանորոգում, վերանորոգություն*
Մուսալլի—*արբ.* musellah—*զինված, զինվոր կամ* musalaha muslih—*հաշտարար*
Մուսաֆիր—*թրք.* mısafir—*հյուր*
Մուֆթի—*թրք.* müfti—*մուֆտի—պաշտոն է*
Միրզա—*թրք.* mirze—*տիտղոս է*
Մոհթասիբ—*արբ.* mohtesib—*շուկայի վերահսկիչ, անպարտաճանաչ*
Մոհրով—*թրք.* mühür=mühr—*կնիք, դրոշմակ*
Մեյդան—*թրք.* meydan—*հրապարակ*

Նազըր—*թրք.* nazır—*կառավարիչ, հսկիչ*
Նայիպ—*թրք.* naip—*տեղակալ, երկրորդ կարգի հոգևոր դատավոր*
Նոկէր—*պրսկ.* novkar—*ծառա*

Շահզադա—*թրք.* Şahzade—*շահի զավակ*
Շամաթայ—*թրք.* Şamata—*աղմուկ*
Շառ—*թրք.* Şer—*չարություն, թշնամանք*
Շէնլիք *թրք.* Şenlik—*ուրախություն, հանդես, հայերեն «շէնք» բառից)*
Շիշա—Şişe—*շիշ*

Ուլամա—*արբ.* ulema (*եզ.* âlım)—*իմաստուններ, գիտնականներ*
Ուլուս—*թրք.* ulus—*ցեղ*
Ուլուֆա—*թրք.* ulûfe—*ռոճիկ*
Չաիր—*թրք.* çayır—*մարգագետին*
Չադըր—*թրք.* [illegible]—*վրան*
Չարչուպ—*պրսկ.* çahar çubc—*պատուհանի շրջանակ*
Չարսըն (չարսու)—*թրք.* çarsı—*շուկա*
Չարդախ—*թրք.* çardak—*շվաքարան, ծածկ*
Չրաղ—*թրք.* çırak—*ծառա, աշակերտ, սան*

Բազրկան—*պրսկ.* bezirgan—*վաճառական*
Պապուչչի—*թրք.* pabuçci—*մաշկակար, չուստ կարող*
Բասմա—*թրք.* basına—*տպած*
Բոյախանա—*թրք.* boyahane—*ներկատուն*
Բոյաչի—*թրք.* boyacı—*ներկարար*
Բոզաճի—*թրք.* bozacı—*կորեկաջուր շինող կամ վաճառող*
Բիչախչի—*թրք.* bıçakcı—*դանակագործ*
Բութուն—*թրք.* bütün—*ամբողջ, բոլոր*

Ջամուս—*թրք.* camus—*գոմեշ*
Ջէպախանա—*թրք.* cepane=cephane—*վառոդի, փամփուշտի, ականի, պայթուցիկ նյութերի պահեստ*

**Չերգա** —թրք. cerge—շարք, կարգ

**Ռեզիլ** (ռեզիլություն)—պրսկ. rezil—խայտառակ
**Ռամ**—թրք. ram—ենթակա, հպատակ, խոնարհ, հլու
**Ռամազան**—թրք. ramazan—ամսի և մահմեդական տոնի անուն է
**Ռայա**—արբ. raya—հպատակ
**Ռզակ**—թրք. erzak—մթերք, պաշար
**Ռե դը Ֆրանս**—ֆր. roi de France—Ֆրանսիայի թագավոր
**Ռեիս**—թրք. reis—պետ, գլուխ, նախագահ

**Սազլըխ**—թրք. sazlık—ծանծաղուտ
**Սաղկաթ**—(նաև սաքաթ) թրք. sakat—հաշմանդամ, պակասավոր
**Սառաճի**—թրք. saraç—թամբագործ, լծասարքագործ
**Սարայ**—թրք. saray—պալատ
**Սարխոշ**—թրք. sarhoş—հարբած, գինովցած
**Սարասար** (գումաշ)—պրսկ. sarasar—գլխից-գլուխ, ծայրից ծայր, կերպասի այն տեսակը, որի մեջ հավասար և ծայրեծայր անցնում են ոսկե թելերը
**Սերասքեր**—թրք. serasker—գլխավոր հրամանատար, ռազմ. մինիստր
**Սարքար**—պրսկ. sarkar—գործերի կառավարիչ
**Սեֆեր**—թրք. sefer—ճանապարհորդություն ուղևորություն, արշավանք
**Սել**—թրք. sel—սելավ, հեղեղ
**Սեյմեն**—թրք. seyman—թուրքական զորքի տեսակ է
**Սիթամ**—թրք. sitem—բռնություն, անարդարություն, ճնշում
**Սիլա** (նաև սլէհ)—թրք. silâh—զենք, հրացան
**Սինեշալ**—ֆր. senechal—ավագ դատավոր, հրամանատար ազատանու (ըստ Ն. Բյուզանդացու), պաշտոն է
**Սինոռ**—հուն. σύνορος—հարակից, սահմանակից, սահման
**Սիր**—ֆր. sire—տեր
**Սպահի**—թրք. sipahi—հեծյալ զորք, ձիավոր
**Սոֆթա**—թրք. softa—հոգևորական դպրոցի (մեդրեսեի) ուսանող
**Սուրգուն**—թրք. sürgün—աքսոր
**Սուննաթ**—թրք. sunnet—թլփատություն
**Սուրաթ**—թրք. surat=suret—ընթացք

**Սուբաշի**—թրք. subaşı—ոստիկանապետ
**Սոխախ**—թրք. sokak—փողոց

**Վեքիլ**—թրք. vekil—փոխանորդ, լիազոր, ներկայացուցիչ, գործակալ, հավատարմատար

**Տաբախխանա**—թրք. tabakhane—կաշի թարախելու-մշակելու արհեստանոց
**Տառուն ձեզ**—թրք. darı—(կորեկ) բառից darısı size—նույնը քեզ կը մաղթեմ
**Տառուղայ**—թրք. daruğa—տես՝ սուպաշի
**Տադա**—թրք. 1. dede—ծերունի, 2. dada—մեծ վարպետ, փորձառու մարդ
**Տեյրմեն**—թրք. degirmen—ջրաղաց
**Տիքիլի**—թրք. dikili—կանգնած, կանգնեցված
**Տուդուկ**—թրք. düdük—սուլիչ
**Տութսախ**—թրք. tutsak—բանտարկյալ, գերի
**Տուլպանտ**—tülbent—նուրբ փաթուսխա (կտոր) քրիստոնյաների տարբերանշանը
**Տուկ**—ֆր. duc—դուքս
**Տոլապ**—թրք. dolap—պատի պահարան, ջուր քաշելու անիվ

**Փաշալըխ**—թրք. paşalık—վարչական միավոր մարզ, երկրամաս
**Փարալամիշ անել**—թրք. paralamak—ոչնչել, կտոր-կտոր անել
**Փարթալ**—թրք. paltar—հագուստ
**Փեղամբար**—թրք. peygamber—մարգարե
**Փուդքաներ**—ռուս. будка—տնակ, կրպակ

**Քեսա**—թրք. kese—քսակ, փողի չափ է
**Քեսմա**—թրք. kesme—կտրվածք, կտրանք, հիվանդության անուն է
**Քեվուշ**—թրք. kovuş—գահլիճ, սրահ
**Քիլա**—արբ. kile—հացահատիկի չափ է
**Քութփուրդի**—թրք. kutfirdü—աղմուկ
**Քուֆր**—թրք. küfür—հայհոյանք, անեծք
**Քոշկ**—թրք. köşk—տաղավար, հովանոց

**Օրդու**—թրք. ordu—բանակ

**Ֆախիր** (նաև փախիր)—թրք. fakır=fakr—աղքատ, կարիքավոր, խեղճ, թշվառ
**Ֆերման**—պրսկ. ferman—հրաման, հրամանագիր, հրովարտակ
**Ֆուխարա**—թրք. fukara—աղքատ, չքավոր
**Ֆշանգ**—թրք. fişek—փամփուշտ, պարկուճ
**Ֆրեր**—ֆր. frère—եղբայր:

# ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ ԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

## ՎԱՆՔԵՐ

## ԱՆՎԱՆԱԿԱՆ ԵՎ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ՑԱՆԿ

